# ԺԱՄԱԳԻՐՔ

ԱՐԱՐԵԱԼ
ՍՈՒՐԲ ԵՒ ԱՍՏՈՒԱԾԱՇՆՈՐՀ ԹԱՐԳՄԱՆՉԱՑՆ
ՄԵՐՈՑ ՍԱՀԱԿԱՅ ԵՒ ՄԵՍՐՈՎՊԱՅ ԵՒ ԵՐԱՆԵԼԻ
ՀԱՅՐԱՊԵՏԱՑՆ ԳԻՒՏՈՅ ԵՒ ՅՈՎՀԱՆՆՈՒ
ՄԱՆԴԱԿՈՒՆՒՈՅ
ԵՒ
ՍՐԲՈՅՆ ՆԵՐՍԻՍԻ ՇՆՈՐՀԱԼՒՈՅՆ

ՎՍԵՄԱՇՓԱՅԼ ԵՒ ՀԱՅՐԵՆԱՍԷՐ
ԱՂԱՅ ՅՈՎԱՆՋԱՆԻ ԷԼԻԱԶԵԱՆՑ ԱՍՊԵՏԻ

ՆՈՒԻՐԵ ՅԱՐԳԱՆՕՔ ՏՊԱՐԱՆԱՊԵՏՆ

'Ի ՀԱՅՐԱՊԵՏՈՒԹԵԱՆ ՏԵԱՌՆ ՆԵՐՍԻՍԻ ՀԻՆԳԵՐՈՐԴԻ՝ ՀԱՐԻՒՐ ԵՐԵՍՆԵՒԻՆՆԵՐՈՐԴԻ ԿԱԹՈՒՂԻԿՈՍԻ ԱՄԵՆԱՅՆ ՀԱՅՈՑ։

'Ի ԿԱԼԿԱԹԱ

ՏԱՐԾԻՒ ՏՊԱՐԱՆԻ ՊՕՂՈՍԻ ՎԻՔԷՆԵԱՆ
ԿՈՍՏԱՆԴՆՈՒՊՕԼՍԵՑՒՈՅ

[illegible]

1848

ԱՌ

# ՆՈՐԻՆ ՎՍԵՄՈՒԹԻՒՆ

ԱԶԳԱՍԷՐ ԱՂԱՑ ՑՈՎԱՆՋԱՆ ԷԼԻԱԶԵԱՆՑ ԳԱՑԱՋԱՏ



ԱՌ

# ԸՆԹԵՐՑՕՂԱՑՍ



Որպէս ՚ի միջի գոհար ականց պատուականագոյն է ադամանդ, ՚ի մէջ մետաղաց՝ ոսկի, և ՚ի մէջ ծաղկանց՝ վարդ, այնպէս և ՚ի միջի Եկեղեցական մատենից զառաջին տեղի ունի ՃԱՄԱԳԻՐՔ․ յոր իբրև յանօթ ընդիր հաւաքեալ կան շնորհաձիր երգք սրբոց հարցն մերոց երանելեաց՝ որովք իբրև մշտավառ լապտերօք պայծառանայ և զուարճացեալ բերկրի Հայաստանեայցս սուրբ Եկեղեցի։

Եւ ո՞ արդեօք իցէ՝ որ ոչ ինքնին վկայեսցէ ճշմարտութեան բանիցս․ քանզի այս մատեան պատուական՝ յաւուրց անտի բարերջանիկ թարգմանչացն մերոց մինչև ցգիւտ տպագրութեան արհեստին՝ ձեռաց ՚ի ձեռս, օրի-

նակաց յօրինակս , Եկեղեցեաց յԵկեղեցիս և քաղաքաց 'ի քաղաքս սփռեալ տարածեցաւ ։ Տինա՝ յորժամ տեսին եւ գրոց զկրկին թեւս · և Հրաշազան բազմապատկութեամբ զթերթս մատենից երագ ընդ սփիւռս աշխարհի թռոյց , սոյն այս Հոգեշահ գիրք զառաջինն տպագրեցաւ երկիցս յԱմստերդամ , ապա 'ի Կոստանդնուպօլիս յոլով անգամ , յետոյ երիցս 'ի սուրբ Էջմիածին , 'ի Նախիջեւան և յայլ տեղիս , և Հուսկ ամենայնի 'ի Կոստանդնուպօլիս յօգուտ մանկանց Նորոյս Սիոնի ։

Այլ արդ՝ 'ի Հասանել իմ աստ 'ի Հնդիկս յԱղէքսանդրիոյ ընդ խնամակալ Հովանաւորութեամբ Ազնուամեծար Ազգասէր բարեյիշատակ ՊՕՂՈՍ ՊԷՑԻ ԷՌՈՒՍՈՒՓԵԱՆՑ՝ արտաքին և ներքին գործոց պաշտօնատարի փոխարքային Եգիպտոսի՝ Նուպրեցի եռանդեամբ. զանձն իմ 'ի ծառայութիւն Ազգի՝ յօրինելով և ձուլելով զնորանոր կապարեայ տառս , և օգնականութեամբ Պատուելի Համազգեաց կազմեցի Հաստատեցի զՏպարան մի Ճոխ , կատարեալ և վայելուչ · և յաջողութեամբն Աստուծոյ տպագրեցի զքանի մի Հոգեւորական մատեանս՝ Հազարաւոր օրինակօք · որք այնքան Հաճելի եղեն յաչս տեսողաց ամենեցուն , մինչ զոմանս 'ի նոցանէ անցուցանել յերկրորդ տիպ ստիպեցայ ։ Այն ինչ յուսով մեծաւ պարա-

պէտ յաշխատանս իմ, որքան օրհաս բարերա-
րին իմոյ՝ Պօղոս Պէյի Յուսուֆեանց լցու-
ցեալ կասեցոյց զձեռս իմ 'ի գործոյ տպագ-
րութեան. սկսեալն մնաց ապաժամանն՝ իկատա-
րումն. և զոր սկսանիլ կամէի, պակասեցաւ ինձ
օժանն՝ ըղձանացս 'ի լրումն. Այլ գոհութիւն
մարդասիրին Աստուծոյ, որ 'ի հեռաւոր վայրս
նժդեհութեան իմոյ և 'ի դառն վիշտս լքեալ
անօգնական անձինս՝ յարոյց ինձ ապաւինական,
փոխանակ ընդ այնր՝ յորոյ շնորհացն զրկեցայ,
զԱզնուամեծար ԱՂԱՑ ՅՈՎԱՆՋԱՆ ԽԼԽԱԶ-
ԵԱՆՑ. զայն՝ որ իւրով Աստուածահաճոյ մար-
դասիրութեամբ և ազգասիրութեամբ՝ Հայր
որբոց և հիւրոց և բարերար Ազգիս ճանա-
չի յամենեցունց. Հաստատութիւն Արծիւ
Տպարանիս Աղայիս են արդասիք. տպագրու-
թիւն հոգեշահ մատենից՝ զոր 'ի լոյս հանէ
յանցեալ ամի՝ հասարակաց բարերարին են
արդիւնք. Ոչ սակաւ սատարեաց ինձ 'ի
տպագրութեան մատենիս Գերապատիւ Սըր-
բակրօն Տէր Յովհաննէս Խաչիկեան՝ դիւանա-
կան Քահանայ և աւագերէց Նազարեթայ
սուրբ Եկեղեցւոյն մերոյ. քանզի սա բարե-
յորդոր բանիւք առաւել արար զսակաւութիւն
և զղխտանութիւն Ժամագրոցս, և արժա-
նամեծար Աղայ Յովանջան Խլխազեանց ա-
ռատաձեռնն պատիւք զօրացուցեալ զլքեալ

բազուկս իմ՝ եւ ՚ի խնդիր տպագրութեան ցանկալի եւ հարկաւոր մատենիս այսորիկ ․ զոր ողորմութեամբն Աստուծոյ յետ բազում դըժ-ուարութեանց եւ տաժանելի աշխատանաց հազիւ կարացի ՚ի լոյս ընծայել եւ նուիրել Պատուելի Ազգի իմում ՚ի հոգեւոր զբօսանս եւ ՚ի մխիթարութիւն նոցա, ջանալով ըստ կարի զամենայն վայելուչ ձեւով եւ անթերի կատա-րել եւ ՚ի լրումն ածել ուշադիր վերստուգու-թեամբ եւ բաղդատութեամբ նախկին օրինա-կաց, ճշգիւ հետեւելով Տօնացուցին ։

Որք միանգամ անձամբ զփորձ առեալ են բազմապատիկ դժուարութեանց եւ նեղու-թեանց գործոց տպագրութեան, նոքա միայն կարեն իմանալ եւ վկայել թէ զո՞րպիսի վիշտս եւ զտառապանս կրեցի ՚ի յընթացս տպագրելոյ իմոյ զայս Եկեղեցական մատեան՝ գալով մի-այնակ եւ զուրկ ՚ի ձեռնտուութենէ գործակ-ցաց ։ Ոյգ ընդ այսմ մատենի ունէի ընդ-մամլով եւ զՄՏԵՆԻ ԺԱՄԱԳԻՐՍ ՚ի պէսպէս ձեւս եւ ՚ի վերայ զանազան տեսակաց թղթոյ, զՊԱՏԱՐԱԳ անուանեալ մատենիկ, զծոցա-կիր ՄԽԵՑԱՐԱՆ եւ զառաջին օրն ՄԻԱԳ ՇԱ-ԲԱԹՈՒ ։ Ո՞ւր թողցուք եւ զայս, զի յաշխար-հի աստ Հնդկաց գործաւորք տպարանին, այսինքն՝ գրաշարք, մելանահարք, տպագիրք, կազմարարք եւ այլք են Հնդիկք՝ կռոնիւ գե-

ցապաշտք , Հեղգ և ծոյլ յաշխատանս և ան-
տեղեակ լեզուիս Հայոց միանգամայն ։ Այս
ամենայն անյաղթող պարագայք կարէ յոյժ ծան-
րացուցին զբեռն գործառնութեան իմոյ ։

Արդ ուրախացիր՝ ով անձն իմ լքեալ՝
ընդ այս քո վաստակ ,
Զի տպեալ զայս գործ՝ սրտիդ անձկալւոյն՝
եղեր դու գտակ ․
Արդ ուրախացէք՝ մանկունք Սիոնի՝
դուք ընդ այս սփեր ,
Որ ձեզ 'ի Հնդկաց՝ մինչ յաշխարհ Պարսից՝
եղև պտղաբեր ։
Խնդացէք և դուք՝ սուրբ Եկեղեցիք՝
ազգիս Հայկազնեան ,
Զի լուսով սորա՝ յոգնաթիւ կանթեղք՝
'ի ձեզ վառեցան ։
Արդ ծոխք և աղքատք՝ ծերք և պատանիք՝
գտցեն Հաւասար՝
Զայս ականակուռ՝ և մեղրածորան՝
մատեան կենարար ։

Շնորհակալու մօք ճանաչելով իմ զե-
րախտիս երախտաւորաց՝ բազում մասամբք
պարտական զանձն դաւանիմ Աղգասէր և

Վսեմափայլ ԸՂԱՑ ՅՈՎԱՆՋԱՆԻ ԿԼԻԱՋԽԱՆՑ․ որում և 'ի ցոյց յաւերժական երախտագիտութեան իմոյ վերընծայեմ յարգանօք և մեծարանօք զայս ընտիր մատեան հոգեկեցոյց ։

Ո՛սկի ոստանիկ՝ ծառոյն Յաբեթեան՝
ԸՍՊԷՑ ՅՈՎԱՆՋԱՆ՝
Իշխան Բարեպաշտ՝ հիւրոց հայր և տէր՝
և ասպնջական ։
'Ի բարեաց գանձուց՝ եղեր ինձ սատար՝
ետուր ինձ ձեռն ․
'Ի նուէր Ազին՝ և Եկեղեցեաց՝
ձօնեալ զայս մատեան ։
Իբր սպունգ թացեալ՝ 'ի գինի անոյշ՝
ծաղկահոտ ազնիւ ։
Ուռճացաւ իմ սիրտ՝ շնորհօք երախտեաց՝
ձերոց բազմաթիւ ։
Որպէս Յովհաննէս՝ մեր իմաստասէր՝
ոգեաց քաղցրարարն՝
Աստուածաշնորհ՝ 'Քաթենաւորին՝
աշակերտ և սան ։

Ըղձարև ոչ կարեմ անյիշատակ թողուլ և զբարերարութիւն պատուելի համազգեաց մե-

րոց, որք զոյիւ չափ բարեհաճեցան օժանդակել ծախուց տպագրութեան գործոյս այսորիկ, և զորոց զանուանս յիշատակեմ 'ի ստորև հանդերձ բազմապատիկ սեռն շնորհակալութեամբ իմով վասն օգնականութեանն՝ զոր մատուցին յայս վախճան ։

## ՍՏՈՐԱԳԻՐՔ ՄԱՏԵՆԻՍ · Օրէ · Ռու ։

| | | | |
|---|---|---|---|
| Պարոնայք | Յարութիւն Աբգարեանց և Որդիք · · | 5 · | 30· |
| " | Գրիգոր Աբգարեանց · · · · · · | 2 · | 12· |
| " | Մկրտիչ Ս · Յովհաննեանց · · · · | 2 · | 12· |
| " | Զօհրապ Մ · Մանուկեանց · · · · | 2 · | 12· |
| " | Յովհաննէս Զ · Շիրխօեանց · · · | 2 · | 12· |
| " | Մարտիրոս Ս · Յովհաննեանց · · · · | 2 · | 10· |
| " | Գասպար Մ · Գասպարեանց · · · · | 2 · | 10· |
| " | Յովհաննէս Ավդալեանց կարգավար Վարժապետ Մարդասիրական Ճեմարանին Հայոց · · · · · · · | 2 · | 10· |
| " | Յ · Խ · Միքայէլեան · · · · · · · | 2 · | 10· |
| " | Պետրոս Յ · Պօղոսեանց · · · · · | 1 · | 6· |
| " | Յարութիւն Հ · Յարութիւնեանց · | 1 · | 6· |
| " | Յարութիւն Մ · Վարդանեանց · · | 1 · | 6· |
| " | Գէորգ Մ · Շիրխօեանց · · · · · | 1 · | 6· |
| " | Վրթանէս Տէր Մարտիրոսեան · · | 1 · | 6· |
| " | Աղէքսանդր Սահակեանոսեան · · · | 1 · | 6· |
| " | Ա · Վրթանէսեան · · · · · · · · | 1 · | 6· |
| " | Յովակիմ Գ · Ն · Պօղոսեան · · · | 1 · | 6· |
| " | Կարապետ Յակոբեանց · · · · · · | 1 · | 5· |
| " | Յարութիւն Գ · Գրիգորեանց · · · | 1 · | 5· |
| " | Պետրոս Մ · Գասպարեանց · · · · | 1 · | 5· |

| | | |
|---|---|---|
| " | Յովսէփ Յ. Քամալեանց . . . . . . | 1. 5. |
| " | Յարութիւն Կարապետեանց . . . . | 1. 5. |
| " | Յարութիւն Մ. Շիրխօլեանց . . | 1. 5. |
| " | Յովհան Մովսէսեանց . . . . . . . | 1. 5. |
| " | Փիլիպպոս Ա. Գէորգեանց . . . . . | 1. 5. |
| " | Յովհաննէս . Գ. Բաղրամեանց . . | 1. 5. |
| " | Սէթ Կ. Յ. Պետրոսեան . . . . | 1. 5. |
| " | Ի. Ստեփան . . . . . . . . . . | 1. 5. |

Աստանօր հարկաւոր համարիմ յուշ առնել պատուելի ընթերցողաց մատենիս, զի արդէն ունիմ ընդ մամլով զԱՒԱԳ ՇԱԲԱԹ. և լըրումն տպագրութեան սորա, կարօտի օգնականութեան և նպաստաւորութեան բարեպաշտ և հայրենասէր համազգեաց : Ակնունիմ յուսալով զի յարիցէ ոք Ազգասէր առ 'ի առատաձեռնել զտուրս առատս յամբողջութիւն տպագրութեան մատենիս այսորիկ, որ կարի ցանկալի և փափաքելի է ամենեցուն, և պիտանի սուրբ Եկեղեցեաց մերոց :

ՏՊԱԳՐԻՉ.

# ՀՐԱԺԱՐՈՒՄՆ



Զայս երիցս կրկնէ՝ շրջեալ ՚ի յարեւմուտս և յետս ՚ի կոր [illegible] սանելով, և ասէ։

ՀՐԱԺԱՐԻՄՔ ՚ի սատանայէ՝ և յամենայն խաբէութենէ նորա. ՚ի պատրանաց նորա. ՚ի խորհրդոց նորա. ՚ի գնացից նորա. ՚ի չար կամաց նորա. ՚ի չար հրեշտակաց նորա. ՚ի չար պաշտօնէից նորա. ՚ի չար կամարարաց նորա. և յամենայն չար զօրութենէ նորա. հրաժարելով հրաժարիմք։



# ԴԱՒԱՆՈՒԹԻՒՆ
## ՀԱՒԱՏՈՅ

Եւ ապա դառնայ յարեւելս՝ և [illegible] և [illegible] կերպիւ, և ասէ։

ԽՈՍՏՈՎԱՆԻՄՔ և հաւատամք ամենակատար սրտիւ զՀայրն Աստուած, անեղ, անծին, և անսկիզբն. այլ և ծնօղ Որդւոյ և բղխօղ Հոգւոյն սրբոյ։

Հաւատամք զբանն Աստուած, անեղ՝ ծն-

նեալ՝ և սկսեալ ՚ի Հօրէ նախ քան զյաւիտեանս · ոչ յետոյ և ոչ կրտսեր · այլ որքան Հայրն Հայր՝ ընդ նմին և Որդին Որդի ։

Հաւատամք զսուրբ Հոգին Աստուած · անեղ՝ անժամանակ · ոչ ծնեալ՝ այլ բղխեալ ՚ի Հօրէ · էակից Հօր և փառակից Որդւոյ ։

Հաւատամք զԵրրորդութիւնն սուրբ՝ մի բնութիւն՝ մի Աստուածութիւն · ոչ երեք աստուածք , այլ մի Աստուած · մի կամք · մի թագաւորութիւն · մի իշխանութիւն · արարիչ երևելեաց և աներևութից ։

Հաւատամք յեկեղեցի սուրբ՝ զթողութիւն մեղաց՝ հաղորդութեամբ սրբոց ։

Հաւատամք զմին յերից անձանց զբանն Աստուած՝ ծնեալ ՚ի Հօրէ նախ քան զյաւիտեանս · ՚ի ժամանակի իջեալ յԱստուածածին կոյսն Մարիամ՝ առեալ յարենէ նորա՝ միաւորեաց ընդ իւրում Աստուածութեանն · ինն ամսեայ ժուժկալեալ յարգանդի անարատ կուսին · և եղև Աստուածն կատարեալ՝ մարդ կատարեալ · հոգւով և մտօք և մարմնով · մի անձն, մի դէմ, և միաւորեալ մի բնութիւն ։ Աստուածն մարդացեալ առանց փոփոխման և առանց այլայլութեան · անսերմն յղութիւն և անապական ծնունդ · որպէս ոչ է սկիզբն Աստուածութեան նորա՝ և ոչ վախճան մարդկութեան նորա ։ (Օ ՚ի ՅԻՍՈՒՍ



ՔՐԻՍՏՈՍ երէկ և այսօր՝ նոյն և յաւիտեան ) ։

Հաւատամք զՏէրն մեր ՅԻՍՈՒՍ ՔՐԻՍՏՈՍ հրջեալ ՚ի վերայ երկրի · յետ երեսուն ամաց եկեալ ՚ի մկրտութիւն · Հայր ՚ի վերուստ վկայեալ՝ դա է Որդի իմ սիրելի · և Հոգին սուրբ աղաւնակերպ իջեալ ՚ի վերայ նորա ։ փորձեալ ՚ի սատանայէ և յաղթեալ նմա ։ Քարոզեալ մարդկան զփրկութիւն ։ Աշխատեալ մարմնով · վաստակեալ , քաղցեալ , և ծարաւեալ ։ Յետոյ եկեալ կամաւ ՚ի չարչարանս · խաչեալ և մեռեալ մարմնովն · և կենդանի Աստուածութեամբն ։ Մարմինն եդեալ ՚ի գերեզմանի՝ միաւորեալ Աստուածութեամբն · և Հոգւովն իջեալ ՚ի դժոխս՝ անբաժանելի Աստուածութեամբն ։ Քարոզեալ Հոգւոցն՝ աւերեալ զդժոխս՝ և ազատեալ զհոգիսն ։ Յետ երից աւուրց յարուցեալ ՚ի մեռելոց և երևեալ աշակերտացն ։

Հաւատամք զՏէրն մեր ՅԻՍՈՒՍ ՔՐԻՍՏՈՍ՝ նովին մարմնովն համբարձեալ յերկինս և նստեալ ընդ աջմէ Հօր ։ Այլ և գալոց է նովին մարմնովն և փառօք Հօր ՚ի դատել զկենդանիս և զմեռեալս ։ Որ և յարութիւն ամենայն մարդկան ։

Հաւատամք և ՚ի հատուցումն գործոց · արդարոցն՝ կեանք յաւիտենական · և մեղաւորացն՝ տանջանք յաւիտենական ։



# ՕԳՋՈՒՄՆ

ՄԵՂԱՅ ամենասուրբ Երրորդութեանդ՝ Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ: Մեղուցեալ եմ Աստուծոյ: Խոստովանիմ առաջի Աստուծոյ՝ և սրբուհւոյ Աստուածածնին՝ և առաջի քո հայր սուրբ՝ զամենայն մեղս զոր գործեալ եմ: Քանզի՝ մեղայ խորհրդով՝ բանիւ և գործով, կամայ և ակամայ, գիտութեամբ և անգիտութեամբ, մեղայ Աստուծոյ:

Մեղայ հոգւովս և զօրութեամբ սորա· մտօքս և շարժմամբ սորա· մարմնովս և զգայութեամբ սորա: Մեղայ զօրութեամբ հոգւոյս· խորամանկութեամբ, անզգամութեամբ, յանդգնութեամբ և երկչոտութեամբ, շուայլութեամբ և ժլատութեամբ, զեղխութեամբ և անիրաւութեամբ, չարահաւանութեամբ, յուսահատութեամբ, և թերամտութեամբ, մեղայ Աստուծոյ:

Մեղայ չար խորհրդով մտացս· նենգութեամբ· ատելութեամբ· խեթիւ· մախանօք· յաչաղանօք· թուլութեամբ· պղծական խորհրդով· արուական· իգական· անասնական· գրաստական· գազանական·



՚ի գիշերի և ՚ի տուընջեան · երազական գիճութեամբ, և յանուրջական դարշ աղտեղութեամբ, մեղայ Աստուծոյ ։

Մեղայ ցանկութեամբ մարմնոյս · հեշտութեամբ · պղերգութեամբ · յօրանջմամբ քնոյ · շարժութեամբ մարմնոյս, և զազրագործութեամբ ՚ի պէսպէս ախտս · հեշտալրութեամբ լսելեացս · արատութեամբ աչացս · ցանկութեամբ սրտիս · խղութեամբ անդամացս · պագշոտութեամբ բերանոյս · անժուժկալութեամբ · շուայտութեամբ, և արբեցութեամբ, մեղայ Աստուծոյ ։

Մեղայ չարաբանութեամբ լեզուիս · որտախօսութեամբ · սուտ երդմամբ · երդմնազանցութեամբ · հակառակութեամբ · վիճաբանութեամբ · բանսարկութեամբ · շողոմոդութեամբ · քսու · դատարկաբանութեամբ · և ծաղու · զրախօսութեամբ · հերձախօսութեամբ · և անիծաբանութեամբ · տրտնջելով · դժգոհելով · բամբասելով · և հայհոյելով, մեղայ Աստուծոյ ։

Մեղայ գողութեամբ ձեռացս · ագահելով, զրկելով, հարկանելով, սպանանելով, և ընդ դարշս ածելով, մեղայ Աստուծոյ ։

Մեղայ ամենայն յօդուածովք շինուածոյս և ամենայն անդամովք մարմնոյս · եօթնեակ զգայարանօքս, և վեցեկի շարժմամբս · վեր-

ամբարձ ոտնահարութեամբ, և վայրաքարշ մեղկութեամբ. յաղջ և յանհեակ խառօրելով, զաւաչնոցն մեզանչելով, և վերջնոցն չար նշաւակ գոլով, մեղայ Աստուծոյ։

Այլև մեղայ եօթնեկս յանցանօք մահացու մեղօք. Հպարտութեամբ՝ և մասամբք նորին. Նախանձու՝ և մասամբք նորին. Բարկութեամբ՝ և մասամբք նորին. Ծուլութեամբ՝ և մասամբք նորին. Ագահութեամբ՝ և մասամբք նորին. Որկրամոլութեամբ՝ և մասամբք նորին. Բղջախոհութեամբ՝ և մասամբք նորին, մեղայ Աստուծոյ։

Այլև մեղայ ամենայն պատուիրանացն Աստուծոյ. յանձնառնելեացն և հրաժարելեացն. զի ոչ զյանձնառականսն կատարեցի և ոչ 'ի հրաժարելեացն հեռացայ։ Օրէնս առի՝ և յօրինացն հեռացայ. 'ի կարգս Քրիստոնէութեան հրաւիրեցայ՝ և գործովս անարժան գտայ. գիտելով զչարն՝ կամաւ կորացայ, և 'ի բարեաց գործոց ինձէն հեռացայ. վայ ինձ, վայ ինձ, վայ ինձ։ Զո՞րն ասեմ, կամ զո՞րն խոստովանիմ. զի անթիւ են յանցանք իմ. անպատմելի են անօրէնութիւնք իմ. անհնարելի են ցաւք իմ, և անբժշկելի են վէրք իմ, մեղայ Աստուծոյ։

Հայր սուրբ՝ զքեզ ունիմ միջնորդ հաշտութեան և բարեխօս առ միածին Որդին

Աստուծոյ . զի իշխանութեամբք որ տուեալ է քեզ՝ արձակեսցես զիս 'ի կապից մեղաց իմոց, աղաչեմ զքեզ ։



# ԱՐՁԱԿՈՒՄՆ

ՈՂՈՐՄԵՍՑԻ քեզ մարդասէրն Աստուած, և թողութիւն շնորհեսցէ ամենայն յանցանաց քոց . խոստովանացելոցն և մոռացելոցն ։ Եւ ես կարգաւս քահանայական իշխանութեան, և հրամանաւն Աստուածային՝ թէ (զոր արձակիցէք յերկրի, եղիցի արձակեալ յերկինս) ։ Նովին բանիւն արձակեմ զքեզ յամենայն մասնակցութենէ մեղաց քոց . 'ի խորհրդոց՝ 'ի բանից՝ և 'ի գործոց . ՅԱՆՈՒՆ ՀՕՐ և ՈՐԴՒՈՅ և ՀՈԳՒՈՅՆ ՍՐԲՈՅ ։ Եւ դարձեալ՝ տամ զքեզ 'ի խորհուրդս սուրբ Եկեղեցւոյ . զի զոր ինչ գործիցես բարիս . եղիցի քեզ 'ի բարեգործութիւն և 'ի փառս հանդերձեալ կենացն . Ամէն ։



Առաւօտեան Օրհնութեանն և Հարցին և իւր աղօթիցն ։ Տէր յերկնից և իւր ձայնիցն ։ Սուրբ ես Տէրն շինի Մանկանցն ։ Արեւագալի աղօթքն ։ Զառաւօտու շաղօթսն ։ Ճաշու խաղաղութեանն ։ Փարատեան ։ Քրիստոս Որդի Աստուծոյն ։

Կիրակէից Ճաշու Եւաքն և Աւետարանն՝ յայտնի է ․ Առաքելոյն՝ կոչմանն է ։

Իսկ շուրջ աւուր Գիրքն՝ կոչմանն է ։ Աւետարանն յայտնի է ։

Երեկոյի Խոնարհեցոն՝ յայտնի է ։ Աղօթեցոն, Հայր գթածն, Տէր բարերարն, Քրիստոս Որդին՝ կոչմանն է ։ Հայր մերն՝ յայտնի է ։

Հաւատով խոստովանիմ աղօթքն՝ ժամն և չորս փոխն է՝ քսան ժամն և չորս ժամուցն ։ Իսկ Տէր մեր և փրկիչն, Տէր Աստուած մերն՝ 'ի չարգէ դուրս է, ժամարարին կամ հարկաւոր հէւրին է ։

Յորժամ Բուռաշանն Հայոց Կոճակ լինի՝ Բուն յայտնէն՝ ԱՁ · ԲՁ · ԳՁ · ԴՁ ։ յանջակաղման դասուն լինին, որ ասուրբ աւաղանն է · և յորժամ Դար լինի՝ յախակաղման լինին ։

# ԿԱՐԳԱՒՈՐՈՒԹԻՒՆ

## ՀԱՍԱՐԱԿԱՑ ԱՂՕԹԻՑ
## ՀԱՅԱՍՏԱՆԵԱՑ ԵԿԵՂԵՑԻՈՅ
## ՈՐ ԿԱՏԱՐԻ Ի ՄԷՋ ԳԻՇԵՐԻ
## Ի ԴԻԷՄՍ ՀՕՐ ԱՍՏՈՒԾՈՅ



Օրհնեալ Տէր մեր ՅԻՍՈՒՍ ՔՐԻՍՏՈՍ․ Ամէն․

ԱՅՐ մեր որ յերկինս ես․ սուրբ եղիցի անուն քո․ Եկեսցէ արքայութիւն քո․ եղիցին կամք քո որպէս յերկինս և յերկրի․ Զհաց մեր հանապազորդ տուր մեզ այսօր․ Եւ թող մեզ զպարտիս մեր, որպէս և մեք թողումք մերոց պարտապանաց․ Եւ մի տանիր զմեզ ’ի փորձութիւն, այլ փրկեա զմեզ ’ի չարէ․ Զի քո է արքայութիւն և զօրութիւն և փառք յաւիտեանս․ Ամէն․

Տէր՝ եթէ զշրթունս իմ բանաս, բերան իմ երգեսցէ զօրհնութիւնս քո ։ Տէր՝ եթէ զշրթունս իմ բանաս, բերան իմ երգեսցէ զօրհնութիւնս քո ։ Օրհնեալ համագոյ և միասնական անբաժանելի սուրբ Երրորդութիւնն՝ Հայր և Որդի և Հոգի սուրբ. այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. Ամէն ։



Տէր զի՞ բազում եղեն նեղիչք իմ. և բազումք յարեան ՚ի վերայ իմ ։

Բազումք ասէին զանձնէ իմմէ՝ թէ չիք փրկութիւն սորա առ Աստուած իւր ։

Այլ դու Տէր օգնական իմ ես. փառք իմ և բարձրացուցիչ գլխոյ իմոյ ։

Ձայնիւ իմով ես առ Տէր կարդացի. և լուաւ ինձ ՚ի լեռնէ սրբոյ իւրմէ ։

Ես ննջեցի և ՚ի քուն եղէ զարթեայ և Տէր ընդունող իմ է ։

Ոչ երկեայց ես ՚ի բիւրաւոր զօրաց նոցա. որք շուրջանակի պատեալ պաշարեալ պահէին զիս ։

Արի Տէր՝ և փրկեա՛ զիս Աստուած իմ. զի դու հարեր զամենեսեան որք էին ընդ իս թշնամութեամբ ՚ի տարապարտուց. և զատամունս մեղաւորաց փշրեցեր ։

Տեառնդ է փրկութիւն ․ 'ի վերայ ժողովրդեան քոյ օրհնութիւն քո ։

Տէր Աստուած փրկութեան իմոյ, 'ի տուէ կարդացի և գիշերի առաջի քո ։

Մտցեն աղօթք իմ առաջի քո Տէր, խոնարհեցո ունկն քո 'ի խնդրուածս իմ ։

Զի լցաւ չարչարանօք անձն իմ, և կեանք իմ 'ի դժոխս մերձեցան, և համարեցայ ես ընդ այնոսիկ որք իջանեն 'ի գուբ ։

Եղէ ես որպէս մարդ առանց օգնականի, և 'ի մեռեալս ազատ ։

Որպէս վիրաւորս որք ննջեն 'ի գերեզմանի ։

Զորս դու ոչ յիշեցեր, նոքա 'ի ձեռանէ քումմէ մերժեցան ։

Եդին զիս 'ի գբի ներքնումն, 'ի խաւարի և 'ի ստուերս մահու ։

Յիս հաստատեցաւ սրտմտութիւն քո, զամենայն զբօսանս քո ածեր 'ի վերայ իմ ։

Հեռի արարեր յինէն զծանօթս իմ, և եդին զիս նշաւակ իւրեանց ։

Մատնեցայ և ոչ ելանէի, աչք իմ տկարացան յաղքատութենէ ։

Աղաղակեցի առ Տէր զօրհանապազ, և համբարձի առ քեզ զձեռս իմ ։

Մի թէ մեռելոց առնիցես զսքանչելիս քո, կամ բժիշկք յարուցեալ խոստովան առնիցեն առ քեզ ։

Մի թէ պատմեսցէ ոք երբեք 'ի գերեզմանի զողորմութիւնս քո, կամ զճշմարտութիւնս քո 'ի կորստեան :

Մի թէ ծանիցին 'ի խաւարի սքանչելիք քո, կամ արդարութիւն քո յերկիր մոռացեալ :

Ես առ քեզ Տէր աղաղակեցի, առաւօտու աղօթք իմ ժամանեսցեն առ քեզ :

Ընդէ՞ր Տէր մերժես զանձն իմ, կամ դարձուցանես զերեսս քո յինէն :

Տնանկ և վաստակաւոր եմ ես 'ի մանկութենէ իմմէ, 'ի բարձրութենէ խոնարհեցայ և ափշեցայ :

Յիս հաստատեցաւ բարկութիւն քո, արհաւիրք քո խռովեցուցին զիս :

Շրջեցան զինև որպէս ջուր, զօր ամենայն պաշարեցին զիս 'ի միասին :

Հեռի արարեր յինէն զբարեկամս իմ և զծանօթս իմ, վասն թշուառութեան իմոյ :

Օրհնեա անձն իմ զՏէր, և ամենայն ոսկերք իմ զանուն սուրբ նորա :

Օրհնեա անձն իմ զՏէր, և մի մոռանար զամենայն տուրս նորա :

Ո քաւէ զմեղս քո, բժշկէ զամենայն հիւանդութիւնս քո :

Ո փրկէ յապականութենէ զկեանս քո, պսակէ զքեզ ողորմութեամբ և գթութեամբ :

Որ լնու 'ի բարութենէ զցանկութիւն քո, նորոգեսցի որպէս արծուոյ մանկութիւն քո ։

Առնէ ողորմութիւնս Տէր, և իրաւունս ամենայն զրկելոց ։

Ետոյց Տէր զճանապարհս իւր Մովսէսի, և որդւոցն Իսրայէլի զկամս իւր ։

Գթած ողորմած է Տէր, երկայնամիտ և բազումողորմ ։

Ո՛չ իսպառ բարկանայ մեզ Տէր, և ո՛չ յաւիտեան պահէ ոխս ։

Ո՛չ ըստ մեղաց մերոց արար մեզ Տէր, և ո՛չ ըստ անօրէնութեան մերում հատոյց մեզ ։

Այլ որպէս բարձր են երկինք յերկրէ, այնպէս զօրացոյց Տէր զողորմութիւն իւր 'ի վերայ երկիւղածաց իւրոց ։

Որչափ հեռի են արեւելք յարեւմտից, այնչափ հեռի արար 'ի մէնջ զանօրէնութիւնս մեր ։

Որպէս գթայ հայր 'ի վերայ որդւոց իւրոց, այնպէս գթասցի Տէր յերկիւղածս իւր ։

Զի նա գիտաց զստեղծուածս մեր, և յիշեաց թէ հող եմք ։

Մարդոյ որպէս խոտոյ են աւուրք իւր. որպէս ծաղիկ վայրի՝ այնպէս ծաղկի ։

Շնչէ 'ի նմա հողմ, և ո՛չ է, և ո՛չ եւս երեւի տեղի նորա ։

Բայց ողորմութիւն Տեառն Յեայ յաւի-

տեանս յաւիտենից ’ի վերայ երկիւղածաց իւրոց. եւ արդարութիւն նորա յորդւոց մինչեւ յորդիս։

Որք պահեն զուխտս նորա, յիշեն զպատուիրանս նորա՝ եւ առնեն զնա։

Տէր յերկինս պատրաստեաց զաթոռ իւր. արքայութիւն նորա ամենեցուն տիրէ։

Օրհնեցէք զՏէր ամենայն հրեշտակք նորա՝ հզօրք զօրութեամբ. որք առնէք զբան նորա ’ի լսել ձայնի պատգամաց նորա։

Օրհնեցէք զՏէր ամենայն զօրութիւնք նորա, պաշտօնեայք արարօղք կամաց նորա։

Օրհնեցէք զՏէր ամենայն գործք նորա. զի ընդ ամենայն տեղիս է Տէրութիւն նորա. օրհնեա՛ անձն իմ զՏէր։

Տէր լո՛ւր աղօթից իմոց. ո՛ւնկնդիր լեր խնդրուածաց իմոց ճշմարտութեամբ քով։

Լո՛ւր ինձ արդարութեամբ քով, եւ մի՛ մտաներ ’ի դատաստան ընդ ծառայի քում. զի ո՛չ արդարանայ առաջի քո ամենայն կենդանի։

Հալածեաց թշնամին զա՛նձն իմ. խոնարհ արար յերկիր զկեանս իմ. եւ նստոյց զիս ’ի խաւարի որպէս մեռեալ յաւիտենից։

Ձանձրացաւ յիս հոգի իմ. եւ սիրտ իմ խռովեցաւ յիս։

Յիշեցի զաւուրսն զառաջինս. խորհեցայ յամենայն գործս քո. յարարածս ձեռաց

քոց խորհեցայ. և համբարձի առ քեզ ըզձեռս իմ։

Անձն իմ որպէս երկիր ծարաւի է առ քեզ. վաղվաղակի լո՛ւր ինձ Տէր, զի նուաղեցաւ յինէն հոգի իմ։

Մի՛ դարձուցաներ զերեսս քո յինէն. նըմանեցայց այնոցիկ, ոյք իջանեն ՚ի գուբ։

Լսելի՛ արա ինձ առաւօտու զողորմութիւնս քո. զի ես ՚ի քեզ Տէր յուսացայ։

Ցո՛յց ինձ ճանապարհ՝ յոր և գնացից. զի առ քեզ Տէր համբարձի զանձն իմ։

Փրկեա՛ զիս ՚ի թշնամեաց իմոց Տէր. զի ըզքեզ ապաւէն ինձ արարի։

Ուսո՛ ինձ առնել զկամս քո. զի դու ես Աստուած իմ։

Հոգի քո բարի՝ առաջնորդեսցէ ինձ ՚ի յերկիր ուղիղ։

Վասն անուան քո Տէր՝ կեցուսցես զիս, արդարութեամբ քով հանցես ՚ի նեղութենէ զանձն իմ։

Ողորմութեամբ քով սատակեա՛ Աստուած զթշնամիս իմ. և կորո՛ զամենայն նեղիչս անձին իմոյ, զի ես ծառայ քո եմ։

Փառք Հօր՝ և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ։ Այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. Ամ։ ։ մէ, ն։

# ԵՐԳ․

## ՏԵԱՌՆ ՆԵՐՍԻՍԻ ՀԱՅՈՑ ԿԱԹՈՂԻԿՈՍԻ ԱՍԱՑԵԱԼ Ի ՊԱՀՏՄԱՆ ԳԻՇԵՐՈՅ



Յիշեսցուք ի գիշերի զանուն քո Տէր։

Բղխեսցեն սիրտք մեր զբան բարի․ և լեզուք մեր պատմեսցեն զգործս երկնաւոր թագաւորին։

Ի մէջ գիշերի յարուցեալ խոստովանեսցուք ըզքեզ Տէր։

Զաղօթս մեր տացուք քեզ Տէր, ի գաւիթըս քո ի մէջ նոր Երուսաղէմի։

Ի գիշերի համբարձցուք ըզձեռըս մեր սրբութեամբ առ քեզ Տէր։

Ի ձայն գոհութեան ամենայն հոգիք օրհնեսցէք ըզՏէր։

Եր․ Զարթիր փառք իմ զարթիր․ և ես զարթեայց առաւօտուց․ ալէլուիա։

Զարթիք ընդ զուարթունս, մանկունք վերինին սիոնի․ ալէլուիա։

Զարթիք որդիք լուսոյ, ՚ի յօրհնութիւն հօրըն լուսոյ. ալէլուիա։

Զարթիք փրկեալք արեամբ. և տուք ըզփառս փրկողին. ալէլուիա։

Զարթիք նոր ժողովուրդք՝, նոր երգս առեալ նորոգողին. ալէլուիա։

Զարթիք հարսունք հոգւով պսակեալք գալըստ սուրբ փեսային. ալէլուիա։

Զարթիք վառեալք լուսով ըստ իմաստուն սուրբ կուսանացն. ալէլուիա։

Զարթիք պատրաստեցէք իւղ լապտերաց զջերմ արտասուս. ալէլուիա։

Զարթիք և մի՛ ննջէք, նըման յիմար կուսից նիրհէք. ալէլուիա։

Զարթիք երկրպագցուք և արտասուօք զայս ասասցուք. ալէլուիա։

եւ. Զարթի՛ր ընդէ՞մ ար ննջես. Տէ՛ր մի՛ մերժեր ըզմեզ ի սպառ։

Արի՛ Տէր օգնեա մեզ. տացուք անուանըդ քում ըզփառս։

Այժմ և յաւէտ. Հօր և Որդւոյ, և սուրբ Հոգւոյն. Ամէն։

ԺԲ. Օ արթուցեալքս 'ի զբաղմանէ
գիշերայինն հանգստենէ.
Շնորհեսցէ մեզ մարդասէր Տէր մխի
թարութիւն և 'ի սփոփանս եկեղեցւոյ :
Ահիւ և զողջութեամբ կացցուք 'ի յա
ղօթս :
Եկեալ խոստովանեսցուք ըզյանցանս :
Եւ գտցուք 'ի ՔՐԻՍՏՈՍԷ զքաւու
թիւն և ըզմեծ զողորմութիւն :

ԺԳ. Անբաժանելի և ընհամադիյ Երր
որդութեանդ : համաձայնեալք ընդ
ըզօրս երկնից փառս մատուցա
նեմք :
Փառք քեզ :
Որ յանարուեստ յաթոռ բարձրա
ցեալ հանգչիս . սուրբ Աստուած հը
զօր և սքանչելագործ :
Փառք քեզ :
Որ յանէից գոյացուցեր զամենայն
արարածս : սուրբ Աստուած անճառ
հօր անեղ Որդի :
Փառք քեզ :
Որ տեսչութեամբ խնամես զամենայն

մրարանս ։ սուրբ Աստուածածին ․ բարեխօսեա
անձնապահ ողբեր ։

Տէր ։

Ժողովըրդապետք եկեղեցւոյ ՚ի քէն
հայցեն մաեւլով ․ հովիւ բարի ․ ողորմեա
բանաւոր հօտի ։

Ամէն ալէլուիա ․ ալէլուիա ․ ալէլուիա ։
Ամէն ալէլուիա ․ ալէլուիա ․ ալէլուիա ։

## ՔԱՐՈԶ

Զարթուցեալքս ամենեքեան ՚ի հանդըս
տենէ քընոյ ․ զոր շնորհեաց մեզ մարդասէրն
Աստուած ՚ի մխիթարութիւն և ՚ի սփոփանս
տկարութեան մարմնոյ ։ Եւ եկեալքս միաբան
հոգւոր երգով ՚ի փառաբանութիւն և ՚ի պա
տիւ ամենասուրբ անուան Տեառն մերոյ և
փրկչին ՅԻՍՈՒՍԻ ՔՐԻՍՏՈՍԻ ։ Ահիւ և դո
ղութեամբ կացցուք յաղօթս առաջի Նորա ։
Եւ գոհացարուք զնմանէ ՚ի գիշերային ժա
մուս յայսմիկ վասն խրատուց և արդարու
թեան Նորա ։ Որ ընտրեաց զմեզ ողորմու
թեամբն իւրով ․ և շնորհեաց մեզ բերել ըզ
նմանութիւն երկնային հրեշտակացն ՚ի փա

ուրախիցս Տեառն Աստուծոյ ամենեցուն և մեզ լինել ։ Եւ մեք այսուհետեւ սրբելով զանձինս մեր ՚ի խղճէ և ՚ի չար գործոց ։ Համբարձցուք զձեռս մեր ՚ի սրբութիւն՝ առանց բարկութեան և երկմտութեան ։ Հաւատով խնդրեսցուք ՚ի նմանէ զքաւութիւն և զթողութիւն յանցանաց մերոց ։ Խոստովան լինելով զգաղտնիս սրտից մերոց ծածկագիտին Աստուծոյ ։ Որպէս զի ընդունելով զպաղատանս մեր աղօթիւք և բարեխօսութեամբ ամենայն սրբոց ։ Շնորհեսցէ մեզ մարդասէրն Աստուած կեալ առաքինութեամբ և անարատ վարուք ըստ կամաց նորա յայսմ աշխարհի ։ Եւ արժանաւոր լինելով յաւիտենական և երկնային խորհրդոցն ։ Զոր խոստացաւ սիրելեաց իւրոց՝ ճշմարիտն Աստուած՝ ՅԻՍՈՒՍ ՔՐԻՍՏՈՍ Տէր մեր կեցո՛ և ողորմեա՛ ։

Կեցո՛ Տէր ։

Զմնացուած գիշերիս խաղաղութեամբ անցուցանել՝ հաւատով . ՚ի Տեառնէ խնդրեսցուք ։

Շնորհեա՛ Տէր ։

Զհրեշտակ խաղաղութեան պահապան անձանց մերոց . ՚ի Տեառնէ խնդրեսցուք ։

Շնորհեա՛ Տէ՛ր ։

Զքաւութի՛ւն և զթողութիւն յանցանաց մերոց՝ ՚ի Տեառնէ՛ խնդրեսցո՛ւք ։

Շնորհեա՛ Տէ՛ր ։

Զսրբոյ խաչին մեծ և կարո՛ղ զօրութիւն յօգնութիւն անձանց մերոց. ՚ի Տեառնէ՛ խնդրեսցո՛ւք ։

Շնորհեա՛ Տէ՛ր ։

Եւ ևս միաբան վասն ճշմարիտ և սուրբ հաւատոյս մերոյ՝ զՏէ՛ր աղաչեսցո՛ւք ։

Տէ՛ր ողո՛րմեա՛ ։

Զանձինս մեր և զմիմեանս Տեառն Աստուծոյ ամենակալին յա՛նձն արասցուք ։

Քե՛զ Տեառնդ յա՛նձն եղիցո՛ւք ։

Ողորմեա՛ց մեզ Տէր Աստուած մեր՝ ըստ մեծի ողորմութեան քում. ասասցուք ամենեքեան միաբանութեամբ ։

Տէր ողորմեա՛. Տէր ողորմեա՛

Տէ՛ր ողորմեա ։

Իսկ աստ Տէր ողորմեան ըստ պարզաձայն առնուն ։ ՚Ի Կիւրակէս և ՚ի տօնս փառաւորս՝ երեք Տէր ողորմեա. իսկ ՚ի տօնս սրբոց՝ միայն Տէր ողորմեա. և յաւուրս պահոց՝ հարիւր Տէր ողորմեա.

# ԵՐԳ

## ՏԵԱՌՆ ՆԵՐՍԻՍԻ ՀԱՅՈՑ ԿԱԹՈՂԻԿՈՍԻ ՈՂԲԵՐԳՈՒԹԻՒՆ ԱՆՁԻՆ ՋՂՋԱՑԵԼՈՑ ԵՒ ԲՈՂՈՔ ԻՒՐԱՔԱՆՉԻՒՐՈՑ ԳԻՄԻ ԽՈՍՏՈՎԱՆԱԲԱՐ



ԱՇԽԱՐՀ ամենայն · առիս նայեցեալ · ախտակից լերո՛ւք ։ Բանամ զշրթունս · բարբառիմ լեզուաւս · բողոքեմ զանձնէս ։ Տէր ողորմեա՛ · Տէր ողորմեա՛ · Տէր ողորմեա՛ ։

Գող եղէ մեղաց · գըտօղ կորստեան · գուբ ինձ փորեցի ։ Գաւեցի զանձն իմ · դաւաճանեցի · դարան գործեցի ։ Տէր ողորմեա՛" ·

Երբեմն էի լոյս · և այժմ եմ խաւար · և ըստուեր մահու ։ Օ խո՛րդ ստամեցից · զթիւ մեղաց իմոց · զի բազումեն յոյժ ։ Տէր ողորմեա՛" ։

Երկինք և երկիր · երկա՛յք ողբացէք · եղկելի զանձն իմ ։ Ընտրեցի զչարն · ընկալայ կամաւ · ըղձոյլըս մեղաց ։ Տէր ողորմեա՛" ։

Թաթաւիմ տղմով · թաւալիմ 'ի մեղս · թօթափիլ չկարեմ ։ Քանտախտիւ լցեալ · ժահահոտ եղէ · ժամանակս բազումս ։ Տէր ողորմեա՛" ։

՚Ի քոց մեկնեցայ ·՚ի սուրբ խորհրդոց ·՚ի բարեաց գործոց ։ Լաւ վարկաւ անձն իմ · լուսոյն հեռանալ · լինել ընդ խաւար ։ Տէր ողորմեա″ ։

Խորհուրդք չարին · խաբեն զ՟ոգիս · խո-րասոյզ առնեն ։ Ողածկեն անդընդոց · ծի-ծաղէն գլորմամբս · ծանակ զիս առնեն ։ Տէր ողորմեա″ ։

Կամաւ կորացայ · կարկամեալ անձամբ · կանգնիլ ոչ կարեմ ։ Հուր մեղաց կիզող · հրդեհեաց որ յիս · հոգևոր բարիս ։ Տէր ողորմեա″ ։

Զազկեցայ մեղօք · ձաղեցին տեսօղքն · ձանձրացաւ հոգիս ։ Դեղի դառնութեան · ցօղեալ՚ի սիրտ իմ · ղամպար իմ շիջաւ ։ Տէր ողորմեա″ ։

Ճաշակմամբ մեղաց · ճաշեցի զմահ · ճոխս աղքատացայ · Մեռեալ եմ հոգւովս · մոլո-րեալ մտօքս · միայն կամ մարմնովս ։ Տէր ողորմեա″ ։

Յորդայթ մահու · յորսողին անկայ · յաղ-թեցայ յախտից ։ Նետից թշնամւոյն · նը-շաւակ եղէ · նոր միշտ խոցոտիմ ։ Տէր ողոր″ ։

Շուրջ պատեալ զինև · շունք բազումք եղեն · շաղախին արեամբս ։ Որս եղէ չարին · ուռկանաւ մեղաց · որսացաւ զանձն իմ ։ Տէր ողորմեա″ ։

# ԵՐԳ

## ՏԵԱՌՆ ՆԵՐՍԻՍԻ ՀԱՅՈՑ ԿԱԹՈՂԻԿՈՍԻ ԱՍԱՑԵԱԼ Ի ՊԱՇՏՄԱՆ ԳԻՇԵՐՈՑ



Յիշեսցուք ՚ի գիշերի զանուն քո Տէր։

Բղխեսցեն սիրտք մեր զբան բարի. և լեզուք մեր պատմեսցեն զգործս երկնաւոր թագաւորին։

Ի մէջ գիշերի յարուցեալ խոստովանեսցուք ըզքեզ Տէր։

Զաղօթս մեր տացուք քեզ Տէր, ՚ի գաւիթըս քո ՚ի մէջ նոր Երուսաղէմի։

Ի գիշերի համբարձցուք ըզձեռս մեր սրբութեամբ առ քեզ Տէր։

Ի ձայն գոհութեան ամենայն հոգիք օրհնեսցեն ըզՏէր։

Ժ· Զարթիք փառք իմ զարթիք. և ես զարթեայց առաւօտուց. ալէլուիա։

Զարթիք ընդ զուարթունս, մանկունք վերինն սիոնի. ալէլուիա։

ԺԸ. Օարթոուցեալքս 'ի զքազմանէ գիշերային հանդըստենէ ։

Շնորհեսցէ մեզ մարդասէր Տէր մըխիթարութիւն և 'ի սփոփանս եկեղեցւոյ ։

Ըհիւ մ գողութեամբ կացցուք 'ի յաղօթս ։

Եկեալ խոստովանեսցուք ըզյանցանս ։

Եւ գըտցուք 'ի ՔՐԻՍՏՈՍԷ զքաւութիւն և ըզ մեծ զողորմութիւն ։

ԺԹ. Ընքածանելի և ըհամագոյ Երրորդութեան ։ համաձայնեալք ընդ ըզօրս երկընից փառս մատուցանեմք ։

Փա մ մ ռըք քեզ ։

Որ յանարուեստ յաթոռ բարձրացեալ հանգչիս . սուրբ Աստուած հըզօր և սքանչելագործ ։

Փառըք քեզ ։

Որ յանէից գոյացուցեր զամենայն արարածս ։ սուրբ Աստուած անճառ ծօր անեղ Որդի ։

Փառըք քեզ ։

Որ տեսչութեամբ խնամես զամենայն

մրարածս ։ Սգուրբ Աստուած․ բըղխողդ ամ անճառապատ ողբերս ։

Տէր ։

Ժողովըրդապետք Եկեղեցւոյ, 'ի քէն հայցեն մաւրլով․ հոգւոյ բարի․ որ զորբըմտա բանաւոր հօտին ։

Ամէն ալէլուիա․ ալէլուիա․ ալէլուիա ։

Ամէն ալէլուիա․ ալէլուիա․ ալէլուիա ։

## ՔԱՐՈԶ

Օ արթուցեալքս ամենեքեան 'ի հանդըս տեսէ՛ քընոյ․ զոր շնորհեաց մեզ մարդասէրն Աստուած 'ի մխիթարութիւն և 'ի սփոփանս տկարութեան մերում ։ Եւ եկեալքս միաբան հոգևոր երգով 'ի փառաբանութիւն և 'ի պատիւ ամենասուրբ անուան Տեառն մերոյ և փրկչին ՅԻՍՈՒՍԻ ՔՐԻՍՏՈՍԻ ․ Ահիւ և դողութեամբ կացցուք յաղօթս առաջի նորա ։ Եւ գոհացարուք զնմանէ 'ի գիշերային ժամուս յայսմիկ վասն իրաւանց և արդարութեան նորա ։ Որ ընտրեաց զմեզ ողորմութեամբն իւրով․ և շնորհեաց մեզ բերել ըզ նմանութիւն երկնային հրեշտակացն 'ի փա

ուսուցանիչս Տեառն Աստուծոյ ամենեցուն և մեզ լինիլ։ Եւ մեք այսուհետև սրբելով զանձինս մեր ՚ի խղճէ և ՚ի չար գործոց։ Համբարձցուք զձեռս մեր ՚ի սրբութիւն՝ առանց բարկութեան և երկմտութեան։ Հաւատով խնդրեսցուք ՚ի Նմանէ զքաւութիւն և զթողութիւն յանցանաց մերոց։ Խոստովան լինելով զգաղտնիս սրտից մերոց ծածկագէտին Աստուծոյ։ Որպէս զի ընդունելով զպաղատանս մեր աղօթիւք և բարեխօսութեամբ ամենայն սրբոց։ Շնորհեսցէ մեզ մարդասէրն Աստուած կեալ առաքինութեամբ և անարատ վարուք ըստ կամաց Նորա յայսմ աշխարհի։ Եւ արժանաւոր լինելով յաւիտենական և երկնային խորհրդոցն։ Զոր խոստացաւ սիրելեաց իւրոց՝ Ճշմարիտն Աստուած՝ ՅԻՍՈՒՍ ՔՐԻՍՏՈՍ Տէր մեր կեցո՛ և ողորմեա՛։

Կեցո՛ Տէր։

Զանցուած գիշերիս խաղաղութեամբ անցուցանել՝ հաւատով ՚ի Տեառնէ խնդրեսցուք։

Շնորհեա՛ Տէր։

Զհրեշտակ խաղաղութեան պահապան անձանց մերոց ՚ի Տեառնէ խնդրեսցուք։

Շնորհեա՛ Տէ՛ր ։

Զքաւութի՛ւն և զթողութիւն յանցանաց մերոց՝ ՚ի Տեառնէ՛ խնդրեսցո՛ւք ։

Շնորհեա՛ Տէ՛ր ։

Զսրբոյ խաչին մե՛ծ և կարո՛ղ զօրութիւն յօգնութիւն անձանց մերոց . ՚ի Տեառնէ՛ խնդրեսցո՛ւք ։

Շնորհեա՛ Տէ՛ր ։

Եւ ևս միաբան վասն ճշմարիտ և սուրբ հաւատոյս մերոյ՝ զՏէ՛ր աղաչեսցո՛ւք ։

Տէ՛ր ողո՛րմեա՛ ։

Զանձինս մե՛ր և զմիմեանս Տեառն Աստուծոյ ամենակալին յա՛նձն արասցուք ։

Քե՛զ Տեառնդ յա՛նձն եղի՛ցուք ։

Ողորմեա՛ց մեզ Տէր Աստուած մեր՝ ըստ մեծի ողորմութեան քում . ասասցուք ամենեքեան միաբանութեամբ ։

Տէր ողորմեա՛ . Տէր ողորմեա՝
Տէ՛ր ողո՛րմեա ։

Իսկ ապա Տէրողորմեան ըստ պատշաճի աւուրն ։ ՚Ի Կիւրակէս և ՚ի տօնս տէրունականս՝ երեք Տէր ողորմեա՛ . իսկ ՚ի տօնս սրբոց՝ յիսուն Տէր ողորմեա՛ . և յաւուրս պահոց՝ հարիւր Տէր ողորմեա՛ .

24

# ԵՐԳ

## ՏԵԱՌՆ ՆԵՐՍԻՍԻ ՀԱՅՈՑ ԿԱԹՈՂԻԿՈՍԻ ՈՂԲԵՐԳՈՒԹԻՒՆ ԱՆՁԻՆ ՋՂՋԱՑԵԼՈՅ ԵՒ ԲՈՂՈՔ ԻՒՐԱՔԱՆՉԻՒՐՈՑ ԴԻՄԻ ԽՈՍՏՈՎԱՆԱԲԱՐ



ԱՇԽԱՐՀ ամենայն · առ իս նայեցեալ · ախտակից լերուք ։ Բանամ զշրթունս · բարբառիմ լեզուաւս · բողոքեմ զանձնէս ։
Տէր ողորմեա · Տէր ողորմեա · Տէր ողորմեա ։

Գող եղէ մեղաց · զլտօղ կորստեան · զուբ ինձ փորեցի ։ Գտուեցի զանձն իմ · զաւաճանեցի · զարան գործեցի ։ Տէր ողորմեա" ·

Երբեմն էի լոյս · և այժմ եմ խաւար · և ստուեր մահու ։ Օ խորդ պատմեցից · զթիւ մեղաց իմոց · զի բազումեն յոյժ ։ Տէր ողորմեա" ։

Երկինք և երկիր · երկոյք ողբացէք · եղկելի զանձն իմ ։ Ընտրեցի զչարն · ընկալայ կամաւ · ըղձոյլըս մեղաց ։ Տէր ողորմեա" ։

Թաթաւիմ տղմով · թաւալիմ 'ի մեղս · թօթափիլ չկարեմ ։ Ճանտախտիւ լցեալ · ժահահոտ եղէ · ժամանակս բազումս ։ Տէր ողորմեա" ։

՚Ի քոյ մեկնեցայ . ՚ի սուրբ խորհրդոց . ՚ի բարեաց գործոց ։ Լաւ մերկաւ անձն իմ . լուսոյն հեռանալ . լինել ընդ խաւար ։ Տէր ողորմեա" ։

Խորհուրդք չարին . խաբեն զհոգիս . խարաոյզ անձնեն ։ Ծածկեն անդընդօք . ծիծաղէն գլորմամբս . ծանրակ զիս անձնեն ։ Տէր ողորմեա" ։

Կամաւ կորուսայ . կարկամեալ անձամբ . կանգնել ոչ կարեմ ։ Հուր մեղաց կիզօղ . հրդեհեաց որ յիս . հոգւոր բարիս ։ Տէր ողորմեա" ։

Ձաղկեցայ մեղօք . ձաղեցին տեսօղքն . ձանձրացաւ հոգիս ։ Ղեղի դառնութեան . ղօղեալ ՚ի սիրտ իմ . ղամպար իմ շիջաւ ։ Տէր ողորմեա" ։

Ճաշակմամբ մեղաց . ճաշեցի զմահ . ճոխս աղքատացայ ։ Մեռեալ եմ հոգւովս . մոլորեալ մտօքս . միայն կամ մարմնովս ։ Տէր ողորմեա" ։

Յորդայթ մահու . յորսողին անկայ . յաղթեցայ յախտից ։ Նետից թշնամւոյն . նշաւակ եղէ . նոր միշտ խոցոտիմ ։ Տէր ողոր" ։

Շուրջ պատեալ զինև . շունք բազումք եղեն . շաղախին արեամբս ։ Որս եղէ չարին . ուռկանաւ մեղաց . որսացաւ զանձն իմ ։ Տէր ողորմեա" ։

Զարաչար վըշտօք · չարչարի անձն իմ · չունիմ դադարումն ։ Պատրաստական դատոյ · պարտուց յանցանաց · պարտեալս՚ի մեղաց · Տէր ողորմեա՛ ։

Ջանամ զղջանալ · ջեռանիմ դարձեալ · ջեռնում հրով մեղաց ։ Ռաբբի կոչեցայ · ռակայ անուանիմ · ռամկական վարուքս ։ Տէր ողորմեա՛ ։

Հրով ցանկութեան · սաստիկ բարկութեան · սիրտ իմ խոցեալ է ։ Սիրոք յանցանաց · վշտանայ հոգիս · վարանեալ շրջիմ ։ Տէր ողորմեա՛ ։

Տիրեցին ինձ չարք · տարադիր հանին · տիրական գրկացն ։ Բարունւոյն բարւոյ · բաղձական ձայնին · բանին ոչ լուայ ։ Տէր ողորմեա՛ ։

Ցանկութիւն չարեաց · ցանկալի դիմօք · ցուեցոյց զաչս իմ ։ Ի իւրաքանչիւրոց · ևխոմամբ խուռն ախտից · ուծեալ է հոգիս ։ Տէր ողորմեա՛ ։

Փութացիր անձն իմ · փախչիլ՚ի չարեաց · փափագիլ բարեաց ։ Քեզ միշտ մերձ ծանիր · քուն մահու եկեալ · քննօղ դատաւոր ։ Տէր ողորմեա՛ ։

Սուրբ Աստուածածնին բարեխօսութեամբ , յիշեա՛ Տէր և ողորմեա՛ ։

ՆՈՐԻՆ ՏԵԱՌՆ ՆԵՐՍԻՍԻ ՀԱՅՈՑ ԿԱԹՈՂԻԿՈՍԻ

# ԵՐԳ

## ԱՂՕԹԱԿԱՆ ՚Ի ԴԻԷՄՍ ՍՐԲՈՅ ԵՐՐՈՐԴՈՒԹԵԱՆՆ

ՆԱ ԵՒ

## ԻՒՐԱՔԱՆՉԻՒՐՈՑ ԴԻՄԻ ԵՐՐՈՐԴՈՒԹԵԱՆՆ ԱՌԱՆՁՆԱԿԻ

ԱՌԱՒՕՏ լուսոյ. արեգակն արդար. առ իս լոյս ծագեա՛ ։ Բղխումն ՚ի Հօրէ. բղխեա՛ ՚ի հոգւոյս. բան քեզ ՚ի հաճոյս ։

Գանձդ ողորմութեան. գանձիդ ծածկելոյ. գտօղ զիս արա՛ ։ Դուռն ողորմութեան. դաւանողիս բա՛ց. դասեցս վերնոց ։

Երրեակ միութիւն. եղելոց խնամօղ. և ինձ ողորմեա՛ ։ Զարթի՛ր Տէր յօգնել. զարթո՛ զթմրեալս. զուարթնոց նմանիլ ։

Էդ Հայր անսկիզբն. էակից Որդի. է միշտ սուրբ Հոգի ։ Ընկա՛լ զիս գթած. ընկա՛լ ողորմած. ընկա՛լ մարդասէր ։

Թագաւո՛ր փառաց. թողութեանց տուօղ. թո՛ղ ինձ զյանցանս ։ Ժողովօղ բարեաց. ժողովեա՛ և զիս. ժողովս ընտրանեաց ։

'Ի քէն Տէր հայցեմ · 'ի մարդասիրէդ · ինձ բժշկութիւն ։ Լեր կեանք մեռելոյս · լոյս խաւարելոյս · լուծանօղ ցաւոյս ։

Խորհրդոց գիտօղ · խաւարիս շնորհեա · խորհուրդ լուսաւոր ։ Ծնունդ Հօր ծոցոյ · ծածկելոյս ստուերաւ · ծագեա՛ զլոյս փառաց ։

Կենարար փրկիչ · կեցո՛ զմեռեալս · կանգնեա՛ զգլորեալս ։ Հաստեա՛ հաւատով · հաստատեա՛ յուսով · հիմնեցո՛ սիրով ։

Ձայնիւս աղաչեմ · ձեռօքս պաղատիմ · ձիր բարեաց շնորհեա ։ Ղամբարամբ լուսոյ · ղեկավար ճարտար · ղօղեալս ամրացո՛ ։

Ճառագայթ փառաց · ճանապարհ ինձ ցո՛յց · ճեպել 'ի յերկինս ։ Միածին Հօր · մո՛յծ զիս յառագաստ · մաքուր հարսանեացդ ։

Յորժամ գաս փառօք · յահագին աւուրն · յիշեա՛ զիս ՔՐԻՍՏՈՍ ։ Նորոգօղ հնութեանց · նորոգեա՛ և զիս · նորոգ զարդարեա՛ ։

Շնորհատու բարեաց · շնորհեա՛ զքաւութիւն · շնորհեա՛ զթողութիւն ։ Ուրախացո՛ Տէր · ոգւոյս փրկութեամբ · որ վասն եմ 'ի սուգ ։

Չար մշակողին · չար սերմանց նորին · չորացո՛ զպտուղն ։ Պարգևիչ բարեաց · պարգևեա՛ իմոց · պարտեացս թողութիւն ։

Ջուր շնորհեա՛ աչացս · ջերմ հեղուլ արտօսր · ջնջել ըզյանցանս ։ Ռետինդ քաղ-

փառաւորեալ անուանդ քում սրբոյ ։ Տո՛ւր մեզ Տէր աղաչեմք զքեզ, զմնացուած գիշերիս խաղաղութեամբ անցուցանել ․ և զամենայն ժամանակս կենաց պանդխտութեան մերոյ, երկիւղիւդ քով ամրացո՛ և պահեա՛ ։ Որպէս զի զգուշութեամբ՝ և անարատ վարուք կրօնաւորեալք յայսմ աշխարհիս, ժամանեսցուք յանքոյթ և ՚ի խաղաղ նաւահանգիստ յաւիտենական ՚ի կեանսդ ։ Շնորհօք և մարդասիրութեամբ Տեառն մերոյ և փրկչին ՅԻՍՈՒՍԻ ՔՐԻՍՏՈՍԻ ։ Ընդ որում քեզ Հօր և Հոգւոյդ սրբոյ վայելէ փառք իշխանութիւն և պատիւ․ այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից ․

Ամէն ։

Խաղաղութիւն ամենեցուն

Աստուծոյ երկրպագեսցուք ։

Նայեա՛ց Տէր բարերար ողորմութեամբ քով յերկրպագուս և ՚ի փառաբանիչս անուանդ քում սրբոյ ։ Տէր զօրութեանց խաղաղացո՛ զանձինս մեր յամենայն սատանայական խռովութեանց և յաշխարհական զբօսանաց ։ Զհրեշտակ խաղաղութեան քո առաքեա՛ առ մեզ, որ եկեալ պահեսցէ զմեզ անխռովս ՚ի տուէ և ՚ի գիշերի, յարթնութեան և ՚ի հանգստեան մերում ։ Որպէս զի բարեպաշտութեամբ և արժանաւորապէս քեզ Տեառնդ ծառայելով ՚ի կեանս յայսոսիկ,

ժամանեսցուք յաւիտենական երկնից արքայութեան քոյ. զոր պատրաստեցեր 'ի սկզբանէ աշխարհի սրբոց քոց. Եւ ընդ նոսին գոհանալով փառաւորեսցուք զՀայր և զՈրդի և զսուրբ Հոգին. այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից։

Օրհնեալ Տէր մեր Յիսուս Քրիստոս. Ամէն։
Ալէլուիա. Ալէլուիա։

Ըստ ասի ՍԱՂՄՈՍ ըստ յօրինին. և զկնի ՍԱՂՄՈՍԻՆ ասի ըստ յօրինին կանոնագլուխ։

# ԿԱՆՈՆԱԳԼՈՒԽՔ

## ԿԱՐԳԱՒ

## ԸՍՏ ՈՒԹ ՁԱՅՆԻՑ

## ԱՌԱՋԻՆ ՁԱՅՆ

ԱՁ. Դատեա՛ Տէր զայնոսիկ. որք դատին զիս. ա՜լէլուիա։

Մարտեա՛ ընդ այնոսիկ՝ որք մարտընչին ընդ իս. ալէլուիա։

Առ զզէն և զասպար քո. և արի յօգնել

ինձ · հան զսուր քո ընդ դէմ հալածչաց իմոց, արգել զնոսա · և ասա դու ցանձն իմ, թէ փրկութիւն քո ես եմ :

Ամաչեսցեն և յամօթ լիցին՝ որք խնդրէին զանձն իմ · դարձցին յետս և ամաչեսցեն, որք խորհէին ինձ չար :

Եղիցին նոքա որպէս փոշի առաջի հողմոյ · և հրեշտակ Տեառն նեղեսցէ զնոսա :

Եղիցին ճանապարհք նոցա 'ի խաւար և 'ի գայթակղութիւն, և հրեշտակ Աստուծոյ հալածեսցէ զնոսա :

'Ի նանիր թագուցին ինձ որոգայթ յապականութեան իւրեանց, և 'ի նանիր նախատեցին զանձն իմ :

լե· Տէ՛ր՝ յերկինս է ողորմութիւն քո · ճշմարտութիւն քո մինչև յամպս : ալէ՛լուիա ֆբֆ ալէլուիա :

Արդարութիւն քո որպէս լերինք Աստուած · իրաւունք քո որպէս խորք բազումք · զմարդիկ և զանասուն կեցուցանես դու Տէր :

Որպէս զի բազում արարեր զողորմութիւն քո Աստուած · այլ որդիք մարդկան 'ի հովանի թևոց քոց յուսասցին :

Արբեսցին նոքա 'ի պարարտութենէ տան քո · և զուղխս փափկութեան քո տացես ըմպել նոցա :

՚Ի քէն է Տէր աղբիւր կենաց. և լուսով երեսաց քոց տեսանեմք զլոյս։

Յաւելեա՛ զողորմութիւնս քո՝ որք ճանաչեն զքեզ, զարդարութիւնս քո՝ որք ուղիղ են սրտիւք։

Մի՛ եկեսցեն ՚ի վերայ մեր ոտք ամբարտաւանից, և ձեռք մեղաւորաց մի՛ դողացուսցեն զմեզ։

Անդ անկցին ամենեքեան՝ որք գործեն զանօրէնութիւն. մերժեսցին և ոչ մի՛ կարասցեն հաստատիլ։

Փառք Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ. Այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. Ամէն։

Ալէլուիա. Ալէլուիա։



## ԱՌԱՋԻՆ ԿՈՂՄ

Ակ. Ասա՛ց անըզգամն ՚ի սրտի իւրում թէ ո՛չ գո՛յ Աստուա՛ծ. ա՛լէլո՛ւիա։ ապականեցան և պղծեցան յանօրէնութեան իւրեանց. և ո՛չ ոք է որ առնէ զքաղցրութիւն. ա՛լէլո՛ւիա։

Աստուած յերկնից նայեցաւ յամենայն

որդւոց մարդկան, տեսանել թէ իցէ ոք իմաստուն որ խնդրիցէ զԱստուած ։

Ամենեքեան խոտորեցան ’ի միասին և անպիտանացան ։

Ոչ ոք է որ առնէ զքաղցր . և չէ ոք մինչև ’ի մի ։

Որպէս ոչ ծանիցեն ամենեքեան ոյք գործեն զանօրէնութիւն ։

Ոյք ուտէին զժողովուրդ իմ որպէս կերակուր հացի . և զԱստուած ոչ կարդացին ։

եւ . Որ ոչ գոյր նոցա փոխանակ, և ոչ երկեան յԱստուածոյ ։ ա լէ լուիա ա մալէմ ։ լուիա ։

Ձգեաց զձեռն իւր ’ի հատուցանել նոցա . և նոքա պղծեցին զօրէնս նորա ։

Բաժանեցան ’ի սրտմտութենէ երեսաց նորա . և եհաս ’ի սիրտս նորա ։

Կակուղ էին բանք նոցա քան զձէթ . և ինքեանք որպէս սլաք ։

Ընկեա՛ ’ի Տէր զհոգս քո՝ և նա կերակրէ զքեզ . և ոչ տայ յաւիտեան սասանութիւն արդարոյ ։

Դու Աստուած իջուցես զնոսա ’ի գուբս ապականութեան . արք արիւնահեղք և նենգաւորք՝ մի հասարակեսցեն զաւուրս իւր-

եանց. այլ ես 'ի քեզ Տէր յուսացայ։
Փառք Հօր և". Այժմ և".
Ալէլուիա. Ալէլուիա։



## ԵՐԿՐՈՐԴ ՁԱՅՆ

ԲՁ. Ի քեզ Տէր յուսացայ՝ մի ամաչեցից յաւիտեան. ալէլուիա։
յարդարութեան քում փրկեա և ապրեցո զիս. ալէլուիա։

Խոնարհեցո առ իս զունկն քո՝ և կեցո զիս։

Լեր իմ Աստուած պաշտպան՝ և տեղի ամուր կեցուցանել զիս. զի հաստատութիւն իմ և ապաւէն իմ դու ես։

Աստուած իմ փրկեա զիս 'ի ձեռաց մեղաւորի. 'ի ձեռաց անօրինի և անիրաւի։

Դու ես համբերութիւն իմ Տէր. Տէր յոյս իմ 'ի մանկութենէ իմմէ։

'Ի քեզ հաստատեցայ ես յարգանդէ յորովայնէ մօր իմոյ դու ես ապաւէն իմ. և առ 'ի քէն է օգնութիւն իմ յամենայն ժամ։

ԳԽ. Երկիրպագցեն նմա ամենայն թագաւորք երկրի. և ամենայն ազգք ծառայեսցեն նմա. ալէլուիա. ամէն ալէլուիա։

Զի փրկեաց զաղքատն ՚ի ձեռաց հզօրի. զաղքատն և զտնանկն, որոյ ո՛չ է իւր օգնական։

Խնայեսցէ նա յաղքատն և ՚ի տնանկն. և զանձինս տնանկաց կեցուսցէ. ՚ի վաշխից չարաց փրկեսցէ զանձինս նոցա։

Պատուական է անուն նորա առաջի նոցա. կեցցէ, և տացի նմա յոսկւոյն արաբացւոց։

Յաղօթս կացցեն առ նա յամենայն ժամ. և զօրհանապազ օրհնեսցեն զնա։

Եղիցի հաստատութիւն ընդ ամենայն երկիր. և ՚ի վերայ գլխոց լերանց։

Բարձրասցի քան զլիբանան պտուղ նորա. և ծաղկեսցի ՚ի քաղաքի Տեառն որպէս խոտ երկրի։

Եղիցի անուն Տեառն օրհնեալ յաւիտեան, զի յառաջ քան զարև է անուն նորա։

՚Ի նա օրհնեսցին ամենայն ազգք երկրի, և ամենայն ազինք երանեսցեն նմա։

Օրհնեալ Տէր Աստուած Իսրայէլի որ առնէ սքանչելիս միայն. և օրհնեալ է անուն սուրբ փառաց նորա յաւիտեան. լցցի փառօք նորա ամենայն երկիր. եղիցի եղիցի։

Փառք հօր և"։ Այժմ և"։

Ա՛լէ՜լո՛ւիա՝։ Ա՛լէ՜լո՛ւիա՝։

# ԱՒԱԳ ԿՈՂՄ

ԲԿ · Ողորմութիւնս քո Տէր յաւէ
տեան օրհնեցից · ալէ լուիա ·
յազգէ յազգ պատմեցից զճշմարտութիւնս
քո բերանով իմով · ալէ լուիա ։
Ասացեր՝ թէ աշխարհս ողորմութեամբ շինեսցի · յերկինս պատրաստ եղիցի ճշմարտութիւն քո ։
Եդի ուխտ ընտրելոց իմոց · երդուայ Դաւթի ծառայի իմոյ ։
Յաւիտեան հաստատեցից զզաւակ քո · և շինեցից յազգէ յազգ զաթոռ քո ։
Խոստովան եղիցին երկինք զսքանչելեաց քոց Տէր, և ճշմարտութիւն քո յեկեղեցիս սրբոց ։
Ո՞վ է յամպս որ հաւասարի քեզ · կամ ո՞վ նմանիցի Տեառն յՈրդիս Աստուծոյ ։

ԷԻ · Դարձուցեր զօգնութիւն ՚ի սրոյ նորա · և ոչ ընկալար զնա ՚ի պատերազմի ։
ալէլուիա ալէ լուիա ։
Անարգեցեր զսրբութիւն նորա, և զաթոռ նորա յերկիր կործանեցեր ։
Նուազ արարեր զաւուրս ժամանակաց նորա · և հեղեր զնովաւ զամօթ ։

Մինչև յե՞րբ դարձուցանես զերեսս քո իսպառ․ ՝բորբոքեսցի որպէս հուր բարկութիւն քո ։

Իսկ արդ՝ յիշեա՛ և տե՛ս՝ թէ ո՛վ է իմ հանգիստ․ միթէ 'ի զո՞ւր ինչ ստեղծեր զամենայն որդիս մարդկան ։

Ո՞վ է մարդ որ կեցցէ՝ և ո՛չ տեսցէ զմահ, կամ փրկեսցէ զանձն իւր 'ի ձեռաց դժոխոց ։

Ու՞ր են ողորմութիւնք քո Տէր առաջինք, զոր երդուար Դաւթի ճշմարտութեամբ քով ։

Յիշեա՛ զնախատինս ծառայի քո, զոր ընկալայ 'ի ծոց իմ յազգաց բազմաց ։

Զոր նախատեցին թշնամիք քո Տէր․ նախատեցին փոխանակ օծելոյ քո ։

Օրհնեալ Տէր Աստուած յաւիտեանս յաւիտենից՝ եղիցի եղիցի ։

Փառք Հօր և․ Այժմ և ։

Ալէլուիա՛․ Ալէլուիա ։



## ԵՐՐՈՐԴ ՁԱՅՆ

Գ․Ձ․ Խոստովան եղերուք Տեառն՝ զի՛ քաղցր է․ ալէլու իա ։
զի յաւիտեան է ողորմութիւն նորա․ ալէլուիա ։

Ո՞ խօսեսցի զզօրութիւնս Տեառն. լսելի արասցէ զամենայն օրհնութիւնս նորա:

Երանի որք պահեն զիրաւունս, և առնեն զարդարութիւն յամենայն ժամ:

Յիշեա զմեզ Տէր ընդ հաճոյս ժողովրդեան քո. և այց արա մեզ ՚ի փրկութեան քում:

Տեսցուք մեք զքաղցրութիւն ընտրելոց քոց. ուրախ եղիցուք մեք յուրախութիւն ազգի քոյ. և գովլիցուք մեք ՚ի ժառանգութեան քում:

Մեղաք մեք ընդ հարսն մեր. անօրինեցաք և յանցեաք:

ԺԲ. Մատնեաց զնոսա ՚ի ձեռս հեթանոսաց. տիրեցին նոցա ատելիք իւրեանց. և թշնամիք իւրեանց նեղեցին զնոսա. և խոնարհ եղեն ՚ի ներքոյ ձեռաց նոցա: ա՛լէլո՛ւ իա՛ մ՛ ղա՛ մձՍՍ ր՛. ա՛լէլուիա՛:

Բազում անգամ փրկեաց զնոսա, և նոքա դառնացուցին զնա ՚ի խորհուրդս իւրեանց. և կորացան յանօրէնութեան իւրեանց:

Հայեցաւ Տէր ՚ի նեղութիւնս նոցա, ՚ի լսել ձայնի աղօթից նոցա:

Յիշեաց զուխտ իւր, և զղջացաւ ըստ բազում ողորմութեան իւրում. և ետ զնոսա ՚ի գթութիւնս առաջի ամենայն գերչաց նոցա:

Փրկեա՛ զմեզ Տէր Աստուած մեր. և ժողովեա՛ զմեզ 'ի հեթանոսաց :

Խոստովան եղիցուք անուան քում սրբոյ. և պարծեսցուք յօրհնութիւնս քո :

Օրհնեալ Տէր Աստուած Իսրայէլի՝ յաւիտեանս յաւիտենից :

Եւ ասասցէ ամենայն ժողովուրդն՝ եղիցի եղիցի :

Փառք Հօր և" : Այժմ և" :

Ա՛լէլո՛ւիա՛ ա՛ղս՛ մԶ. Ա՛լէլո՛ւիա՛ :



ՎԱՌ

գ.կ. Սուրբ Երրորդութիւնս և անբաժանելութի՛ւն. ա՛լէ՛լու՛իա՛ :

մի մատներ զիս 'ի ձեռս նեղչաց իմոց. ա՛լէ՛լու՛իա՛ :

Ընկա՛լ զծառայս քո 'ի բարի. զի մի ամբարտաւանք զզրուեսցեն զիս :

Սպասեցին աչք իմ փրկութեան քում Տէր ; և բանից արդարութեան քո :

Արա՛ ընդ ծառայի քում Տէր ըստ ողորմութեան քում. զարդարութիւնս քո ուսո՛ ինձ :

Ծառայ քո եմ ես, իմաստո՛ւն արա զիս, և ծանեայց զվկայութիւնս քո :

Ժամ է պաշտել զՏէր . խափանեցին զօ-
րէնս քո :

իբ. Մերձեսցին խնդրուածք իմ առաջի քո Տէր . ըստ բանի քում իմաստուն արա զիս : Ալէլուիա . Ալէլուիա :

Մտցեն աղօթք իմ առաջի քո Տէր . և ըստ բանի քում փրկեա զիս :

Բղխեսցեն շրթունք իմ զօրհնութիւնս քո , յորժամ ուսուսցես ինձ զարդարութիւնս քո :

Խօսեսցի լեզու իմ զբանս քո . զի ամենայն պատուիրանք քո արդարութեամբ են :

Եղիցի ձեռն քո 'ի կեցուցանել զիս . զի զպատուիրանս քո ընտրեցի :

Ցանկացայ փրկութեան քում Տէր . և օրէնք քո խօսք իմ էին :

Կեցցէ անձն իմ , օրհնեսցէ զքեզ . և իրաւունք քո օգնեսցեն ինձ :

Մոլորեցայ ես որպէս զոչխար կորուսեալ . խնդրեա զծառայս քո , զի զպատուիրանս քո ես ոչ մոռացայ :

Փառք Հօր և". Այժմ և" :

Ալէլուիա . Ալէլուիա :

## ԶՈՐՐՈՐԴ ԶԱՅՆ

դՁ. Օրհնեա՛ անձն իմ զՏէր. օրհնեցի՛ց զՏէր ՚ի կեանս իմ. ալէլուիա։ սաղմոս ասասցէք. Աստուծոյ իմոյ՝ մինչև եմ ես. ալէլուիա։

Մի՛ յուսայք յիշխանս՝ և մի յորդիս մարդկան. զի ո՛չ գոյ փրկութիւն ՚ի նոսա։

Ելցէ հոգի ՚ի նոցանէ՝ և դարձցին անդրէն ՚ի հող. և յայնմ աւուր կորիցեն ամենայն խորհուրդք նոցա։

Երանի՛ ազգի՝ որոյ Տէր Աստուած Յակովբայ օգնական է նմա. և յոյս նորա ՚ի Տէր Աստուած է։

Որ արար զերկինս և զերկիր, զծով և զամենայն որ է ՚ի նոսա։

Որ պահէ զճշմարտութիւն յաւիտեան. և առնէ իրաւունս զրկելոց։

էԹ. Գովեա՛ Երուսաղէմ զՏէր. ալէլուիա։

Եւ օրհնեա՛ զԱստուած քո Սիոն։

Զի զօրացոյց զնիգս դրանց քոց, և օրհնեաց զորդիս քո ՚ի քեզ։

Որ եդ զսահմանս քո ՚ի խաղաղութիւն. պարարտութեամբ ցորենոյ լցոյց զքեզ։

Առաքէ զբան իւր յերկիր . վաղվաղ ըն-թանան պատգամք նորա ։

Դնէ զձիւն որպէս զասր , և զմէգ որպէս փոշի ցանեաց ։

Արկանէ զսառն որպէս պատառս . առաջի ցրտոյ նորա ո՞ կարէ կեալ ։

Առաքէ զբան իւր՝ և հալէ զնոսա . շնչեսցեն հողմք՝ և գնասցեն ջուրք ։

Պատմէ զբան իւր Յակոբայ , զարդարութիւն և զիրաւունս Իսրայելի ։

Ո՛չ այսպէս արար ամենայն ազգաց Տէր . և զդատաստանս իւր ո՛չ յայտնեաց նոցա ։

Փառք Հօր և . " Այժմ և " .

Ալէլուիա . Ալէ " .



ՎԵՐՋ

Դկ . Սիրեցից զքեզ Տէր զօրութիւն իմ . ալէլուիա ։

Տէր հաստատիչ իմ , ապաւէն իմ և փրկիչ իմ . ալէլուիա ։

Աստուած օգնական իմ , և ես յուսամ ՚ի նա . ապաւէն իմ , եղջիւր փրկութեան իմոյ՝ ընդունելի իմ է ։

Օրհնելով կարդացից առ Տէր , և ՚ի թշնամեաց իմոց ապրեցայց ։

Շուրջ եղեն զինև երկունք մահու. և ուղխք անօրէնութեան խռովեցուցին զիս։

Վիշտք դժոխոց պաշարեցին զիս. և ժամանեցին ինձ որոգայթք մահու։

'Ի նեղութեան իմում ես առ Տէր կարդացի, և առ Աստուած իմ աղաղակեցի։

եժ. Օգնեցուցեր ինձ զօրութիւն 'ի պատերազմի. և զյարուցեալսն 'ի վերայ իմ, ներքոյ իմ արարեր. այլ ինծուիս մլէ լովմ մուխա։

Զթշնամիս իմ հալածականս արարեր. և զատեցիս իմ սատակեցեր։

Աղաղակեցին, և ոչ ոք էր որ փրկէր զնոսա. կարդացին առ Տէր, և ոչ լուաւ նոցա։

Մանրեցից զնոսա որպէս փոշի առաջի հողմոյ. և որպէս կաւ զանհաց կոխեցից զնոսա։

Փրկեսցէ զիս Տէր 'ի հակառակութենէ ժողովրդոց. և կացուսցէ զիս գլուխ հեթանոսաց։

Ժողովուրդ՝ զոր ոչ գիտէի, ծառայեաց ինձ. և 'ի լսել ականջաց լուաւ ինձ։

Որդիք օտարաց ստեցին ինձ. որդիք օտարաց մաշեցան, և կաղացան 'ի շաւղաց իւրեանց։

Կենդանի է Տէր՝ և օրհնեալ է Աստ-

ուած. և բարձր եղիցի Աստուած փրկութեան իմոյ ։

Աստուած է որ խնդրէ զվրէժ իմ. և հնազանդ առնէ զժողովուրդս ընդ ինև ։

Փրկիչ իմ 'ի թշնամեաց իմոց բարկացողաց. յայնցանէ որք յարուցեալ են 'ի վերայ իմ՝ բարձր արարեր զիս. և յառնէ անիրաւէ փրկեցեր զիս ։

Վասն այսորիկ՝ խոստովան եղէց քեզ 'ի հեթանոսս. և անուան քում սաղմոս ասացից ։

Մեծ արարեր զփրկութիւն թագաւորի նորա. առնել ողորմութիւն ընդ օծելոյ նորա Դաւթի. և ընդ զաւակի նորա յազգէ մինչև յազգ ։

Փառք Հօր և". Այժմ և միշտ և.

Ալէ լուիա. Ալէ լուիա ։

# ԿԱՆՈՆԱԳԼՈՒԽ

## ԲՈՒՆ ԲԱՐԵԿԵՆԴԱՆԻՆ

## ԵՒ

## ՆՈՐ ԿԻՐԱԿԷԻՆ



## ՍԱՂՄՈՍ

Օրհնեա՛ անձն իմ զՏէր . օրհնեցից զՏէր 'ի կեանս իմ . սաղմոս ասացից Աստուծոյ իմոյ՝ մինչև եմ ես ։

Մի՛ յուսայք յիշխանս՝ և մի՛ յորդիս մարդկան, զի ո՛չ գոյ փրկութիւն 'ի նոսա ։

Ելցէ հոգի 'ի նոցանէ՝ և դարձցին անդրէն 'ի հող . և յայնմ աւուր կորիցեն ամենայն խորհուրդք նոցա ։

Երանի՛ ազգի՛ որոյ Տէր Աստուած Յակովբայ օգնական է նմա . և յոյս նորա 'ի Տէր Աստուած է ։

Ո՛ արար զերկինս և զերկիր, զծով՝ և զամենայն որ է 'ի նոսա ։

Ո՛ պահէ զճշմարտութիւն յաւիտեան . և առնէ իրաւունս զրկելոց ։

Տա՛յ հաց քաղցելոց . և արձակէ զկապեալս Տէր ։

Տէր բանայ զաչս կուրաց ․ և կանգնէ ըզգլորեալս Տէր ։

Տէր սիրէ զարդարս ․ Տէր պահէ զպանդուխտս ․ զորբս՝ և զայրիս ընդունի Տէր ․ և զճանապարհս ամբարշտաց կորուսանէ ։

Թագաւորեսցէ Տէր յաւիտեան, Աստուած քո սիոն՝ յազգէ մինչև յազգ ։

ԽԲ ․ Օ՛րհնեսցե՛ց ը՛զքե՛զ գոհո՛ւթեա՛մբ ՚ի կեանս իմ ․ սաղմոս ասացից քե՛զ ՚ՔՐԻՍՏՈ՛Ս թագաւո՛ր յա՛ղթակա՛ն նո՛ր երգո՛վ օրհնութեա՛մբ ։

---

# ՍԱՂՄՈՍ

Օրհնեցէք զՏէր՝ զի բարի է սաղմոս ․ Աստուծոյ մերում քաղցր եղիցի օրհնութիւն ։

Շինէ զԵրուսաղէմ Տէր ․ և զցրուեալսն Իսրայէլի ժողովէ ։

Բժշկէ զբեկեալ սիրտս, և պատէ զամենայն վէրս նոցա ։

Որ թուէ զբազմութիւն աստեղաց ․ և զամենեսեան զնոսա յանուանէ կոչէ ։

Մեծ է Տէր, և մեծ է զօրութիւն նորա ․ իմաստութեան նորա ոչ գոյ բաւ ։

Ընդունի զհեզս Տէր ․ և խոնարհ առնէ զամբարտաւանս մինչև յերկիր ։

Օրհնեցէք զԱստուած խոստովանութեամբ. սաղմոս ասացէք նմա օրհնութեամբ:

Որ զգեցոյց զերկինս ամպովք. և պատրաստ արար զանձրև իւր յերկիր:

Բուսոյց զխոտ ՚ի լերինս, և զդալարին՝ ՚ի ծառայութիւն մարդկան:

Որ տայ անասնոց կերակուր. ձագուց ագռաւուց՝ որք կարդան առ նա:

Ոչ թէ ընդ զօրութիւնս ձիոյ կամեցաւ Տէր. և ոչ ընդ իրանս առն Հսկայի հաճեցաւ:

Այլ հաճեցաւ Տէր ընդ երկիւղածս իւր. և ընդ այնոսիկ՝ որք յուսան յողորմութիւն նորա:

էթ. Քաղցրացին քեզ ՔՐԻՍՏՈՍ՝ գոհութիւնք երկիւղածաց անուան քո. զոր յուսամ ցուցեր ողորմութեամբ քո վ ՚ի խորհուրդս կենսաբեր դալատեանդ քո:



# ՍԱՂՄՈՍ

Գովեա Երուսաղէմ զՏէր:
Եւ օրհնեա զԱստուած քո Սիոն:
Զի զօրացոյց զնիգս դրանց քոց, և օրհնեաց զորդիս քո ՚ի քեզ.

Ո՞ր ետ զսահմանս քո 'ի խաղաղութիւն. պարարտութեամբ ցորենոյ լցոյց զքեզ։

Առաքէ զբան իւր յերկիր. վաղվաղ ընթանան պատգամք նորա։

Դնէ զձիւն որպէս զասր, և զմէգ որպէս փոշի ցանեաց։

Արկանէ զսառն որպէս պատառս. առաջի ցրտոյ նորա ո՞ կարէ կեալ։

Առաքէ զբան իւր՝ և հալէ զնոսա. շնչեսցեն հողմք՝ և գնասցեն ջուրք։

Պատմէ զբան իւր Յակովբայ, զարդարութիւն և զիրաւունս Իսրայէլի։

Ո՛չ այսպէս արար ամենայն ազգաց Տէր. և զդատաստանս իւր ո՛չ յայտնեաց նոցա։

ԺԻ. Օ քեզ ՔՐԻՍՏՈՍ գովէ եկեղեցի փըր կեալ քո սուրբ. ցընծալով առանէ ըզ քեզ ըզ փըրկօղդ ծկեալ հայրական իշխանութեամբ 'ի պըսակել ըզ սուրբս քո։

# ԿԱՆՈՆԱԳԻՐՔ

## ՄԵԾԻ ՈՒՐԲԱԹՈՒՆ

## ՍԱՂՄՈՍ

Իշխա՛նք հալածեցին զիս 'ի նանիր. ա՛լէլո՛ւիա՛ ։
և 'ի բանից քոց երկեաւ սիրտ իմ. ա՛լէլո՛ւիա՛ ։

Ցնծացայ ես 'ի բանս քո, որպէս այն՝ որ գտանէ աւար բազում ։

Զմեղս ատեցի և անարգեցի, և զօրէնս քո սիրեցի ։

Եօթն անգամ յաւուր օրհնեցից զքեզ, վասն իրաւանց և արդարութեան քո ։

Խաղաղութիւն բազում է այնոցիկ՝ ոյք սիրեն զօրէնս քո. և ոչ գոյ 'ի նոսա գայթակղութիւն ։

Սպասեցի փրկութեան քում Տէր, և զպատուիրանս քո սիրեցի ։

Պահեաց անձն իմ զվկայութիւնս քո, և սիրեաց զնոսա յոյժ ։

Պահեցից զպատուիրանս և զվկայութիւնս քո. զի ամենայն ճանապարհք իմ առաջի քո են ։



Քէ․ Մերձեսցի՜ն խնդրուածք իմ առաջի քո Տէր․ ըստ բանի քում իմաստո՛ւն արա՛ զիս ։ ալէլուիա․ ալէլուիա ։

Մտցեն աղօթք իմ առաջի քո Տէր․ և բանիւ քով փրկեա՛ զիս ։

Բղխեսցեն շրթունք իմ զօրհնութիւնս քո․ յորժամ ուսուսցես ինձ զարդարութիւնս քո ։

Խօսեսցի լեզու իմ զբանս քո․ զի ամենայն պատուիրանք քո արդարութեամբ են ։

Եղիցի ձեռն քո 'ի կեցուցանել զիս․ զի զպատուիրանս քո ընտրեցի ։

Ցանկացայ փրկութեան քում Տէր․ և օրէնք քո խօսք իմ են ։

Կեցցէ անձն իմ, օրհնեսցէ զքեզ․ և իրաւունք քո օգնեսցեն ինձ ։

Մոլորեցայ ես որպէս զոչխար կորուսեալ․ խնդրեա՛ զծառայս քո․ զի զպատուիրանս քո ես ո՛չ մոռացայ ։

Փա՛ռք Հօր"․ Այժմ և" ։

Ալէլուիա՛․ Ալէլուիա՛ ։







# ԿԱՆՈՆԱԳԼՈՒԽ

## ՄԵԾԻ ՇԱԲԱԹՈՒՆ



ԱՌԱՋԻՆ ՁԱՅՆ

ԱՁ. Դատեա՛ Տէր զայնո՛": Գուէփ ձէՂ. 31.



Յետ Սաղմոսացն և Կանոնագլխոյն, Պաշտօն առնի ըստ յայնին, և Հանգստեան Աւետարան ընթերցեալ լինի: Իսկ եթէ խաչի տօն իցէ. *Այսօր անճառ* առի, և խաչելութեան Աւետարան ընթերցեալ լինի: ընի՝ *Նորոգօղ տէրգն*". և հերկուաէքար էրգ: *Տրամահայորդ*՝ հում Զարհուրեցան: և այլ, *Հողուց*. և *Հայր մեր*: ընի՝ Եւ *ես խաղա*: Օրհնութիւն է": Այդ օչնանիցի Օրհնութիւնն ըստ պատշաճի աւուրն:

որում ոչ կարեմք հանդուրժել՝ զՏէր աղաչեսցուք ։"

Վասն ամբիծ և անդատապարտ կալ մեզ առաջի ահեղ ատենին ՔՐԻՍՏՈՍԻ՝ զՏէր աղաչեսցուք ։"

Վասն առաջնորդելոյ մեզ ՚ի նաւահանգիստն կենաց անվախճանից՝ զՏէր աղաչեսցուք ։"

Վասն արժանի լինելոյ մեզ վերին կոչմանն՝ և երկնից արքայութեանն՝ զՏէր աղաչեսցուք ։"

Վասն հոգ" ։" Իւր ևս՝ միա" ։" Զանձինս" ։"

Ողորմեաց" ։"

## ԱՂՕԹՔ

Որ գիշերի և ՚ի տունջեան և յամենայն ժամու զքեզ աղաչեմք, և ՚ի քէն խնդրեմք մարդասէր Տէր ։ Լո՛ւր մեզ Աստուած փրկիչ մեր․ խոնարհեցո՛ ունկն քո ՚ի խնդրուածս մեր․ զի մի ունայն լիցին վաստակք ծառայից քոց․ այլ համարեա՛ զաշխատութիւնս մեր ՚ի գործ արդարութեան, և ՚ի պտուղ Աստուածպաշտութեան ։ Ընկա՛լ Տէր՝ զաղօթս և զերկրպագութիւնս մեր, և հասո՛ մեզ զողորմութիւն քո առատապէս․ ծածկեա՛ զմեզ ընդ հովանեաւ ամենազօր աջոյ քոյ․ զօրացո՛ զմեզ Տէր՝ զօրութեամբ

սուրբ Հոգւոյդ ․ պահեա՛ զմեզ որպէս բիբ ական ։ Եւ արա՛ առ մեզ նշան բարի , 'ի գովեստ և 'ի փառաբանութիւն անուանդ քում սրբոյ ։ Զի 'ի քո փառս կատարի ամենայն արարածոց մշտնջենաւոր փառաբանութիւն 'ի բարձունս , Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ , այժմ և միշտ և յաւիտեանս յաւի"։

Խաղաղութիւն ամենեցուն ։

Հովիւ քաջ՝ հովիւ բարի՝ և յաւիտենական՝ նայեա՛ց և ա՛յց արա բանաւոր հօտի քո , զոր ժողովեցեր առ քեզ գթութեամբ քով ։ Զի 'ի քո առաջի կամք Տէր , և առ 'ի քէն ողորմութեանց և գթութեանց ակնունիմք ։ Զամենեսեան օրհնեա՛ , զամենեսեան խնամեա՛ , զամենեսեան լուսաւորեա՛ ․ և ամենեցուն պարգևեա՛ զերկնից արքայութիւնդ ։ Վասն զի դու ես Տէր կենաց , և Աստուած ողորմութեանց ․ և քեզ վայելէ փառք իշխանութիւն և պատիւ , այժմ և"։

## ՄԱՂԹԱՆՔ

Ի գիշերի և 'ի տուընջեան և յամենայն ժամու անդադար փառաւորեմք զՀայր և զՈրդի և զսուրբ Հոգիդ , այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից ․ Ամէն ։

# ՔԱՐՈԶ

### ՄԻ՛ ՆԱԽԱՆՁԻՐ ԵՒ ԽՈՍՏՈՎԱՆ ԿԱՆՈՆԱՑՆ

Ա՛կ. Գկ. } Վասն ուղղելոյ զգնացս մեր 'ի ճանապարհս խաղաղութեան՝ զՏէր աղաչեսցուք ։

Տէր ողորմեա՛ ։

Վասն ցրելոյ 'ի մէնջ զամենայն խորհուրդս չարի՛ն՝ զՏէր աղաչեսցուք ։"

Վասն պարգևելոյ մեզ առողջ խորհուրդս և առաքինի վարս՝ զՏէր աղաչեսցուք ։"

Վասն պահելոյ զմեզ ընդ հովանեաւ ամենազօր աջոյն իւրոյ՝ զՏէր աղաչեսցուք ։"

Վասն խորտակելոյ զհակառակորդն վաղվաղակի ընդ ոտիւք մերովք՝ զՏէր աղաչ" ։

Վասն հոգ" ։" Եւ ևս՝ միա" ։" Զանձինս" ։" Ողորմեա՛ց" ։"

## ԱՂՕԹՔ

Տէր երկնի և երկրի՝ արարիչ ամենայն արարածոց երևելեաց և աներևութից ։ Առ քեզ կարդամք յամենայն ժամ . զի ընդ ամենայն տեղիս է Տէրութիւն քո , և արքայութիւն քո ամենեցուն տիրէ ։ Շնորհեա՛ մեզ երկիւղիւ 'ի պաշտօն քո կանխել հանապազ , սիրել զքեզ 'ի բոլոր սրտէ և 'ի բովանդակ մտաց , և յամենայն զօրութենէ մերմէ պա-

հել զպատուիրանս քո ։ Համբառնալ առ քեզ զձեռս մեր 'ի սրբութիւն առանց բարկութեան և երկմտութեան , և գտանել 'ի քէն զշնորհս և զողորմութիւն , և զառաջինաւէր գործոցն յաջողութիւն ։ Վ՟ան զի դու ես Տէր կենաց և Աստուած ողորմութեանց ։ և քեզ վայելէ փառք իշխանութիւն և պատիւ , այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից ։ Ամէն ։

Խաղաղութիւն ամենեցուն ։

Քում ամենազօր և յաղթօղ Տէրութեանդ կրկնի ամենայն ծունր յերկրպագութիւն ։ և փառաւորի յամենեցունց թագաւորութիւն քո ։ Նայեա՛ յերկրպագութիւնըս մեր , և ուսո՛ մեզ առնել զարդարութիւն ճշմարտութեան ։ Վ՟ան զի դու ես Աստուած խաղաղութեան , որ բարձեր զթշնամութիւն 'ի միջոյ , և արարեր զխաղաղութիւն յերկինս և յերկրի ։ Հեռաւորաց և մերձաւորաց աւետարանեցեր զնոր պարգևս քոյին բարեացդ ։ Որում և զմեզ մեծի շնորհացդ արժանաւորս արասցես , դասելով ընդ ճըշմարիտ երկրպագուս քո , Աստուած մեր և Տէր մեր և փրկիչ ՅԻՍՈՒՍ ՔՐԻՍՏՈՍ ։ Որ ես օրհնեալ ընդ Հօր և ընդ սուրբ Հոգւոյդ , այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից ։ Ամէն ։

## 116

# ՄԱՂԹԱՆՔ

Յերգս օրհնութեան և 'ի ձայն սաղմոսաց անդադար փառաւորեմք զՀայր և զՈրդի և զսուրբ Հոգին, այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից․ Ամէն ։

---

# ՔԱՐՈԶ

## ՈՂՈՐՄԵԱ ԵՒ 'Ի ՆԵՂՈՒԹԵԱՆ ԿԱՆՈՆԱՑՆ

ԲՁ․ ԳՁ․ } Վասն գտանելոյ մեզ զշնորհս և զողորմութիւն 'ի բարերար Տեառնէ մերմէ՝ ըզՏէր՝ աղաչեսցուք ։ Տէր ողորմեա ։

Վասն փրկելոյ զմեզ 'ի զրպարտութենէ մարդկան և յօրոգայթից սատանայի՝ զՏէր աղաչեսցուք ։"

Վասն ամենայն անձանց Քրիստոնէից և տանց հաւատացելոց՝ զՏէր աղաչեսցուք ։"

Վասն որք 'ի լերինս յայրս և 'ի փապարս բնակեալ են սուրբ հարքն մեր՝ զՏէր աղա" ։'

Վասն որք սաղմոսիւք և օրհնութեամբ կատարեն զամենայն ժամանակս կենաց իւրեանց՝ զՏէր աղաչեսցուք ։"

Վասն հոգ" ։" Յու ևս՝ միա" ։" Զանձինս" ։" Ողորմեա" ։"

# ԱՂՕԹՔ

Գոհանամք զքէն Տէր Աստուած մեր, որ զարթուցեր զմեզ ’ի հանգստենէ քնոյ շնորհիւ ողորմութեան քո ։ Օ՛ արթո՛ զմիտս մեր արդարութեամբ առ քեզ Տէր Աստուած մեր, զի տեսցեն աչք մեր զփրկութիւն քո ։ Երկեսցէ և բնակեսցէ առ մեզ Աստուածութիւն քո. և ողորմութիւն քո հովանի և պահապան լիցի ’ի վերայ պաշտօնէից քոց ։ Եւ զմեզ զծառայքս քո արժանի արա ’ի տուէ և ’ի գիշերի և յամենայն ժամու միշտ խորհիլ ’ի սէր պատուիրանաց քոց ։ Եւ գոհանալով փառաւորել զՀայր և զՈրդի և զսուրբ Հոգին, այժմ և միշտ և յաւիտեանս յաւի՛ ։

Խաղաղութիւն ամենեցուն ։

Կենդանարար զօրութիւն և աղբիւր անմահութեան, դու ես ՔՐԻՍՏՈՍ Աստուած փրկիչ մեր ։ Որ շնորհեցեր մեզ ’ի մէջ գիշերի յառնել և խոստովան լինել առ քեզ վասն իրաւանց և արդարութեան քո ։ Եւ այժմ աղաչեմք զքեզ Տէր Աստուած մեր, արա զմեզ արթունս և պատրաստս ’ի ժամ առաւօտու ընդ սուրբս քո ։ Եւ ընդ նոսին գոհանալով փառաւորել զքեզ ընդ Հօր և ընդ Հոգւոյդ սրբոյ, այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. Ամէն ։

# ՄԱՂԹԱՆՔ

Գոհութեամբ և ճշմարիտ խոստովանութեամբ անդադար փառաւորեմք զՀայր և զՈրդի և զսուրբ Հոգին, այժմ և միշտ:



# ԹԱԳԱՒՈՐՔ

## ԱՊԱՇԽԱՐՈՒԹԵԱՆ

### ԵՐԿՈՒՇԱԲԹԻ

Թագաւոր յաւիտեանն:

Լուր մեզ Աստուած փրկիչ մեր և կեցո զմեզ, որ յամենայնի կարող ես:

ՍՂ. Լուր մեզ Աստուած փրկիչ մեր. յոյս ամենայն ծագաց երկրի. և որ 'ի ծով հեռի: Որ պատրաստէ զլերինս զօրութեամբ իւրով. և ըզգեցեալ է զօրութիւն. և կեցո զմեզ Տէր որ յամենայնի:

Դէ. Լուր աղաչանաց մերոց Տէր մարդասէր, և գթա 'ի մեզ:

Թ. Մի զիս անտես առներ. այլ օգնեա ինձ մարդասէր:

ՍՂ. Մի ընկենուր զիս Տէր յերեսաց քոց.

## ԵՐԵՔՇԱԲԹԻ

Թ. Երկայնամիտ ես Տէր առ ամենեսեան. և գթա Տէր 'ի վերայ մեր. որպէս և ըյաւազակին փրկիչ և եկեցո ։

ՄՂ. Երկայնամիտ բազումողորմ և ճշմարիտ նայեաց առիս. և ողորմեաց ինձ ։ Տուր զօրութիւն ծառայի քոյ. կեցո զորդի աղախնոյ քոյ. և արա առ իս նշան բարութեան. և գթա Տէր 'ի վերայ մեր ։

ԷԻ. Տէր որ գթացար յաւազակին խաչակից լինել քեզ. և մաքրեցեր զաղտեղութիւն յանցանաց նորա յաղբերէ կողի քոյ. գթա և յիս 'ի մեղաւորս, որ ծառայիս եմ առ քեզ. և փափագիմ 'ի դաւիթըս քո որպէս ըղձի 'ի յեղջերուաց 'ի յաղբեր ըղ ջուրց ։

Թ. Մաքրեա՛ ընդ իս թշնամին. համապազ զիս կամիս կործանել. այլ դու Տէր իմ այց արա մոլորեալ ոչխարիս, և կեցո ։

ՄՂ. Մաքրեան ընդ իս 'ի տարապարտուց. և փոխանակ օգնոյ իմոյ մատնէին զիս. այլ ես յաղօթս կայի ։ Հատուցին ինձ չար

փոխանակ բարւոյ. ատելութիւն փոխանակ սիրոյ իմոյ. այլ դու Տէր իմ այց արա:

ԺԹ. Որ հովիւդ ես հօտից բանաւոր կենդանեաց. տուր ինձ յոյս կենաց ապաշխարութեան. և դարձո զմոլորեալս 'ի հօտ քո ՔՐԻՍՏՈՍ, և ողորմեա:

Ի. Մեղայ և աղաչեմ ըզ քեզ. թողութիւն շնորհեա մեղաց իմոց. քաւիչ իմ լեր քո գթութեամբդ. որ միայն ես փրկիչ, և ողորմեա:

ԻԱ. Մեղայ Տէր մեղայ. և զանօրէնութիւնս իմ ես ինձէն գիտեմ: Աղաչեմ և խնդրեմ 'ի քէն, թող ինձ Տէր. թող ինձ. և մի կորուսաներ զիս ընդ անօրէնութեան իմոյ. քաւիչ իմ լեր քո գթութեամբդ. որ միայն ես փրկիչ, և ողորմեա:

ԻԲ. Մեղայ քեզ Տէր. մեղայ քեզ Տէր, մեղայ. և քան զաւազ ծովու բազում են յանցանք իմ. պատրանք աշխարհիս խաբեցին զիս. և եղէ անպտուղ 'ի կենաց յուսոյդ. այլ դու անոխակալ և անյիշաչար փրկիչ. խնայեսցես 'ի մեղուցեալ ծառայս, և ողորմեա:

## ԶՈՐԵՔՇԱԲԹԻ

Թ. Տէր իմ բազում են անօրէնութիւնք անձին իմոյ. ոչ յիշեցի զահեղ ըզդատաստանս քո. արդ անկեալ ըզքեզ աղաչեմ. շնորհեա ինձ ապաշխարութիւն Տէր, և ողորմեա :

ՍՂ. Անօրէնութիւնք իմ բարձրացան քան ըզգլուխ իմ. և որպէս բեռին ծանր ծանրացան 'ի վերայ իմ: Նեխեցան և փտեցան վէրք իմ յերեսաց անզգամութեան իմոյ. ոչ յիշեցի զահեղ զդատաստանս քո. արդ անկեալ զքեզ աղաչեմ. շնորհեա":

Քք. Պաղատանս մատուցանեմք քեզ Հայր երկնաւոր. մի անտես առներ զաղաչանս մեր. այլ անցո զցասումն քո 'ի մէնջ. և յիշեա զի պատկեր եմք բարերարութեանդ :

Թ. Տէր իմ զգթութիւնս քո բազում են յոյժ. առ իս արա զբարերարութիւնս քո. որպէս և ըզմեծ քաւորին, և ինձ ողոր":

ՍՂ. Գթութիւնք քո բազում են Տէր. և ըստ իրաւանց քոց կեցո զիս: Բազում են որք հալածեն և նեղեն զիս. 'ի վկայութեանց

քոց ես ո՛չ խոտորեցայ. առ իս արա՛ զբարերարութիւնս քո. որպէս և ըմմա՛ քաւուորին, և ի՛նձ ողորմեա՛ :

ԺԵ. Ա՛նոխակալ և անյիշաչա՛ր Տէ՛ր. որ զըթալո՛վ ՚ի մեղաւորս շնո՛րհեցե՛ր ապաշխարութիւն. արդ գըթա՛ և յիս Տէր ՚ի մեղուցեալ և յանօրինեալ քո ծառայս. և փո՛խա՛ ըկերա՛ ըղգործօղըս չա՛րեաց ՚ի զըղջումն ապաշխարութեան, և ըկեցո՛ :

Թ. ՚Ի Տաճարի՛ քում սըրբութեան. փառաւորելով ըզ քեզ. դու ունիս իշխանութիւն, ողո՛րմեա մեզ :

ԺԶ. Ուլ ես լսա բազու՛մ ողորմութեան քում. մըտեալ ՚ի տուն քո. և երկիրպագից ՚ի տաճար սուրբ քո ՚ի երկիւղի քո. Տէր առաջնորդեա՛ ինձ յարդարութեան քում վասն թըշնամեաց իմոց. և ուղիղ արա առաջի իմ ըզճանապա՛րհըս քո. դու ունիս իշխանութիւն, ողո՛րմեա մե՛զ :

ԺԵ. ՚Ի՛ տաճարի քում սըրբո՛ւթեա՛ն հանապա՛զ ըզ քե՛զ գովեմք թագաւո՛ր փառ՛աց. որ ունի՛ս իշխա՛նութիւն կենա՛ց և փըրկութեա՛ն, ողորմեա՛ մեզ :

## ՀԻՆԳՇԱԲԱԹԻ

Թ. Ապաշխարութեան արտասուօք աւազան լինի, և լուանայ զբազմութիւն ըմեղաց. սովաւ շնորհեա՝ յառաջ քան ըզվախճան զքաւութիւն և ըզմեծ քո զողորմութիւն։

ՍՂ. Ծարաւեալ է անձն իմ առ քեզ Աստուած Հըզօր և կենդանի, երբ եկից երևեցայց երեսացդ Աստուծոյ։ Եղեն ինձ արտասուք իմ կերակուր 'ի տուէ և 'ի գիշերի. և այն՝ զի ասէին ցիս զօրհանապազ, թէ ո՞ւր է Աստուած քո. սովաւ շնորհեա։

ՏԲ. Յորժամ գաս փառօք Քո Որ յաւագին աւուրն 'ի դատել զերկիր. և դողան սարսափմամբ երկրածինքս ամենայն 'ի յահէ քումմէ. 'ի նստել քո յատենի դատաւոր ահեղ. և յակնարկել քո յարարածս՝ յիշեա և զիս ըզ բազմամեղս. որ ընկըղմեալս եմ յանցանօք բանսարկուին խաբմամբ, և հայցեմ զաւազակին Տէր և զիս յիշեա որ միայն յեղ եւս փրկել զ, և ըկեցո։

Թ. Որս որ 'ի նաւէ աշխարհի ալէկոծեն մեղք իմ. նաւահանգիստ ապաշխա-

րութեան շնո՛րհեա՛ ինձ բա՛զու՛մ ո՛ղորմ, և ընկե՛ցո՛ ։

ՍՂ. Կեցո՛ զիս Աստուած զի հասի՛ն ջո՛ւրք յա՛նձն իմ. ընկղա՛յ ես ՚ի խորս անդընդոց ուր ո՛չ գո՛յ ինձ հանգիստ. նաւահանգիստ"։

ՏԷ. Նա՛ւապե՛տ բարեգութ առ քեզ ապա՛ւի՛նիմ. տո՛ւր ինձ ձեռն որպէս երբեմն Պետրոսին ՚ի վերայ ա՛լեացն. որ ծը՛փին ալէկոծեալ յանցանօ՛ք մեղա՛ց, և ընկե՛ցո՛ ։

Թ. Դու ե՛ս ՔՐԻՍՏՈ՛Ս աղբի՛ւր կենաց. բղխո՛ւմն ողո՛րմո՛ւթեան. շնորհեա՛ փրկի՛չ անձանց մերո՛ց ըզթողութիւն մեղա՛ց մե՛րո՛ց։

ՍՂ. ՚Ի քէ՛ն է Տէր աղբիւր կենաց. և լու սով երեսաց քոց տե՛սա՛նե՛մք ըզլոյս ։ Ձգեա՛ զողորմութիւնս քո՝ որք ճանաչեն ըզ քեզ. զարդարութիւնս քո՝ ույք ուղիղք ե՛ն սրտի՛ւք. շնորհեա՛ փրկի՛չ անձանց"։

ՏԷ. Որ աղբիւրդ ես ծարաւեա՛ց և հանգիստ աշխատելո՛ց. ճանապարհ մոլորելոց, և հո գի՛ւ հոգևոր բանաւո՛ր հօ՛տի. փափաքողացս առ քեզ ՔՐԻՍՏՈ՛Ս լեր նա՛ւահանգիստ. և արբո՛ մեզ ծարաւեա՛ցս զբաժակ քո քաղց րութեան յանըսպա՛ռ յա՛ղբե՛րէ՛դ ։

## ՈՒՐԲԱԹ

Թ. Ի տաճարի սրբութեան քում լուր Տէր ձայնի իմում. և աղաչանք իմ ժամանեսցեն 'ի յականջըս քո Տէր:

ՍՂ. Լուաւ ինձ 'ի տաճարէ սրբոյ իւրմէ ձայնի աղօթից իմոց. և աղաղակ իմ առաջի նորա, մտցէ յականջըս նորա. և այլ:

## ԱՂՈՒՀԱՑԻ : *

Դէ. Որ լուսատու ես տիեզերաց ՔՐԻՍՏՈՍ Աստուած. լուսաւորեա զիմ ըզ խաւարային խորհուրդս, և ըզկեցո.

## ՆՆՋԵՑԵԼՈՑ : †

Դէ. Օրհնեալ ես Տէր, և փառաւորեալ է քո անբաւ մարդասիրութիւնդ. զաղաչանս մեր քեզ մատուցանեմք, որ թագաւորդ ես յաւիտենից. ըզննջեցեալսն մեր արժանի արա Տէր ընդունել 'ի կեանսն յաւիտենից:

Թ. Արտասուս ինձ շնորհեա 'ի յապաշխարութիւն Տէր. զի լուացից ըզմեղս

* Միայն աղուհացին ասա:

† Բայց յաղուհացէն, յամենայն ուրբաթի ասա.

անձին իմոյ. որպէս պոռնիկն աղաչեմ, և կեցո :

ՍՂ. Վաստակեցայ ես 'ի հեծութեան իմում. լուացի զամենայն գիշեր զմահիճս իմ. և արտասուօք իմովք զանկողինս իմ թացի. զի լուացից զմեղս անձին իմոյ. որպէս պոռն.":

ԷԻ. Ո՛ր աղբիւրդ ես անապական Քրիստոս Յիսուս Աստուած. զվիրաւորեալ անձն իմ 'ի մեղաց. բժշկեա Տէր բղխմամբ արտասուաց, և կեցո :

Թ. Օ՛ մոլորեալ ծառայս իմ ողորմեա Տէր. և մի դատապարտեր զիս, 'ի յաւուրն այցելութեան քո մարդասէր :

ՍՂ. Կեցցէ անձն իմ օրհնեսցէ զքեզ. և իրաւունք քո օգնեսցեն ինձ : Մոլորեցայ ես որպէս զոչխար կորուսեալ. խնդրեա զծառայս քո, զի զպատուիրանս քո ես ոչ մոռացայ. և մի դատապարտեր":

ԷԻ. Ո՛ր մոլորեցայ 'ի հօտէ քումմէ հովիւ բարի. խնդրեա զիս. ընդ մոլորեալս. և արժանաւորեա խառնել 'ի հօտ քո Քրիստոս, և կեցո :

Էի · Որք ըզ տանջանս և ըզմահ վասըն քոյ յանձն առին · և հեղին զարիւնս իւրեանց վասն անուանըդ քոյ սրբոյ · բարեխօսութեամբ սոցա մի՛ կորուսաներ ըզմեզ · Տէր" :

## ԱՌԱՋԻՆ ՁԱՅՆ

ԱՁ · Բարեխօսութեամբ սրբոց (այս անուն ·) աղաչեմք ըզքեզ · թողութիւն շնորհեա յանցանաց մերոց · բարերար ՔՐԻՍՏՈՍ :

ՄՂ · Մերձ է Տէր առ այնոսիկ որք մաշեալ են սրտիւք, և ըզխոնարհս հոգւով կեցուցանէ : Բազում նեղութիւնք են արդարոց · յամենայնէ փրկէ զնոսա Տէր · և պահէ զամենայն ոսկերս նոցա · և մի 'ի նոցանէ ոչ կորիցէ · թողութիւն շնորհեա" :

Էի · Որ յաղթող զօրութեամբ 'ի հանդէս ծըզնաւորին բարիկան · ոնա բառա պահեցեր զխոստովանող վըկայս քո ՔՐԻՍՏՈՍ Աստուած տուր մեզ օգնութիւն 'ի նեղութեան մերում · բարեխօսութեամբ սրբոց մարտիրոսաց, և կեցո :

## ԵՐԿՐՈՐԴ ՁԱՅՆ

ԲՁ. Բարեխօսութեամբ սրբոց (այս անուն.) պարգևեա մեզ Տէր. առնուլ մասն և բաժին ընդ հրաշափառեալսն ՚ի կոչումն արքայութեան երկնից։

ՍՂ. Սքանչելի է Աստուած ՚ի վերայ սրբոց իւրոց Աստուած Իսրայէլի. Նա տացէ զօրութիւն հաստատութեան ժողովրդեան իւրոյ, օրհնեալ է Աստուած. առնուլ մասն և բաժին ընդ հրաշափառեալսն ՚ի կո"։

ՓԽ. Մարտիրոսք երանեալք և փառաւորեալք. որք բազում տանջանօքն համբերեցէք. դուք ըզ լոյսն կենաց ըզգեցեալ ունիք. և առ ՔՐԻՍՏՈՍ վասն մեր բարեխօսեցէք։

---

## ԱՒԱԳ ԿՈՂՄ

ԲԿ. Դու ես ՔՐԻՍՏՈՍ աղբիւր կենաց. բղխումն ողորմութեան. շնորհեցեր սրբոց (այս անուն.) յաղթող ըմբշամարտութիւն. հալածել բռնաւորին և լուսաւորել զանձինս մեր։

ՍՂ. Աստուած փառաւորեալ է ՚ի խորհուրդ

դէս սրբոց իւրոց . մեծ և ահաւոր 'ի վերայ
այնոցիկ որք շուրջ են զնովաւ : Տէր
Աստուած զօրութեանց ո՞ նմանի քեզ . հզօր
ես դու Տէր , և ճշմարտութիւն քո շուրջ է
զքև . շնորհեցեր սրբոց ( այս անուն . ) յաղ
թող զնահատակութիւն . համբերել զխաչա
րին և լուսաւորել զանձինս իւրս մեր .
Փխ . Որ շնորհօ քսուրբ հոգւոյն յաղթեցիք
թշնամւոյն . երանեալ սուրբք վկայք Քրիս
ՏՈՍԻ . վասն ձեր տօնողացս հայցեցէք
Աստուծոյ զթողութիւն մեղաց :
Փխ . Որ պսակք էք պարծանաց ամենայն ա-
ռաքինեաց . նախաշաւիղ և առաջնորդք կե
նացն յաւիտենից . ով սուրբ վկայք
առ պսակիչն սրբոց և վասն մեր բարե
խօսեցէք . շնորհելով ողորմութիւն յա
նսպառ աղբերէն կենացն յաւիտենի
նից :

ԵՐՐՈՐԴ ՁԱՅՆ

Գ.Ձ . Բազմութիւն սրբոց ( այս անուն . )
բարեխօս ունիմք առ քեզ ՔՐԻՍՏՈՍ .
և աղաչեմք սոքօք շնորհեա զթողու

թիւն յանցանաց մերոց . և ՚ի կեանսդ յաւիտենից , նորոգեա և ընկեցո ։

ՍՂ. Լոյս ծագեաց արդարոց . ուղղոց սրտից եղև ուրախութիւն ։ Ուրախ եղերուք արդարք ՚ի Տէր . և խոստովան եղերուք յիշատակի սրբութեան նորա . և աղաչեմք սորօք զշնորհեալ զթողութիւն յան · Տր · Համբարձեալք ՚ի մարմնս պատերազմի յաղթող զգրաւեալս սուրբ մեր կայք · քանզի ճանապարհ ընթացեալք ընդ յերկնային քաղաքն յԱրուսաղէմ · ընդ անմարմնոցն դասս փառաւորեալ սուրբք ըզԱրբոր դութիւնն ։

ՎԱՌ

ԳԿ · Ողջմտութիւն սրբոց (այս անուն ·) բարեխօս ունիմք առ քեզ ՔՐԻՍՏՈՍ · և աղաչեմք սորօք զշնորհեալ զթողութիւն յանցանաց մերոց . և ՚ի կեանսդ յաւիտենից , նորոգեա և ընկեցո ։

ՍՂ. Պատուական է առաջի Տեառն մահ սրբոց իւրոց · ո՜ Տէր ես ծառայ քո եմ , ծառայ և որդի աղախնոյ քո ։ Հատեր զկա

պանս իմ, քեզ մատուցից պատարագ օրհնու-
թեան, և զանուն Տեառն կարդացից. և
աղաչեմք սուրբ շնորհեա զխաղաղութիւն:
ԵԷ. Հանդիսացեալք 'ի մարտս պատերազմի
յաղթող գնդայք սուրբ վկայք. քան
զի ճանապարհորդեցիք ընդ յերկնային
քաղաքն յԵրուսաղէմ. ընդ անմարմնոցն
դասս փառաւորելով սուրբ Երրորդ
դութիւնն.

## ՉՈՐՐՈՐԴ ՁԱՅՆ

ԴՁ. Որք 'ի խորանս սրբութեան եմք ժողո
վեալ օրհնել զքեզ ՔՐԻՍՏՈՍ. աղաչանօք
սրբոց (այս անուն.) զպատարագս մեր մի
անտես առներ. որ միայնդ ես բազում
ողորմ թագաւոր փառաց ՔՐԻՍՏՈՍ:
ՄՂ. Մերձ է Տէր առ ամենեսեան որք կար
դան առ նա. առ ամենեսեան որք կարդան
առ նա ճշմարտութեամբ: Զկամս երկիւղա
ծաց իւրոց առնէ Տէր. աղօթից նոցա լսէ,
և կեցուցանէ զնոսա. աղաչանօք սրբոց
մարտիրոսացն զպատարագս մեր մի անտես
առներ. որ:

ԱՌԱՔԵԼՈՑ ԵՒ ՄԱՐԳԱՐԷԻՑ

Ո՜չ են բանք և ո՛չ են խօսք, որոց ո՛չ լսին ձայնք նոցա ։ Ընդ ամենայն երկիր ել բարբառ նոցա · և մինչև 'ի ծագս աշխարհի են խօսք նոցա · աղաչանօք սրբոց առաքելոցն զպաղատանս մեր ։

Տէ · Նահատակք և վկայք Քրիստոսի Աստուծոյ · ընդ հանուր տիեզերաց քարոզք փրկութեան · որք զանձինս ձեր մատուցիք պատարագ · և զենումն Աստուծոյ հօր 'ի հոտ անուշից · ժողովելոցս 'ի կատարել և զվիճատակ անուան ձերոյ · բարեխօսեցէք առ Տէր վասն քաւութեան մեղաց ըմբերոց ։

ՎԵՐՋ

ԴԿ · Օրհնեալ բերեան Տէրութիւնդ քո միաբան աղաչեմք, լուր Տէր · աղաչանօք սրբոցն (այս անուն,) խնայեա 'ի մեզ, և ընկալցո ։

ՄՂ · Ուրախ լիցին ամենեքեան որք յուսացեալք են 'ի քեզ · յաւիտեան ցնծասցեն · և բնակեսցես դու 'ի նոսա ։ Պարծեսցին 'ի քեզ սիրելիք անուան քո · զի օրհնեսցես

դու զարդարն Տէր · որպէս զինու հաճու թեամբ քով պսակեցեր ըզնոսա · աղաչանօք սրբոց մարտիրոսացն · խնայեա ՚ի մեզ , և ըկեցո ։

Քր · Տօնէ այսօր Եկեղեցի սուրբ զյիշատա կըս ձեր սուրբ ըվըկայք · որք զօրու թեամբ սուրբ Հոգւոյն վանեցիք զպատե րազմ չարին · և ՚ի կամարըս լուսեղէ նըս թագաւորեալք · օրհնել սուրբ ըզԵրրորդութիւնն ։

ՍՐԲՈՑՆ ՍՏԵՓԱՆՆՈՍԻ ։

ՍՏԵՂԻ

ՍՏ · Այսօր դասք հրեշտակաց · ուրա խանան ընդ ծըննութիւն սրբոյն Ստե փաննոսի նախավըկային · Քանզի զօ չէ Եկեղեցի քո Քրի ՍՏՈՍ ըզը յաղթանակ մարտ հեղմանն արեան առ րա ՚ի վերայ ըմածի անուան ուան ըզքոյ Տէր ։

Բազում համարձակութիւն է սորա ա- ռաջի Աստուծոյ ՚ի ձեռըն հեղման սուրբ արեան իւրոյ · քանզի յօժարու թեամբ մատնեաց զանձն իւր չարչար

և դառըն տանջանաց վասըն մեծի ան ուանըն Տեառն ։

Քանզի արհամարհելով անարգեաց զանցաւոր ըզկեանս աշխարհիս, և փափագեաց յաւիտենական կենացն. և մի՛շտ և հանապազ ուրախանայ ընդ Տեառն իւրոյ յանըսպառ յուրախութիւնն ։

Քանըզի գոչէ Եկեղեցի քո Քրիստոս ըզյաղթանակ մարտ հեղման արեան սորա ՚ի վերայ ըզմեծի անուան քո Տէր։

Փառըք հօրն էականի, Որդւոյն միածնի, և ազատիչ սուրբ հոգւոյն ըմայ ելէ ։ փառըք պատիւ և իշխանութիւն. այժմ և մի՛շտ և յաւիտեանըս յաւիտենից. Ամէն ։

Եւ յորժամ շարժին երկինք և երկիր ՚ի յահէ փառաց բանին Տեառըն Աստուծոյ ։ Յայնժամ նըստուցանէ ընդ աջմէ իւրմէ ըզ սիրելիս անուան իւրոյ ՚ի լուսեղէն խորանսըն զուգաւ որելով ։

---

Արքնէ՛. Քոյն զառաջին փառն Ռւ ։ Այսօր զաւք Հրեշտակաց ու" ։

# ԱԼԻԼՈՒՔ ԳԻՇԵՐԱՅԻՆ

## ՏԵՐՈՒՆԱԿԱՆ ՏՕՆԻՑ ԿԱՐԳԱՒ

### ԸՍՏ ՊԱՏՃԱՌԻ ԱՒՈՒՐՑ

### ԵՒ

### ԸՍՏ ՈՒԹ ՁԱՅՆԻՑ



ՃՐԱԳԱԼՈՅՑԻ ԾՆՆԴԵԱՆ ՏԵԱՌՆ ՄԵՐՈՅ ։

Ալէլուիա․ Ալէլուիա․ Ալէլուիա ։ Առաքեաց զբան իւր, և բժշկեաց զնոսա՝ և փրկեաց զնոսա յապականութենէ իւրեանց ։ Խոստովան եղիցին Տեառն՝ ողորմութեանց նորա, և սքանչելեաց նորա որդիք մարդկան ։

Ալէլուիա․ Ալէլուիա․ Ալէլուիա ։ Տէ․ Իջցէ որպէս զանձրև ՚ի վերայ գեղման, որպէս ցօղ, զի ցօղէ յերկիր ։ Ծագեսցի յաւուրս նորա արդարութիւն․ բազում խաղաղութիւն մինչև կատարեսցի լուսին ։

Փառք և երկրպագութիւն Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ․ այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից․ Ամէն․

Ալէլուիա․ Ալէլուիա․ Ալէլուիա ։



# ԱԼԷԼՈՒՔ

## ԾՆՆԴԵԱՆ ՏԵԱՌՆ ՄԵՐՈՅ

## ԸՍՏ ՈՒԹ ՁԱՅՆԻՑ

### ԱՌԱՋԻՆ ՁԱՅՆ

Ալէ՛լուիա. Ալէ՛լուիա. Ալէ՜լուիա։

ԱՁ. Տէ՛ր հովուեսցէ զիս. և ինձ ինչ ոչ պակա՞սեսցի։ 'Ի վայրի՛ դալարուոջ անդ բնա կեցոյց զիս. և առ ջուրս հանգստեան ս՜ նոյց զիս։

ԴԻ. Ալէ"։ Իջցէ՛ որպէս պանձրև 'ի վերայ գեղման. որպէս ցօղ զի ցօղէ՞ յերկիր։ Ծագեսցի յաւուրս նորա արդարութիւն. և բազում խաղաղութիւն մինչև կատարեսցի՞ լուսին։

Փառք և եր"։ այժմ և"։ Ալէ"։ Երեք։



Օ ինչ ամենայն փէքրախնախան փոխից որ ԱՁ լինի՝ շարական ասա՛։

Պա՛րք հրեշտակաց օրհնեն ըզքեզ ՔՐԻՍՏՈՍ ալէլուիա. մարդկա՛ն ազգ սաղ մոսեն քեզ. Ալէլո՜ւիա։



## ԱՌԱՋԻՆ ԿՈՂՄ

Ալէլուիա . Ալէլուիա . Ալէ՛լուիա ։

Ակ . Լո՛ւր դուստր և տես . խոնարհեցո՛ զունկն քո . մոռա՛ զժողովուրդ քո . և զտունն հօր քո . զի ցանկացաւ թագաւոր գե՛ղոյ քոյ ։ Զա է՛ նա է Տէր քո՝ երկիրպագցես նմա . և դուստր ծուրայ երկիրպագցէ նմա . և պատարագօք զերեսս նորա պաղատեսցեն մեծամեծք 'ի ժողո՛վրդոց .

Ժի . Ալէ" ։ Սա՛ կարդասցէ առ իս , Հայր իմ ես դու . Աստուած ընդունող փրկութեա՛ն իմոյ ։ Եւ՛ ես անդրանիկ արարից զնա և բարձր քան զամենայն թագաւո՛րս երկրի ։

Փա՛ռք և երկիրը" ։ ա՛յժմ և" ։ Ալէ" ։ Երէք ։

---

## ԵՐԿՐՈՐԴ ՁԱՅՆ

Ալէլուիա . Ալէլուիա . Ալէ՛լուիա ։

ԲՁ . Իջցէ՛ որպէս անձրև 'ի վերայ գեղ մանն . որպէս ցօղ որ ցօղէ՛ յերկիր ։ Ծա՛ գեսցի՛ յաւուրս նորա արդարութիւն . բա զում խաղաղութիւն մինչև կատարեսցի՛ լուսին ։

Դփ. Ալէ՛՛։ Եցո՛յց Տէր զփրկութիւն իւր. առաջի ազգաց յայտնեաց զարդարո՛ւթիւն իւր։ Յիշեա՛ց ողորմութեամբ իւրով զՅակովբ. Ճշմարտութեամբ իւրով զտունն Իսրայէլի. և տեսին ամենայն ծագք երկրի ըզփրկութիւն Ա՛ստուծոյ մերոյ։

Փա՛ռք և երկրը՛՛։ այ՛ժմ և միշտ և՛՛։ Ալէ՛՛։

ԱՒԱԳ ԿՈՂՄ

Ալէլուիա. Ալէլուիա. Ալէլո՛ւիա։

Բկ. Սա՛ կարդացէ առ իս՝ Հայր իմ ես դու. Աստուած ընդունող փրկութե՛ան իմոյ։ Ես՛ անդրանիկ արարից զնա. և բարձր քան զամե՛նայն թագաւո՛ր ըս երկրի։

Դփ. Ալէ՛՛։ Ընդ քե՛զ է ըսկիզբն աւուրըն զօրութեան. ՝ի վայելչութիւն սրբոց քոց յարգանդէ յառաջ քան զարուսեակ ծընա՛յ զքեզ։ Երդուա՛ւ Տէր՝ և ոչ եւս զղջասցի. թէ դու ես քահանայ յաւիտեան ըստ կարգին Մելքիսեդեկի. և Տէր ընդ աջմէ՛ քումմէ։

Փա՛ռք և երկրը՛՛. այ՛ժմ և միշտ՛՛։ Ալէ՛՛։

## ԵՐՐՈՐԴ ՁԱՅՆ

Ալէլուիա . Ալէլուիա . Ալէ՛լուիա ։

ՂԷ . Ցո՛յց Տէր զփրկութիւն իւր . առաջի ազգաց յայտնեաց զարդարո՛ւթիւն իւր ։ Յիշեա՛ց ողորմութեամբ իւրով զՅակոբ . Ճշմարտութեամբ իւրով զտունն Իսրայէլի . և տեսին ամենայն ծագք երկրի զփրկութիւն Ա՛ստուծոյ մերոյ ։

ՃԼԱ . Ալէ՛ ։ Յիշեա՛ Տէր զԴաւիթ , և զամենայն հեզութի՛ւն նորա ։ Որպէ՛ս երդուաւ Տեառն , և ուխտս եդ Աստուծոյ Յա՛կոբայ ։

Փա՛ռք և երկիր՛ . այժմ և միշտ՛ ։ Ալէ՛ ։

---

## ՎԱՌ

Ալէլուիա . Ալէլուիա . Ալէ՛լուիա ։

ՃԹ . Ընդ քե՛զ է սկիզբն աւուրն զօրութեան . ՚ի վայելչութիւն սրբոց քոց յարգանդէ յառաջ քան զարուսեակ ծնա՛յ ըզքեզ ։ Երդուա՛ւ Տէր՝ և ոչ եւս զղջասցի . Թէ դու ես քահանայ յաւիտեան ըստ կարգին Մելքիսեդեկի . և Տէր ընդ աջմէ քումմէ ։

Գէ . Ալէ" : Տէ՛ր ասաց ցիս որդի իմ ես դու . և ես այսօր ծնա՛յ զքեզ : Խնդրեա՛ յինէն , և տաց քեզ զհեթանոսս ՚ի ժառանգութիւն , և իշխանութիւն քեզ ընդ ամենայն ծա՛գս երկրի :

Փա՛ռք և երկըր" . ա՛յժմ և միշտ' : Ալէ" :

---

## ՉՈՐՐՈՐԴ ՁԱՅՆ

Ալէլուիա . Ալէլուիա . Ալէ՛լուիա :

ԴՁ . Յիշեա՛ Տէր զԴաւիթ , և զամենայն հեզութի՛ւն նորա : Որպէ՜ս երդուաւ Տեառն , և ուխտս եդ Աստուծոյ Յա՛կոբայ . Գէ . Ալէ" : Տէ՛ր հովուեսցէ զիս . և ինձ ինչ ոչ պակա՛սեսցի : ՚Ի վայրի՛ դալարւոջ անդ բնակեցոյց զիս . և առ ջուրըս հանգստեան սնո՛յց զիս :

Փա՛ռք և երկըր" : ա՛յժմ և միշտ" : Ալէ" :

---

## ՎԵՐՋ.

Ալէլուիա . Ալէլուիա . Ալէ՛լուիա :

ԴԿ . Տէ՛ր ասաց ցիս որդի իմ ես դու . և ես այսօր ծընա՛յ ըզ քեզ : Խնդրեա՛ յինէն , և տաց քեզ զհեթանոսս ՚ի ժառանգութիւն .

և իշխանութիւն քեզ ընդ ամենայն ծա՛գս երկրի ։

Տէ․ Ալէ՛՛ ։ Լո՛ւր դուստր և տես․ խոնարհեցո՛ զունկն քո․ մոռա՛ ժողովուրդ քո և ըզտուն հօր քո․ զի ցանկացաւ թագաւոր գե՛ղոյ քոյ ։ Զի ի՛նքն է Տէր քո՝ երկիր պագցես նմա․ և դուստր ծուրայ երկիրպագցէ նմա․ և պատարագօք զերեսս նորա պաշտեսցեն մեծամեծք ՚ի ժողո՛վրդոց ։

Փա՛ռք և երկ՛՛․ այժմ և միշտ՛՛ ։ Ալէ՛՛ ։ Էրէ+ ։



## ՔԱՌԱՄՆՕՐԵԱՑ ԳԱԼՍՏԵԱՆ ՏԵԱՌՆ ՄԵՐՈՑ

## ՚Ի ՅԱՃԱՐՆ ։

Ալէլուիա․ Ալէլուիա․ Ալէ՛լուիա ։

Օրհնեա՛լ եկեալ յանուն Տեառն․ օրհնեալ որ գա՛լոց ես ։ Տէր Ա՛ստուած մեր երևեցաւ մեզ․ արարէք տօնս ուրախութեան կանխաւ մինչև յանկիւնս սե՛ղանոյ ։

Տէ․ Ալէ՛՛ ։ Տէ՛ր ՚ի տաճար սուրբ իւրում Տէր յերկինս յաթո՛ռ իւրում ։ Ա՛չք նորա ՚ի տնանկս հային․ արտևանունք նորա քըննեն զորդիս մարդկա՛ն ։

Փա՛ռք և եր՛՛․ այժմ և միշտ՛՛ ։ Ալէ՛՛ ։

144

# ՍՂՄՈՍՔ

## ՅԱՐՈՒԹԵԱՆ ՏԵԱՌՆ ՄԵՐՈՅ

## ԸՍՏ ՈՒԹ ՁԱՅՆԻՑ



### ԱՌԱՋԻՆ ՁԱՅՆ

Ալէլուիա · Ալէլուիա · Ալէ՛լուիա ։

ԱՁ · Ողորմութեա՛մբ Տեառն լի եղև երկիր · և բանիւ Տեառն երկինք հաստատեցան ։ Եւ հոգւո՛վ բերանոյ նորա ամենայն զօրութի՛ւնք նոցա ։

ԴԻ · Ալէ՛՛ ։ Յարեա՛ւ Աստուած և ցրուեցան ամենայն թշնամի՛ք նորա ։ փախեան ատելիք նորա յերեսա՛ց նորա ·

փա՛ռք և երկր՛՛ · ա՛յժմ և միշտ՛՛ ։ Ալէ՛՛ ·



### ԱՌԱՋԻՆ ԿՈՂՄ

Ալէլուիա · Ալէլուիա · Ալէ՛լուիա ։

ԱԿ · Ծա՛փս հարէք ամենայն հեթանոսք · աղաղակեցէք առ Աստուած 'ի ձայն ցնծութեան ։ Տէ՛ր բարձրեալ և ահաւոր · թագաւոր մեծ 'ի վերայ ամենա՛յն երկրի ։

ԴԻ · Ալէ՛՛ ։ Հաճեցա՛ր Տէր ընդ երկիր քո · և դարձուցեր զգերութիւն Յա՛կոբայ ։ Թո

ղե՛ր զանիրաւութիւն ժողովրդեան քոյ. և ծածկեցեր զամենայն մեղ՛ս նոցա ։
Փա՛ռք և երկիր". այժմ և միշտ"։ Ալէ"։

## ԵՐԿՐՈՐԴ ՁԱՅՆ

Ալէլուիա. Ալէլուիա. Ալէ՛լուիա ։
ԲԶ. Յարեա՛ւ Աստուած. և ցրուեցան ամենայն թշնամի՛ք նորա ։ փախեա՛ն ատելիք նորա յերեսա՛ց նորա ։
ՏԻ. Ալէ"։ Տէ՛ր թագաւորեաց զվայելչութի՛ւն զգեցաւ ։ Զգեցա՛ւ Տէր զօրութիւն ընդ մէջ ի՛ւր էած ։
Փա՛ռք և երկիր". այժմ և միշտ"։ Ալէ"։

## ԱՒԱԳ ԿՈՂՄ

Ալէլուիա. Ալէլուիա. Ալէ՛լուիա ։
ԲԿ. Հաճեցա՛ր Տէր ընդ երկիր քո. և դարձուցեր զգերութիւն Յա՛կոբայ ։ Թողե՛ր զանիրաւութիւն ժողովրդեան քոյ. և ծածկեցեր զամենայն մեղ՛ս նոցա ։
ՏԻ. Ալէ"։ Օրհնեցէ՛ք մանկունք զՏէր և օրհնեցէք զանո՛ւն Տեառն ։ Եկեցէ՛ ա-

նուն Տեառն օրհնեալ․ յայսմ հետէ մինչև յաւիտեան ։

Փա՛ռք և երկիր″․ այ՛ժմ և մի՛շտ″ ։ Ալէ″ ։

## ԵՐՐՈՐԴ ՁԱՅՆ

Ալէլուիա․ Ալէլուիա․ Ալէ՛լուիա ։

ՂԳ․ Տէ՛ր թագաւորեաց․ զվայելչութիւն զգեցաւ ։ Զգեցա՛ւ Տէր զօրութիւն ընդ մէջ ի՛ւր էած ։

ՃԽ․ Ալէ″ ։ Պաշտեա՛ Երուսաղէմ զՏէր․ և օրհնեա՛ զԱստուած քո Սիոն ։ Զի՛ զօրացոյց զնիգս դրանց քոց․ և օրհնեաց զորդիս քո՛ ՚ի քեզ ։

Փա՛ռք և երկիր″․ այ՛ժմ և միշտ և″ ։ Ալէ″ ։

## ՎԱՌ

Ալէլուիա․ Ալէլուիա․ Ալէ՛լուիա ։

ՃԺԲ․ Օրհնեցէ՛ք մանկունք զՏէր․ և օրհնեցէք զանո՛ւնն Տեառն ։ Եղիցի՛ անուն Տեառն օրհնեալ․ յայսմ հետէ մինչև յաւիտեան ։

ՃԺ․ Ալէ″ ։ Աստուածն՛ է Տէր, և օրհնեալ է Աստուած․ և բարձր եղիցի Աստուած մեր

կութեա՛ն իմոյ ։ Աստուա՛ծ է որ խնդրէ զվրէժ իմ․ և հնազանդ առնէ զժողովուրդս ը՛նդ ինև ։

Փա՛ռք և երկիր"․ ա՛յժմ և միշտ"։ Ալէ"։

## ՉՈՐՐՈՐԴ ՁԱՅՆ

Ալէլուիա․ Ալէլուիա․ Ալէ՞լուիա ։

ԴՁ․ Գովեա՛ Երուսաղէմ զՏէր․ և օրհնեա՛ զԱստուած քո՞ Սիոն ։ Զի զօրացոյց զնիգս դրանց քոց․ և օրհնեաց զորդիս քո՛ ՚ի քեզ ։

ԴԵ․ Ալէ"։ Ողորմութեա՛մբ Տեառն լի եղև երկիր․ և բանիւ Տեառն երկինք հաստա՞տեցան ։ Եւ հոգւո՛վ բերանոյ նորա ամենայն զօրութի՞ւնք նոցա ։

Փա՛ռք և երկիր"․ ա՛յժմ և միշտ"։ Ալէ"։

## ՎԵՐՁ

Ալէլուիա․ Ալէլուիա․ Ալէ՞լուիա ։

ԴԿ․ Կենդանի՛ է Տէր և օրհնեալ է Աստուած և բարձր եղիցի Աստուած փրկութեա՞ն իմոյ․ Աստուա՛ծ է որ խնդրէ զվրէժ իմ․ և հնազանդ առնէ զժողովուրդս ը՛նդ ինև ։

Տն · Ալէ՛ ։ Ծա՛փս հարէք ամենայն հեթա
նոսք · աղաղակեցէ՛ք առ Աստուած 'ի ձայն
ցնծութեան ։ Տէ՛ր բարձրեալ և ահարկու
թագաւոր մեծ 'ի վերայ ամենայ՞ն երկրի ։
Փա՛ռք և երկիր՛՛ · ա՛յժմ և միշտ՛՛ ։ Ալէ՛ ։



# ԱԼԵԼՈՒԻԱ

## ՀԱՄԲԱՐՁՄԱՆ ՏԵԱՌՆ ՄԵՐՈՅ

### ԸՍՏ ՈՒԹ ՁԱՅՆԻՑ



### ԱՌԱՋԻՆ ՁԱՅՆ

Ալէլուիա · Ալէլուիա · Ալէ՞լուիա ։

ԱՁ · Համբարձէ՛ք իշխանք զդրունս ձեր
'ի վեր · համբարձցին դրունք յաւիտենից
և մտցէ թագաւո՞ր փառաց ։ Ո՛վ է սա թա
գաւոր փառաց · Տէր հզօր զօրութեամբ իւ
րով · Տէր կարող 'ի պատե՞րազմի ։

Տն · Ալէ՛ ։ Կա՛ռք Աստուծոյ բիւրապատի
կք · հազարք ուղղիչք · և Տէր 'ի նոսա 'ի Սի
նէ սրբութեա՞ն իւրոյ ։ Ե՛լ 'ի բարձունս և

գերեաց զգերութիւն․ էառ աւար․ բաշխեաց պարգևս, և ետ որդւո՛ց մարդկան։

Փա՛ռք և երկիր"․ այ՛ժմ և միշտ"։ Ալէ"։

---

### ԱՌԱՋԻՆ ԿՈՂՄ

Ալէլուիա․ Ալէլուիա․ Ալէ՞լուիա։

ԱԿ․ Համբարձա՛ւ Աստուած օրհնութեամբ․ և Տէր մեր ձայնի՞ւ փողոյ։ Սաղմո՛ս ասացէք Աստուծոյ մերոյ․ սաղմոս ասացէք թագաւորին մերոյ․ սաղմոս ա՛սացէք։

ՀԹ․ Ալէ"։ Որ հովուեա՛ղ Իսրայէլի․ նայեցո՛ղ որ առաջնորդես որպէս խաշին Յո՞վսէփու։ Որ նստի՛ս 'ի Քրովբէս՝ յայտնեցո՛ւ առաջի Եփրեմի, Բենիամինի և Մանա՞սէի։

Փա՛ռք և երկիր"․ այ՛ժմ և"։ Ալէլուիա։

---

### ԵՐԿՐՈՐԴ ՁԱՅՆ

Ալէլուիա․ Ալէլուիա․ Ալէ՞լուիա։

ԲՋ․ Կա՛ռք Աստուծոյ բիւրապատիկք․ հազարք ուղղիչք․ և Տէր 'ի նոսա 'ի Սինէ սրբութեա՛ն իւրոյ։ Ե՛լ 'ի բարձունս և գերեաց զգերութիւն․ էառ աւար բաշխեաց պարգևս, և ետ որդւո՛ց մարդկան։

ՏՌ. Ալէ՛՛: Որ դնէ յամպս զգնացս իւր. և շրջի նա ՚ի վերայ թևո՛ց հողմոց: Խոստովանութի՛ւն և մեծ վայելչութի՛ւն զգեցար. արկեր զլոյս որպէս զօթոց. ձգեցեր զերկինս որպէս խորան. և արկեր ՚ի վերայ ջուրց ըզ վերնայա՛րկս նորա:

Փա՛ռք և եր՛՛. այ՛ժմ և՛՛: Ալէլուիա:

ԱԻԱԳ ԿՈՂՄ

Ալէլուիա. Ալէլուիա. Ալէ՛լուիա:

ՌԿ. Որ հովուեսդ Իսրայէլի. նայեա՛ց որ առաջնորդես որպէս խաշին Յո՛վսէփու: Որ նստի՛սդ ՚ի Քրովբէս՝ յայտնեա՛ց առաջի Եփրեմի, Բենիամինի և Մանա՛սէի:

ՏՌ. Ալէ՛՛: Մե՛ծ եղև մինչև յերկինս ողորմութիւն քո. և մինչև յամպս ճշմարտո՛ւթիւն քո: Բարձրեա՛լ ես դու յերկինս Աստուած. և յամենայն երկիր են փա՛ռք քո:

Փա՛ռք և եր՛՛. այ՛ժմ և՛՛: Ալէլուիա:

ԵՐՐՈՐԴ ՁԱՅՆ.

Ալէլուիա. Ալէլուիա. Ալէ՛լուիա:

ԳՁ. Որ դնէ յամպս զգնացս իւր. և շրջի նա ՚ի վերայ թևո՛ց հողմոց: Խոստովանու

թի՛ւն և զմեծ վայելչութիւն զգեցար . ար
կեր զլոյս որպէս զօթոց . ձգեցեր զերկինս
որպէս խորան . և արկեր ՚ի վերայ ջուրց ըզ
վերնայա՛րկս նորա ։

Քհ . Ալէ՛ ։ Տէ՛ր խոնարհեցո՛ զերկինս և էջ .
մերձեցո՛ ՚ի լերինս և ծխեսցին ։ Փայլեա՛
զփայլատակունս քո և խառնեսցես զնոսա . առա
քեա՛ զնետս քո , և ցրուեա՛ ըզնոսա ։

Փա՛ռք և երկրպ" . ա՛յժմ և" ։ Ալէլուիա ։

---

ՎԸՌ

Ալէլուիա . Ալէլուիա . Ալէ՛լուիա ։

Դկ . Մե՛ծ եղև մինչև յերկինս ողորմու
թիւն քո . և մինչև յամպս ճշմարտու՛թիւն
քո ։ Բարձրեա՛լ ես դու յերկինս Աստուած .
և յամենայն երկրի են փա՛ռք քո ։

Քհ . Ալէ՛ ։ Խոնարհեցո՛յց զերկինս և էջ . և
մէգ ՚ի ներքոյ ոտի՛ց նորա ։ Ե՛լ ՚ի Քրովբէս
և թռեաւ . ուղացաւ նա ՚ի թևս հողմոց ։

Փա՛ռք և երկրպ" . ա՛յժմ և" ։ Ալէլուիա ։

---

## ՉՈՐՐՈՐԴ ՁԱՅՆ

Ալէլուիա․ Ալէլուիա․ Ալէ՛լուիա։
ԴՁ․ Յերեւա՛ց նորա ելցեն հարուածք․
և զհետ շաւղաց նորա երթիցեն մեծամեծք
՚ի թլուչնոց։ Լերի՛նք հալեցին և անտառք
վառնեցին․ ճանապարհք որք ՚ի սկզբանէն
էին կուրացին․ և ՚ի նմանէ դողացի ամե
նայն երկիր։
ԴԵ․ Ալէ"։ Համբարձէ՛ք իշխանք դրունս
ձեր ՚ի վեր․ համբարձցին դրունք յաւի
տենից և մտցէ թագաւո՛ր փառաց։ Ո՛վ է սա
թագաւոր փառաց Տէր հզօր զօրութեանց․
սա ինքն է թագաւոր փառաց։
Փա՛ռք և երկիր"․ այժմ և"։ Ալէլուիա։

---

## ՎԵՐՋ

Ալէլուիա․ Ալէլուիա․ Ալէ՛լուիա։
ԴԿ․ Խոնարհեցո՛յց զերկինս և էջ․ և մէգ ՚ի
ներքոյ ոտի՛ց նորա։ Ե՛լ ՚ի Քրովբէս և
թռեաւ․ սլացաւ նա ՚ի թեւը՛ս հողմոց։
ԴԵ․ Ալէ"։ Համբարձա՛ւ Աստուած օրհնու
թեամբ․ և Տէր մեր ձայնի՛ւ փողոյ։ Սաղմո՛ս
ասացէք Աստուծոյ մերում․ սաղմոս ասացէք

թագաւորին մերում․ սաղմոս ա՛սացէք ։
Փա՛ռք և երկիր՛՛․ այժմ և՛՛ ։ Ալէլուիա ։

# ԱԼԷԼՈՒՔ

## ՀՈԳԻՈՑ՛Ն ՍՐԲՈՑ ԳԱԼՍՏԵԱՆ
## ԸՍՏ ՈՒԹ ՁԱՅՆԻՑ

### ԱՌԱՋԻՆ ՁԱՅՆ

Ալէլուիա․ Ալէլուիա․ Ալէ՛լուիա ։

ԺԸ․ Ցանկալի՛ է նա քան զոսկի և քան զա-
կանս պատուականս բազումս, քա՛ղցր է նա
քան զմեղր՛ու խորիսխ ։ Քանզի՛ ծառայ քո
պահեսցէ զայս, ՚ի պահել նմա զհատուցու-
մն՛ն բազում ։

ԿԷ․ Ալէ՛՛ ։ Թա՛ւք աղաւնոյ արծաթապատ․
և թիկնամէջ նորա ՚ի գո՛յն ոսկւոյ ։ ՚Ի զու-
մարե՛լ երկնաւորին զթագաւորս ՚ի վերայ
նորա․ ձիւնասցին ՚ի՛ Սաղմոն ։

Փա՛ռք և երկիր՛՛․ այժմ և՛՛ ։ Ալէլուիա ։

### ԱՌԱՋԻՆ ԿՈՂՄ

Ալէլուիա․ Ալէլուիա․ Ալէ՛լուիա ։

ԱԿ․ Ոտ՛րքս սուրբք հաստատեա՛ն յիս Աս-

ուած . և զհոգի ուղիղ նորոգեա՛ 'ի փորի՞ իմում ։ Մի՛ ընկեներ զիս յերեսաց քոց . և զհոգի քո սուրբ մի՛ հաներ յինէն ։

Դե . Ալէ՛՛ . Գտի՛ զդաւիթ ծառայ իմ . և իւղով սրբով իմով օծի՛ զնա ։ Ձե՛ռն իմ ընկալցի զնա . և բազուկ իմ զօրացուսցէ՛ զնա ։

Փա՛ռք և երկր՛՛ . այ՛ժմ և՛՛ ։ Ալէլուիա ։

ԵՐԿՐՈՐԴ ՁԱՅՆ

Ալէլուիա . Ալէլուիա . Ալէ՞լուիա ։

ԲՁ . Թե՛ւք աղաւնոյ արծաթապատ . և թիկնս մէջ նորա 'ի գո՞յն ոսկւոյ ։ Ի գումարե՛լ երկնաւորին զթագաւորս 'ի վերայ նորա . ձիւնասցին 'ի՞ Սաղմոն ։

Դե . Ալէ՛՛ ։ Առաքե՛ս զոգի քո և ստանաս ըզնոսա . և նորոգես զերե՞սս երկրի ։ Եղիցի՛ն փառք Տեառն յաւիտեան . և Տէր ուրախ եղիցի յարարածս իւր ։

Փա՛ռք և երկր՛՛ . այ՛ժմ և՛՛ ։ Ալէլուիա ։

ԱՒԱԳ ԿՈՂՄ

Ալէլուիա . Ալէլուիա . Ալէ՞լուիա ։

ԲԿ . Գտի՛ զդաւիթ ծառայ իմ . և իւղով

սրբով իմով օծի՛ր զիս . Ջե՛ռն իմ ընկալցի զիս . և բազուկ իմ զօրացուսցէ՛ զիս .

Եփ. Ալէ՛. Յայտնութի՛ւն բանից քոյ լուսաւո՛ր է . և իմաստուն առնէ զտղայս . Զբերան իմ բացի և առի զհոգի . ՚ի պատուիրանս քո փափագեցա՛յ անձն իմ .

Փա՛ռք և երկըր״. այժմ և״. Ալէլուիա .

## ԵՐՐՈՐԴ ՁԱՅՆ

Ալէլուիա . Ալէլուիա . Ալէ՛լուիա .

Գ.Զ. Առաքե՛ս զոգի քո և ստանաս զնոսա . և նորոգես զերե՛սս երկրի . Եղիցի՛ն փառք Տեառն յաւիտեան . և Տէր ուրախ եղիցի յարա՛րածս իւր .

Եփ. Ալէ՛. Հոգի՛ քո սուրբ և բարի առաջնորդեսցէ ինձ ՚ի յերկի՛ր ուղիղ . Վա՛ն անուա՛ն քոյ Տէր կեցուսցես զիս . արդարութեամբ քով հանցես ՚ի նեղութենէ՛ զանձն իմ .

Փա՛ռք և երկըր״. այժմ և״. Ալէլուիա .

## ՎԱՌ

Ալէլուիա . Ալէլուիա . Ալէ՛լուիա .

Գ.Կ. Զբերա՛ն իմ բացի և առի զհոգի .

'ի պատուիրանս քո փափագեա՞ց անձն իմ։ ՙՆայեա՛ց առ իս և ողորմեա՛ց ինձ ըստ իրաւունս սիրողաց ա՛նուան քոյ։

Փխ. Ալէ"։ Ի սաստէ՛ քումմէ Տէր և 'ի շընչել հողմոյ բարկո՛ւթեան քոյ։ Յառաքեա՛ց 'ի բարձանց՝ և ընկալաւ զիս. ընկալաւ զիս. 'ի ջո՛ւրց բազմաց։

Փա՛ռք և երկիր". ա՛յժմ և"։ Ալէլուիա։

---

ՉՈՐՐՈՐԴ ՁԱՅՆ

Ալէլուիա. Ալէլուիա. Ալէ՞լուիա։

Դ.Չ. Որպէս իւ՛ղ զի իջանէ 'ի գլուխ և 'ի մօրուսն Ահարոնի. և 'ի մօրուացն իջանէ 'ի գրապանս զգեստո՛ւ նորա։ Որպէս ցօ՛ղ զի ցօղի 'ի Հերմոնէ 'ի վերայ լերին Սի՛օնի։

Փխ. Ալէ"։ Ի վայրի՛ դալարում անդ բնակեցոյց զիս. և առ ջուրըս հանգստեան ս՛նոյց զիս։ Դարձո՛յց զանձն իմ առ իս. և առաջնորդեաց ինձ 'ի ճանապարհս արդարութեան վասն անուա՛ն իւրոյ։

Փա՛ռք և երկիր". ա՛յժմ և"։ Ալէլուիա։

---

### ՎԵՐՋ

Ալէլուիա․ Ալէլուիա․ Ալէլուիա։

Դկ․ Ի սաստէ՛ քումմէ Տէր և 'ի շընչել հոգւոյ բարկո՛ւթեան քոյ։ Առաքեա՛ց 'ի բարձանց, և ընկալաւ զիս ընկալաւ զիս 'ի ջո՛ւրց բազմաց։

Էփ․ Ալէ՛․ Սի՛րտ սուրբ հաստատեա՛ յիս Աստուած․ և զհոգի ուղիղ նորոգեա՛ 'ի փորի՛ իմում։ Մի՛ ընկեններ զիս Տէր յերեսաց քոց․ և զհոգի քո սուրբ մի՛ հանե՛ր յինէն։

Փա՛ռք և եր՛․ այժմ և՛։ Ալէլուիա։

## ԱԼԷԼՈՒՔ

### ՍՐԲՈՅ ԽԱՉԻ

### ԱՌԱՋԻՆ ՁԱՅՆ

Ալէլուիա․ Ալէլուիա․ Ալէլուիա։

ԱՁ․ Ցո՛ւպ քո և գաւազան, նոքա մխիթարե՛ցին զիս։ Պատրա՛ստ արարեր առաջի իմ զսեղան․ ակն յանդիման նեղչա՛ց իմոց։

Էփ․ Ալէ՛․ Ե՛տուր երկիւղածաց քոց նշան․ զի ապրեսցին յերեսաց ա՛ղեղան։ Ար

պէ՛ս փրկեցան սիրելիք քո . կեցո՛ աջով քով և՜ լո՛ւր մեզ ։

Փա՛ռք և երկր″ , այժմ և միշտ″ ։ Ալէ″ ։

### ԱՌԱՋԻՆ ԿՈՂՄ

Ալէլուիա . Ալէլուիա . Ալէ՜լուիա ։

ԱԿ . Նե՛տք քո սրեալ են Հզօր . և ժողովուրդք ՚ի ներքոյ քոյ անկցին . ՚ի սիրտս թշնամեաց թագա՜ւորի ։ Աթո՛ռ քո Աստուած յաւիտեանս յաւիտենից . գաւազան ուղղութեան՝ գաւազան արքայո՞ւթեան քոյ ։

ՏԷ . Ալէ″ ։ Տո՛ւր զօրութիւն ծառայի քոյ . կեցո՛ զորդի աղախնոյ քոյ . և արա՛ առիս նշան բա՞րութեան ։ Տեսցե՛ն ատելիք իմ և ամաչեսցեն . զի դու Տէր օգնեցեր ինձ՝ և մխիթարեցեր զիս ։

Փա՛ռք և երկր″ . այժմ և միշտ″ ։ Ալէ″ ։

### ԵՐԿՐՈՐԴ ՁԱՅՆ

Ալէլուիա . Ալէլուիա . Ալէ՜լուիա ։

ԲՁ . Ետո՛ւր երկիւղածաց քոց նշան . զի ապրեսցին յերեսաց ա՜ղեղան ։ Որպէ՛ս փրր

կեցան սիրելիք քո․ կեցո՛ աջով քով և լուր մեզ ։

Զի․ Ալէ″։ Գո՛ւ պատրաստեցեր զուղղութիւն և զիրաւունս․ և զարդարութիւն Յակովբայ դու արարեր ։ Բա՛րձր արարէք ըզ զՏէր Աստուած մեր․ երկիրպագէք պատուանդանի ոտից նորա զի սուրբ է ։

Փա՛ռք և երկլր″․ այժմ և միշտ″։ Ալէ″։



ԱՒԱԳ ԿՈՂՄ

Ալէլուիա․ Ալէլուիա․ Ալէլուիա ։

Բկ․ Տո՛ւր զօրութիւն ծառայի քո․ կեցո՛ զորդի աղախնոյ քո․ և արա՛ առիս նշան բարութեան ։ Տեսցե՛ն ատելիք իմ և ամաչեսցեն․ զի դու Տէր օգնեցեր ինձ՝ և մխիթարեցեր զիս ։

Զի ։ Ալէ″։ Ա՛սաց Տէր ցՏէր իմ, նիստ ընդ աջմէ իմմէ․ մինչև եդից զթշնամիս քո պատուանդան ոտից քոց ։ Գաւազա՛ն զօրութեան առաքեսցէ քեզ Տէր 'ի սիոնէ․ և տիրեսցես դու 'ի մէջ թշնամեաց քոց ։

Փա՛ռք և երկլր″․ այժմ և միշտ″։ Ալէ″։



## ԵՐՐՈՐԴ ՁԱՅՆ

Ալէլուիա · Ալէլուիա · Ալէ՞լուիա ։
ԳՁ · Դո՛ւ պատրաստեցեր զուղղութիւն և զիրաւունս · և զարդարութիւն Յակովբայ դու արարեր ։ Բա՛րձր արարէք զՏէր Աստուած մեր · երկիրպագէք պատուանդանի ոտից նորա զի՛ սուրբ է ։
ՏԻ · Ալէ'' ։ Յայտնեցի՛ն երկինք զվայելչութիւն փառաց նորա · և օրհնութեամբ նորա լցան ամե՛նայն երկիրք ։ Ճառագա՛յթք որ պէս 'ի լուսոյ հատան 'ի նմանէ · և եղջիւրք 'ի ձեռին նորա դան · և անդ հաստատե՛ցաւ զօրութիւն փառա՛ց նորա ։
Փա՛ռք և երկրպ'' · ա՛յժմ և միշտ'' ։ Ալէ'' ։

---

## ՎԱՌ

Ալէլուիա · Ալէլուիա · Ալէ՞լուիա ։
ԳԿ · Ասա՛ց Տէր ցՏէր իմ, նի՛ստ ընդ աջմէ իմմէ · մինչև եդից զթշնամիս քո պատուանդան ո՛տից քոց ։ Գաւազա՛՛ն զօրութեան առաքեսցէ քեզ Տէր 'ի սիօնէ · և տիրեսցես դու 'ի մէջ թշնա՛մեաց քոց ։
ՏԻ · Ալէ'' ։ Իշխանեցա՛ւ առ մեզ լոյս երե

սաց քոց․ և ետուր ուրախութիւն սրբտի՞ց մերոց ։ ՚Ի պտղո՜յ ցորենոյ գինւոյ և ձիթոյ իւրեանց լցուցեր ը՞զ նոսա ։

Փա՜ռք և երկիր"․ ա՜յժմ և միշտ և"։ Ալէ"։

## ՉՈՐՐՈՐԴ ՁԱՅՆ

Ալէլուիա․ Ալէլուիա․ Ալէ՞լուիա ։

Դ․Զ․ Յայտնեցե՜ն երկի՜նք զվայելչութիւն փառաց նորա․ և օրհնութեամբ նորա լցան տի՞եզերք ։ Ճառագա՜յթք որպէս ՚ի լուսոյ հատան ՚ի նմանէ․ և եղջիւրք ՚ի ձեռին նորա դտան․ և անդ հաստատեցաւ զօրութիւն փառա՞ց նորա ։

Դ․Է․ Ալէ"։ Ցո՜ւպ քո և գաւազան՝ նոքա մխիթարե՞սցեն զիս ։ Պատրա՜ստ արարեր առաջի իմ ըզսեղան․ ակն յանդիման նեղչա՞ց իմոց ։

Փա՜ռք և երկիր"․ ա՜յժմ և միշտ և"։ Ալէ"։

## ՎԵՐՋ

Ալէլուիա․ Ալէլուիա․ Ալէ՞լուիա ։

Դ․Կ․ Նշանեցա՜ւ առ մեզ լոյս երեսաց քոց․ և ետուր ուրախութիւն սրբտի՞ց մերոց ։

’ի պտղո՛յ ցորենոյ գինոյ և ձիթոյ իւրեանց
լցուցեր ըզ՚նոսա ։
Տէ․ Ալէ՛․ Սե՛ռք քո սրբեալ են հզօր․ և
ժողովուրդք ’ի ներքոյ քոյ անկցին․ ’ի սիրտս
թշնամեաց թագա՛ւորի ։ Աթո՛ռ քո Աստ-
ուած յաւիտեանս յաւիտենից․ գաւազան
ուղղութեան՝ գաւազան արքայո՛ւթեան քո ։
Փա՛ռք և երկըր՛․ այժմ և միշտ և՛ ։ Ալէ՛ ։



# ԱԼԷԼՈՒՔ

## ԵԿԵՂԵՑԻՈՅ



### ԱՌԱՋԻՆ ՁԱՅՆ

Ալէլուիա․ Ալէլուիա․ Ալէ՞լուիա ։

ԱՁ․ Լըսե՛լ ինձ զձայն օրհնութեան քո ։
և պատմել զամենայն սքանչե՛լիս քո ։ Տէ՛ր
սիրեցի զվայելչութիւն տան քո․ և զտեղի
յարկի փա՛ռաց քոց ։
Տէ․ Ալէ՛․ Երանի՛ զոր ընտրեցեր և ընկա
լար․ և բնակեսցին ’ի գաւի՛թս քո ։ Լցցո՛ւք մեք ’ի բարութենէ տան քո․ սուրբ

է տաճար քո սքանչելի արդա՛րութեամբ ։
Փա՛ռք և երկիր"․ ա՛յժմ և"։ Ալէ"։

ԱՌԱՋԻՆ ԿՈՂՄ

Ալէլուիա․ Ալէլուիա․ Ալէ՛լուիա ։
Ակ․ Մե՛ծ է Տէր և օրհնեալ է յոյժ․ 'ի քաղաք Աստուծոյ մերոյ 'ի լեառն սո՛ւրբ նորա ։ Հաստարմա՛ն ցնծացէ ցնծութեամբ ամենայն երկիր․ լերինք սիօնի՝ կողմանք հիւսիսոյ՝ 'ի քաղաք թագաւորի՛ մեծի ։
ժե․ Ալէ"։ Հիմո՛ւնք նորա 'ի լեառն սուրբ նորա․ սիրէ Տէր զդրունս սիօնի առաւել քան զամենայն յարկսն Յա՛կովբայ ։ Փառաւորեա՛լն խօսեցաւ վասն քո․ ահաւադիկ քաղաքդ Աստուծո՛յ ։
Փա՛ռք և երկիր"․ ա՛յժմ և միշտ"։ Ալէ"։

ԵՐԿՐՈՐԴ ՁԱՅՆ

Ալէլուիա․ Ալէլուիա․ Ալէ՛լուիա ։
ԲՁ․ Երանի՛ զոր ընտրեցեր և ընկալար․ և բնակեսցին 'ի գաւի՛թս քո ։ Լցցո՛ւք մեք 'ի բարութենէ տան քոյ․ սուրբ է տաճար քո սքանչելի արդա՛րութեամբ ։

ԺԷ. Ալէ՛: Դո՛ւ Տէր յաւիտեան կաս. և յիշատակ քո յազգէ մի՛նչև յազգ: Դո՛ւ յարուցեալ գթասցիս ՚ի վերայ սիոնի. ժամանակ գթալոյ նորա հասեա՛լ է ժամ:

Փա՛ռք և երկր՛. այժմ միշտ և՛: Ալէ՛:

---

ԱՒԱԳ ԿՈՂՄ

Ալէլուիա. Ալէլուիա. Ալէ՛լուիա:

ԲԿ. Հիմո՛ւնք նորա ՚ի լեառն սուրբ նորա. սիրէ Տէր զդրունս սիոնի առաւել քան զամենայն յարկսն Յա՛կովբայ: Փառաւորեա՛լն խօսեցաւ վասն քոյ. ահաւադիկ քաղաքդ Ա՛ստուծոյ:

ԺԷ. Ալէ՛: Այսօ՛ր է զոր արար Տէր. եկայք ցնծասցուք և ուրախ եղիցո՛ւք ՚ի սմա: ՚Ի Տեառնէ՛ եղև այս. և է սքանչելի առաջի աչա՛ց մերոց:

Փա՛ռք և եր՛. այժմ և՛: Ալէլուիա:

---

ԵՐՐՈՐԴ ՁԱՅՆ

Ալէլուիա. Ալէլուիա. Ալէ՛լուիա:

ԳՁ. Դո՛ւ Տէր յաւիտեան կաս. և յիշատակ քո յազգէ մի՛նչև յազգ: Դո՛ւ յարու

ցեալ գըլթացիս 'ի վերայ սիոնի . ժամանակ
գթալոյ նորա հասեա՞լ է ժամ :
Քր. Ալէ": Խոստովա՛ն եղէց քեզ Տէր բո
լորով սրտիւ իմով . առաջի հրեշտակաց սաղ
մոս ասա՞ցից քեզ : Օ՛ր լուա՛ր զբանս բերա
նոյ իմոյ . երկիրպագից 'ի տաճար սուրբ քո .
և խոստովան եղէց անուան քում վասն ողոր
մութեան և ճշմարտութեան քոյ :
Փա՛ռք և երկըր". ա՛յժմ և": Ալէ՞լուիա :

ՎԱՌ

Ալէլուիա . Ալէլուիա . Ալէ՞լուիա :
Գկ. Այսօ՛ր է զոր արար Տէր . եկայք ցըն
ծասցուք և ուրախ եղիցո՞ւք 'ի սմա : 'Ի
Տեառնէ՛ եղև այս . և է սքանչելի առաջի
աչա՞ց մերոց :
Քր. Ալէ": Տէ՛ր ով կացցէ 'ի խորանի քում .
կամ ո՛վ բնակեսցի 'ի լերա՞ն սուրբ քո :
Ո՛ր գընայ անբի՛ծ . գործէ զարդարութիւն .
և խօսի զճշմարտութիւն 'ի սրտի իւրում :
Փա՛ռք և երկըր". ա՛յժմ և միշտ": Ալէ":

## ՉՈՐՐՈՐԴ ՁԱՅՆ

Ալէլուիա․ Ալէլուիա․ Ալէ՛լուիա։

Դ․Զ․ Ուրա՛խ եղէ ես ոյք ասէին ցիս, ՚ի տուն Տեառն երթի՛ցուք մեք։ Հաստատե՛լ կային ոտք մեր առ դրունս քո Երուսաղէմ։

Եւ․ Ալէ″։ Լսե՛լ ինձ զձայն օրհնութեան քոյ․ և պատմել զամենայն սքանչելի՛ս քո։ Տէ՛ր սիրեցի զվայելչութիւն տան քոյ․ և զտեղի յարկի փա՛ռաց քոց։

Փա՛ռք և երկրը″․ ա՛յժմ և միշտ″։ Ալէ″։

---

## ՎԵՐՋ

Ալէլուիա․ Ալէլուիա․ Ալէ՛լուիա։

Դ․Կ․ Տէ՛ր ով կացցէ ՚ի խորանի քում․ կամ ո՛վ բնակեսցի ՚ի լեառ՛ն սուրբ քո։ Ո՛ր գնայ անբիծ․ գործէ զարդարութիւն․ և խօսի զճշմարտութիւն ՚ի սրտի՛ իւրում։

Եւ․ Ալէ″։ Մե՛ծ է Տէր և օրհնեալ է յոյժ․ ՚ի քաղաքի Աստուծոյ մերոյ ՚ի լեառն սո՛ւրբ նորա։ Հաստատարմա՛տ ցնծութեամբ ցնծասցէ ամենայն երկիր․ լերինք սիօնի՝ կողմանք հիւսիսոյ՝ ՚ի քաղաք Թագաւորի՛ մեծի։

Փա՛ռք և երկրը″․ ա՛յժմ և միշտ″։ Ալէ″։

# ԱԼԷԼՈՒԻԱ

## 'Ի ՏՕՆԻ ՀՐԵՇՏԱԿԱՊԵՏԱՑ

Ալէլուիա · Ալէլուիա · Ալէ՛լուիա ։

Ծա՛րար զհրեշտակս իւր յոգիս, և զպաշտօնեայս իւր 'ի հուր կիզելոյ ։ Հաստատեա՛ց զերկիր 'ի վերայ հաստատութեան իւրոյ · զի մի սասանեսցի յա՛ւիտեան ։

Տն · Ալէ" ։ Օրհնեցէ՛ք զՏէր յերկնից · օրհնեցէք զնա 'ի՛ բարձունս ։ Օրհնեցէ՛ք զնա ամենայն հրեշտակք նորա · օրհնեցէք զնա ամենայն զօրութի՛ւնք նորա ։

Փա՛ռք և երկրպ" · այժմ և միշտ" ։ Ալէ" ։

Դա՛սք հրեշտակաց օրհնեն զքեզ ՔՐԻՍ-ՏՈՍ ալէ՛լուիա · մարդկա՛ն ազգ սաղմոսեն քեզ · Ալէլուիա՛ ։

Դարձեալ

Թագաւոր յաւիտեան ։

Երկինք և երկիր գոհանան ընդ քե՛ն Տէր · արարածք ամենայն քեզ երկրպագանեն · և հրեշտակք 'ի բարձունս աղաղակեն և ասեն · ողորմեա դու ստեղծե՛ր, մի կորուսանե՛ր ։

ՍԴ. Երկինք երկնից, ջուրք որ ՚ի վերոյ
քան զերկինս. օրհնեսցեն զանուն
Տեառն։ Օ ի նա ասաց. և եղեն, հրամայ
եաց և հաստատեցան. և հրեշտակք ՚ի։
ՏԵ. Երկինք և երկիր հանապազ
որդ քեզ գովեն. Թագաւոր փառաց.
Սերովբէք և Քերովբէք ՚ի խո
նարհ ունելով ըզդէմս իւրեանց.
և միաձայն բարբառով աղաղակեն և
ասեն. սուրբ. սուրբ. սուրբ. Տէր
զօրութեանց.

## ԱԼԷԼՈՒԻԱ
### ՂԱԶԱՐՈՒ ՅԱՐՈՒԹԵԱՆ

### ԱՌԱՋԻՆ ՁԱՅՆ

Ալէլուիա. Ալէլուիա. Ալէլուիա։

ԱՁ. Բարձր առնեմ զքեզ զՏէր, զի ըն
կալար զիս. և ոչ ուրախ արարեր ըզթշնա
միս իմ ինև։ Տէր Աստուած իմ կարդացի
առ քեզ և բժշկեցեր զիս. Տէր հաներ ՚ի

դժոխոց զանձն իմ. փրկեցեր զիս յայնցա-
նէ՝ որք իջանեն ՚ի գուբ ։

Եր. Ալէ՞։ Հանե՛ր զիս ՚ի գբոյ տառապա-
նաց. ՚ի կաւոյ և ՚ի տղմոյ ։ Հաստատեա՛ց
՚ի վերայ վիմի զոտս իմ. և ուղղեաց զգնա-
ցս իմ ։

Փա՛ռք և երկիր՞. այժմ և միշտ՞ ։ Ալէ՞ ։

# ԱԼԼԷԼՈՒԻԱ

## ԾԱՂԿԱԶԱՐԴԻ ՈՂՈԳՈՄԵԱՆ

### ԿԻՐԱԿԷ ։

### ԱՌԱՋԻՆ ԿՈՂՄ

Ալէլուիա. Ալէլուիա. Ալէ՛լուիա ։

Կր. Տէր Աստուա՛ծ մեր երևեցաւ մեզ.
արարէք տօնս ուրախութեան կանխաւ, մին-
չև յանկիւնս սեղանոյ ։ Աստուա՛ծ իմ ես
դու, և խոստովան եղէց քեզ. Աստուած
իմ ես դու՝ և բարձր արարից զքեզ ։

Եր. Ալէ՞։ Եկա՛յք ցնծասցուք առաջի
Տեառն, զի գայ և հասանէ Տէր ՚ի դա-
տե՛լ զերկիր. Դատե՛լ զաշխարհս արդա-

րու թեամբ . և զժողովուրդս իւր ո՛ւղղու թեամբ ։

Փա՛ռք և երկիր՝ . այժմ և միշտ՝ ։ Ալէ՝ ։



# ԱԼԷԼՈՒԻՔ

## ԱՒՈՒՐՑ ԱՒԱԳ ՇԱԲԱԹՈՒՆ



### ԱՒԱԳ ԵՐԿՈՒՇԱԲԹԻ ։

### ԵՐԿՐՈՐԴ ՁԱՅՆ

Ալէլուիա . Ալէլուիա . Ալէ՛լուիա ։

ԲՀ . Օ ի նա՛ ասաց և եղեն . հրամայեաց և հաստա՛տեցան ։ Կարգեա՛ց զնոսա յաւիտեա՛նս յաւիտենից . սահման եդ՝ և ո՛չ ա՛նցանէին ։

ՏԷ . Ալէ՝ ։ Ի՛ սկզբանէ Տէր զհիմունս երկրի հաստատեցեր . և գործք ձեռաց քոց ե՛ր կինք են ։ Նոքա՛ կորնչին . և դու կաս և մնաս յա՛ւիտեան ։

Փա՛ռք և երկիր՝ . այժմ և միշտ՝ ։ Ալէ՝ ։



### ԱՒԱԳ ԵՐԵՔՇԱԲԹԻ ։

### ԱՒԱԳ ԿՈՂՄ

Ալէլուիա . Ալէլուիա . Ալէ՛լուիա ։

ԴՀ . Կայցէ՛ դշխոյ ընդ աջմէ քումմէ . ի

Հանդերձ ոսկեհուռս զարդարեալ և պա՛
ճուճեալ ։ Լո՛ւր դուստր և տես ․ խոնարհե
ցո՛ զունկն քո ․ մոռա՛ ըզժողովուրդ քո և
ըզտուն հօր քոյ ․ զի ցանկացաւ Թագաւոր
գե՛ղոյ քոյ ։

Քե ․ Ալէ" ։ Տարցի՛ն Թագաւորի կուսանք
զհետ նորա ․ և զընկերս նորա տարցի՛ն
նմա ։ Ածցի՛ն ցնծութեամբ և ուրախու
թեամբ ․ և տարցին ՚ի տաճար Թագաւորի ․
և փոխանակ հարց քոց եղիցին ո՛րդիք քո ։

Փա՛ռք և երկիր" ․ ա՛յժմ և մի՛շտ" ։ Ալէ" ։

## ԱՒԱԳ ՉՈՐԵՔՇԱԲԹԻ ․

### ԵՐՐՈՐԴ ՁԱՅՆ

Ալէլուիա ․ Ալէլուիա ․ Ալէ՛լուիա ։

Դ․Հ․ Որ ուտէ՛ր զհաց իմ ․ յաճախեաց առ
նել ինձ զխաբէ՛ութիւն ։ Այլ դո՛ւ Տէր
ողորմեա՛ ինձ ․ և կանգնեա՛ զիս ․ և ես հատու
ցի՛ց նոցա ։

Քե ․ Ալէ" ։ Խորհեցա՛ն և խօսեցան զչարու
թիւն ․ և զապիրատութիւն ՚ի բարձունս
խո՛րհեցան ։ Եդի՛ն յերկինս զբերանս

խուրբեանց · և զնեղուս խուրբեանց ածէի՛ն զերկ րաւ ։

փա՛ռք և երկիր″ · այժմ և միշտ″ ։ Ալէ″ ։

ԱՒԱԳ ՀԻՆԳՇԱԲԹԻ ։

ՎԱՌ

Ալէլուիա · Ալէլուիա · Ալէ՛լուիա ։

ԽՀ · Լուացէ՛ց սրբութեամբ ՝զձեռս իմ · և շուրջ եղէց զսեղանո՛վ քո Տէր ։ Տէ՛ր սիրե ցի զվայելչութիւն տան քո · և զտեղի յար կի փա՛ռաց քոց ։

ԷԻ ։ Ալէ″ ։ Պատրա՛ստ արարեր առաջի իմ զսեղան · ակն յանդիման նեղչա՛ց իմոց ։ Օծե՛ր իւղով ըզգլուխ իմ · բաժակ քո որպէս անապակ արբե՛ցոյց զիս ։

փա՛ռք և երկիր″ · այժմ և միշտ″ ։ Ալէ″ ։

ԱՒԱԳ ՈՒՐԲԱԹ ։

ՉՈՐՐՈՐԴ ՁԱՅՆ

Ալէլուիա · Ալէլուիա · Ալէ՛լուիա ։

ՈՒՐ · Ելե՛ր դու ՚ի կառս քո · Հեծելու թիւն փրկութիւն եղև յերևանե՛լըն քո ։ Զար թեա՛ւ աղեղն քո զնետս կապարճից քոց ար

բեցուցեր · զզգեստ ցրուեցեր · զերկիր դո
ղացուցեր 'ի սաստկութենէ անձրևի ։ որք
անցանէին ընդ սա ։ Ընդ որ՛ նոքա աղաղակե
ցին մեծաձայն · լոյս փայլման արեգականն
արգելաւ · և ծագումն լուսնին դադարե
ցաւ ։

Տէ · Ալէ″ ։ Մատնեցա՛յ և ոչ ելանէի · աչք
իմ տկարացան յաղքատութենէ ։ Աղաղա
կեցի՛ առ Տէր զօրհանապազ · և համբարձի
առ քեզ ըզ ձեռս իմ ։

Փա՛ռք և երկրպ″ · այ՛ժմ և միշտ″ ։ Ալէ″ ։

ԱՒԱԳ ՇԱԲԱԹ ։

ՎԵՐՁ

Ալէլուիա · Ալէլուիա · Ալէ՞լուիա ։

ՇԲ · Եդի՛ն զիս 'ի գբի ներքնում · 'ի խա
ւարի և 'ի ստուերս մահու ։ Յի՛ս հաս
տատեցաւ սրտմտութիւն քո · զամենայն ըզբօ
սանս քո ածեր 'ի վ՟րայ իմ ։

Տէ · Ալէ″ ։ Եղէ՛ ես որպէս մարդ առանց
օգնականի · և 'ի մեռեալս ազատ ։ Որպէ՛ս
վիրաւորս որք ննջեն 'ի գերեզմանի ։

Փա՛ռք և երկրպ″ · այ՛ժմ և միշտ″ ։ Ալէ″ ։

Ցայս օրհնունէ:

Ինքն 'ի գերեզմանի դընաց և 'ի տապանի ամփոփեցաւ: Քաղցրացան նըմա խիճք հեղեղատի. և զհետ նորա ամենայն մարդ գնասցէ:

Փառք և երկիր". այժմ և միշտ": Ամէն":



# ԱԼԷԼՈՒՔ

## ՊԱՅԾԱՌԱԿԵՐՊՈՒԹԵԱՆՆ ՔՐԻՍՏՈՍԻ

ՈՐ ԱՍԻ

ՎԱՐԴԱՎԱՌ



ԿԻՐԱԿԷ

Ալէլուիա. Ալէլուիա. Ալէլուիա:

Կիր. Քո են երկինք, և քո է երկիր. զաշխարհ լրիւ իւրով դու հաստատեցեր: զհիւսիս և զծովս դու արարեր. Թաբոր և Հերմոն յանուն քո ցնծասցեն:

Տէ. Ամէն": Բարձրութիւնք լերանց նորա են. նորա է ծով. և նա արար զնա. և

զցամաք ձեռաք նորա ըստեղծին ։ Եկայք երկիրպագցուք նմա · անկցուք և լացցուք առաջի Տեառն արարչին մերոյ ։
Փառք և երկրր″ · այժմ և″ ։ Ալէլուիա ։

ԵՐԿՈՒՇԱԲԹԻ

Ալէլուիա · Ալէլուիա · Ալէլուիա ։
ԲՀ · Զի բարձրութիւնք լերանց նորա են · նորա է ծով · և նա արար զնա · և զցամաք ձեռաք նորա ըստեղծին ։ Մովսէս և Ահարոն երիցունք նորա · Սամուէլ ընդ այնոսիկ որք կարդան զանուն նորա ։
ԳԻ · Ալէ″ ։ Երկինք ցնծասցեն առաջի Տեառն , զի գայ և հասեալ է Տէր 'ի դատել զերկիր ։ Դատէ զաշխարհս արդարութեամբ · և զժողովուրդս իւր ուղղութեամբ ։
Փառք և երկրր″ · այժմ և″ ։ Ալէլուիա ։

ԵՐԵՔՇԱԲԹԻ

Ալէլուիա · Ալէլուիա · Ալէլուիա ։
ԳՀ · Ի ձեռս նորա են ամենայն տիեզերք երկրի · և բարձրութիւնք լերանց նորա

ան ։ Նորա՛ է ծով և նա արար զնա · և զցամաքն ձեռք նորա ստեղծին ։

ԷԽ · Ալէ՛ ։ Լերի՛նք որպէս մոմ հալեցին յերեսաց Տեառն · յերեսաց Տեառն ամենա՛յն երկիր ։ Պատմեցի՛ն երկինք զարդարութիւն նորա · և տեսցեն ամենայն ժողովուրդք զփառս նորա ։

Փա՛ռք և երկիրպագութիւն Հօր և Որդւոյ և Հոգւո՛յն սրբոյ · այ՛ժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից · Ա՛մէն ։ Ալէլուիա ։

# ԿԱՐԳԱՒՈՐՈՒԹԻՒՆ

## ՀԱՍԱՐԱԿԱՑ ԱՂՕԹԻՑ
## ՀԱՅԱՍՏԱՆԵԱՅՑ ԵԿԵՂԵՑՒՈՅ
## ՈՐ ԿԱՏԱՐԻ ՅԱՌԱՒՕՏՈՒ ԺԱՄՈՒ
## 'Ի ԴԷՄՍ ՈՐԴՒՈՅՆ ԱՍՏՈՒԾՈՅ
## ՈՐ
## ԵՐԵՒԵՑԱՒ ԻՒՂԱԲԵՐԻՑՆ



Օրհնեալ Տէր մեր Յիսուս Քրիստոս · Ամէն ։
Հայր մեր որ յերկինս ես" ։

ԼՑԱՔ առաւօտու ողորմութեամբ քով · ցնծացաք և ուրախ եղաք զամենայն աւուրս կենաց մերոց ։

Ուրախ եղաք փոխանակ աւուրցն՝ յորս խոնարհ արարեր զմեզ · և ամացն՝ յորս տեսաք զչարչարանս ։ Հայեա՛ Տէր 'ի ծառայս քո և 'ի գործս ձեռաց քոց , և առաջնորդեա՛ որդւոց նոցա · եղիցի լոյս Տեառն Աստուծոյ 'ի վերայ մեր ։ Զգործս ձեռաց մե-

րոց ուղղեա՛ առ 'ի մեզ Տէր . և զգործս ձեռաց մերոց յաջողեա՛ մեզ ։

Փառք Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ ։

Այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից . Ամէն ։

Եւ ես խաղաղութեան զՏէր աղաչեսցուք ընկա՛լ կեցո՛ և ողորմեա՛ ։

Օրհնութիւն և փառք Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ . այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից . Ամէն ։

## ՕՐՀՆՈՒԹԻՒՆ

### ԵՐԻՑ ՄԱՆԿԱՆՑՆ ԴԱՆԻԷԼԻ

Օրհնեալ ես Տէր Աստուած հարցն մերոց , օրհնեալ փառաւորեալ անուն քո յաւիտեան ։

Յիրաւունս անցուցեր զայս ամենայն ընդ մեզ . արդարեւ դու Տէր , և ամենայն գործք քո ճշմարիտ են ։

Ճանապարհք քո ուղիղ են , և ամենայն դատաստանք քո արդար են ։

Դատաստան արդարութեան ածեր 'ի վերայ մեր ըստ ամենայնի , զոր ինչ ածեր 'ի

վերայ մեր և քաղաքի սրբոյ Հարցն մերոց Երուսաղեմի ։

Արդարութեամբ և յիրաւի ածեր զայս ամենայն 'ի վերայ մեր վասն մեղաց մերոց ։

Անօրինեցաք և յանցեաք ապստամբք լինել 'ի քէն, մեղաք յամենայնի և պատուիրանաց քոց մեք ոչ անսացաք ։

Ոչ պահեցաք և ոչ արարաք որպէս պատուիրեցեր դու մեզ, զի զբարիս գտցուք մեք 'ի քէն ։

Արդ՝ զամենայն զոր արարեր և զոր ինչ ածեր 'ի վերայ մեր, արդար դատաստանաւ արարեր ։

Մատնեցեր զմեզ 'ի ձեռս թշնամեաց մերոց, անօրինաց՝ խստաց՝ և ապստամբողաց ։

'Ի ձեռս թագաւորի անօրինի և չարի քան զամենայն երկիր, մատնեցեր զմեզ ։

Եւ արդ՝ ոչ գոյ մեզ ժամ բանալ զբերանս մեր, զի ամօթ և նախատինք եղաք ծառայից քոց պաշտօնէից ։

Այլ մի մատներ զմեզ իսպառ վասն անուան քո . մի ցրեր զուխտս քո . և մի 'ի բացեայ առներ զողորմութիւնս քո 'ի մէնջ ։

Վասն Աբրահամու սիրելւոյ քո, Իսահակայ ծառայի քո, և Իսրայէլի սրբոյ քո ։

Խոստացար նոցա և ասացեր, բազմացուցից զզաւակ ձեր որպէս զաստեղս երկնից բազ-

մութեանն և որպէս զաւազ առ եզր ծովու ։

Եւ արդ Տէր՝ նուաղեցաք մեք քան զամենայն ազգս . և եմք տառապեալ յամենայն երկրի այսօր վասն մեղաց մերոց ։

Ոչ գոյ 'ի ժամանակի յայսմիկ իշխան , մարգարէ և առաջնորդ . ո՛չ ողջակէզք պատարագաց , ո՛չ խունկք օրհնեաց , և ո՛չ տեղի պատարագս մատուցանելոյ առաջի քո և ողորմութիւն գտանել 'ի քէն ։

Այլ անձամբք խոնարհեալ՝ և հոգւով տառապանաց ընդունելի լիցուք մեք որպէս զողջակէզս խոյոց և զուարակաց . և որպէս զբիւրաւորս գառանց պարարտաց ։

Այնպէս ընդունելի լիցին պատարագք մեր այսօր առաջի քո . զի կատարեալ գտցուք զկնի քոյ . և չիք ամօթ յուսացելոց 'ի քեզ ։

Եւ արդ՝ գամք զհետ քո ամենայն սրտիւք մերովք , երկնչիմք 'ի քէն և խնդրեմք զերեսս քո , Տէր մի՛ յամօթ առներ զմեզ ։

Այլ արա՛ առ մեզ ըստ հեզութեան քում, և ըստ բազում ողորմութեան քում, փրկեա՛ զմեզ վասն սքանչելեաց քոց Տէր , և փառաւորեսցի անուն քո յաւիտեան ։

Յամօթ լիցին ամենեքեան , որ չարչարեն զծառայս քո , ամաչեցեալ լիցին բռնութիւնք նոցա և ամենայն զօրութիւնք նոցա խորտակեսցին ։

Եւ ծանիցեն զի դու ես Տէր Աստուած միայն, որ փառաւորեալդ ես 'ի վերայ ամենայն տիեզերաց։

Օրհնեալ ես դու Տէր Աստուած հարցն մերոց, գովեալ և առաւել բարձրացեալ յաւիտեան։

Եւ օրհնեալ է անուն սուրբ փառաց քոց, գովեալ և առաւել բարձրացեալ յաւիտ″։

Օրհնեալ ես 'ի տաճարի փառաց սրբութեան քո, գովեալ և առաւել բարձրա″։

Օրհնեալ ես 'ի վերայ աթոռոյ արքայութեան քո, գովեալ և առաւել բարձրա″։

Օրհնեալ ես որ նստիս 'ի Քրովբէս և հայիս յանդունդս, գովեալ և առաւել բար″։

Օրհնեալ ես 'ի վերայ հաստատութեան երկնից, գովեալ և առաւել բարձրաց″։

Օրհնեցէք ամենայն գործք Տեառն զՏէր· օրհնեցէք և բարձր արարէք զնա յաւիտեան։

Օրհնեցէք երկինք զՏէր· օրհնեցէք և բարձր արարէք զնա յաւիտեան։

Օրհնեցէք հրեշտակք Տեառն, և ջուրք որ 'ի վերոյ երկնից զՏէր· օրհնեցէք և բա″։

Օրհնեցէք զօրութիւնք Տեառն, արեգակն և լուսին զՏէր· օրհնեցէք և բարձր″։

Օրհնեցէք աստեղք երկնից՝ անձրևք և ցօղք զՏէր· օրհնեցէք և բարձր արարէք″։

Օրհնեցէք ամենայն հողմք, հուր և ջեր

զՏէր. օրհնեցէք և բարձր արարէք զնա″։

Օրհնեցէք ցուրտ և տօթ, ցօղ և ձիւնաբեր զՏէր. օրհնեցէք և բարձր արարէք″։

Օրհնեցէք սառն և պարզ, եղեամն և ձիւն զՏէր. օրհնեցէք և բարձր արարէք″։

Օրհնեցէք տիւք և գիշերք, լոյս և խաւար զՏէր. օրհնեցէք և բարձր արարէք″։

Օրհնեցէք ամպք և փայլատակունք և երկիր զՏէր. օրհնեցէք և բարձր արարէք″։

Օրհնեցէք լերինք, բլուրք և ամենայն բոյսք երկրի զՏէր. օրհնեցէք և բարձր″։

Օրհնեցէք աղբիւրք, ծովք և գետք զՏէր. օրհնեցէք և բարձր արարէք զնա″։

Օրհնեցէք կէտք և ամենայն կայտառք, որ 'ի ջուրս, և թռչունք երկնից զՏէր. օրհնեց″։

Օրհնեցէք գազանք և անասունք, և որդիք մարդկան զՏէր. օրհնեցէք և բարձր″։

Օրհնեսցէ Իսրայէլ զՏէր. օրհնեսցէ և բարձր արասցէ զնա յաւիտեան։

Օրհնեցէք քահանայք զՏէր. օրհնեցէք և բարձր արարէք զնա յաւիտեան։

Օրհնեցէք ծառայք Տեառն զՏէր. օրհնեցէք և բարձր արարէք զնա յաւիտեան։

Օրհնեցէք անձինք, և շունչք արդարոց զՏէր. օրհնեցէք և բարձր արարէք զնա″։

Օրհնեցէք սուրբք և խոնարհք սրտիւք զՏէր. օրհնեցէք և բարձր արարէք″։

Օրհնեցէք Անանիա Ազարիա և Միսայէլ զՏէր. օրհնեցէք և բարձր արարէք"։
Փառք Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ։
Այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. Ամէն։

## ՄԱՂԹԱՆՔ

Օրհնեցէք ամենայն արարածք զարարիչն արարածոց, զՏէրն տերանց, զԹագաւորն թագաւորաց, զԱստուածն աստուածոց։ Օրհնեցէք՝ գովեցէք՝ բարեբանեցէք. զի քաղցր է, զի յաւիտեան է ողորմութիւն նորա։

## ԿԱՆՈՆ

### ՍՐԲՈՑ ՅԱՐՈՒԹԵԱՆՆ ՔՐԻՍՏՈՍԻ

ՀԱՐՑ. ՇԱՐԱԿԱՆ ԱՌԱՋԻՆ ՁԱՅՆ

Հ. ԱՁ. Որ եկիր 'ի փրկութիւն տիեզերաց թագաւոր յաւիտենից ՔՐԻՍՏՈՍ. զքեզ փառաւորեմք Աստուած հարցըն մերոց։ Յանձն առեր ըղչարչարանս կամաւորապէս. և ըզմահ ճաշակեցեր

վայելուն մեր · զգեստ փառաց"։ Կնքեցար
վիմով 'ի գերեզմանի · և լուծեր զկ-
նիք մահու յանցանաց · զգեստ փառաց"։
Է · Օրհնեցէք ամենայնագործք Տեառն
զՏէր օրհնեցէք բարձր արարէք
զնա յաւիտեանս ։ Օ յարուցեալն 'ի
մեռելոց ՔՐԻՍՏՈՍ Աստուած · որ զ-
մահ խափանեաց յարութեամբն իւ-
րով · բարձր"։ Օ սքանչելի Յարութե-
նըն ՔՐԻՍՏՈՍԻ Աստուծոյ · ամենայն
ժողովուրդք բարեբանելով · բարձր"։

## ԿԱՆՈՆ

### ՍՐԲՈՑ ՀՐԵՇՏԱԿԱՊԵՏԱՑ

#### ՀԱՐՑ · ՇԱՐԱԿԱՆ ԱՒԱԳ ԿՈՂՄ

Հ ·
Գկ · Ընդսկիզբն Հայր · առաջին լոյս
անճառելի · որ 'ի լուսոյ լոյս ներգոր-
ծեալ զիմանալեաց դասուն · ընդ քեզ
օրհնեմք Աստուած Հայրըն մերոց ։
Իակիցդ Հօր · 'ի լուսոյ լոյս ծա-
գումն Որդի · որ արարեր 'ի պաշտօն

փառաց քոց զհրեղէնացն զօրս. ընդ քեզ։ Դ. Հօրէ բղխումն փառակից Որդւոյ Հոգիդ անեղ. որ ըստեղծեր ՚ի յոգիս կատարեալ զհողեղինացն դաս. ընդ քեզ օրհնեմք Աստուած։

Դ. Օրհնեցէք ամենայն գործք Տեառըն ըզՏէր օրհնեցէք բարձր արարէք յաւիտեանս. Երկնային զուարթունք հրեշտակք եւ հրեշտակապետք. վերին պետութիւնք. բարձր արարէք ըզհայրն երկնաւոր։ Անմարմնոց բազմութիւնք՝ իշխանութիւնք զօրութիւնք. անմահ տէրութիւնք. բարձր արարէք զՔՐԻՍՏՈՍ թագաւորն։ Վեցթեւեան Սերովբէք քառակերպեան Քերովբէք. աթոռք անեղին. բարձր արարէք ըզ Հոգին ճշմարիտ։

# ԿԱՆՈՆ

## ՍՐԲՈՑ ՄԱՐԳԱՐԷԻՑ

### ՀԱՐՑ · ՇԱՐԱԿԱՆ ՉՈՐՈՐԴ ՁԱՅՆ

Հ. Դ.Զ. Որ ընդ հողեղէն բնութեան մերոյ
խառնեցեր ըզբանական հոգին. ու-
նել զօրութիւն ընդունելոյ. զԱստ-
ուածային և զհոգևոր ըզշնորհս իջեալ
ի վերուստ. օրհնեալ Տէր Աս-
տուած հարցըն մերոց։ Որ շնորհեցեր
մաքուր հոգւոց յԻսրայէլի զհոգի մար-
գարէութեան. որով ծանուցեր յա-
ռաջագոյն. բազմապատիկ օրինակօք
զանճառելի խորհուրդ քո մարդեղու-
թեան. օրհնեալ"։ Որ զանեղ գոյիդ լի-
նելութիւն իբրև զեղեալ տեսանէին.
յառաջնորդական մտացն նոցա. տպա-
ւորեալ Հոգւով ըզվերապատրան իւրեն գե-
րագոյն հրաշիւք ի վեր քան ըզբան.
օրհնեալ Տէր Աստուած"։

Գ. Օրհնեցէք ամենայն գործք Տեառն
ըզՏէր օրհնեցէք բարձր արարէք ըզնա

յաւիտեանս. Ընդ աւետմանն յառա-
ջագոյն փրկութեան մերոյ. ծափս հա-
րէք եկեղեցիք հեթանոսաց աղաղակե-
լով. ընդՏէր օրհ". Ընդ տեսանողաց մար-
գարէից հինն Եսայեայ. քահանայք
նորոյ ուխտիս ըսպասաւորք. ընդ Տէր".

## ԿԱՆՈՆ

### ԱՊԱՇԽԱՐՈՒԹԵԱՆ

#### ՀԱՐՑ. ՇԱՐԱԿԱՆ ԱՌԱՋԻՆ ՁԱՅՆ

Հ.
ԱՁ. Որ հայիս քաղցրութեամբ յարա-
րածս քո Հայր ամենակալ. օրհնեալ
ես Աստուած հարցն մերոց. Որ
իջեր 'ի փրկել զարարածս քո Որդի
միածին. օրհ". Որ խնամես տեսչու-
թեամբ զարարածս քո Հոգիդ ճշմա-
րիտ. օրհնեալ ես Աստուած".

Զ. Օրհնեցէք ամենայն գործք քո ըզ-
քեզ օրհնեն. Որ յոչընչէ գոյացուցեր
զերկինս եւ զերկիր. յեչեա զմեզ
Տէր մարդասիրութեամբ քո. ամ

նայն ։ Որ անդադար փառաւորանես ՚ի քո յարարածոց · ընկալ զաղաչանըս սուրբ Եկեղեցւոյ քո · ամենայն ։

## ԿԱՆՈՆ

### ՀԱՄՕՐԷՆ ԱՌԱՔԵԼՈՑ

### ՀԱՐՑ · ՇԱՐԱԿԱՆ ԱՌԱՋԻՆ ՁԱՅՆ

Հ · ԱՁ · Առաքեց Բանն Հօր և Հոգւոյն · որ իջեր ՚ի յերկնից ՚ի փրկութիւն ազգի մարդկան · Աստուած հարցն մերոց ։ Որ պահեցեր յաղթող զմխիթարութիւն սրբոց առաքելոցն · այսօր և մեք ընդ նոսին ցնծութեամբ օրհնեմք զքեզ · Աստուած ։ Որ առաւել բարձրացեալդ ես յաւիտենից · այսօր ընդ դասս վերնոց քոց բարեբանեմք զքեզ · Աստուած ։

Գ · Օրհնեցէք ամենայն գործք Տեառն ըզՏէր օրհնեցէք բարձր արարէք ըզնա յաւիտեան ։ Որ ընտրեաց զերանելի առաքեալսն և նոքօք որսաց ՚ի հաւատս ըզտիեզերըս ՔՐԻՍՏՈՍ · բարձր ։ Որք

ըղ խաւար կռապաշտութեանցըն վանե ցին և ըղ լոյս գիտութեան ընդհանուր յերկիր ծաւալեցին · ընդ նոսին բարձր ։

# ԿԱՆՈՆ

## ՀԱՄՕՐԷՆ ՆՆՋԵՑԵԼՈՑ Ի ՔՐԻՍՏՈՍ

### ՀԱՐՑ · ՇԱՐԱԿԱՆ ԱՌԱՋԻՆ ՁԱՅՆ

Հ · ԱՁ · Օրհնեալ ես դու Քրիստոս · որ յարեարդ ի մեռելոց ողորմած և կոխե ցեր ըզմահ · Տէր Աստուած հարցըն մերոց ։ Որ մահկանացուացս կենդանարար եղես · զհոգիս ննջեցելոց մեր ընկալ · Տէր Աստուած ։ Զորս փոխեցեր յաշխարհէն կենդանեաց · հանգըստեան ար ժանաւորեա · Տէր Աստուած ։

Գ , Օրհնեցէք ամենայն դործք Տեառն ըզՏէր օրհնեցէք · և բարձր արարէք ըզնա յաւիտեանս ։ Եցէք Որ գալոցն է զօրութեամբ բազմաւ · ազդ մամբ ձայնի կենդանարարէ ըզննջեցեալսն · ըզՏէր օրհնեցէք ։ Եոցէ Աղաչեմք ըղ

քեզ բարերար. հանգո՛ զհոգիս ծառայից քոց ընդ սուրբս քո. օրհնեսցուք և բարձր արասցուք զանուն քո յաւիտեան։

## ԿԱՆՈՆ
## ՀԱՄՕՐԷՆ ՄԱՐՏԻՐՈՍԱՑ

### ՀԱՐՑ · ՇԱՐԱԿԱՆ ԱՌԱՋԻՆ ՁԱՅՆ

Հ · ԱՁ · Զքեզ արդարև ուղղերգ դասաւորք ՚ի մէջ սրբոց քոց բարեբանեն. հարցըն մերոց Աստուած օրհնեալ ես յաւիտեան։ Զքեզ որ ՚ի հնոցն էջեր ապաւէն. խոնարհեալ ՚ի գունդս մարտիրոսաց գովին. հարցըն։ Զքեզ որ ահաւոր թագաւոր յաւիտենից. այսօր ընդ դասս վըկայից քոց բարեբանեմք. հարցըն։

Է · Օրհնեցէք ամենայն գործք Տեառն զՏէր օրհնեցէք. բարձր արարէք զնա յաւիտեան։ Ընդունելին երկնից և հրեղինաց ՚ի հողեղինաց հնձեցաւ ընտրեալ իւր զինուորս. բարձ.։ Աստի և մեք հա

ւատա՛ցեալքըս Քրի՛ստոսի՛ Աստո՛ւծո՛յ . ը՛նդ նոսին խընդրե՛լով ը՛զթո՛ղութիւն մեղա՛ց մե՛րո՛ց . բարձր ա՛րարէ՛ք ըզ"։

## ՔԱՐՈԶ

Զկնի հաւըշին ։

Եկեալքս ամենեքեան ՚ի սուրբ կաթուղիկէ և առաքելական Եկեղեցի, աղաչեսցուք զմիածին Որդին Աստուծոյ, զՏէրն մեր և զՓրկիչն ՅԻՍՈՒՍ ՔՐԻՍՏՈՍ ։ Որ էջ փառօք Հօր ՚ի մէջ հնոցին . և փրկեաց զերիս մանկունսն ՚ի Քաղդէացւոց անտի ։ Լուսաւոր և սուրբ պահեսցէ զմիտս մեր . զի մի երբէք խաբեսցուք մեք ՚ի մեղաց, և ՚ի ցանկութենէ աշխարհի ։ Այլ արժանի եղիցուք պահել զպատուիրանս նորա . առնուլ ըզպսակն լուսոյ և կենաց ՚ի յանձինս մեր ։ Օ որ խոստացաւ սիրելեաց իւրոց ճշմարիտն Աստուած ՅԻՍՈՒՍ ՔՐԻՍՏՈՍ Տէր մեր . կեցո՛ և ողորմեա՛ ։

# ԱՂԱԹԱՆՔ

## ԿԻՐԱԿԷԻՑ

ԵՒ

## ԱՑԼՈՑ ՏԷՐՈՒՆԱԿԱՆ ՏՕՆԻՑ

Տէր ողորմեա՛ · Տէր ողորմեա՛ · Տէր ողորմեա՛ ։

Զօր՝ յաղթօղ՝ սքանչելագործ, սուրբ մեծի Յարութեանն ՔՐԻՍՏՈՍԻ Աստուծոյ մերոյ վայելէ փառք իշխանութիւն և պատիւ, այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից ։



# ԱՂԱԹԱՆՔ

## ՄԱՐՏԻՐՈՍԱՑ

Յօղեա՛ Տէր զցօղ բարերար ողորմութեան քո 'ի մեռուցեալ անձինս մեր · շիջո՛ զբոց հնոցի յանցանաց մերոց · և փրկեա՛ ըզմեզ 'ի յաւիտենական հրոյն ։ Որ արժանի ըրիր սուրբ մանկունսն՝ և ընդ երանելի սուրբ վկայսն՝ օրհնել զքեզ և գովել, և քեզ գոհութիւն և փառս մատուցանել Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ, այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից · Ամէն ։



# ՄԱՂԹԱՆՔ

## ՊԱՀՈՑ

Յօղեա՛ Տէր զցօղ բարերար ողորմութեան քո 'ի մեղուցեալ անձինս մեր. շիջո՛ զբոց հնոցի յանցանաց մերոց. և փրկեա՛ ըզմեզ 'ի յաւիտենական հրոյն: Որպէս արժանի ընդ երիս սուրբ մանկունսն՝ և ընդ երանելի սուրբ վկայսն՝ օրհնել զքեզ, գովել և ասել:
Աստուած քաւեա՛ զիս զմեղաւորս:
Աստուած քաւեա՛ զիս զմեղաւորս:
Աստուած քաւեա՛ զիս զմեղաւորս 'ի մեղաց, և կեցո՛:



# ԵՐԳ

## ՄԱՐԻԱՄՈՒ ԱՍՏՈՒԱԾԱԾՆԻՆ

Մեծացուսցէ անձն իմ զՏէր, և ցնծասցէ հոգի իմ Աստուծով փրկչաւ իմով:

Այց արար 'ի վերայ խոնարհութեան աղախնոյ իւրոյ, այսուհետև երանեսցեն ինձ ամենայն ազգք:

Արար ընդ իս մեծամեծս հզօրն, և սուրբ է անուն նորա:

Ողորմութիւն արար ազգաց յազգս երկիւ-

ղածաց իւրոց , արար զօրութիւն բազկաւ իւրով ։

Յրուեաց զամբարտաւանս 'ի մտաց սրտից , և քակեաց զհզօրս յաթոռոց ։

Զխոնարհս բարձրացոյց՝ զկարօտս ելից բարութեամբ , և զմեծատունս արձակեաց ունայնս ։

Պաշտպանեաց Իսրայէլի ծառայի իւրոյ , յիշելով զողորմութիւն իւր ։

Որպէս խօսեցաւ առ հարսն մեր՝ ընդ Աբրահամու և զաւակի նորա յաւիտեան ։

ՕՐՀՆՈՒԹԻՒՆ ԶԱՔԱՐԻԱՅԻ ՀՕՐՆ ՅՈՎՀԱՆՆՈՒ ՄԿՐՏՉԻՆ ։

Օրհնեալ Տէր Աստուած Իսրայէլի որ յայց ել , և արար փրկութիւն ժողովրդեան իւրոյ ։

Յարոյց մեզ եղջիւր փրկութեան 'ի տանէ Դաւթի ծառայի իւրոյ , որպէս խօսեցաւ բերանովք սրբոցն որ յաւիտենից մարգարէքն էին ։

Փրկութիւն 'ի թշնամեաց մերոց , և 'ի ձեռաց ամենայն ատելեաց մերոց ։

Առնել ողորմութիւն առ հարսն մեր , և յիշել զկտակարանս սրբութեան իւրոյ ։

Երդումն զոր երդուաւ Աբրահամու հօր մերոյ , տալ մեզ առանց երկիւղի զփրկութիւն 'ի թշնամեաց մերոց ։

Պաշտել զնա սրբութեամբ և արդարութեամբ առաջի նորա, զամենայն աւուրս կենաց մերոց ։

Եւ դու մանուկ՝ մարգարէ բարձրելոյն կոչեսջիր, գնասցես առաջի Տեառն պատրաստել զճանապարհս նորա ։

Տալ զգիտութիւն փրկութեան ժողովրդեան իւրոյ, 'ի թողութիւն ամենայն մեղաց մերոց ։

Վասն գթոյ ողորմութեան Տեառն Աստուծոյ մերոյ՝ որով երևեցաւ մեզ արեգակն 'ի բարձանց, լուսաւոր առնել զխաւար մեր ։

Ծագել լոյս 'ի վերայ այսոցիկ, որ նըստէաք 'ի խաւարի և 'ի ստուերս մահու, ուղղել զոտս մեր 'ի ճանապարհս խաղաղութեան ։

ԱՂՕԹՔ ՍԻՄԷՈՎՆԻ ԾԵՐՈՒՆՈՅՆ ։

Արդ՝ արձակես զծառայս քո Տէր՝ ըստ բանի քում 'ի խաղաղութիւն, զի տեսին աչք իմ զփրկութիւն քո՝ զոր պատրաստեցեր առաջի ամենայն ժողովրդոց ։

Լոյս յայտնեցար հեթանոսաց, և փառք ժողովրդեան քում Իսրայէլի ։

Փառք Հօր և Որդւոյ" ։ այժմ և միշտ և" ։

---

# ԿԱՆՈՆ

## ՍՐԲՈՑ ՅԱՐՈՒԹԵԱՆՆ ՔՐԻՍՏՈՍԻ



ՄԵԾԱՑՈՒՍՑԷ · ՀԱՐԱԿԱՆ ԱՌԱՋԻՆ ՁԱՅՆ

· Մ ·
ԱՁ · Յանճառ փառաց խոնարհեցար 'ի
մեր բնութիւնս · Բանդ Աստուած
և մարմնացար 'ի սրբոյ կուսէն ։ Եւ
ծնար 'ի սուրբ կուսէ՝ անապական մարմ
նով · ընդ քեզ անդադար բարեբա
նեալ · մեծացուցանեմք ։ Այսօր զե
կեալդ 'ի փրկութիւն ազգի մարդկան ·
միաբանութեամբ ամենեքեան · մեծա
ցուցանեմք ։

# ԿԱՆՈՆ

## ՍՐԲՈՑ ՀՐԵՇՏԱԿԱՊԵՏԱՑ



ՄԵԾԱՑՈՒՍՑԷ · ՀԱՐԱԿԱՆ ԱՌԱՋԻՆ ՁԱՅՆ

Մ :
Դկ · Մայր և կոյս աղախին Քրիստոսի ·
որ բարեխօսդ ես միշտ աշխարհի · քեզ
երանեն ամենայն ազինք ։ Մաքուր

աղաւնի և հաւքն երկնից Մարիամ. տաճար և աթոռ Աստուածոյ Բանին. քեզ երանեմք: Քեզ հաճեցան իմանալիքն ընդ հողեղէնքս. և քեզ մերձեցաք ի փայտըն կենաց. քեզ:

## ԿԱՆՈՆ
### ՍՐԲՈՑ ՄԱՐԳԱՐԷԻՑ

ՄԵԾԱՑՈՒՍՑԷ. ՇԱՐԱԿԱՆ ՁՈՐՐՈՐԴ ՁԱՅՆ

Մ. ԴՁ. Անարատ կոյս Աստուածածին Մարիամ սրբուհի և մայր ՔՐԻՍՏՈՍԻ. յոր գանձի տարար զանտանելին ամենեցուն. օրհնութեամբ ընդ քեզ Աստուածածին մեծացուցանեմք: Ընդ քեզ երկնային դուռն զոր ետեսն Եզեկիէլ. և ասրն զոր ծանեաւ Գեդէոն. Սերովբէ հրեղէն վեհագոյն Քերովբէից. օրհնութ: ԵՐՈՒՍ ԽՈՐՀՈՒՐԴԸՍ ՍՈՍԿԱԼԻՍ ի քեզ տեսանի Աստուածածին. յղութիւն անսերմնական. ծնունդ անարատ. կուսու

թուն յետ ծննդեան մնալով անապական · օրհնութեամբ զքեզ:

## ԿԱՆՈՆ ԱՊԱՇԽԱՐՈՒԹԵԱՆ

### ՄԵԾԱՑՈՒՍՑԷ · ՀԱՐԱԿԱՆ ԱՌԱՋԻՆ ՁԱՅՆ

Մ · ԱՁ · Ըզքեզ երկնաւոր դուռն ա Եզեկիէլ ըմարգարէիւ · ընդ որ ոչ ոք էանց եթէ ոչ Աստուած միայն · Աստուածածին կոյս · օրհնութեամբ մեծացուցանեմք : Ըզքեզ որ ի մորենւոջն ա Մովսէսի ըմարգարէիւ · ըզնոր խորհուրդ կուսին յայտնեցեր մարդկան ազգի · օրհ : Ըզքեզ որ ի Հօրէ անժամանակապէս եւ ի մօրէ անթարգմանաբար · ի ժամանակի ծննդեան ի բոլորից փրկութեան յայտնեցար Որդի բարձրելոյն · օրհ:

# ԿԱՆՈՆ

## ՀԱՄՕՐԷՆ ԱՌԱՔԵԼՈՑ



### ՄԵԾԱՑՈՒՍՑԷ · ՇԱՐԱԿԱՆ ԱՌԱՋԻՆ ՁԱՅՆ

Մ · ԱՁ · Այսօր ընծիւք ծաղկօք վարդիւք · ցնծացեալք ընդ գալուստ հոգւոյն սրբոյ · Ածացուցանել զերկրորդն ի հօրէ · Այսօր ցնծային առաքեալքն · զարդարեալք ի շնորհաց հոգւոյն սրբոյ · Ալ · Այսօր ըզուարճացան արարածք · ճշմարիտ գալստեամբ հոգւոյն սրբոյ · Ալ ·



# ԿԱՆՈՆ

## ՀԱՄՕՐԷՆ ՆՆՋԵՑԵԼՈՑ Ի ՔՐԻՍՏՈՍ



### ՄԵԾԱՑՈՒՍՑԷ · ՇԱՐԱԿԱՆ ԱՌԱՋԻՆ ՁԱՅՆ

Մ · ԱՁ · Յարուցելոյն ի մեռելոց բնակարան մայր եւ կոյս · որ ընծընծեցեալ Աստուածամայր կենդանագործէ առաքելական ·

զքեզ մեծացուցանեմք որ օրհնեալդ ես 'ի կանայս ։ Արարողին երկնի եւ երկրի եղեր տաճար եւ առագաստ ․ որ ըզ նընջեցեալսն մեր հրեղէն նորոգէ ․ ըզ քեզ մեծա՛՛ ։ Կերակրողին անեղերաց արբուցեր ըզքո սուրբ ըզկաթն ․ որ ըզ նընջեցեալսն մեր փըրկութին նորոգէ ․ զքեզ մեծացուցանեմք որ օրհնեալդ՛՛ ։

## ԿԱՆՈՆ

### ՀԱՄՕՐԷՆ ՄԱՐՏԻՐՈՍԱՑ

#### ՄԵԾԱՑՈՒՍՑԷ․ ՇԱՐԱԿԱՆ ԱՌԱՋԻՆ ՁԱՅՆ

Մ․
ԱՁ․ Որ զաւետիս հոգւոյն 'ի հրեղէն 'ի հրեշտակէն ընկալար ․ ուրախ լեր բերկրեալդ․ Տէր ընդ քեզ Մարիամ անհարսնացեալ ։ Անըսկիզբըն Բանին հաճեցաւ առնուլ մարդեղութեամբն ըսկիզբըն 'ի կուսէդ ․ ՔՐԻՍՏՈՍ Աստուած թագաւորն յաւիտենից ։ Աղաչեմք ըզ քեզ սուրբ Աստուածածին ․ սա ՔՐԻՍՏՈՍ

բա՛րեխօսեա՛ փը՞րկե՛լ ըզժո՛ղո՛վո՛ւրդս իւր · զոր գնեաց ա՛րեա՛մբն իւրո՛վ ։

## ՔԱՐՈԶ

Ձ̃նի Դձայուոյէին ։

Սուրբ զԱստուածածինն՝ և զամենայն սուրբս բարեխօս արասցուք առ Հայր 'ի յերկինս · զի կամեցեալ ողորմեսցի՝ և գթասցեալ կեցուսցէ զարարածս իւր ։ Ամենակալ Տէր Աստուած մեր կեցո՛ և ողորմեա՛ ։

## ԱՂՕԹՔ

### ՄԱՐՏԻՐՈՍԱՑ ԵՒ ՊԱՀՈՑ

Ընկա՛լ Տէր զաղաչանս մեր՝ բարեխօսութեամբ սուրբ Աստուածածնին անարատ ծնողի միածնի որդւոյ քոյ · և աղաչանօք ամենայն սրբոց քոց · և որոց այսօր է յիշատակ ։ Լո՛ւր մեզ Տէր , և ողորմեա՛ · ներեա՛ քաւեա՛ և թո՛ղ զմեղս մեր ։ Արժանաւորեա՛ գոհութեամբ փառաւորել զքեզ ընդ Որդւոյ և ընդ սրբոյ Հոգւոյդ , այժմ և միշտ և" ։

# ՔԱՐՈԶ

## ԿԻՒՐԱԿԷԻՑ ԱՒՈՒՐՑ

Ձայնէ Դժուարագոյէին ։

Եւ եւս խաղաղութեան զՏէր աղաչեսցուք ։

Վասն սուրբ տեղւոյս շինութեան, և բարեկարգութեան · զՏէր աղաչեսցուք ։

Տէր ողորմեա ։

Վասն ժողովրդեանս՝ որք մտանեն ընդ դրունս սրբոյ Եկեղեցւոյ · զՏէր աղաչես" ։

Տէր ողորմեա ։

Վասն ընդունելոյ զպատարագս սոցա ըստ մեծի ողորմութեան իւրում · զՏէր աղա" ։

Տէր ողորմեա ։

Եւ եւս միաբան վասն ճշմարիտ և սուրբ հաւատոյս մերոյ՝ զՏէր աղաչեսցուք ։

Տէր ողորմեա ։

Զանձինս մեր և զմիմեանս Տեառն Աստուծոյ ամենակալին յանձն արասցուք ։

Քեզ Տեառնդ յանձն եղիցուք ։

Ողորմեաց մեզ Տէր Աստուած մեր՝ ըստ մեծի ողորմութեան քում · ասասցուք ամենեքեան միաբանութեամբ ։

Տէր ողորմեա · Տէր ողորմեա · Տէր ողորմեա ։

# ԱՂՕԹՔ

Դու ես Թագաւոր յաւիտեանս յա-
ւիտենից · Քրիստոս Աստուած մեր ։ Եւ քեզ
ընդ Հօր և Հոգւոյդ Սրբոյ վայելէ փառք
իշխանութիւն և պատիւ · այժմ և միշտ և
յաւիտեանս յաւիտենից · Ամէն ։



# ԵՐԳ

## ԻՒՂԱԲԵՐԻՑ ԱՒԵՏԱՐԱՆԻՆ

Եղիցի անունն Տեառն
օրհնեալ ՚ի յայսմ հետէմմա
օ մինչև ՚ի յաւիտեան
ձմմմն ։

Օրհնեցէք մանկունք զՏէր և օրհ-
նեցէք զանունն Տեառն ։

Եղիցի անուն Տեառն օրհնեալ յայ-
սմ հետէ մինչև ՚ի յաւիտե-
եան ։

Յարևելից մինչև ՚ի մուտս արևու օրհ-
նեալ է անունն Տեառն · ՚ի յայ-
սմ հետէ մինչև ՚ի յա ։

Փառք և երկրպագութիւն Հօր և

# ԱՒԵՏԱՐԱՆՔ
## ԻՒՂԱԲԵՐԻՑ
## ԸՍՏ ՈՒԹ ՁԱՅՆԻՑ



### ԱՒԵՏԱՐԱՆ
ԸՍՏ
### ՄԱՏԹԷՈՍԻ
(ԳԼ. ԻԸ. Հ. Ա.)

ԱՒԱԳ ԿՈՂՄ ԵՒ ՎԵՐՋ.



Սարկաւագն: *Օրթի:*

Քահանայն: *Խաղաղութիւն ամենեցուն:*

Դպիրքն: *Եւ ընդ հոգւոյդ քում:*

Սարկաւագն: *Երկիւղածութեամբ լուարուք:*

Քահանայն: *Սուրբ Աւետարանն* ՅԻՍՈՒՍԻ ՔՐԻՍՏՈՍԻ *որ ըստ:*

Դպիրքն: *Փառք քեզ Տէր Աստուած մեր:*

Սարկաւագն: *Պռօսխումէ:*

Դպիրքն: *Ասէ Աստուած:*

*Վասն Յարութեան Տեառն մերոյ*
ՅԻՍՈՒՍԻ ՔՐԻՍՏՈՍԻ:

ԲԿ. ԳԿ. } Ի *յերեկոյի շաբաթուն՝ յորում լուսանայր միաշաբաթին, եկն Մարիամ*

Մագդաղենացի , և միւս Մարիամ՝ տեսանել զգերեզմանն : Եւ ահա շարժումն մեծ եղև . զի հրեշտակ Տեառն իջեալ յերկնից՝ մատուցեալ ՚ի բաց թաւալեցոյց զվէմն ՚ի դրաց անտի , և նստէր ՚ի վերայ նորա : Եւ էր տեսիլ նորա իբրև զփայլակն , և հանդերձ նորա սպիտակ իբրև զձիւն : Եւ յահէ անտի նորա խռովեցան պահապանքն , և եղեն իբրև զմեռեալս : Պատասխանի ետ հրեշտակն՝ և ասէ ցկանայսն . մի երկնչիք դուք , գիտեմ զի զՅԻՍՈՒՍ զխաչեալն խնդրէք . Ոչ է աստ , քանզի ՅԱՐԵԱՒ , որպէս ասացն : Եկա՛յք տեսէք զտեղին ուր կայր : Եւ վաղվաղակի երթա՛յք ասացէք աշակերտացն նորա՝ թէ ՅԱՐԵԱՒ . և ահա յառաջանայ քան զձեզ ՚ի Գալիլեա , անդ տեսանիցէք զնա . ահա ասացի ձեզ : Եւ ելեալ վաղվաղակի ՚ի գերեզմանէ անտի ահիւ և խնդութեամբ բազմաւ՝ ընթանային պատմել աշակերտացն : Եւ ահա պատահեաց նոցա ՅԻՍՈՒՍ՝ և ասէ . ո՛ղջ էք : և նոքա մատուցեալ կալան զոտս նորա՝ և երկիրպագին նմա : Յայնժամ ասէ ցնոսա ՅԻՍՈՒՍ . մի՛ երկնչիք , երթա՛յք ասացէք եղբարցն իմոց՝ զի երթիցեն ՚ի Գալիլեա , և անդ տեսցեն զիս : Իբրև նոքա գնացին , ահա ոմանք ՚ի զօրականացն եկին ՚ի քաղաքն՝ և պատմեցին քահանայապետիցն զամենայն

որ ինչ եղեն ։ Այլ նոքա ժողովեալ համագերձ ծերովքն խորհուրդ առեալ՝ արծաթ յոյժ ետուն զօրականացն , Այլ ասեն ․ ասասջիք՝ եթէ աշակերտքն նորա եկեալ գիշերի գողացան զնա՝ մինչ մեք 'ի քուն էաք ։ Այլ եթէ լուր լիցի այդ առ դատաւորն , մեք հաճեսցուք զնա՝ և զձեզ անհոգս արասցուք ։ Այլ նոքա առեալ զարծաթն , արարին որպէս ուսանն ․ և ել համբաւս այս 'ի հրէից մինչև ցայսօր ։

Իսկ մետասան աշակերտքն գնացին 'ի Գալիլեա 'ի լեառնն՝ ուր ժամադիր եղև նոցա ՅԻՍՈՒՍ ։ Եւ իբրև տեսին զնա , երկիրպագին նմա ․ և ոմանք յերկուացան ։ Եւ մատուցեալ ՅԻՍՈՒՍ խօսեցաւ ընդ նոսա՝ և ասէ ։ տուաւ ինձ ամենայն իշխանութիւն յերկինս և յերկրի ․ որպէս առաքեաց զիս Հայր , և ես առաքեմ զձեզ ։ Գնացէք այսուհետև՝ աշակերտեցէք զամենայն հեթանոսս ․ մկըրտեցէք զնոսա ՅԱՆՈՒՆ ՀՕՐ՝ և ՈՐԴՒՈՑ՝ և ՀՈԳՒՈՅՆ ՍՐԲՈՅ ։ Ուսուցէք նոցա պահել զամենայն՝ զոր ինչ պատուիրեցի ձեզ ․ և ահաւասիկ ես ընդ ձեզ եմ զամենայն աւուրս , մինչև 'ի կատարած աշխարհի ։ Մատթ․ Հ․ 20 ։

զքեզ մեծացուցանեմք որ օրհնեալդ ես ՚ի կանայս ։ Արարողին երկնի և երկրի եղեր տաճար և առագաստ · որ ըզ նընջեցեալըն մեր հրեղէն նորոգէ · ըզ քեզ մեծա″ ։ Կերպարանողին աներեւութից արարուցեր ըզքո սուրբ ըզկաթն · որ ըզ նընջեցեալըն մեր վերըստին նորոգէ · զքեզ մեծացուցանեմք որ օրհնեալդ ։

## ԿԱՆՈՆ

## ՀԱՄՕՐԷՆ ՄԱՐՏԻՐՈՍԱՑ



### ՄԵԾԱՑՈՒՍՑԷ · ՇԱՐԱԿԱՆ ԱՌԱՋԻՆ ՁԱՅՆ

Մ ·
ԱՁ · Որ զաւետիս հոգւոյն ՚ի հրեղէն ՚ի հրեշտակէն ընկալար · ուրախ լեր բերկրեալդ Տէր ընդ քեզ Մարիամ անհարսնացեալ ։ Ընդ սկիզբըն Բանին հաճեցաւ անուն մարդեղութեանն ըսկիզըն ՚ի կուսէդ · ՓՌՒ ՍՏՈՍ Աստուած Թագաւորն յաւիտենից ։ Աղաչեմք ըզքեզ սուրբ Աստուածածին · առ ՓՌՒՍՏՈՍ

բարեխօսեա՛ փրկե՛լ ըզժողովուրդս իւր․ զոր գընեաց արեամբն իւրով։

## ՔԱՐՈԶ

Զկնի Դէծացուոյէին։

Սուրբ զԱստուածածինն՝ և զամենայն սուրբս բարեխօս արասցուք առ Հայր ՚ի յերկինս․ զի կամեցեալ ողորմեսցի՝ և գթացեալ կեցուսցէ զարարածս իւր։ Ամենակալ Տէր Աստուած մեր կեցո՛ և ողորմեա՛։

## ԱՂՕԹՔ

### ՄԱՐՏԻՐՈՍԱՑ ԵՒ ՊԱՀՈՑ

Ընկա՛լ Տէր զաղաչանս մեր՝ բարեխօսութեամբ սուրբ Աստուածածնին անարատ ծնողի միածնի որդւոյ քոյ․ և աղաչանօք ամենայն սրբոց քոց․ և որոց այսօր է յիշատակ։ Լո՛ւր մեզ Տէր, և ողորմեա՛․ ներեա՛ քաւեա՛ և թո՛ղ զմեղս մեր։ Արժանաւորեա՛ գոհութեամբ փառաւորել զքեզ ընդ Որդւոյ և ընդ սրբոյ Հոգւոյդ, այժմ և միշտ և"։

# ՔԱՐՈԶ

## ԿԻՒՐԱԿԷԻՑ ԱՒՈՒՐՑ

Ձյնէ Դեծայուսայէին ։

Եւ ևս խաղաղութեան զՏէր աղաչեսցուք ։

Վասն սուրբ տեղւոյս շինութեան, և բարեկարգութեան . զՏէր աղաչեսցուք ։

Տէր ողորմեա ։

Վասն ժողովրդեանս՝ որք մտանեն ընդ դրունս սրբոյ Եկեղեցւոյ . զՏէր աղաչես՟ ։

Տէր ողորմեա ։

Վասն ընդունելոյ զպաղատանս սոցա ըստ մեծի ողորմութեան իւրում . զՏէր աղա՟ ։

Տէր ողորմեա ։

Եւ ևս միաբան վասն ճշմարիտ և սուրբ հաւատոյս մերոյ՝ զՏէր աղաչեսցուք ։

Տէր ողորմեա ։

Զանձինս մեր և զմիմեանս Տեառն Աստուծոյ ամենակալին յանձն արասցուք ։

Քեզ Տեառնդ յանձն եղիցուք ։

Ողորմեաց մեզ Տէր Աստուած մեր՝ ըստ մեծի ողորմութեան քում . ասասցուք ամենեքեան միաբանութեամբ ։

Տէր ողորմեա . Տէր ողորմեա . Տէր ողորմեա ։

# ԱՂՕԹՔ

Դու ես Թագաւոր յաւիտեանս յաւիտենից ՔՐԻՍՏՈՍ Աստուած մեր. Եւ քեզ ընդ Հօր և Հոգւոյդ սրբոյ վայելէ փառք իշխանութիւն և պատիւ. այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. Ամէն.

# ԵՐԳ

## ԻՒՂԱԲԵՐԻՑ ԱՒԵՏԱՐԱՆԻՆ

Եղիցի անունըն Տեառն օրհնեալ ՚ի յայսմ հետէ մինչև ՚ի յաւիտեան.

Օրհնեցէք մանկունք ըզՏէր և օրհնեցէք զանուն Տեառն.

Եղիցի անուն Տեառն օրհնեալ յայսըմ հետէ մինչև ՚ի յաւիտեան.

Յարևելից մինչ ՚ի մուտս արևու օրհնեալ է անուն Տեառն. ՚ի յայսըմ հետէ մինչև ՚ի յա".

Փառք և երկըրպագութիւն Հօր և

Որդւոյ և սրբութեան Հոգւոյն. և
այժմ և միշտ և յաւիտեանս յաւի-
տենից ամէն. Ի յայսմ հետէ
մինչև ի յաւիտեան։

Որ Տէր զգնեալ [illegible] մեզ, և
փրկեալ զմեզ [illegible] ազգ. վա-
սն անուան քո [illegible] յ։

Որ և մի մերժեր ըզմեզ
ի [illegible] ապ [illegible] . վասն անո-
ւան քոյ։

Թագաւորեսցէ Տէր յաւիտեան [illegible] Աստուած
[illegible] քո Սիոն յազգէ յա[illegible]
[illegible] ազգ։

Օրհնեա անձն իմ զՏէր [illegible]
[illegible] . օրհնեցից զՏէր կեն-
դանութեան իմում։

# ԱՒԵՏԱՐԱՆՔ

## ԻՒՂԱԲԵՐԻՑ

## ԸՍՏ ՈՒԹ ՁԱՅՆԻՑ



ԱՒԵՏԱՐԱՆ

ԸՍՏ

ՄԱՏԹԷՈՍԻ

( ԳԼ. ԻԸ. Հ. Ա. )

ԱՒԱԳ ԿՈՂՄ ԵՒ ՎԵՐՋ.



Սարկաւագն. Օրթէ՛։

Քահանայն. Խաղաղութիւն ամենեցուն։

Դպիրն. Եւ ը՛նդ հո՛գւո՛յդ քո՛ւմ։

Սարկաւագն. Երկիւղածութեա՛մբ լուա՛րո՛ւք։

Քահանայն. Սուրբ Աւետարանս ՅԻՍՈՒՍԻ ՔՐԻՍՏՈՍԻ որ ըստ"։

Դպիրն. Փա՛ռք քեզ Տէ՛ր Աստուած մե՛ր։

Սարկաւագն. Պռօ՛սխո՛ւմէ՛։

Դպիրն. Ասէ Ա՛ստուա՛ծ։

Վասն Յարութեան Տեառն մերոյ ՅԻՍՈՒՍԻ ՔՐԻՍՏՈՍԻ։

ԲԿ. ԴԿ. } Եւ յերեկոյի շաբաթուն՝ յորում լուսանայր միաշաբաթին, եկն Մարիամ

Մագդաղենացի, և միւս Մարիամ՝ տեսանել զգերեզմանն։ Եւ ահա շարժումն մեծ եղև. զի հրեշտակ Տեառն իջեալ յերկնից՝ մատուցեալ ’ի բաց թաւալեցոյց զվէմն ’ի դրաց անտի, և նստէր ’ի վերայ նորա։ Եւ էր տեսիլ նորա իբրև զփայլակն, և հանդերձ նորա սպիտակ իբրև զձիւն։ Եւ յահէ անտի նորա խռովեցան պահապանքն, և եղեն իբրև զմեռեալս։ Պատասխանի ետ հրեշտակն՝ և ասէ ցկանայսն. մի երկնչիք դուք, գիտեմ զի զՅԻՍՈՒՍ զխաչելեալն խնդրէք. Չէ աստ, քանզի ՅԱՐԵԱՒ, որպէս ասացն. եկայք տեսէք զտեղին ուր կայր։ Եւ վաղվաղակի երթայք ասացէք աշակերտացն նորա՝ թէ ՅԱՐԵԱՒ. և ահա յառաջանայ քան զձեզ ’ի Գալիլեա, անդ տեսանիջիք զնա. ահա ասացի ձեզ։ Եւ ելեալ վաղվաղակի ’ի գերեզմանէ անտի ահիւ և խնդութեամբ բազմաւ՝ ընթանային պատմել աշակերտացն։ Եւ ահա պատահեաց նոցա ՅԻՍՈՒՍ՝ և ասէ. ողջ էք։ Եւ նոքա մատուցեալ կալան զոտս նորա՝ և երկիրպագին նմա։ Յայնժամ ասէ ցնոսա ՅԻՍՈՒՍ. մի երկնչիք, երթայք ասացէք եղբարցն իմոց՝ զի երթիցեն ’ի Գալիլեա, և անդ տեսցեն զիս։ Իբրև նոքա գնացին, ահա ոմանք ’ի զօրականացն եկին ’ի քաղաքն՝ և պատմեցին քահանայապետիցն զամենայն

որ ինչ եղեն ։ Եւ նոքա ժողովեալ համ-բերձ ծերովքն խորհուրդ առեալ՝ արծաթ յոյժ ետուն զօրականացն, եւ ասեն. ասա-ջիք՝ եթէ աշակերտքն նորա եկեալ գիշերի գողացան զնա՝ մինչ մեք ՚ի քուն էաք ։ Եւ եթէ լուր լիցի այդ առ դատաւորն, մեք հա-ճեսցուք զնա՝ և զձեզ անհոգս արասցուք ։ Եւ նոցա առեալ զարծաթն, արարին որ-պէս ուսանին . և ել համբաւս այս ՚ի հրէից մինչև ցայսօր ։

Իսկ մետասան աշակերտքն գնացին ՚ի Գալիլեա ՚ի լեառնն՝ ուր ժամադիր եղև նո-ցա ՅԻՍՈՒՍ ։ Իբրև տեսին զնա, երկիրպագին նմա . և ոմանք յերկուացան ։ Եւ մատու-ցեալ ՅԻՍՈՒՍ խօսեցաւ ընդ նոսա՝ և ասէ ։ Տուաւ ինձ ամենայն իշխանութիւն յերկինս և յերկրի . որպէս առաքեաց զիս Հայր, և ես առաքեմ զձեզ ։ Գնացէք այսուհետև՝ աշակերտեցէք զամենայն հեթանոսս . մկրտ-եցէք զնոսա ՅԱՆՈՒՆ ՀՕՐ՝ և ՈՐԴՒՈՅ՝ և ՀՈԳ-ՒՈՅՆ ՍՐԲՈՅ ։ Ուսուցէք նոցա պահել զամե-նայն՝ որ ինչ պատուիրեցի ձեզ . և ահաւա-սիկ ես ընդ ձեզ եմ զամենայն աւուրս, մինչև ՚ի կատարած աշխարհի ։ ՄԱՏԹ. Հ. 20 ։

ԱՒԵՏԱՐԱՆ

ԸՍՏ

ՄԱՐԿՈՍԻ

(ԳԼ. ԺԵ. Հ. 42.)

ԵՐԿՐՈՐԴ ԵՒ ՉՈՐՐՈՐԴ ՁԱՅՆ



## Վասն Յարութեան Տեառն մերոյ ՅԻՍՈՒՍԻ ՔՐԻՍՏՈՍԻ։

ԲՁ. ԴՁ. } Եւ իբրեւ երեկոյ եղեւ՝ քանզի ուրբաթ էր՝ որ 'ի շաբաթն մուտնէր, եկեալ Յովսէփ որ Յարիմաթեայն էր՝ այր պարկեշտ նախարար, որ եւ ինքն իսկ ակնունէր արքայութեանն Աստուծոյ. համարձակեցաւ՝ եմուտ առ Պիղատոս, եւ խնդրեաց զմարմինն ՅԻՍՈՒՍԻ։ Եւ Պիղատոս զարմացաւ թէ այնչափ վաղ մեռաւ. եւ կոչեցեալ առ ինքն զհարիւրապետն, եհարց զնա եւ ասէ՝ թէ արդարեւ այնչափ վա՞ղ մեռաւ։ Եւ իբրեւ ստուգեաց 'ի հարիւրապետէն անտի, շնորհեաց զմարմինն Յովսեփայ։ Եւ Յովսէփ գնեաց կտաւ՝ եւ իջուցեալ զնա պատեաց կտաւովն, եւ եդ 'ի գերեզմանի, զոր էր փորեալ 'ի վիմէ. եւ թաւալեցոյց վէմ մի 'ի դուռն գերեզմանին։ Իսկ Մարիամ Մագդաղենացի եւ Մարիամ Յակոբեայ՝ եւ Յովսեայ, տեսին զտեղին ուր եդաւ։

Եւ իբրեւ անց շաբաթն, Մարիամ Մագ-
դաղենացի՝ եւ Մարիամ Յակովբայ եւ Սողով-
մէ՝ չոքան պատրաստեցին խունկս, զի եկես-
ցեն օծցեն զնա ։ Եւ ընդ առաւօտս միաշա-
բաթուն գան՚ի գերեզմանն ընդ արեւագալն,
Եւ ասէին ցմիմեանս, ո՞վ թաւալեցուսցէ
մեզ զվէմն ՚ի դրաց գերեզմանին ։ Եւ հայե-
ցեալ տեսին՝ զի թաւալեցուցեալ էր զվէմն
՚ի գերեզմանէն . քանզի էր մեծ յոյժ ։ Եւ
մտեալ ՚ի ներքս ՚ի գերեզմանն՝ տեսին երի-
տասարդ մի զի նստէր ընդ աջմէ կողմանէ ըզ-
գեցեալ պատմուճան սպիտակ, եւ զարհուրե-
ցան ։ Եւ նա ասէ ցնոսա . մի երկնչիք, զՅի-
ՍՈՒՍ խնդրէք զՆազովրեցի զխաչելեալն.
ՅԱՐԵԱՒ՝ չէ աստ . ահաւասիկ տեղին՝ ուր
եդին զնա ։ Այլ երթայք ասացէք ցաշա-
կերտս նորա՝ եւ ցՊետրոս, եթէ ահա յառա-
ջագոյն երթայ քան զձեզ ՚ի Գալիլեա, անդ
տեսանիցէք զնա՝ որպէս ասացն ձեզ ։ Եւ իբ-
րեւ լուան՝ ելին եւ փախեան ՚ի գերեզմանէն ։
քանզի զահի հարեալ էին . եւ ոչ ումեք ինչ
ասացին, զի երկնչէին ։ Մկր. ԳԼ. ԺԶ ։ Հ. 8 ։

---

ԱՒԵՏԱՐԱՆ

ԸՍՏ

ՂՈՒԿԱՍՈՒ

(Գլ. ԻԳ. Հ. 50.)

ԾԱՌԱՅԻՆ ԿՈՂՄ ԵՒ ՎԱՌ.



Վասն Թաղմանն և Յարութեան Տեառն մերոյ ՅԻՍՈՒՍԻ ՔՐԻՍՏՈՍԻ.

ԱԿ. ԳԿ. } ԵՒ ահա այր մի անուն Յովսէփ, որ էր նախարար՝ այր բարեգործ և արդար. Սա ոչ էր միաբանեալ ընդ խորհուրդս և ընդ գործս նոցա. յԱրիմաթեայ քաղաքէ Հրէից, որ և ինքն իսկ ակնունէր արքայութեան Աստուծոյ. Սա մատուցեալ առ Պիղատոս խնդրեաց զմարմինն ՅԻՍՈՒՍԻ. Եւ իջուցեալ զնա՝ պատեաց պատանաւ կտաւով, և եդ 'ի կատափի գերեզմանին. ուր չէր բնաւ ոք եդեալ։ Եւ օրն էր ուրբաթ, և շաբաթ լուսանայր։ Եւ երթայքն զհետ նորա կանայքն՝ որ եկեալ էին ընդ նմա 'ի Գալիլեէ. տեսին զգերեզմանն, և որպէս եդաւ մարմին նորա։ Դարձան, և պատրաստեցին խունկս և իւղս. և 'ի շաբաթուն հանգուցին վասն պատուիրանին։

ԲԱՅՑ 'ի միաշաբաթուն վաղվաղ ընդ առաւօտն եկին 'ի գերեզմանն. բերին զխունկս

## ԱՒԵՏԱՐԱՆ
ԸՍՏ
## ՅՈՎՀԱՆՆՈՒ
(ԳԼ. ԺԹ. Հ. 38.)
## ԱՌԱՋԻՆ ԵՒ ԵՐՐՈՐԴ ՁԱՅՆ

### Վասն Թաղման և Յարութեան Տեառն մերոյ ՅԻՍՈՒՍԻ ՔՐԻՍՏՈՍԻ։

ԱՁ. } ՅԵՏ այսորիկ աղաչեաց զՊիղատոս
ԳՁ. } Յովսէփ, որ յԱրիմաթեայ էր աշակերտ
ՅԻՍՈՒՍԻ 'ի ծածուկ՝ վասն ահին Հրէից, զի
բարձցէ զմարմինն ՅԻՍՈՒՍԻ. և հրամայեաց
Պիղատոս. եկն և եբարձ զնա. Եկն և
Նիկոդեմոս՝ որ եկեալն էր առ ՅԻՍՈՒՍ 'ի
գիշերի զառաջինն. և եբեր զմուռս խառն
ընդ հալուէս՝ իբրև լտերս հարիւր. Առին
զմարմինն ՅԻՍՈՒՍԻ, և պատեցին կտաւովք՝
խնկովք հանդերձ, որպէս օրէն էր Հրէից
պատել. Էր և 'ի տեղւոջն յորում խաչե-
ցաւ՝ պարտէզ. և 'ի պարտիզի անդ գերեզ-
ման նոր, յորում ոչ ոք երբէք էր եդեալ.
Անդ վասն ուրբաթուն Հրէից՝ զի մօտ էր
գերեզմանն՝ եդին զՅԻՍՈՒՍ.

Իսկ 'ի միաշաբաթոջն Մարիամ Մագ-
դաղենացի գայ առաւօտուն ընդ արշալուսն
'ի գերեզման անդր, և տեսանէ զվէմն բար

ձեալ 'ի դրաց գերեզմանին ։ Նապա ընթանայ՝ և գայ առ Սիմոնէ Պետրոս և առ միւս աշակերտն՝ զոր սիրէր ՅԻՍՈՒՍ , և ասէ ցնոսա · բարձին զՏէր 'ի գերեզմանէ անտի , և ոչ գիտեմ՝ ուր եդին զնա · Ել Պետրոս և միւս աշակերտն՝ և գային 'ի գերեզմանն ։ Ընթանային երկոքեան 'ի միասին · և միւս աշակերտն յառաջեաց ընթացաւ վաղագոյն քան զՊետրոս՝ և եկն նախ 'ի գերեզմանն ։ Եւ խոնարհեալ տեսանէ՝ զի կային անդ կտաւքն , բայց 'ի ներքս ոչ եմուտ ։ Եկն և Սիմոնէ Պետրոս՝ որ գայրն զկնի նորա · եմուտ 'ի գերեզմանն , և տեսանէ զկտաւսն՝ զի կային անդ · և վարշամակն որ էր 'ի գլուխ նորա՝ ոչ ընդ այլ կտաւսն կայր , այլ ուրոյն ծալեալ 'ի մի կողմն ։ Յայնժամ եմուտ և միւս աշակերտն , որ եկեալն էր յառաջագոյն 'ի գերեզմանն , ետես և հաւատաց · Զի չև և'ս գիտէին զգիրս՝ թէ պարտ է նմա 'ի մեռելոց յառնել ։ Չոգան դարձեալ առ միմեանս աշակերտքն ։ Բայց Մարիամ կայր արտաքոյ գերեզմանին՝ և լայր · և մինչ դեռ լայր՝ խոնարհեցաւ 'ի գերեզմանն , Եւ տեսանէ երկուս հրեշտակս 'ի սպիտակս , զի նստէին մի 'ի սնարից և մի յանոտից՝ ուր կայր մարմինն ՅԻՍՈՒՍԻ ։ Եւ նոքա ասեն ցնա · կին դու՝ զի՞ լաս ։ ասէ ցնոսա · զի բարձին զՏէրն

իմ 'ի գերեզմանէ անտի , և ոչ գիտեմ՝ ուր եդին զնա ։ Զայս իբրև ասաց , դարձաւ 'ի թիկունս կոյս , և տեսանէ զՅԻՍՈՒՍ զի կայր . և ոչ գիտէր թէ ՅԻՍՈՒՍ իցէ ։ Ասէ ցնա ՅԻՍՈՒՍ . կին զու՞ զի՞ լաս , զո՞ խնդրես ։ Նմա այսպէս թուեցաւ՝ թէ պարտիզպանն իցէ , ասէ ցնա . Տէր՝ եթէ դու բարձեր զնա՝ ասա ինձ ուր եդեր զնա , զի ես առից զնա ։ Ասէ ցնա ՅԻՍՈՒՍ . Մարիամ ։ և նա դարձաւ , և ասէ ցնա Եբրայեցերէն . Ռաբբունի , որ թարգմանի՝ Վարդապետ ։ Ասէ ցնա ՅԻ-ՍՈՒՍ . մի՛ մերձենար յիս , զի չև ևս ելեալ եմ առ Հայր իմ . այլ երթ դու առ եղբարսն իմ , և ասա ցնոսա . ելանեմ ես առ Հայրն իմ՝ և առ Հայր ձեր , և Աստուածն իմ և Աստուած ձեր ։ Գայ Մարիամ Մագդաղենացի՝ և պատմէ աշակերտացն , եթէ ետես նա զՏէր , և զայս ինչ ասաց ցնա ։ Յովհ. Գլ. Ի ։ Հ . 18

ԿՐԳ·Ք

Ձայն Իւղաբերից Անկանոնին ։

Փառք Յարութեան քոյ Տէր . ոչ դադարեցայց ՔՐԻՍՏՈՍ օրհնել ըզքեզ՝ զմիայն աւուրս կենդանութեան իմոյ ։

Փառք Յարութեան քոյ Տէր . ոչ դա-

ռն ։ Եւ յարու երգէին երգ նոր. օրհ-
նեալ է քո սուրբ գալուստդ ։

---

### ՃԱՇԿԻ

Լուսապայծառ հրեշտակն. նըս-
տելով ՚ի կենսատու գերեզմանին ։
Եւ աւետէր կանանց՝ Յարեաւ Տէրս
տըրուած ։

---

### ՀԱՄԲԱՐՁՄԱՆՆ ՔՐԻՍՏՈՍԻ

Համբարձէք իշխանք՝ ըզդըրու-
նըս ձեր ՚ի վեր ։ Եւ գայ մըտա-
նէ փառաւորն ՚ի փառս ։

---

### ԳԱԼՍՏԵԱՆ ՀՈԳՒՈՅՆ ՍՐԲՈՅ

Իջեալ Հոգին յառաքեալսն. եւ
հրազինեաց զընտրեալսն. անկեալ ՚ի
սուրբ վերնատունն ։ Եւ հանգեաւ նոքօք
յազգըս մարդկան զանազան լեզուաց
բաժանմամբ ։

---

### ՎԱՐԴԱՎԱՌԻ

Ցընծայ Թաբօր. Հերմոնիւ. եւ

առաքեալքն ՚ի հայրական ծոյնէն Թըմբեալք ։ Եւ կենդանեաց և մեռելոց Տէր ծանուցին ըզքեզ Մովսէս և Եղիաս ։

## ՓՈԽՄԱՆ ՍՈՒՐԲ ԱՍՏՈՒԱԾԱԾՆԻ

ՔՐԻՍՏՈՍ եկեալ ՚ի փոխումն Աստուածածնին և սուրբ կուսին Մարիամու ։ Եղեւ զօրք երկնից ընդ առաքելոցն և սուրբ կուսան սըն գովէին ։

## ԽԱԶԻ

Այսօր եկեալ կամաւ Տէրն ՚ի խաչն. և տարածեաց ըզբազուկս իւր ՚ի նմա ։

## ԾՆՆԴԵԱՆ

Նոյլք հողեղէնք ըստ հովիւսըն քարոզէին ՚ի յանբանից մըտաւոր զբանըն բաղձալ ։ Եւ Մոգքն աստեղըն գուշակեալ մատուցին զընծայսըն խորհըրդոյ ։

## ՏԵԱՌՆ ԸՆԴ ԱՌԱՋԻ

Քառասնօրեայ տղայ և Տէրն ծեր նողէր՝ անօրինաբար եկն ՚ի տաճարն ։

Եւ Ամ՞ենայն զը՛զուէր զրկո՛քն . և՛ յորի նայ՝ կա՛պկի՝ լուծո՛ւմն հայցէ՞ք ՚ի՛ կենաց ուխտաւո՛րա՛ նի՛ :

## ՔԱՐՈԶ

*Զինի Խաչվերացի Անէսպաշոնիք, և Եղկոչն :*

Օուարձացեալքս մեծաւ ուրախութեամբ աւետեօք Յարութեան Տեառն մերոյ և փրկչին ՅԻՍՈՒՍԻ ՔՐԻՍՏՈՍԻ : Որ եղև պատուղ և անդրանիկ ամենայն ննջեցելոց . խորտակեաց զդրունս դժոխոց . և ելոյծ ըզքանութիւն մահու, և ետ յոյս հաստատութեան վերստին նորոգման կենդանութեան ամենայն մարդկան : Խնդրեսցուք հաւատով ՚ի փրկչէն մերմէ ՅԻՍՈՒՍԷ ՔՐԻՍՏՈՍԷ . զի զմեզ արժանի արասցէ յարութեան իւրոյ . կերպարանակից առնել զմարմին խոնարհութեան մերոյ ըստ նմանութեան մարմնոյ փառաց իւրոց : Վասն զի զայս խոստացաւ , զմեծ և զանձառելի շնորհս պարգևել սիրելեաց իւրոց՝ Ճշմարտին Աստուած ՅԻՍՈՒՍ ՔՐԻՍՏՈՍ Տէր մեր . կեցո՛ և ողորմեա՛ :

## ԱՂՕԹՔ

Ամենակեցոյց Ճշմարիտ՝ առ քեզ մեծի Յարութեան ՔՐԻՍՏՈՍԻ Աստուծոյ մերոյ : Վա-

ելէ. փառք խոստովանութիւն եւ պատիւ. այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից. Ամէն.

# ՍԱՂՄՈՍ

ծե. Ողորմեա ինձ Աստուած՝ ըստ մեծի ողորմութեան քում. ըստ բազում գթութեան քում քաւեա զանօրէնութիւնս իմ։

Առաւել լուա զիս յանօրէնութենէ իմմէ. եւ 'ի մեղաց իմոց սուրբ արա զիս։

Զանօրէնութիւնս իմ ես ինձէն գիտեմ, եւ մեղք իմ առաջի իմ են յամենայն ժամ։

Քեզ միայն մեղայ Տէր, եւ չար առաջի քո արարի։

Որպէս արդար երեւեսցիս 'ի բանս քո, եւ յաղթեսցես 'ի դատել քում։

Անօրէնութեամբ յղացաւ, եւ 'ի մեղս ծնաւ զիս մայր իմ։

Դու Տէր զճշմարտութիւն սիրեցեր, զանյայտս եւ զծածկեալս իմաստութեամբ քով յայտնեցեր ինձ։

Ցօղեա յիս մշտկաւ եւ սուրբ եղէց, լուա եւ քան զձիւն սպիտակ եղէց։

Լսելի արա ինձ զցնծութիւն եւ զուրախութիւն, եւ ցնծասցեն ոսկերք իմ տառապեալք։

Դարձո զերեսս քո 'ի մեղաց իմոց. եւ զա-

մնայն անօրէնութիւնս իմ քաւեա՛ յինէն ։

Սիրտ սուրբ հաստատեա՛ յիս Աստուա՛ծ, և հոգի ուղիղ նորոգեա՛ 'ի փորի իմում ։

Մ՛ի. ընկեներ զիս Տէր յերեսաց քոց, և զհոգի քո սուրբ մի հաներ յինէն ։

Տո՛ւր ինձ ցնծութիւն փրկութեան քոյ, և հոգւով պետութեան քոյ հաստատեա՛ զիս ։

Ուսուցից անօրինաց զճանապարհս քո, և ամբարիշտք առ քեզ դարձցին ։

Փրկեա՛ զիս յարենէ Աստուա՛ծ՝ Աստուած փրկութեան իմոյ. ցնծասցէ լեզու իմ յարդարութեան քում ։

Տէր եթէ զշրթունս իմ բանաս, բերան իմ երգեսցէ զօրհնութիւնս քո ։

Թէ կամեցեալ էիր պատարագս մատուցանէաք. բայց դու ընդ ողջակէզս իսկ ոչ հաճեցար ։

Պատարագ Աստուծոյ հոգի խոնարհ, ըզսիրտ սուրբ և զհոգի խոնարհ՝ Աստուած ոչ արհամարհէ ։

Բարե՛ արա Տէր կամօք քովք Սիոնի, և շինեսցին պարիսպք Երուսաղէմի ։

Յայնժամ հաճեսցիս ընդ պատարագս արդարութեան. յորժամ ուխտից պատարագս հանցեն 'ի սեղան քո զուարակս ։

Փառք Հօր և"։ Այժմ և միշտ և"։

---

## ԿԱՆՈՆ
### ՍՐԲՈՑ ՑԱՐՈՒԹԵԱՆՆ ՔՐԻՍՏՈՍԻ

ՈՂՈՐՄԵԱ · ՇԱՐԱԿԱՆ ԱՌԱՋԻՆ ՁԱՅՆ

Ո ·
ԱՁ · Բանդ որ ՚ի հօրէ իջեալ մարմնացար ՚ի կուսէն · խաչեցար կամաւ հօր վասն մեր ըզմեղս լուանել · սուրբ Աստուած ողորմեա մեզ ։ Որ յարարածոց եւ անբովանդակելի · ՚ի խաչափայտին բեւեռելով ըզմահ կոխեցեր · սուրբ ։ Որ ՚ի նախնումն զանկեալն ՚ի ծառայութեան մահու · պատուական մարմնով եւ արեամբ քո ազատեցեր · սուրբ ։

## ԿԱՆՈՆ
### ՍՐԲՈՑ ՀՐԵՇՏԱԿԱՊԵՏԱՑ

ՈՂՈՐՄԵԱ · ՇԱՐԱԿԱՆ ՉՈՐՐՈՐԴ ՁԱՅՆ

Ո ·
ԴՁ · Որ ՚ի հրեղէն զօրաց երկնից փառաբանիս Աստուած · որով զերկնային անապական Աստուածային ըզշնորհս

Հեղեր յորդիս Ադամայ · աղաչանօք սո-
ցա ողորմեա մեզ Աստուած ։ Երեւե-
լով հոգեղինացս անհիւթականքն ՚ի
ձեւ մարմնոյ · որք եւ ծանուցին մար-
գարէիցն · ըզխորհուրդ քո գալստեանդ
բազմապատիկ տեսլեամբ օրինակելով ·
աղաչա" ։ Անճառելի տնօրէնութեանդ
քո աւետաբերք առաքեցան · Գաբ-
րիէլ եւ Միքայէլ · անմարմնականն դա-
սուքն խուրեանց յերկրի սպասաւորե-
լով · աղաչանօք սոցա ողորմեա" ։

## ԿԱՆՈՆ
### ՍՐԲՈՑ ՄԱՐԳԱՐԷԻՑ

ՈՂՈՐՄԵԱ · ՇԱՐԱԿԱՆ ՉՈՐՐՈՐԴ ՁԱՅՆ

Ո · դՉ · Որ աւետաւոր քում գալստեանդ
առաքեցեր յաշխարհ ըզսուրբ մարգա-
րէսն · եւ եկեալ խոնարհութեամբ նո-
րին օրինօք զթերին լցեր ՚ի գիրս օրինաց
եւ մարգարէից · բարեխօսութեամբ սո-
ցա ՔՐԻՍՏՈՍ ողորմեա մեզ ։ Որ կոչե-
ցեր մարգարէիւք յառաջագոյն ըզհե-

Թա նոսա քեզ նոր ժողովուրդ · և ըզ դուառըր Աէն Տէր զեկեղեցի Հեթանոսաց Հարսըն սիրելի անմահ փեսային · բա"։ Որ ըղձական տաճարիս զոր շինեցեր շինողդ էիր 'ի վերայ վիմի՛ն · բարձրագոյն քան զառաջինն · և գերազարդ վայելչութեամբ տեսանողացն ծանուցին իմաստիւք Հոգւոյն · բարեխօ"։

## ԿԱՆՈՆ
## ԱՊԱՇԽԱՐՈՒԹԵԱՆ

### ՈՂՈՐՄԵԱ · ՀԱՐԱԿԱՆ ԱՌԱՋԻՆ ՁԱՅՆ

Ո ·

ԱՁ · Հայր բազումողորմ · խոստովանիմ առ քեզ որպէս զանառակ որդին · Թող ինձ ըզ մեղս իմ · և ողորմեա ։ Տէր որ գըթացար 'ի կինըն Քանանացի · գըթա և յիս 'ի մեղաւորս · և ողորմեա"։ Տէր որ դարձուցեր ըզմաքսաւորն 'ի գիտութիւն ճըշմարտութեան · դարձո և զիս ըզմոլորեալս · և ողորմեա ։

## ԿԱՆՈՆ
### ՀԱՄՕՐԷՆ ԱՌԱՔԵԼՈՑ

ՕՂՈՐՄԵԱ · ՇԱՐԱԿԱՆ ԱՌԱՋԻՆ ՁԱՅՆ

Ո · ԱՁ · Տէր որ զգըթութիւնըդ քո զառատ Հեղեր յերկնից 'ի մէջ սըրբոց առաքելոց քոց · ապաշանօք սոցա ողորմեա ։ Որ 'ի ձեռն սոցա սփռեցան շնորհք հոգւոյդ սըրբոյ ընդ ամենայն երկիր · ապա՛ ։ Որ սոքօք լուսաւորեցեր մըկըրտութեամբ աւազանին զեկեղեցի քո սուրբ · ապաշանօք սոցա ողորմեա ։

## ԿԱՆՈՆ
### ՀԱՄՕՐԷՆ ՆՆՋԵՑԵԼՈՑ 'Ի ՔՐԻՍՏՈՍ

ՕՂՈՐՄԵԱ · ՇԱՐԱԿԱՆ ԱՌԱՋԻՆ ՁԱՅՆ

Ո · ԱՁ · Որ ստեղծմամբ ըստ պատկերի քո Տէր պատուեցեր զմեզ · ընկալ և այժմ զննջեցեալսն 'ի քեզ ուղիղ հաւատով · ըստ մեծի քում ողորմութեան ։ Որ շնորհօք սուրբ հոգւոյն լուսաւորեցեր ·

յիշատակի իւրեանց զհոգիս նոցա ընկալ և մարդասէր. ըստ մե՛։ Որք հալածեցան մարտիրոյ և արեան քո Տէր. հանգո ըզ հոգիս նոցա ընդ սուրբըս քո Քրիստոս Աստուած. քանզի գիտենք սուրբ արեան քո են։

## ԿԱՆՈՆ
### ՀԱՄՕՐԷՆ ՄԱՐՏԻՐՈՍԱՑ

ՈՂՈՐՄԵԱ. ՇԱՐԱԿԱՆ ԱՌԱՋԻՆ ՁԱՅՆ

Ո.
ԱՁ. Զօրովեալքս ի յիշատակ սրբոց քոց Քրիստոս. աղաչեմք ըզքեզ. սոցա բարեխօսութեամբ ողորմեա։ Երկրպագեմք առաջի բեմի քո Քրիստոս. ընկալ զքո գթութեամբ զաղաչանս մեր. սոցա։ Ով որս հոգւով և մարմնով որպէս զանմարմինն. անարատս ի գալուստ քո պահեսցես մարդասէր փրկիչ. սոցա։

## ՔԱՐՈԶ
Ձայնի Ողորմեայն։

Երկրպագեմք քեզ Տէր Աստուած մեր՝ ծնցծալքս ընդ երկարութիւն գիշերիս. և

կանխեալքս ՚ի տեղւոջ խոստովանութեան․ մատուցանեմք զպաղատաւոր աղօթս մեր ։ Զքեզ Տէր օրհնեսք և փառաւորեմք, և զքէն Տէր գոհանամք․ որ արժանի արարեր զգիշերս խաղաղութեամբ անցուցանել և հասանել ՚ի ժամ առաւօտուս ։ Արժանաւորեա զմեզ Տէր անձառ խոստմանց քոց․ զոր խոստացար սիրելեաց քոց ճշմարիտդ Աստուած՝ ՅԻՍՈՒՍ ՔՐԻՍՏՈՍ Տէր մեր․ կեցո և ողորմեա ։ Ողորմեաց մեզ Տէր Աստուած մեր ըստ մեծի ողորմութեան քում․ ասասցուք ամենեքեան միաբանութեամբ ։

Տէր ողորմեա․ Տէր ողորմեա․ Տէր ողորմեա ։

# ՄԱՂԹԱՆՔ

## ՅԱՐՈՒԹԵԱՆ

Ողորմած՝ գթած՝ ճշմարիտ՝ սուրբ մեծի Յարութեանն ՔՐԻՍՏՈՍԻ Աստուծոյ մերոյ․ վայելէ փառք իշխանութիւն և պատիւ․ այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից"։

# ՄԱՂԹԱՆՔ

## ՊԱՀՈՑ

Ողորմութեամբ և գթութեամբ քով․ լուր մեզ Տէր և ողորմեա․ ներեա՝ քաւեա և թող զմեղս մեր ։ Արժանաւորեա գոհա-

Զի նա ասաց՝ և եղեն, հրամայեաց՝ և հաստատեցան։

Կացոյց զնոսա յաւիտեանս յաւիտենից. սահման եդ՝ և ոչ անցանեն։

Օրհնեցէք զՏէր յերկրէ՝ վիշապք և ամենայն խորք։

Հուր և կարկուտ՝ ձիւն և սառն՝ հողմ և մրրիկք, որք առնեն զբան նորա։

Լերինք՝ և ամենայն բարձունք՝ ծառք պտղաբերք և ամենայն մայրք։

Գազանք՝ և ամենայն անասունք. սողունք, և ամենայն թռչունք թևաւորք։

Թագաւորք երկրի և զօրք իւրեանց. իշխանք և ամենայն դատաւորք երկրի։

Երիտասարդք և կուսանք, ծերք և տղայք՝ օրհնեցէք զանուն Տեառն։

Բարձրացաւ անուն նորա միայն. խոստովանութիւն նմա յերկինս և յերկրի։

Բարձր առնէ Տէր զեղջիւր ժողովրդեան իւրոյ. օրհնութիւն նմա յամենայն սրբոց նորա. յորդւոցն Իսրայէլի ժողովրդին՝ որ մերձ է առ Տէր։

Օրհնեցէք զՏէր յօրհնութիւն նոր. օրհնութիւն նմա յեկեղեցիս սրբոց։

Ուրախասցի Իսրայէլ յարարիչ իւր. որդիք Սիոնի ցնծասցեն ՚ի թագաւորն իւրեանց։

Օրհնեսցեն զանուն նորա օրհնութեամբ. սաղմոսիւք և օրհնութեամբ սաղմոս երգեսցեն նմա:

Հաճի Տէր ընդ ժողովուրդ իւր սուրբ. և բարձր առնէ զհեզս 'ի փրկութեան:

Պարծեսցին սուրբքն փառօք՝ և ցնծասցեն 'ի հանգիստս իւրեանց. և բարձր արասցեն զԱստուած բերանօք իւրեանց:

Սուր երկսայրի եւ 'ի ձեռս նոցա, առնուլ զհատուցումն 'ի հեթանոսաց, 'ի յանդիմանութիւն ամենայն ժողովրդոց:

'Ի կապել զթագաւորս նոցա կապանօք. զզօրավարս նոցա ձեռնակապօք երկաթեօք:

Առնել նոցա դատաստանս ըստ գրոց. և փառք այս են ամենայն սրբոց նորա:

Օրհնեցէք զԱստուած 'ի սրբութեան նորա. օրհնեցէք զնա 'ի հաստատութեան 'ի զօրութեան նորա:

Օրհնեցէք զնա 'ի զօրութեան նորա. օրհնեցէք զնա 'ի բազում մեծութեան նորա:

Օրհնեցէք զնա 'ի ձայն օրհնութեան. օրհնեցէք զնա սաղմոսիւք և օրհնութեամբ:

Օրհնեցէք զնա ցնծութեամբ, գովեցէք զնա ուրախութեամբ:

Օրհնեցէք զնա 'ի բանս քաղցր. գովեցէք զնա 'ի բարբառ լսելիս:

# ԿԱՆՈՆ
## ՍՐԲՈՑ ՄԱՐԳԱՐԷԻՑ

### ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ · ՇԱՐԱԿԱՆ ՉՈՐՐՈՐԴ ՁԱՅՆ

Տ · ԴՁ · Այսօր ժողովուրդք որք ՚ի հեթա-
նոսաց · հրաւիրեալք յառաջագոյն մար-
գարէիւք · գալ առ Աստուածն Աբրա-
համու յերկրպագութիւն · օրհնե-
ցէք զՏէր յերկինս ընդ երկնաւորացն ։
Այսօր որդիք զըստեր վերին Սիովնի ·
շինեալք ՚ի վերայ հիման առաքելոց և
մարգարէից · որք և ըմպէք զառատա-
բուղխ վտակ հոգւոյն ՚ի յաղբերացն
Իսրայէլի յԻնկեղեցիս սրբոց · օրհնե-
ցէք ըզՏէր յօրհնութիւն ՚ի նոր ։
Այսօր վերին զօրացըն համաձայնեալ ·
դասք նահապետաց և մարգարէից ·
երգեն Աստուծոյ զերգըս հոգևորս ·
՚ի յիշատակի սոցա երգեմք և մեք ըզ
փառս ՚ի բարձունս ։

# ԿԱՆՈՆ
## ԱՊԱՇԽԱՐՈՒԹԵԱՆ



ՑԷՐ ՑԵՐԿՆԻՑ · ՇԱՐԱԿԱՆ ԱՌԱՋԻՆ ՁԱՅՆ

Ց · Ա Ձ · Տէր որ 'ի վերայ Քերովբէից փառաւորեալդ ես · քաղցրութեամբ խոնարհեալ ընկալ զաղաչանս մեր · Տէր որ շնորհեցեր զօրութիւն ազգի մարդկան · քաղցր: Տէր որ ուսուցեր մեզ յամենայն ժամ փառս տալ անուանդ քում սրբոյ · քաղցր:

# ԿԱՆՈՆ
## ՀԱՄՕՐԷՆ ԱՌԱՔԵԼՈՑ



ՑԷՐ ՑԵՐԿՆԻՑ · ՇԱՐԱԿԱՆ ԱՌԱՋԻՆ ՁԱՅՆ

Ց · Ա Ձ · Որք 'ի սկզբանէ պատուեալ եղեն 'ի սէր բոլորից հօր · առաքելական կոչմամբ ընտրեցայք հրաւիրեցին յուսով հանդերձ մտին · վարդապետութեամբ սոցա ամենեքեան օրհնեցաք զՏէր · Որք ականատեսք և սպասաւորք

եղեն մարմնացելոյ Բանին. դեր 'ի վերոյ անմարմնոց դասուցն հանդիպելով շնորհի. վարդա: Որոց պատողական աթոռ ահեղ ատենին հանդերձեալ մնայ. կատարել 'ի մեզ դատաստան ըստ գրեալոն. առ սոսա անկցուք զղջացեալ անձամբք պաղատելով. հաշտեցուցանել առ քեզ ընդ մեզ զահաւոր ՔՔ. իր դատաւորն:

ԽԻՍ

## ՀԱՄՕՐԷՆ ԱՌԱՔԵԼՈՑ

### ՏԷՐ ՑԵՐԿՆԻՑ. ՇԱՐԱԿԱՆ ԱՌԱՋԻՆ ՁԱՅՆ

Տ. ԱՁ. Առաքեալք Աստուծոյ սիւնք հաւատոյ կաթուղիկէ Եկեղեցւոյ. ՔՐԻՍՏՈՍԻ Աստուծոյ երկնաւոր վարդապետին աշակերտք. բարեխօսեցէք շնորհել բղխապաղպութիւն ամենայն աշխարհի. Բարեկամք ՔՐԻՍՏՈՍԻ և հաղորդապետք Աստուածային խորհրդոցն. ընդունօղք ըզՀոգւոյն կենաց և լուսաւորիչք տիեզերաց. բարե: Պատուորք ահեղ

ամենեքին եւ պատարագաւորք զՔՐԻՍՏՈՍ՝ որ է խոստովանողաց. աղաչեմք ընդ ձեզ. բարեր։

# ԿԱՆՈՆ

## ՀԱՄՕՐԷՆ ՆՆՋԵՑԵԼՈՑ Ի ՔՐԻՍՏՈՍ



ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ • ՇԱՐԱԿԱՆ ԱՌԱՋԻՆ ՁԱՅՆ

Ց․

ԱՁ․ Քեզ վայելէ՝ Աստուած օրհնութիւն. որ յարութեամբ քո ես ձայնիւ յաւիտենից ննջեցելոցն. Թագաւոր եւ իշխան վեր օրհնեմք զքեզ։ Ի միւսանգամ գալստեանն քո ՔՐԻՍՏՈՍ փառաց թագաւոր. ի ձայն փողոյ նորոգին հողեղք ննջեցելոցն. եւ յառնեն ի մեռելոց անապական մարմնով։ Վասն որոյ եւ մեք ընդ քեզ աղաչեմք Հայր երկնաւոր. դասաւորեա զննջեցեալսն մեր ի վերին Երուսաղէմ. ի ժողովս անդրանկաց գրելոց ի յերկինս։

ԽԻԲ

## ՆՆՋԵՑԵԼՈՑ



### ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ · ՇԱՐԱԿԱՆ ԱՌԱՋԻՆ ՁԱՅՆ

Տ ·
ԱՁ · Զայն արկեալ կենարարին Աստուածային բարբառովն · ասէ եկայք օրհնեալք Հօր իմոյ ժառանգեցէք · պատրաստեալ ձեզ ըզկեանսն ՚ի Հանդերձեալ երկրին ։ Ընդ առաջ ելանել քեզ հաւատով ՚ի յօդս վերինս · Աստուածազգեստ լուսով պայծառացեալ ՚ի դասս անմարմնոցն · ՚ի լոյսն ընծայն երանաւէտ կոչմանն ։ Ընդ աջմէ քումմէ կացո ընդ իմաստուն Սուրբ կուսանսն · ՚ի լուսեղէն առագաստին պայծառացեալ ՚ի դասս անմարմնոցն · ՚ի ժողովս անդրանկաց գրելոց ՚ի յերկինս ։



## ԿԱՆՈՆ ՄԱՐՏԻՐՈՍԱՑ



### ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ · ՇԱՐԱԿԱՆ ԱՌԱՋԻՆ ՁԱՅՆ

Տ ·
ԱՁ · Ժողովեալքս ՚ի յիշատակ Սրբոց մարտիրոսացըն · միաբանութեամբ

երգելով. օրհնութիւն 'ի բարձունս երկնաւոր Թագաւորիդ. Քանզի հեղմամբ արեան սորա պարտեցաւ թշնամին. և մեծարեալ պարծի Սիոն երգելով. օրհն.: Պսակակցելոցն ընդ զօրս վերին զուարթնոցն. յիշատակաւ բերկրեալ 'ի սրբութեան սորա երգեսցուք. օրհն.:



ՃԽԹ

# ՄԱՐՏԻՐՈՍԱՑ



## ՏԷՐ ՅԵՐԿՆԻՑ · ՇԱՐԱԿԱՆ ԱՌԱՋԻՆ ՁԱՅՆ

Տ. ԱՁ. Որք ընդ հանդէս նահատակութեան առ բռնաւորսն ցուցին. և յաղթեցին հաւատով երրեակ լուսոյն եղեն մեզ առիթ. աղաչանօք սոցա կեցո զմեզ: Որք ընդ խաւար կռապաշտութեանցն վանեալ հերքեցին. և կանգնեցին մեզ նշան յաղթօղ ընդդէմ թշնամւոյն. աղաչ.: Որ հռչակեալ ճգնութեամբ պատերազմեալք 'ի յերկրի. վեր համբարձեալք երկնայնոց դասուցն եղեն երգակից. աղաչ.:

# ՕՐՀՆՈՒԹԻՒՆ ԵԿԵՂԵՑՒՈՅ

## ԸՍԱՑԵԱԼ ՀՐԵՇՏԱԿԱՑ

ԵՒ

## ԿՈՍՏԱՆԴՆՈՒՊՕԼՍՈՅ ՍՈՒՐԲ ԺՈՂՈՎՈՅՆ ՀԱՐԻՒՐ ՀԻՍՈՒՆ ՀԱՅՐԱՊԵՏԱՑ

Ձայնի Տէր յերկնից ։

Փառք ՚ի բարձունս Աստուծոյ ․ եւ յերկիր խաղաղութիւն ՚ի մարդիկ հաճութիւն ։ Եւ օրհնութիւն քեզ ՚ի բարձունս ․ օրհնեալ ես Տէր Աստուած մեր ․ օրհնեմք զքեզ , եւ գովեմք զքեզ ։ Խոստովանիմք Տէր զքեզ եւ երկիրպագանեմք քեզ ․ փառաւորեմք զքեզ ․ գոհանամք զՏէր զքէն վասն մեծի փառաց քոց ։ Տէր թագաւոր սուրբ երկնային ․ Աստուած եւ Հայր ամենակալ ։ Տէր եւ Որդի Հօր միածին ՅԻՍՈՒՍ ՔՐԻՍՏՈՍ եւ սուրբ Հոգի ։ Տէր Աստուած գառն Աստուծոյ եւ Որդի Հօր ․ որ առեր զմեղս ՚ի կուսէն ։ Ողորմեցար ․ բարձեր զմեղս աշխարհի ․ եւ առ ընկալ զաղաչանս մեր ։ Սուրբ որ նստիս ընդ աջմէ Հօր՝ ողորմեաց մեզ ։ Զի դու միայն սուրբ՝ դու միայն բարձրեալ ես՝ դու միայն Տէր մեր ՅԻՍՈՒՍ ՔՐԻՍՏՈՍ ։ Տէր եւ Հոգիդ սուրբ որ ՚ի փառս Աստուած ընդ Հօր ․ Ամէն ։

Եւ յամենայն ժամ օրհնեմք զքեզ ․ Տէր եւ գովեմք զանուն սուրբ քո յաւիտեանս եւ

յաւիտեանս յաւիտենից ։ Արժանի արա Տէր զօրս զայս խաղաղութեամբ ․ և առանց մեղաց պահել զմեզ ։ Օրհնեալ ես Տէր Աստուած հարցն մերոց ․ գովեալ և փառաւորեալ է անուն սուրբ քո յաւիտեանս ․ Ամէն ։ Օրհնեալ Տէր՝ ուսո ինձ զարդարութիւնս քո ։ (Երիցս կրկնել ։) Տէր ապաւէն եղեր մեր յազգէ յազգ ։ Ես ասացի Տէր ողորմեա ինձ և բժշկեա զանձն իմ ․ ես մեղայ քեզ ։ Ցո՛յց մեզ Տէր զողորմութիւնս քո ․ և զփրկութիւնս քո տուր մեզ ։ Տէր ողորմութիւն քո յաւիտեան ․ զգործս ձեռաց քոց մի անտես առներ ։ Տէր իմ զքեզ ապաւէն ինձ արարի ․ ուսո ինձ առնել զկամս քո՝ զի դու ես Աստուած իմ ։ Ի քէն է Տէր՝ աղբիւր կենդանութեան ․ և լուսով երեսաց քոց տեսանեմք զլոյս ։ Ձգեա զողորմութիւն քո՝ որք ճանաչեն զքեզ Տէր ։

## ՄԱՂԹԱՆՔ

Փառք պատիւ և երկրպագութիւն ի բարձունս Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ ․ այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից" ։

# ԱՌԱՒՕՏՈՒ ԵՐԳՔ

## ՅԱՐՈՒԹԵԱՆ

### ԸՍՏ ՈՒԹ ՁԱՅՆԻՑ

Զկնի փառք ի բարձունսն :



### ԱՌԱՋԻՆ ՁԱՅՆ ԵՒ ԱՌԱՋԻՆ ԿՈՂՄ

ԱՁ · } ԱԿ · } Զ Յարութիւն ըզփրկչին օրհնեսցուք · զփրկչին մերոյ օրհնեսցուք ըզՅարութիւն :

Յարեաւ Աստուած · ցրուեցան թշնամիք նորա :



### ԵՐԿՐՈՐԴ ՁԱՅՆ ԵՒ ԱՒԱԳ ԿՈՂՄ

ԲՁ · } ԲԿ · } Զ Յարութիւն ըզփրկչին օրհնեսցուք · զփրկչին մերոյ օրհնեսցուք զՅարու" :

Օ յարուցեալն զՔՐԻՍՏՈՍ օրհնեսցուք · և զՅարութիւն նորա փառաւորեսցուք :



### ԵՐՐՈՐԴ ՁԱՅՆ ԵՒ ՎԱՌ

ԳՁ · } ԳԿ · } Զ Յարութիւն ըզփրկչին օրհնեսցուք · զփրկչին մերոյ օրհնեսցուք զՅա" :

Որ ելն 'ի բարձունս եւ գերեաց ըզ գերութիւն . էառ աւար՝ բաշխեաց պար գեւս եւ ետ որդւոց մարդկան ։

## ՉՈՐՐՈՐԴ ՁԱՅՆ ԵՒ ՎԵՐՋ

ԴՁ . ԴԿ . ԶՅարութիւն ըզփըրկչին օրհնես ցուք . զփրկչին մերոյ օրհնեսցուք զՅարու" ։

Որ համբերեաց խաչի եւ եդաւ 'ի նոր բամփոր վիմի . եւ Աստուածային Յարու թեամբն ըզմահացեալսն վերածեաց 'ի կեանս ։

## ՀԱՄԲԱՐՁՄԱՆՆ ՔՐԻՍՏՈՍԻ

ԶՅարութիւն ըզփըրկչին օրհնես ցուք . զփըրկչին մերոյ օրհնեսցուք զՅարութիւն ։

Համբարձաւ Աստուած օրհնութեամբ եւ Տէր մեր ձայնիւ փողոյ ։

## ՀՈԳՒՈՅՆ ՍՐԲՈՅ ԳԱԼՍՏԵԱՆ

ԶԳալուստ Հոգւոյն օրհնեսցուք . ըզ Հոգւոյն սրբոյ օրհնեսցուք ըզԳալուստ ։

Յեկեղեցիս բարեբանեցէք զԱստուած . եւ ըզՏէր յաղբերացն Իսրայէլի ։

## ԱՂՕԹՔ ՀԱՑԻՑ
ԵՒ
## ԱՅԼՈՑ ԱՒՈՒՐՑ ՊԱՀՈՑ

### ԵՐԿՈՒՇԱԲԹԻ

ԲՂ. Լոյս առուր Տէր աչաց իմոց ի ճշմարտութեան. զի մի երբեք նն
ջեցից ի մահ։

Մի ասասցէ թշնամին թէ յաղ
թեցի նմա. կամ նեղիչք իմ ցնծաս
ցեն թէ ես սասանեցայց։

### ԵՐԵՔՇԱԲԹԻ

ԳՂ. Որ քեն է Տէր աղբիւր կենա
ցս. և լուսով երեսաց քոց տե
սանեմք զլոյս։

Ձգեա զողորմութիւնս քո որք
ճանաչեն զքեզ. զարդարութիւնս
քո այք ուղիղ են սրտիւք։

### ՉՈՐԵՔՇԱԲԹԻ

ԴՂ. Ես ասացի Տէր ողորմեա ի
նձ. բժշկեա զանձն իմ, ես մեղայ
քեզ։

Երանի որ խորհի զաղքատն և ըզտնանկն. յաւուր չարի փրկէ զնա Տէր:

### ՀԻՆԳՇԱԲԹԻ

ԽՀ. Ես առ քեզ Տէր աղաղակեցի ցց. առաւօտու աղօթք իմ ժամանեսցեն առ քեզ:

Ընդէ՞ր Տէր մերժես զանձն իմ. կամ դարձուցանես զերեսս քո յինէն:

### ՈՒՐԲԱԹ

ՈՒՐ. Մերձեսցեն աղօթք իմ առաջի քո Տէր. խոնարհեցո ունկըն քո ի խնդրուածս իմ:

Տէր Աստուած փրկութեան իմոյ. ի տուէ կարդացի և գիշերի առաջի քո:

### ՂԱԶԱՐՈՒ ՅԱՐՈՒԹԵԱՆ

ՇԲ. Տէր հաներ ի դժոխոց զանձն իմ. փրկեցեր զիս յայնցանէ որք իջանեն ի գուբ:

Բարձր առնեմ ըզքեզ Տէր զի ընկալար զիս. և ոչ ուրախ արարեր զթըշնամին իմ յիս:

## ԾԱՂԿԱԶԱՐԴԻ

ԿԻՐ. Այսօր մտանէ թագաւորըն մեր Քրիստոս ՚ի յԵրուսաղէմ ընոր քաղաք Դաւթի ։

Ընդ առաջ ելին ծերքն ստովք ձիթենեօք, և զԱստուածն Որդին փառաւորէին ։

## ԱԻԱԳ ԵՐԿՈՒՇԱԲԹԻ

Ա ԲՂ. Ով սկզբանէ Տէր զերկիր հաստատեցեր, և գործք ձեռաց քոց երկինք են ։

Նոքա կորնչին, և դու կաս և մնաս յաւիտեան ։

ՍՂ. Խոստովանութիւն և մեծ վայելչութիւն զգեցար, արկեր զլոյս որպէս զօթոց, ձգեցեր զերկինս որպէս զխորան, և արկեր ՚ի վերայ ջուրց զվերնայարկս նորա ։

ՏԷ. Օրհնեա անձն իմ զՏէր, Տէր Աստուած իմ մեծ եղեր յոյժ ։ զփոխն ըստ առաւ՝ ՍԱՂ. ԳԼ, ՃԳ ։

## ԱՒԱԳ ԵՐԵՔՇԱԲԹԻ

ա դր. Տարցին թագաւորի կուսանք ըղձեալ նորա. և զընկերս նորա տարցին նմա։

Ածցին ցնծութեամբ և ուրախութեամբ. և տարցին ի տաճար թագաւորին։

մղ. Տարցին թագաւորի կուսանք զհետ նորա. և զընկերս նորա տարցին նմա։

գխ. Բղխեաց սիրտ իմ զբան բարի, և ասեմ զգործս իմ թագաւորի։ ղփոխն ըմոն ոոո՛։ ՍԱՂ. ԳԼ, ԽԴ։

## ԱՒԱԳ ՉՈՐԵՔՇԱԲԹԻ

ա դր. Խորհեցան և խօսեցան ըղ չարութիւն. և զամբարշտութիւն ի բարձունս խորհեցան։

Եդին յերկինս զբերանս իւրեանց. և զլեզուս իւրեանց ածէին զերկրաւ։

մղ. Որ ուտէր զհաց իմ, յաճախեաց առնել ինձ զխաբէութիւն։

գխ. Երանի որ խորհի զաղքատն և զտնանկն. յաւուր չարի փրկէ զնա Տէր։ ղփոխն ըմոն ոոո՛։ ՍԱՂ. ԳԼ, Խ։

## ԱՒԱԳ ՀԻՆԳՇԱԲԹԻ

Ա ԽՀ. Որսացան զանձն արդարոյ. և զարիւն անբիծ պարտաւոր առնէին։ Իսկ Տէր ապաւէն իմ. Աստուած օգնական յուսոյ իմոյ։

ՏՂ. Որսացան զանձն արդարոյ. և զարիւն անբիծ պարտաւոր առնէին։

Գբ. Աստուած վրէժխնդիր՝ Տէր Աստուած վրէժխնդիր յայտնեցաւ։ Զփոխն ըստն ասա՛։

ՍԱՂ. ԳԼ, ՂԳ։

---

## ԱՒԱԳ ՈՒՐԲԱԹ

Ա ՈՒՐ. Մատնեցայ և ոչ ելանէի. աչք իմ տկարացան յաղքատութենէ։ Աղաղակեցի առ Տէր զօրհանապազ. և համբարձի առ քեզ զձեռս իմ։

ՏՂ. Փոխանակ սիրոյ իմոյ մատնէին զիս. այլ ես յաղօթս կայի։

Գբ. Աստուած օրհնութեան իմոյ մի լռեր. զի բերան մեղաւորի՝ բերան նենգաւորի բացաւ ՚ի վերայ իմ։ Զփոխն ըստն ասա՛։ ՍԱՂ. ԳԼ, ՃԸ։

## ԱՒԱԳ ՇԱԲԱԹ

Ա ՁՐ. Եդին զիս 'ի գբի ներքնումն . 'ի խաւարի եւ 'ի ստուերս մահու :

Յիս հաստատեցաւ սրտմտութիւն քո . զամենայն զբօսանս քո ածեր 'ի վերայ իմ :

ՍՂ. Եդին զիս 'ի գբի ներքնումն . 'ի խաւարի եւ 'ի ստուերս մահու :

ՁԷ. Տէր Աստուած փրկութեան իմոյ . 'ի տուէ կարդացի եւ գիշերի առաջի քո : Ղփոխն ընդ առաջ : ՍԱՂ. ԳԼ, ՁԷ :

## ՄԱՀՈՒԱՆ

ՍՂ. Դարձ անձն իմ 'ի հանգիստ քո . զի Տէր կոչեաց ըզքեզ :

ՃԺԴ. Սիրեցի զի լուիցէ Տէր զձայն աղօթից իմոց . զի խոնարհեցոյց զունկն իւր առ իս . եւ ես յաւուրս իմ կարդացի առ նա : Ղփոխն ընդ առաջ : ՍԱՂ. ԳԼ, ՃԺԴ :

## ԵԿԵՂԵՑՒՈՑ

Տան քում վայել է սրբութիւն. Տէր ընդ երկայն աւուրս :

Տէր թագաւորեաց վայելչութիւն զգեցաւ. զգեցաւ Տէր զօրութիւն ընդ մէջ իւր էած :

## ՏԱՊԱՆԱԿԻ ԵՒ ՎԵՐԱՓՈԽՄԱՆ ԱՍՏՈՒԱԾԱԾՆԻ

Արի Տէր ի հանգիստ քո. դու և տապանակ սրբութեան քո : Յիշեա Տէր զԴաւիթ և զամենայն հեզութիւն նորա :

## ՊԱՅԾԱՌԱԿԵՐՊՈՒԹԵԱՆ

Քո են երկինք և քո է երկիր. զաշխարհս լրիւ իւրով դու հաստատեցեր :

Զհիւսիս և զհարաւ դու արարեր. Թաբօր և Հերմոն յանուն քո ցնծասցեն :

## ԾՆՆԴԵԱՆ
ԵՒ
## ԱՒԵՏԵԱՑ

Իջցէ որպէս զանձրեւ 'ի վերայ գեղմանն. որպէս ցօղ զի ցօղէ յերկիր ։

Աստուած՝ զիրաւունս քո արքայի տուր. եւ զարդարութիւնս քո որդւոյ թագաւորի ։



## ԽԱՉԻ

Ետուր երկիւղածաց քոց նշան. զի ապրեսցին յերեսաց աղեղան ։

Որպէս փրկեսցին սիրելիք քո. կեցո աջով քով եւ լուր մեզ ։



## ՀՐԵՇՏԱԿԱՊԵՏԱՑ

Օրհնեցէք զՏէր յերկինս. օրհնեցէք զնա 'ի բարձունս ։

Օրհնեցէք զնա ամենայն հրեշտակք նորա. օրհնեցէք զնա ամենայն զօրութիւնք նորա ։

### ԱՌԱՔԵԼՈՑ

Ոչ են բանք և ոչ են խօսք՝ որոց ոչ լսին ձայնք նոցա։

Ընդ ամենայն երկիր ել բարբառ նոցա. և մինչև ՚ի ծագս աշխարհի են խօսք նոցա։

### ՄԱՐԳԱՐԷԻՑ

Յեկեղեցիս բարեբանեցէք զԱստուած. և զՏէր մեր յաղբերացն Իսրայէլի։

### ՀԱՅՐԱՊԵՏԱՑ

Քահանայք քո զգեցցին զարդարութիւն, և սուրբք քո ցնծալով ցնծասցեն։

Յիշեա Տէր զԴաւիթ, և զամենայն հեզութիւն նորա։

### ՄԱՐՏԻՐՈՍԱՑ

Պարծեսցին սուրբք փառօք. և ցնծասցեն ՚ի հանգիստս իւրեանց։

Օրհնեսցէք զՏէր յօրհնութիւնս. օրհնութիւն նմա յեկեղեցիս սրբոց։

բըն սըրբոմծդյ ոմմ դուոմ յն ։
Պ վայելչութե ընփառաց սըրբոու
թեամ մն քոմմէմմ յ ։ Ի յար
գանդէ յառաջ քան զարուսեալ ծընայ
ըղքեմդմդ ։ մաըրդ եծղեադ
լ ։

## ՔԱՐՈԶ

### ԿԻՒՐԱԿԱՄՏԻՑ · ԿԻՒՐԱԿԷԻՑ
### ԵՒ
### ՑԻՆԱՆՑ

Ասասցուք ամենեքեան միաբանութեամբ. Տէր ողորմեա ։ Տէր ողորմեա ։

Վասն խաղաղութեան ամենայն աշխարհի և հաստատութեան սրբոյ Եկեղեցւոյ · զՏէր աղաչեսցուք ։

Վասն ամենայն սուրբ և ուղղափառ եպիսկոպոսաց · զՏէր աղաչեսցուք ։

Վասն Հայրապետին մերոյ Տեառն ( այս անուն ) կենաց և փրկութեան հոգւոյ նորին · զՏէր աղաչեսցուք ։

Վասն վարդապետաց, քահանայից, սարկաւագաց, դպրաց և ամենայն ուխտի մանկանց Եկեղեցւոյ · զՏէր աղաչեսցուք ։

Վասն բարեպաշտ թագաւորաց և Ա-

ուածասէր իշխանաց՝ զօրավարաց եւ զօրաց նոցին • զՏէր աղաչեսցուք ։

Վասն զի Տէրն ամենակալ հնազանդեսցուցէ առաջի նոցա զամենայն պատերազմունս թշնամեաց • զՏէր աղաչեսցուք ։

Յաղագս հարց եւ եղբարցն մերոց՝ որք 'ի գերութեան են եւ 'ի չար ծառայութեան • զՏէր աղաչեսցուք ։

Յաղագս ճանապարհորդաց եւ նաւորդաց՝ խաղաղութեամբ հասանել 'ի նաւահանգիստըն բարութեան • զՏէր աղաչեսցուք ։

Յաղագս հիւանդաց եւ ամենայն վշտացելոց՝ փութապէս առողջութեան • զՏէր աղա՛ ։

Յաղագս բարեխառնութեան օդոց՝ անձրեւաց քաղցրութեան, եւ պտղոց առատութեան • զՏէր աղաչեսցուք ։

Յաղագս ուխտաւորաց եւ պատարագերից 'ի սուրբ Եկեղեցի Աստուծոյ • զՏէր աղա՛ ։

Եւ յաղագս այնոցիկ, որք մատնեալք են 'ի ձեռս անօրինաց վասն անուանն ՔՐԻՍՏՈՍԻ • զՏէր աղաչեսցուք ։

Ազատեա Տէր եւ ողորմեա ։

Յաղագս հոգւոցն հանգուցելոց • որք ճշմարիտ եւ ուղիղ հաւատով 'ի ՔՐԻՍՏՈՍ ննջեցին • զՏէր աղաչեսցուք ։

Յիշեա Տէր եւ ողորմեա ։

Յաղագս փրկելոյ զմեզ Տեառն Աստու-

ծոյ՝ յերևելի և յաներևոյթ թշնամւոյն ·
զՏէր աղաչեսցուք ։
Տէր ողորմեա ։

## ՄԱՂԹԱՆՔ

Բարեխօս ունիմք սուրբ զՄարիամ զԱստուածածինն զփառաւորեալ և օրհնեալ միշտ սուրբ կոյսն · սուրբ զՅովհաննէս մկրտիչն · սուրբ զՍտեփաննոս նախավկայն · սուրբ զԱռաքեալսն և զՄարգարէսն · զարի և զյաղթող սուրբ զՎկայսն ։ Եւ զմեծ խոստովանողն ՔՐԻՍՏՈՍԻ զհայրապետն մեր զսուրբն Գրիգորիոս լուսաւորիչն Հայաստանեայց աշխարհի ։

Յիշեսցէք և զամենայն սուրբս և զնոքօք · զՏէր աղաչեսցուք ։

Յիշեա Տէր և ողորմեա ։

Զառաւօտս լուսոյ և զառաջակայ օրըս խաղաղութեամբ անցուցանել՝ հաւատով ՚ի Տեառնէ խնդրեսցուք ։

Շնորհեա Տէր ։

Զհրեշտակ խաղաղութեան"։" Զքաւութիւն և զթողութիւն"։" Զսրբոյ խաչին մեծ"։" Եւ ևս միաբան"։" Զանձինս մեր"։" Ողորմեաց մեզ"։"

# ՔԱՐՈԶՔ

## 'Ի ՍՐԲՈՅՆ ԳՐԻԳՈՐԻ ԼՈՒՍԱՒՈՐՉԻՆ ՄԵՐՈՅ ԱՍԱՑԵԱԼ



ՎԱՍՆ

## ՀՌԻՓՍԻՄԵԱՆՑ

ԱՅԼ ԵՒ ՎԱՍՆ

## ԱՌԱՔԵԼՈՑ ԵՒ ՄԱՐԳԱՐԷԻՑ

ՄՏՈՒԱԾ մե՛ծ Հզօր և փառաւորեա՛լ․ լուսաւորիչ սրբոց՝ և 'ի սուրբս հանգուցեալ․ զճգնութի՛ւն սրբոց Առաքելոցն բարեխօս ունիմք առ քե՛զ․ ա՛ղա՛չե՛մ զք։

Լո՜ւր Տէ՛ր մտի՛ր և ողո՛րմեա՛։

Որ անդադա՛ր օրհնաբանիս 'ի դասուց հողեղինաց երկնաւոր զուարթնո՛ցն․ արժանաւորեա՛ զմեզ ուղիղ փառաւորութեամբ ընդ սուրբս քո՝ երկրպագե՛լ մեծի և ահաւոր Տէրութեանդ քո՛յ․ ա՛ղա՛չե՛մ զք"։

Օրհնե՛մք զքեզ միաբան սիրով՝ 'ի յիշատակիս վկայից քո՛ց․ որք հետեւօղք եղեն լուսազարդ ճանապարհա՛ց քո՛ց Տէր․ որ վասն մե՛ր յանձն առեր զչարչարանս խաչի և մահու․ ա՛ղա՛չե՛մ զք։"

Կատարի՛չք համայից կամաց Աստուածութեանդ քո՛ · զանձինս իւրեանց պատարագեցին 'ի վկայութիւն ճշմարիտ սի՛րոյ քոյ · և բուրեցի՛ն զհոտ անուշից Տէրութեանդ քո՛յ · ա՛ղա՞չե՛մք ։

Սրբեցի՛ն զանձինս իւրեանց տաճար անուանդ քում սրբո՛յ · մաքրեալք զմիտս՝ և զխորհուրդս իւրեանց երկիւղիւդ քո՛վ սրբո՞վ · և դասակի՛ց եղեն հոգեղինաց երկնաւոր զուարթնո՛ցն · ա՛ղա՞չե՛մք ։

Բարեխօսութեա՛մբ սրբուհւոյ Աստուածածնին, և Յովհաննու կարապետի՛ն · սրբոյն Ստեփաննոսի նախավկայի՛ն · և սրբոց Առաքելոց Մարգարէից և Մարտիրոսա՛ց · և սրբոյն Գրիգորի մերոյ լուսաւորչին ։ Բարեխօսութեամբ և աղօթիւք սրբոցն (այս անուն) որոց այսօր է յիշատակ ։ Եւ ամենայն սրբոց քոց Տէր՝ որք միացան 'ի սէր Աստուածութեա՛նդ քոյ՝ յիշեա՛ զհոգիս ննջեցելոց մերոց, և այց արա 'ի քում գալստեա՛նդ · ա՛ղա՞չե՛մք ։

Եւ ես առաւե՛լ զյորդորումն սիրոյ, և ըդգործըս բարեաց պարգևել մեզ խը՛նդրե՛մք ։

Զա՛նձինս մեր ։ Ողորմեա՛ց մեզ ։

## ՀԱՑՐԱՊԵՏԱՑ ԵՒ ՎԱՐԴԱՊԵՏԱՑ

Առաջնորդք եղեն մեզ ուղիղ գնացիւք ՚ի շաւիղս արքայութեան երկնի՛ց. մեծապայծառ ջահիւ՝ հաւատով և սիրո՛վ իւրեանց. ծագեցի՛ն զլոյս Աստուածգիտութեան ՚ի սիրտս մե՛ր. ա՛ղաչե՛մք:

Լո՛ւր Տէ՛ր մերի՛ և ողորմեա՛:

Պահպանութեա՛մբ խորհրդոց բանից և գործոց մերո՛ց. սրբութեամբ փառաւորել զամենասուրբ զԵրրորդութիւնն. զհա՛յր և զՈրդի և զսուրբ Հոգին՝ յաւիտեանս ամե՛ն. ա՛ղաչե՛մք:

Աղաչանօ՛ք սրբոց Մարտիրոսացն Տէր, որք ծնեցան վասն անուանդ քում սրբո՛յ. նայեա՛ց յերկրպագութիւն ժողովելոցս. և շնորհեա՛ մեզ թողութիւն, և հա՛ն մասն և բաժին ընդ սուրբս ա՛մենա՛յն. ա՛ղաչե՛մք:

Աղաչանօ՛ք սրբո՛ց արեամբ նահատակեալ վկայիցն Տէր. որք զանձինս իւրեանց տաճար մաքրեցին Հոգւոյդ քում սրբո՛յ. պարգևեա՛ երկրի մերում ըղձապատրաստ օդ. և ըղձուարճալի՛ ըզգրոյս. առ ՚ի լցումն լինել ամենայն հարկաւոր պիտոյից մերո՛ց. ա՛ղա՛:

Բարեխօսութեա՛մբ սրբուհւոյ Աստուածածնին": Իւ եւ առաւե՛լ": Ողա՛ ննջեցն մեր": Ողորմեա՛ց մեզ": Գ․է՛փ ջէՂ․ 256:

---

ՄԱՐՏԻՐՈՍՑ ԵՒ ՃԳՆԱՒՈՐԱՑ

Ընդ զձգնութի՛ւն սրբոց Մարտիրոսացըն բարեխօս ունիմք առ բարերար Որդիդ Աստուծոյ. զի շնորհեսցես աշխարհի զանշարժ զխաղաղութիւն. եւ պահեսցես հաստատուն սուրբ զեկե՛ղեցի, հաստատեա՛լ ՚ի վերայ հիման առաքելոց եւ մարգարէի՛ց. ա՛ղա՛չե՛մք:"

Լո՛ւր Տէ՛ ն՛ ը եւ ո՛ղո՛ րմեա՛:

Ընդ զձգնութի՛ւն սրբոց Մարտիրոսացըն բարեխօս ունիմք առ բարերար Որդիդ Աստուծոյ. զի խաղաղասցին խռովութի՛ւնք. դադարեսցին յարձակմունըք թըշնա՛մեաց. տիրեսցի՛ սէր եւ արդարութիւն ՚ի յերկրի՛. ա՛ղա՛չե՛մք:"

Աղաչանօ՛ք սրբոց Մարտիրոսացըն Տէր, որք ճգնեցան վասն անուանըդ քում սրբո՛յ. նայեա՛ց յերկրպագութիւն ժողովրդոցս եւ շնորհեա՛ մեզ թո՛ղո՛ւթիւն. եւ հա՛ն մասն եւ բաժին ընդ սուրբս անձնա՛յն. ա՛ղա՛":

Աղաչեմք սրբոց արեամբ նահատակեալ վկայիցն Տէր, որք զանձինս խուրեանց տաճար մաքրեցին Հոգւոյդ քում սրբոյ. պարգևեա երկրի մերում ըզքաղցրախառն օդ. և ըզզուարճալի ըզգօս. առ 'ի լցուցման լինել ամենայն հարկաւոր պիտոյից մերոց. աղաչեմք:"

Բարեխօսութեամբ սրբուհւոյ Աստուածածնին": " Եւ ևս առաւել": " Զանձինս մեր": " Ողորմեաց մեզ": " Գ․ է․ փ ջէՆ․ 256:

## ԾՆՆԴԵԱՆՆ ՔՐԻՍՏՈՍԻ
## ԵՒ
## ԱՒԵՏԵԱՑ ԵՒ ՓՈԽՄԱՆ ԱՍՏՈՒԱԾԱԾՆԻՆ
## ԵՒ
## ՏԵԱՌՆ ԸՆԴ ԱՌԱՋԻՆ

Մայր սուրբ աքանչելի լուսոյն. որ զԱստուածն ամենայն յաւիտենից յորովայնի քում կրեցեր՝ և ցնծութիւն աշխարհի ծնար զԲանն Աստուած. աղաչեմք:

Մայր սուրբ բարեխօսեա:

Աղաչեմ վասն մեր զառ 'ի քէն ըզմարմնացեալն Աստուած. Որ խոնարհեցաւ 'ի Հայրական ծոցոյ. էառ մարմին ըստ մարդկային բնութեան՝ առանց խառնակու

թիւն յերկինս և յերկրի՛ . ա՛ղա՞չե՛մք :"

Աղաչեմ": Ներե՛լ մեզ անտես առնել զյանցա՜նս մեր . և տալ օգնականութիւն ընդդիմակաց լինել հակառակամարտիցն 'ի պատերազմի՛ . ա՛ղա՞չե՛մք :"

Աղաչեմ": Զի լռեսցին պատերազմո՛ւնք . դադարեսցին յարձակմունք թշնա՞մեաց . տնկեսցի սէր և արդարութիւն 'ի յեր-կրի՛ . ա՛ղա՞չե՛մք :"

Աղաչեմ": Աճեցուցանել յերկրի մերում զքաղցր բղխումն աղբերա՛ց . զառա՜տ պտղաբերութիւն բուսոց՝ և՜ տնկոց . առ 'ի զուարճալի՛ն լինել ամենայն հարկաւոր պիտոյից մերո՛ց . ա՛ղա՞չե՛մք :"

Աղաչեմ": Զի միաբանեսցէ զեկեղեցի քո սուրբ . շինեա՜լ 'ի վերայ հիման առաքելոց և մարգա՜րէ՞ից . պահե՛լ անարատ մինչև յօր երևելոյ գալստեան իւրո՛յ . ա՛ղա՞չե՛մք :"

Աղաչեմ վասն մեր Սրբուհի՛ զմիածին քո զՈրդին . և վասն հոգւոցն հանգո՜ւցե՞լոց՝ ընդունե՛լ յարքայութիւնն երկնից . և տալ մասն և բաժին ընդ սուրբս ամենայ՛ն . ա՛ղա՞չե՛մք :

Յիշեա՛ Տէ՛ր և՛ ողո՛րմեա՛ :

Եւ ե՛ւս առաւելուլ զյորդորումն սիրոյ և զգործս բարեաց պարգևել մեզ խնդրեմք։
Տո՛ւր մե՛զ Տէ՛ր Ա՛ստո՛ւա՛ծ ։
Զա՛նձինս մե՛ր և ըզմիմեանս Տե՛առն Աստուծոյ ա՛մենակալին յա՛նձն արասցուք։
Քեզ Տեա՛ռնըդ յա՛նձն եղի՛ցո՛ւք ։
Ողորմեա՛ց մեզ Տէր Աստուած մեր"։
Տէր ողորմեա՛ . Տէր ողորմեա՛ . ըո՛ւր Տէ՛ր և ողո՛րմեա՛ ։

---

## ՔԱՐՈԶ

### ՊԱՀՈՑ

Փառաւորեսցո՛ւք զամենակալն Աստուած զՀայր Տեառն մերոյ ՅԻՍՈՒՍԻ ՔՐԻՍՏՈՍԻ, գո՛հանալով զնմանէ՝ որ պահեաց զմեզ խաղաղութեամբ ՚ի գիշերիս յայսմիկ ։ Եւ առաջնորդեաց մեզ ՚ի խաւարէ ՚ի լոյս . ՚ի մահուանէ ՚ի կեանս . յապականութենէ յանապականութիւն . յանգիտութենէ ՚ի գիտութիւն ճշմարտութեան իւրոյ ։ Աղաչեսցո՛ւք և խնդրեսցո՛ւք ՚ի նմանէ, զի զերկարութիւն տուընջեանս խաղաղութեամբ և ամենայն մտադիւր զուարթութեամբ արասցէ անցուցանել ՚ի մենջ ։ Եւ պարսպեալ պահեսցէ զժողովուրդս իւր Աստուածային զօ-

րութեամբն․ որ 'ի վերայ ամենայնի բարերարութեամբն իւրով իշխանութիւն ունի։ Ամենակալ Տէր Աստուած մեր․ կեցո՛ և ողորմեա՛։

Զառաւօտս լուսոյ և զառաջակայ օրըս խաղաղութեամբ անցուցանել հաւատով 'ի Տեառնէ խնդրեսցո՛ւք։'' Զհրեշտակ խաղաղութեան"։" Զքաւութիւն և զթողութիւն"։" Զսրբոյ խաչին մեծ և կա"։" Իւր եւս միա"։" Զանձինս մեր"։" Ողորմեա՛ց մեզ Տէր"։"



# ԱՂՕԹՔ

Գոհանամք զքէն Տէր Աստուած մեր․ որ երևելի լուսով քով զուարճացուցեր զամենայն արարածս քո․ իսկ իմանալի լուսով պատուիրանաց քոց՝ զամենեսեան լուսաւորեցեր զհաւատացեալս 'ի քեզ։ Զօրացո՛ և զմեզ Տէր՝ 'ի պահպանութիւն պատուիրանաց քոց՝ 'ի տունջեանս յայսմիկ և յամենայն ժամանակի։ Որպէս զի լուսաւորեալ միտք՝ միշտ զհաճոյս քո արասցուք․ և հանդերձեալ բարեացդ հասցուք ընդ ամենայն սուրբս քո։ Շնորհօք և մարդասիրութեամբ Տեառնդ մերոյ և փրկչին ՅԻՍՈՒՍԻ ՔՐԻՍՏՈՍԻ․ որում վայել է փառք իշխանութիւն և պատիւ․ այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից․ Ամէն։

Խաղաղութիւն ամենեցուն ։

Խաղաղութիւն մեր և կեանք՝ որ ՚ի հօրէ առաքեցար՝ միածին Որդի Աստուծոյ . Տէր մեր և փրկիչ ՅԻՍՈՒՍ ՔՐԻՍՏՈՍ ։ Տո՛ւր մեզ զխաղաղութիւն քո՝ զոր շնորհեցեր որբոց քոց առաքելոց . փչմամբ քո ՚ի նոսա զկենդանացուցիչ և զամենազօր հոգիդ քո սուրբ ։ Որպէս զի և մեք խաղաղացեալք յամենայն աշխարհական սահեցմանց՝ լիցո՛ւք ազատ և բնակարան Աստուածային շնորհացդ . և գոհանալով փառաւորեսցո՛ւք զքեզ ընդ հօր և սուրբ հոգւոյդ ՔՐԻՍՏՈՍ Աստուած մեր . այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից . Ամէն ։



## ՍՈՒՐԲ ԱՍՏՈՒԱԾ

### ԸՍՏ ՊԱՏՇԱՃԻ ԱՒՈՒՐ



### ԱՒԵՏԵԱՑ - ԾՆՆԴԵԱՆ
ԵՒ
### ԹԼՓԱՏՈՒԹԵԱՆ

Սո՛ւրբ Աստուած ։ սո՛ւրբ և հզօ՛ր . սո՛ւրբ և անմահ . որ յայտնեցար վասն մեր . ողորմեա՛ մեզ ։ Երեքս կրկնէ՛ ։

### ՔԱՌԱՍՆՕՐԵԱՑ ԳԱԼՍՏԵԱՆՆ ՔՐԻՍՏՈՍԻ
ԵՒ
### ԾԱՂԿԱԶԱՐԴԻՆ

*Սուրբ Աստուած․" որ եկիր և գալոց ես․ ողորմեա՛ մեզ։*

---

### ԱՒԱԳ ՈՒՐԲԱԹՈՒ
### ՄԱՏՆՈՒԹԵԱՆ ԳԻՇԵՐԻՆ

*Սուրբ Աստուած․" որ մատնեցար վասն մեր․ ողորմեա՛ մեզ։*

---

### ԱՒԱԳ ՈՒՐԲԱԹՈՒ ՃԱՇՈՒՆ
ԵՒ
### ԱՄԵՆԱՅՆ ՏՕՆԻՑ ՍՈԲՈՑ ԽԱՉԻ
ԵՒ
### ԵԿԵՂԵՑԻՈՑ ԱՅԼ ԵՒ ՊԱՀՈՑ

*Սուրբ Աստուա՛ծ․" որ խաչեցար վասն մեր․ ողորմեա՛ մեզ։*

---

### ԱՒԱԳ ՈՒՐԲԱԹՈՒ ԵՐԵԿՈՅԻՆ
ԵՒ
### ՇԱԲԱԹՈՒ ԳԻՇԵՐԻՆ

*Սուրբ Աստուած․" որ թաղեցար վասն մեր․ ողորմեա՛ մեզ։*

---

ԶԱՏԿԻ

ԵՒ

ԱՄԵՆԱՅՆ ՅԱՐՈՒԹԵԱՆ ԿԻՒՐԱԿԷԻՑ

Սուրբ Աստուած ." որ յարեար 'ի մեռելոց . ողորմեա մեզ ։



ՀԱՄԲԱՐՁՄԱՆՆ ՔՐԻՍՏՈՍԻ

Սուրբ Աստուած ." որ համբարձար փառօք առ Հայր . ողորմեա մեզ ։



ԳԱԼՍՏԵԱՆ ՀՈԳՒՈՅՆ ՍՐԲՈՅ

Սուրբ Աստուած ." որ եկիր և հանգեար յառաքեալսն . ողորմեա մեզ ։



ՊԱՅԾԱՌԱԿԵՐՊՈՒԹԵԱՆՆ ՔՐԻՍՏՈՍԻ

Սուրբ Աստուած ." որ յայտնեցար 'ի Թաբօր լերինն . ողորմեա մեզ ։



ՎԵՐԱՓՈԽՄԱՆ ԱՍՏՈՒԱԾԱԾՆԻՆ

Սուրբ Աստուած ." որ եկիր 'ի փոխումն մօր քոյ և կուսի . ողորմեա մեզ ։

ԹՈՎՄԱՅԻ ԱՌԱՔԵԼՈՅ ԱՍԱՑԵԱԼ ։

Փառաւորեալ և օրհնեալ միշտ սուրբ կոյս Աստուածածին Մարիամ մայր Քրիս-

ՏՈՍԻ մատո՛ զաղաչանս մեր՝ Որդւոյ քոյ և Աստուծոյ մերոյ ։

## ՄԱՂԹԱՆՔ

Փրկեա՛ զմեզ ՚ի փորձութենէ և յամենայն վտանգից մերոց ։

## ՔԱՐՈԶ

Եւ եւս խաղաղութեան զՏէր աղաչեսցուք ։

Վասն լսելի լինելոյ Տեառն Աստուծոյ ձայնի աղաչանաց մերոց՝ բարեխօսութեամբ սուրբ Աստուածածնին ։ Եւ իջանելոյ ՚ի վերայ մեր ողորմութեան և գթութեան Տեառն Աստուծոյ ։ Ամենակալ Տէր Աստուած մեր ․ կեցո՛ և ողորմեա՛ ։

Քահանայն ասէ ․ Օրհնութիւն և փառք Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ ․ այժմ և միշտ և՛՛ ։

Խաղաղութիւն ամենեցուն ։



Եւ ասի ՍԱՂՄՈՍ յայնժամ յառաջ կիւրակէի յառաջընթաց Ընծայութեան ԱՒԵՏԱՐԱՆԻՆ ։

## ՍԱՂՄՈՍ

ճժ ․ Եղիցի՛ անուն Տեառն օրհնեա՛լ, յայսմ հետէ մինչև յաւիտեա՛ն ․

ճի ․ Օրհնեցէ՛ք մանկունք զՏէր ․ և օրհնեցէ՛ք զանուն Տեառն ․

Եղիցի անուն Տեառն օրհնեալ, յայսմ հետէ մինչեւ յաւիտեան։

Յարեւելից մինչեւ 'ի մուտս արեւու՝ օրհնեալ է անուն Տեառն։

Բարձր է 'ի վերայ ամենայն ազգաց Տէր, եւ յերկինս են փառք նորա։

Ո՞վ է որպէս Տէր Աստուած մեր 'ի բարձունս բնակեալ, եւ զխոնարհս տեսանէ յերկինս եւ յերկրի։

Յարուցանէ զաղքատս յերկրէ, եւ բարձր առնէ զաղաւաղեալս յաղբեաց։

Նստուցանէ զնոսա իշխանս՝ ընդ իշխանս ժողովրդեան իւրոյ։

Բնակեցուցանէ՛ զամուլն 'ի տան ուրախա՛մի՛տ, որպէս մա՛յր որդւո՞վք բերկրեա՛լ։



Յաւուրս կիւրակէից որք ընթերցեալ լինի յառաւօտեան ԱՒԵՏԱՐԱՆ Էջմիածնեան՝ բաց յայնմին։ Եւ 'ի տօնս Տէրունականս ՍԱՂՄՈՍ և ԳԻՐՔ և ԱՒԵՏԱՐԱՆ բաց ցուցանի տօնացուցին։



# ԱՒԵՏԱՐԱ՛ՆՔ
## ԲԺՇԿՈՒԹԵԱ՛Ն
## ԸՍՏ ՈՒԹ ՁԱՅՆԻՑ



ԱՒԵՏԱՐԱՆ

ԸՍՏ

ՄԱՏԹԷՈՍԻ

(ԳԼ. ԺԵ. Հ. 21:)

ԱՒԱԳ ԿՈՂՄ ԵՒ ՎԵՐՋ



### Տէ՛րն մեր Յիսուս Քրիստոս:

ՃԿ. ԴԿ. Եւ ելեալ անտի Յիսուսի գնաց 'ի կողմանս Տիւրոսի և Սիդոնի: Եւ ահա կին մի Քանանացի 'ի սահմանաց անտի նոցա ելեալ, աղաղակէր և ասէր. ողորմեա՛ց ինձ Տէր որդի Դաւթի, դուստր իմ չարաչար այսահարի: Եւ նա ո՛չ ետ նմա պատասխանի. և մատուցեալ աշակերտքն նորա՝ աղաչէին զնա և ասէին. արձակեա՛ զնա, զի աղաղակէ զհետ մեր: Նա պատասխանի ետ և ասէ. ո՛չ ուրեք առաքեցայ՝ եթէ ոչ առ ոչխարս կորուսեալս տանն Իսրայէլի: Եւ նա մատուցեալ երկիրպագանէր նմա և ասէր. Տէր՝ օգնեա՛ ինձ: Պատասխանի ետ նմա և ասէ. ո՛չ է բարւոք առնուլ զհաց մանկանց՝ և արկանել շանց:

Եւ նա ասէ . այո՛ Տէր , քանզի և շունք կերակրին 'ի փշրանաց անկելոց 'ի սեղանոյ տեառն իւրեանց ։ Յայնժամ պատասխանի ետ նմա ՅԻՍՈՒՍ և ասէ . ո՛վ կին դու՝ մեծ են հաւատք քո , եղիցի քեզ որպէս և կամիս . և բժշկեցաւ դուստր նորա 'ի նմին ժամու ։
Մ էթէ . Հ , 28։



ԱՒԵՏԱՐԱՆ

ըստ

ՄԱՐԿՈՍԻ

( ԳԼ, Է . Հ , 31։ )

ԵՐԿՐՈՐԴ ԵՒ ՉՈՐՐՈՐԴ ՁԱՅՆ



Տէրն մեր ՅԻՍՈՒՍ ՔՐԻՍՏՈՍ ։

ԲՁ .
ԴՁ . } Եւ ելեալ միւսանգամ 'ի սահմանացն
Տիւրոսի և Սիդոնի , և եկն 'ի ծովեզրն
Գալիլեացւոց 'ի մէջ սահմանացն 'ի Դեկապօլիս ։ Եւ բերին առաջի նորա խուլ մի և
համր . և աղաչէին՝ զի ձեռն դիցէ 'ի վերայ
նորա ։ Եւ առեալ զնա մեկուսի յամբոխէ
անտի՝ արկ զմատունս իւր ընդ ականջս նորա՝
և եթուք անդր . և կալեալ զլեզուէ նորա ,
հայեցաւ յերկինս՝ յոգւոց եհան՝ և ասէ ,
եփփաթա՝ որ է բացիր ։ Եւ նոյնժամայն բա-

ցան լսելիք նորա, և լուծան կապանք լեզուի նորա. և խօսէր ուղիղ: Եւ պատուիրեաց նոցա՝ զի մի ումեք ասիցեն. և որչափ նոա պատուիրէր նոցա, նոքա ևս առաւել քարոզէին. և ևս քան զևս զարմանային և ասէին. զամենայն ինչ բարւոք գործեաց սա, զի խլից լսել տայ՝ և համրոց խօսել: Մարկ. Հ, 37:



ԱւԵՏԱՐԱՆ

ըստ

ՂՈՒԿԱՍՈՒ

(Գլ, Թ. Հ, 37:)

ԱՌԱՋԻՆ ԿՈՂՄ ԵՒ ՎԱՌ



## Տէրն մեր ՅԻՍՈՒՍ ՔՐԻՍՏՈՍ:

Ակ. Գկ. Եւ եղև ՚ի վաղիւն մինչ իջանէին նոքա ՚ի լեռնէ անտի, ընդ առաջ եղև նմա ժողովուրդ բազում: Եւ ահա այր մի ՚ի ժողովրդենէ անտի աղաղակեաց և ասէ, Վարդապետ՝ աղաչեմ զքեզ հայեաց յորդի իմ, զի միամօր է ինձ: Եւ ահա հոգի ՚ի նմա, և յանկարծ գոչէ՝ և զարկուցանէ զնա և թաւալեցուցանէ և փրփրեցուցանէ, և հազիւ մեկնի ՚ի նմանէ խորտակեալ զնա. և աղաչեցի զաշակերտսն քո զի հանցեն զնա, և ոչ

կարացին ։ Պատասխանի ետ ՅԻՍՈՒՍ և ասէ․ ո՛վ ազգ անհաւատ և թիւր , մինչև յե՞րբ եղէց ընդ ձեզ՝ և անսայցեմ ձեզ ․ մատո այսր զորդին քո ։ Եւ մինչ դեռ մատչէր , զարկոյց զնա դևն՝ և շարժլեաց ։ Սաստեաց ՅԻՍՈՒՍ այսոյն պղծոյ , և բժշկեաց զմանուկն ․ և ետ զնա ցհայր իւր ։ Եւ զարմանային ամենեքեան 'ի վերայ մեծամեծացն Աստուծոյ ։ Ղուկ․ Հ , 44 ։

ԱՒԵՏԱՐԱՆ

ըստ

ՅՈՎՀԱՆՆՈՒ

( Գլ․ Դ․ Հ , 46 ։ )

ԱՌԱՋԻՆ ԵՒ ԵՐՐՈՐԴ ՁԱՅՆ

Տէրն մեր ՅԻՍՈՒՍ ՔՐԻՍՏՈՍ ։

Աձ․ Գձ․ Եկն դարձեալ 'ի Կանա Գալիլեացւոց՝ ուր արար զջուրն գինի ․ և անդ էր թագաւորազն մի , որոյ որդի նորա հիւանդ կայր 'ի Կափառնայում ։ Նա իբրև լուաւ եթէ ՅԻՍՈՒՍ եկեալ է 'ի Հրէաստանէ 'ի Գալիլեա ․ եկն առ նա՝ և աղաչէր , զի իջցէ և բժշկեսցէ զորդի նորա ․ քանզի մերձ էր 'ի մեռանել ․ Ասէ ցնա ․ եթէ ոչ նշանս ինչ և արուես-

տըս տեսանէք՝ ոչ հաւատայք ։ Ասէ ցնա Թագաւորազն . Տէր՝ էջ մինչչև մեռեալ իցէ մանուկն իմ ։ Ասէ ցնա ՅԻՍՈՒՍ , Երթ՝ որդին քո կենդանի է . և հաւատաց այրն բանին՝ զոր ասաց նմա ՅԻՍՈՒՍ , և գնաց ։ Եւ մինչ դեռ իջանէր , ընդ առաջ եղեն նմա ծառայքըն նորա . աւետիս ետուն և ասեն , Թէ մանուկն նորա կենդանի է ։ Հարցանէր ցնոսա վասն ժամուն՝ յորում ապաքինեաց . և ասեն ցնա , երէկ յեօթներորդ ժամու եթող զնա ջերմն ։ Գիտաց հայրն նորա՝ եթէ յայնմ ժամու՝ յորում ասացն ցնա ՅԻՍՈՒՍ՝ Թէ որդին քո կենդանի է . և հաւատաց ինքն և ամենայն տուն իւր ։ Զայս դարձեալ երկրորդ նշանս արար ՅԻՍՈՒՍ եկեալ 'ի Հրէաստանէ 'ի Գալիլեա ։ Յովհ . Դ , 54 ։

## ԵՐԳ

### ԱՌԱՋՆՈՑ ԱՒՈՒՐ ՄԻԱՇԱԲԱԹԻՆ՝ 'Ի ԽՈՐՀՈՒՐԴ ԱՐԱՐՉՈՒԹԵԱՆՆ , ԵՒ 'Ի ՅԱՐՈՒԹԻՒՆՆ ՔՐԻՍՏՈՍԻ ։

### ԿԻՒՐԱԿԷ

Սո°րբաստեղծեա՜լ Բանն յա՛նէի՞ց 'ի ակըզբա՛նէ զերկի՛նս երկնի՛ց . և° զերկնայի՜ն զօրս ա՛նմարմնո՞ց իմա՛նա՛լեացըն զը՛ւարթնո՛ց . և° ըղձալի՜ տարե՛րց քառի՞ց հակա՛

ռակաց միաբանից. որով յաւէտ փա-
ռաբանի Երրորդութիւնն անճառելի։

Երեքսրբեան մի Տէրութեան միով
բնութեամբ Աստուածութիւն. լոյսն որ
անեղ արարչական ասացլինել լոյս եզա-
կան. զոր և ծագեաց յօրն առաջին միա-
շաբաթ կիւրակէին. որով յաւէտ։

Բարբունօրէն բացատրեցուք զծած-
կեալ խորհրդոյն ծանիցուք. զի լոյսն
անաեւ իմանալի մաքուր հոգւոց տեսա-
նելի. 'ի սոյն ծագեաց միաշաբաթ մեզ
Յարութեան սուրբ ճառագայթ. եկայք
փրկեալք ընդ զուարթնոցն տուք օրհ-
նութիւն Յարուցելոյն։

Մերդ սիրով խոնարհեցար 'ի փրկ-
կութիւն մեր մարմնացար. նովին մարմ-
նովն խաչեցար 'ի գերեզման մահու ե-
դար. այսօր յարեար Աստուածաբար
'ի հրեշտակաց քարոզեցար. եկայք։

Երևեցար խնկաբերիցն յողջոյն կե-
նացն ուրախալից. և 'ի լերինն Գալի-
լեա առաքելոց մետասանից. որժանա-
ցո զմեզ ընդ նոսին զքեզ տեսանել
յօրն վերջին. եկայք փրկեալք։

և յաւիտեանս յաւիտենից. Ամէն:

Դպիրն: Ալէլուիա. Ալէլուիա. Ալէլուիա:

Քահանայն: Օրհնեսցի և պահպանեսցի և նախախնամեալ պահեսցի. արևելեան կողմ աշխարհիս. և հայրապետութիւն հայոց. այս նշանաւ սուրբ խաչիւս և սուրբ Աւետարանաւս. և աւուրս շնորհիւ. անուամբ Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ. այժմ և":

Եւ դարձուցանեն զերեսս յարեւմուտս:

Դպիրն: Ամէն. Ալէլուիա. Ալէլուիա. Ալէլուիա:

Քահանայն: Օրհնեսցի և պահպանեսցի և նախախնամեալ պահեսցի. արևմտեան կողմ աշխարհիս. և թագաւորութիւն Քրիստոնէից. այս նշանաւ սուրբ խաչիւս և սուրբ Ա":

Եւ շրջեալ դառնան ի հարաւ:

Դպիրն: Ամէն. Ալէլուիա. Ալէլուիա. Ալէլուիա:

Քահանայն: Օրհնեսցի և պահպանեսցի և նախախնամեալ պահեսցի. հարաւային կողմ աշխարհիս. երկիրս անդաստանս և պտղաբեր

րութիւն տարւոյս. այս նշանաւ սուրբ խաչիւս և սուրբ Աւետարանաւս և յաւուր":

Եւ շրջելով դառնան ի հիւսիս.

Դպիրն. Ամէն. Ալէլուիա. Ալէլուիա. Ալէլուիա:

Քահանայն. Օրհնեսցէ և պահպանեսցէ և նախախնամեալ պահեսցէ. հիւսիսային կողմ աշխարհիս. վանքս անապատս քաղաքս և գիւղս. և բնակեալ ժողովուրդս ՚ի սմա. այս նշանաւ սուրբ խաչիւս և սուրբ":

Եւ դառնան ի բեմն.

Դպիրն. Ամէն. Ալէլուիա. Ալէլուիա. Ալէլուիա:

Քահանայն. Օրհնութիւն և փառք Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ. այժմ և միշտ":

## ՔԱՐՈԶ

### ԹԱՓՕՐԻ ԵՒ ԽԱՉԻ

Սուրբ խաչիւս աղաչեսցուք զՏէր. զի սովաւ փրկեսցէ զմեզ ՚ի մեղաց՝ և կեցուսցէ շնորհիւ ողորմութեան իւրոյ: Ամենակալ Տէր Աստուած մեր. կեցո՛ և ողորմեա՛:

# ԱՂՕԹՔ

Պահպանեա զմեզ Քրիստոս Աստուած մեր՝ ընդ հովանեաւ սուրբ և պատուական խաչիւդ քով՝ 'ի խաղաղութեան․ փրկեա յերեւելի և աներեւոյթ թշնամեաց ։ Արժանաւորեա գոհութեամբ փառաւորել զքեզ ընդ Հօր և ընդ սրբոյ Հոգւոյդ․ այժմ և"։ Օրհնեալ Տէր մեր Յիսուս Քրիստոս․ Ամէն ։

Հայր մեր որ յերկինս ես"։



Իսկ յայլ աւուրս ճաշոյ 'ի կիւրակէից՝ չէր սուրբ Աստուածածին, և Քառորդին, ասէ այս ՍԱՂՄՈՍ 'ի բե ։

# ՍԱՂՄՈՍ

ժբ․ Օրհնեցէք մանկունք զՏէր․ և օրհնեցէք զանուն Տեառն ։

Եղիցի անուն Տեառն օրհնեալ, յայսմ հետէ մինչև յաւիտեան ։

Յարեւելից մինչև 'ի մուտս արեւու՝ օրհնեալ է անուն Տեառն ։

Բարձր է 'ի վերայ ամենայն ազգաց Տէր․ և յերկինս են փառք նորա ։

Ո՞վ է որպէս Տէր Աստուած մեր 'ի բարձունս բնակեալ․ և զխոնարհս տեսանէ յերկինս և յերկրի ։

Յարուցանէ զաղքատս յերկրէ․ և բարձր առնէ զտառապեալս յաղբեաց ։

Նստուցանէ զնոսա իշխանս՝ ընդ իշխանս ժողովրդեան իւրոյ։

Բնակեցուցանէ զամուլն ՚ի տան ուրախամիտ, որպէս մայր որդւովք բերկրեալ։

Փառք Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ։

Այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. Ամէն։

## ԿԱՆՈՆ

## ՀՐԵՇՏԱԿԱՊԵՏԱՑ

### ՄԱՆԿՈՒՆՔ ՇԱՐԱԿԱՆ • ՍՑԵՂԻ ԵՒ ՎԵՐՋ

ՍՑ • ԴԿ • Երկնաւոր հօտ մ նորեալ. զոր հովիւն քաջ թողեալ յերկինս. և եկեալ ՚ի խնդրել զմոլորեալոցս. որով լըցեալ զթիւ համբուրոյցդ. ամբարք ուրախութիւն ՚ի յերկինս երկնաւորացդ. աղաչեմք զձեզ բարեխօս լերուք առ Տէր վասն քաւութեան մեղաց մերոց։ Տեսանողք անմասին. խորհրդածուք խորոցն Աստուծոյ. որք իշխեալ ընդ միածնին սպասաւորել աներէնութեանն. ՚ի ծննդեանն աւետա

ուրք հովուացն. և կանանցն իւղաբերից կենաց քարոզք ըզկենդանւոյն. աղա": Պահապանք աշխարհի. բանակք Տեառն շուրջ զերկիւղածովք. բարեկամք ազգի մարդկան միջնորդք մահու և յարութեան. Միքայէլ և Գաբրիէլ մեծք. որ կայք միշտ առաջի ամենասուրբ Երրորդութեանն. աղաչեմք":

# ԿԱՆՈՆ

## ԱՊԱՇԽԱՐՈՒԹԵԱՆ



### ՄԱՆԿՈՒՆՔ ՇԱՐԱԿԱՆ. ԱՌԱՋԻՆ ՁԱՅՆ

ԱՁ. Առաւօտու զօրհներգութիւնըս մարդասիրութեամբըդ քո ընկալ թագաւոր փառաց. և զմանկունս Եկեղեցւոյ քո պահեա 'ի խաղաղութեան: Որ տեսողդ ես խոնարհաց յերկնից 'ի յերկիր. և տուող ողորմութեան ազգի մարդկան. և զմա"ն": Ընդ Սերովբէովն սրբասաց համաձայնեալ քեզ երգեմք. երեքսրբեան Տէրութիւն խնայեա քաղցրութեամբ յարարածըս քո. և զմանկունս":

# ԿԱՆՈՆ
## ԱՌԱՔԵԼՈՑ



### ՄԱՆԿՈՒՆՔ ՇԱՐԱԿԱՆ · ԱՌԱՋԻՆ ԿՈՂՄ

Աչ · Աշակերտք Քրիստոսի · և առաքեալք ամենայն ազգք լուսաւորեալք · բարեխօսեցէք առ Տէր վասն մեր : Որք առիք ըզպատուէր · քարոզել աներկեւղ ըզԲանն կենաց յաշխարհի · բա՛ : Որք արժանի եղէք տեսանել մարմնով զԱրքին Աստուծոյ յայտնապէս · բարեխօսեցէք :

# ԿԱՆՈՆ
## ՀԱՅՐԱՊԵՏԱՑ



### ՄԱՆԿՈՒՆՔ ՇԱՐԱԿԱՆ · ՎԵՐՋ

Դկ · Այսօր ցնծայ զուարճացեալ Եկեղեցի հեթանոսաց · տօնելով զյիշատակ մեծի նահապետին և հօրն հաւատոյ Աբրահամու · օրհնեցէք մանկունք Սիոնի զհայրըն լուսոյ անլըռելի : Այսօր նոր Իսրայէլ կոչեցաւ մարգարէիւքն առ Աստուած · տօնէ ցնծութեամբ ըզ

տօն հովուացն Իսրայէլին առաջնոյ. գո
վելով ըզգլուխ անկեան երկուց որմոց
յարմարութեան։ Այսօր ի գլուխս
վերանց տուն Աստուծոյ հաստատեալ.
որ և յաւէտ ոռոգիս յամպոց Հոգւոյն
Աստուածաբուղխ առատահոս անձրևօք.
բարեբանեա զաղբիւրսն կենաց զարբու
ցանողն ծարաւեաց։

## ԿԱՆՈՆ
## ՄԱՐՏԻՐՈՍԱՑ

ՄԱՆԿՈՒՆՔ ՀԱՐԱԿԱՆ · ԱՌԱՋԻՆ ՁԱՅՆ

ԱՁ. Ըզճգնութիւն սրբոց քոց Քրիս
ՏՈՍ տօնելով այսօր ընդ զօրս անմարմնոցն.
քեզ երգեմք անլռելի զօրհնա
բանութիւն։ Ներկայացեալ էք ըզամարդկա
յին տկարութեան ըզգեստ. հաւատոյ
վառեալ ըզգեստուք. յաղթեցէք
հսկայական մարտիցն ի պատերազմի։ Աք
կըրտեալ էք ընդ Քրիստոսի հեղմամբ
արեանն ի մահ. Աստուածութեանն գոլով
հրաշակերտք. շինեալ էք ի վա
յելչութիւն սուրբ արքայութեանն։

# ՔԱՐՈԶ

Ձայնի Մանկանց Հարանցնին :

Վասն խաղաղութեան ամենայն աշխարհի . և հաստատութեան սրբոյ Եկեղեցւոյ զՏէր աղաչեսցուք : Ասասցուք ամենեքեան միաբանութեամբ :

Տէր ողորմեա . Տէր ողորմեա . Տէր ողորմեա :

# ԱՂՕԹՔ

Սուրբ ես Տէր Աստուած մեր Հզօր և փառաւորեալ . որ նստիս 'ի կառս Քրովբէականս և լոյս ծագես յարարածս քո : Լուսաւորեա զմեզ Տէր 'ի ժամ առաւօտուս . որպէս զի 'ի ծագել լուսոյ տունջեանս՝ ծագեսցի առ մեզ գութ մարդասիրութեան քո : Հեռացո 'ի մէնջ Տէր զխաբէութիւն սատանայի . և զդառնութիւն նորա խորամանկեա աղօթիւք և բարեխօսութեամբ ամենայն սրբոց : Որում և զերկիրս պտղաբերեա 'ի սնունդս ծառայից քոց : Յորոց հանապազ փառաւորեալ գովի ամենասուրբ Երրորդութիւնն . այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից" :



Յ[illegible] Տէր ամենակալ . [illegible] էջ . 290 : [illegible] Քանիցս [illegible] էջ . 294 : [illegible] ՍԱՂՄՈՍ [illegible]

# ՍԱՂՄՈՍ

ճժ. Սիրեցի՛ զի լուիցէ Տէր զձայն աղօթից իմոց. զի խոնարհեցոյց զունկն իւր առ իս, և ես յաւուրս իմ կարդացի առ նա։

Շրջեցան զինև երկունք մահու. և վիշտք դժոխոց գտին զիս։

Զնեղութիւն և զանձկութիւն գտի, և զանուն Տեառն կարդացի։

Ո՛վ Տէր՝ փրկեա՛ զանձն իմ. ողորմած Աստուած մեր ողորմի՝ և պահէ զտղայս Տէր։

Ես խոնարհ եղէ՝ և Տէր կեցոյց զիս. դա՛րձ անձըն իմ ՚ի հանգիստ քո. զի Տէր օգնեաց քեզ։

Փրկեաց զանձն իմ ՚ի մահուանէ. զաչս իմ յարտասուաց. և զոտս իմ ՚ի գայթակղութենէ. Հաճոյ եղէց առաջի Տեառն յերկրին կենդանեաց։

Հաւատացի զոր և խօսեցայ. և ես խոնարհ եղէ յոյժ։

Ես ասացի ՚ի զարմանալ իմում, թէ ամենայն մարդ սուտ է։

Զի՞նչ տաց տրիտուր Տեառն՝ ընդ ամենայնի՛ զոր և ետ ինձ։

Զբաժակ փրկութեան ընկալայց. և զանուն Տեառն կարդացից։

Զաղօթս իմ Տեառն տաց՝ առաջի ամենայն ժողովրդեան նորա։

Պատուական է առաջի Տեառն մահ սրբոց

փուրոց. ո՜ Տէր ես ծառայ քո եմ, ծառայ և որդի աղախնոյ քո։

Հատեր զկապանս իմ. քեզ մատուցից պատարագ օրհնութեան, և զանուն Տեառն կարդացից։

Զաղօթս իմ Տեառն տաց առաջի ամենայն ժողովրդեան նորա. ՚ի գաւիթս տան Տեառն, և ՚ի մէջ քո Երուսաղէմ։

Օրհնեցէք զՏէր ամենայն ազգք. գովեցէք զնա ամենայն ժողովուրդք։

Զօրացաւ ողորմութիւն նորա ՚ի վերայ մեր. և ճշմարտութիւն Տեառն մնասցէ յաւիտեան։

Աստուած յանուան քում կեցո զիս, և ՚ի զօրութեան քում իրաւ արա ինձ։

Աստուած լուր աղօթից իմոց, ունկնդիր բանից բերանոյ իմոյ։

Օտարք յարեան ՚ի վերայ իմ, և հզօրք խնդրեցին զանձն իմ, և ոչ համարեցան զքեզ Աստուած առաջի իւրեանց։

Ահա Աստուած օգնական իմ, և Տէր ընդունող հոգւոյ իմոյ։

՚Ի դարձուցանել զչարն ՚ի թշնամիս իմ, ճշմարտութեամբ քով սատակեա զնոսա։

Ես կամօք իմովք պատարագս մատուցից քեզ. և խոստովան եղէց անուան քում Տէր, զի բարի է։

Յամենայն նեղութենէ իմմէ փրկեցեր զիս , և 'ի թշնամիս իմ ետես ակն իմ :

Տուր զօրութիւն ծառայի քո . կեցո զորդի աղախնոյ քո . և արա առ իս նշան բարութեան :

Տեսցեն ատելիք իմ և ամաչեսցեն . զի դու Տէր օգնեցեր ինձ , և մխիթարեցեր զիս :

Փառք Հօր և Որդւոյ" : Այժմ և միշտ" :



# ՄԱՂԹԱՆՔ

## 'Ի ՏՕՆԻ ԱՄԵՆԱՅՆ ՍՐԲՈՑ

Քրիստոս Աստուած մեր՝ վասն խաչի քոյ պատուականի , զխաղաղութիւն քո տուր մեզ Տէր :

Տուր մեզ Տէր :

Վասն սրբուհւոյ Աստուածածնին , և Յովհաննու կարապետին , և սրբոյն Ստեփաննոսի նախավկային , զխաղաղութիւն քո տուր մեզ Տէր :"

Վասն սրբոց քոց Առաքելոց , Մարգարէից , Վարդապետաց , Մարտիրոսաց , Հայրապետաց , Ճգնաւորաց , Կուսանաց , Միանձանց և երկնային Զօրացն , զխաղաղութիւն քո տուր մեզ Տէր :"

Եւ վասն նախկին լուսաւորչացն մերոց Թադէոսի և Բարդուղիմէոսի , և սրբոյն

Գրիգորի մերոյ լուսաւորչին, և սրբոց Յա-
կովբեանց երջանիկ Առաքելոցն, և սրբոյն
Յակովբայ Մծբնայ Հայրապետին, Մարու-
գէի ճգնաւորին, և Մելիտոսի եպիսկոպո-
սին, և Գէորգայ զօրավարին: Բարեխօսու-
թեամբ յիշատակաւ և աղօթիւք սրբոցն (այս
անուն) որոց այսօր է յիշատակ. զխաղաղու-
թիւն և զմեծ ողորմութիւն քո պարգևեա
մեզ մարդասէր Տէր:

Ամէն:

## ՔԱՐՈԶ
### Ի ՏՕՆԻ ԱՌԱՔԵԼՈՑ
### ԵՒ
### ԱՄԵՆԱՅՆ ՍՐԲՈՑ

Սուրբ ճգնաւորքն աղաչեցէք զՏէր. որք զչարսն պարտեցին, նեղութեանցն համբերեցին: Լուսեղէն և երկնային անթառամ պսակացն արժանի եղեն: Աղօթիւք նոցա և բարեխօսութեամբ մեզ ողորմեսցի. Ամենակալ Տէր Աստուած մեր կեցո և ողորմեա:

## ԱՂՕԹՔ
### Ի ՏՕՆԻ ԱՌԱՔԵԼՈՑ ԵՒ ՄԱՐԳԱՐԷԻՑ
### ԱՅԼ ԵՒ
### ՀԱՅՐԱՊԵՏԱՑ ԵՒ ՎԱՐԴԱՊԵՏԱՑ

Որ ընտրեցեր և ընկալար զերանելին ըզ-
Վկայսն քո (այս անուն) ՔՐԻՍՏՈՍ Աստուած

մեր ․ և Հայորդւս արարեր զնոսա կամաւոր չարչարանաց քոց ։ Արդ՝ բարեխօս առ քեզ ունիմք, որք աստ, և ընդ ամենայն տիեզերս սուրբք իցեն ։ Որպէս զի աղօթիւք նոցա և բարեխօսութեամբ խաղաղացուսցես զկեն-ցաղավարութիւնս մեր, փրկելով զմեզ յե-րևելի և յաներևոյթ թշնամւոյն ։ Շնորհեա մեզ Տէր ըստ օրինակի նոցա կեալ, և զվախ-ճանն մեր կնքեա ուղղափառ խոստովանու-թեամբ 'ի յոյս կենացն յաւիտենից ։ Զի և մեք արժանի եղիցուք մտանել յերկնային խորանսն լուսոյ, և ժառանգել զպատրաս-տեալն 'ի սկզբանէ աշխարհի սրբոց քոց զար-քայութիւնդ ։ Եւ ընդ նոսին գոհանալով փառաւորեսցուք զքեզ ընդ Հօր և ընդ սրբոյ Հոգւոյդ ․ այժմ և միշտ և յաւիտեանս"։

'Ի ՍԱՐԿԱՒԱԳ ՎԱՐԴԱՊԵՏԷՆ ԱՍԱՑԵԱԼ։

Յիշեա Տէր զպաշտօնեայս քո ․ զՕնօղ-սըն մեր ․ զԱրդապետս ․ զԵղբարս ․ զԸն-կերս ․ զԿերակրիչս ․ զՈւխտաւորս ․ զՃանա-պարհորդս ․ զՀանգուցիչս ․ զՎաստակա-ւորս ․ զԽոստովանօղս ․ զԱշխարօղս ․ զԳերիս ․ զՀիւանդս ․ զԼեղեալս ․ զԻշխանս ․ զՉարարարս ․ զԲարերարս ․ զԹշնամիս ․ զԱ-տելիս ։ Եւ որք պատուիրեցին մեզ հաւատով ։

Յիշեա Տէր և ողորմեա ։

Բարերա՛ր և բազումողորմ Աստուած՝ քո անմոռացգիտութեամբդ և անքաւ մարդասիրութեամբդ՝ յիշեա՛ զամենայն հաւատացեալս ՚ի քեզ, և ողորմեա՛ ամենեցուն ։ Օգնեա՛, և փրկեա՛ յիւրաքանչիւր վտանգից և ՚ի փորձութեանց ։ Արժանաւորեա՛ գոհութեամբ փառաւորել զՀայր և զՈրդի և զՍուրբ Հոգիդ ․ այժմ և միշտ և յաւիտեանս յաւի"։

# ԱՂՕԹՔ

## ՚Ի ՏՕՆԻ ՄԱՐՏԻՐՈՍԱՑ ՃԳՆԱՒՈՐԱՑ ԵՒ ԿՈՒՍԱՆԱՑ

Պսակիչ սրբոց ՔՐԻՍՏՈ՛Ս, որ պսակես ըզսուրբս քո, և առնես զկամս երկիւղածաց քոց, և նայիս սիրով և քաղցրութեամբ յարարածս քո ։ Լուր մեզ յերկնից ՚ի սրբութենէ քումմէ բարեխօսութեամբ սուրբ Աստուածածնին, և աղաչանօք ամենայն սրբոց քոց, և որոց այսօր է յիշատակ ։ Լուր մեզ Տէր և ողորմեա՛ ․ ներեա՛ քաւեա՛ և թո՛ղ ըզմեղս մեր ։ Արժանաւորեա՛ գոհութեամբ փառաւորել զքեզ ընդ Հօր և ընդ սրբոյ Հոգւոյդ ․ այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտե"։

Յիշեա՛ Տէր զպաշտօն"։ Բարերար և բազումողորմ"։ Գ․ է՛փ․ ԺէՂ, 288—289 ։

Օրհնեալ Տէր մեր ՅԻՍՈՒՍ ՔՐԻՍՏՈՍ․ Ամէն․
Հա՛յր մեր որ յերկինս ես"։

# ԱՂՕԹՔ

ՄԱՆԱՍԷԻ, ԹԱԳԱՒՈՐԻՆ։

Տէր ամենակալ՝ Աստուած Աբրահամու՝ Իսահակայ՝ Յակովբայ և զաւակի նոցա արդարոց․ ամենակա՛լ Տէր՝ թո՛ղ զմեղս իմ։

Որ արարեր զերկինս և զերկիր՝ և զամենայն զարդ նոցա․ ամենակա՛լ"։

Որ կապեցեր զծով բանիւ հրամանի քո, փակեցեր զխորս, կնքեցեր ահաւոր և փառաւորեալ անուամբ քով․ ամենակա՛լ"։

Որ ամենայն ինչ սարսի և դողայ յերեսաց ահի զօրութեան քո․ ամենակա՛լ"։

Անբաւ է մեծվայելչութիւն փառաց սըրբութեան քո․ սաստիկ է բարկութիւն սպառնալեաց քոց 'ի վերայ մեղաւորաց․ անչափ և անքննելի են ողորմութիւնք աւետեաց քոց․ ամենակա՛լ Տէր"։

Դու Տէր բարձրեալ՝ գթած՝ երկայնամիտ՝ բազումողորմ․ և զղջանաս 'ի վերայ չարեաց մարդկան․ ամենակա՛լ"։

Դու Աստուած՝ ո՛չ եդեր ապաշխարութիւն վասն արդարոցն Աբրահամու՝ Իսահակայ և Յակովբայ՝ որք ո՛չ մեղան քեզ․ ամե"։

Ո՜վ եղեր ապաշխարութիւն վասն իմ մեղաւորիս, զի մեղայ աւելի քան զաւազ ծովու, և բազմացան անօրէնութիւնք իմ. ամենակա՛լ Տէր"։

Չեմ արժանի հայել և տեսանել զբարձրութիւնս երկնից՝ 'ի բազմութենէ անօրէնութեան իմոյ. ամենակա՛լ"։

Կորացեալ եմ ես 'ի բանութենէ կապանաց երկաթից, և ո՛չ գոյ ինձ հանգիստ. ամե"։

Բարկացուցի զսրտմտութիւն՝ և զչար առաջի քո արարի. կանգնեցի պատկեր՝ և բազմացուցի զցասումն անձին իմոյ. ամենակա՛լ"։

Եւ արդ Տէր՝ խոնարհեցուցանեմ զծունր սրտի իմոյ՝ և հայցեմ 'ի քաղցրութենէ քումմէ. ամենակա՛լ"։

Մեղայ Տէր՝ մեղայ՝ և զանօրէնութիւնս իմ ես ինձէն գիտեմ. ամենակա՛լ"։

Աղաչեմ և խնդրեմ 'ի քէն՝ թո՛ղ ինձ Տէր՝ թո՛ղ ինձ. և մի կորուսաներ զիս ըստ անօրէնութեան իմոյ. ամենակա՛լ"։

Մի յաւիտեան բարկանար ինձ Տէր. և մի յիշեր զչարիսն իմ. և մի պարտաւորեր զիս ընդ իջեալսն 'ի ներքոյ երկրի չարեօք. ամե"։

Զի դու Աստուա՛ծ՝ Աստուած ապաշխարողաց ես. և յիս ցո՛յց զբարերարութիւնդ քո, որ անարժան եմ. ամենակա՛լ"։

Կեցուսցես զիս ըստ բազում ողորմութեան

քում · և ես օրհնեցից զքեզ զամենայն աւուրս կենաց իմոց · ամենակա՛լ"։

Օ՛ քեզ Տէր օրհնեմ ամենայն զուարթունք երկնից · և քո՛ են փառք յաւիտեանս · Ամէն։

Փառք Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ ։
Այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտեն"։

Աղաչեմ և խնդրեմ ՚ի քէն Տէր՝ թո՛ղ ինձ զմեղս իմ ։

Բազումողո՛րմ Տէր՝ ողորմեա՛ ինձ ։

Աստուա՛ծ՝ քաւեա՛ զիս զմեղաւորս ՚ի մեղաց ; և կեցո՛ ։

Արարիչ իմ և յոյս՝ Աստուած , գթա՛ յիս ՚ի մեղուցեալ ծառայս · և ողորմեա՛ ինձ բազմամեղիս ։

Ամէնօրհնեա՛լ Արբուհի՝ և միշտ կոյս Աստուածածին Մարիամ · բարեխօսեա՛ առ Տէր վասն մեր մեղաւորիս ։

Ամենայն սուրբք Աստուծոյ՝ բարեխօսեցէք առ Հայր ՚ի յերկինս վասն մեր մեղաւորացս ։

ՔՐԻՍՏՈ՛Ս Որդի Աստուծոյ անոխակա՛լ՝ ընկա՛լ զաղաչանս մեր · զի ՚ի քեզ են ապաւինեալ անձինք մեր ։

Յաղթող զօրութեամբ սուրբ և կենդանարար և պատուական խաչիւ քո Տէր՝ պահպանեա՛ զմեզ ։

Առաքեա՛ Տէր զհրեշտակ խաղաղութեան քո՝ որ եկեալ պահեսցէ զմեզ անխռովս ՚ի տուէ և ՚ի գիշերի ։

Եւ մարդասիրութեամբ քով յիշեա՛ զմեզ Տէր՝ յիշեա՛ զմեզ, յորժամ գաս արքայութեամբ քով, և ողորմեա՛ մեզ ։

## ՔԱՐՈԶ

Անկեալքս ՚ի խոստովանութիւն ապաշխարութեան՝ հաւատով զյոյս միածնի Որդւոյն Աստուծոյ դիցուք ՚ի սիրտս մեր, խնդրելով ՚ի նմանէ զքաւութիւն և զթողութիւն յանցանաց մերոց ։ Վասն զի նա ինքն է նախախնամօղն Աստուած յաւիտենական. որ եկն կամաւ Հօր ՚ի փրկել զարարածս. և ասաց՝ զինքն լինել քաւիչ մեղաւորաց, յոյս ապաշխարողաց, շնորհելով զհանգիստ աշխատելոց, ընդունելով զծանրաբեռնեալս և զտաժանեալս մեղօք յապաշխարութիւն քաւութեան ։ Արդ՝ եկայք ամենեքեան խոնարհեալ անձամբք՝ բեկեալ սրտիւք անկցուք և լացցուք առաջի Տեառն արարչին մերոյ. զի անցուսցէ ՚ի մէնջ զցասումն պատուհասի յանցանաց մերոց բարերարութեամբն իւրով ։ Ամենակա՛լ Տէր Աստուած մեր. կեցո՛ և ողորմեա՛ ։

## ԱՂՕԹՔ

Տէր Աստուած փրկութեան մերոյ՝ որ ողորմած ես և գթած . երկայնամիտ բազումողորմ , և զղջանաս 'ի վերայ չարեաց մարդկան . որ ոչ կամիս զմահ մեղաւորին , այլ դառնալ նորա 'ի չար ճանապարհէն և զկեալն ։ Դու Տէր՝ առատ ողորմութեամբդ քով մխիթարեա զծառայս քո . և տուր սոցա տեղի ապաշխարութեան ։ Հաշտեա մարդասիրութեամբ քով . և արա զսոսա անդամս Եկեղեցւոյ քում սրբոյ ։ Որպէս զի առողջացեալք հոգւով խոստովանութեամբ և ապաշխարութեամբ մտցեն յԵկեղեցի քո սուրբ ։ Եւ ընդ ժողովրդեան քում , քեզ հանցեն զօրհնութիւն և զփառս Հօր և Որդւոյ և Հոգւոյդ սրբոյ . այժմ և միշտ և յաւիտեանս ։



## ՍԱՂՄՈՍ

### ԱՂՈՒՀԱՑԻՑ ԵՒ ՅԵՂՈՑ ԱՒՈՒՐՑ ՊԱՀՈՑ

ԺԵ . Բանից իմոց ունկնդիր Տէր , և 'ի միտ առ զաղաղակ իմ ։

Նայեա 'ի ձայն աղօթից իմոց , թագաւոր իմ և Աստուած իմ ։

Ես զքեզ աղաչեմ Տէր , ընդ առաւօտս

լուիցես ձայնի իմում․ ընդ առաւօտս պատ-
րաստ եղէց, յանդիման լինիլ առ քեզ։

Ո՛չ թէ դու Աստուած կամիս զանօրէնու-
թիւն․ և ո՛չ բնակին առ քեզ չարք, և անօ-
րէնք մի՛ բնակեսցին առաջի աչաց քոց։

Ատեցեր զայնոսիկ, ոյք գործեն զանօրէ-
նութիւն․ կորուսանես զամենեսեան ոյք խօ-
սին զսուտ։

Զայր արիւնահեղ և զնենգաւոր՝ պիղծ
առնես դու Տէր․ այլ ես ըստ բազում ողոր-
մութեան քում մտից 'ի տուն քո․ և երկիր
պագից 'ի տաճար սուրբ քո երկիւղիւ քո։

Տէր՝ առաջնորդեա՛ ինձ յարդարութեան
քում վասն թշնամեաց իմոց․ ուղիղ արա
առաջի իմ զճանապարհս քո։

Զի ո՛չ գոյ 'ի բերանս նոցա ճշմարտու-
թիւն․ և սիրտք նոցա նանրեալք են։

Որպէս գերեզմանք բաց են կոկորդք նոցա․
և լեզուօք իւրեանց նենգաւորք եղեն։

Դատեա՛ զնոսա Աստուած՝ զի անկցին 'ի
խորհրդոց սրտից իւրեանց․ ըստ բազում ամ-
բարշտութեան նոցա՝ մերժեա՛ զնոսա․ զի
դառնացուցին զքեզ։

Ուրա՛խ լիցին ամենեքեան՝ ոյք յուսացեալ
են 'ի քեզ․ յաւիտեան ցնծասցեն, և բնա-
կեսցես դու 'ի նոսա։

Պարծեսցին 'ի քեզ սիրելիք անուան քո՝

զի օրհնեսցես դու զարդարն • Տէր որպէս զինու հաճութեամբ քո պսակեցեր զնոսա :

Լցաք առաւօտու ողորմութեամբ քով • ցնծացաք և ուրախ եղաք զամենայն աւուրս կենաց մերոց :

Ուրախ եղաք փոխանակ աւուրցն՝ յորս խոնարհ արարեր զմեզ, և ամացն՝ յորս տեսաք զչարչարանս :

Հայեա՛ Տէր 'ի ծառայս քո և 'ի գործս ձեռաց քոց, և առաջնորդեա՛ որդւոց նոցա • եղիցի լոյս Տեառն Աստուծոյ 'ի վերայ մեր :

Զգործս ձեռաց մերոց ուղիղ արա 'ի մեզ Տէր • և զգործս ձեռաց մերոց յաջողեա՛ մեզ :

'Ի խորոց կարդացի առ քեզ Տէր • Տէր՝ լո՛ւր ձայնի իմում :

Եղիցին ականջք քո 'ի լսել զձայն աղօթից իմոց :

Թէ զանօրէնութիւնս իմ քննես Տէր, Տէր՝ իսկ ո՛ կարէ կալ առաջի քո • զի 'ի քէն է քաւութիւն :

Վասն անուան քո համբերի Տէր • համբեր անձն իմ բանի քում • յուսացաւ անձն իմ 'ի Տէր :

'Ի պահէ առաւօտու՝ մինչև յերեկոյ • 'ի պահէ առաւօտու՝ յուսացաւ Իսրայէլ 'ի Տէր :

'Ի Տեառնէ է ողորմութիւն բազում, 'ի

նմանէ է փրկութիւն . և նա փրկեաց զԻսրայէլ յամենայն նեղութեանց նորա ։

Լսելի արա ինձ առաւօտու զողորմութիւնս քո . զի ես ՚ի քեզ Տէր յուսացայ ։

Ցոյց ինձ ճանապարհ՝ յոր և գնացից . զի առ քեզ Տէր համբարձի զանձն իմ ։

Փրկեա՛ զիս ՚ի թշնամեաց իմոց Տէր . զի ընդ քեզ ապաւէն ինձ արարի ։

Ուսո՛ ինձ առնել զկամս քո . զի դու ես Աստուած իմ ։

Հոգի քո բարի՝ առաջնորդեսցէ ինձ ՚ի յերկիր ուղիղ ։

Վասն անուան քո Տէր՝ կեցուսցես զիս . արդարութեամբ քով հանցես ՚ի նեղութենէ զանձն իմ ։

Ողորմութեամբ քով սատակեա՛ զթշնամիս իմ . և կորո՛ զամենայն նեղիչս անձին իմոյ , զի ես ծառայ քո եմ ։

Աստուա՛ծ յանուան քում կեցո՛ զիս . և ՚ի զօրութեան քում իրաւ արա ինձ ։

Աստուած լո՛ւր աղօթից իմոց . ո՛ւնկնդիր բանից բերանոյ իմոյ ։

Օտարք յարեան ՚ի վերայ իմ , և հզօրք խնդրեցին զանձն իմ . և ո՛չ համարեցան ընդ քեզ Աստուած առաջի իւրեանց ։

Ահա՛ Աստուած օգնական իմ . և Տէր ընդունող հոգւոյ իմոյ ։

՚Ի դարձուցանել զչարն ՚ի թշնամիս իմ․ ճշմարտութեամբ քով սատակեա զնոսա ։

Ես կամօք իմովք պատարագս մատուցից քեզ․ և խոստովան եղէց անուան քում Տէր, զի բարի է ։

Յամենայն նեղութենէ իմմէ փրկեցեր զիս, և ՚ի թշնամիս իմ ետես ակն իմ ։

Փառք Հօր և Որդւոյ ։ Այժմ և միշտ ։

# ԵՐԳ․Ք

## ՏԵԱՌՆ ՆԵՐՍԻՍԻ ՀԱՅՈՑ ԿԱԹՈՂԻԿՈՍԻ ԱՍԱՑԵԱԼ

ՎԱՍՆ

## ԱՐԱՐՉՈՒԹԵԱՆՆ ԱՇԽԱՐՀԻ

ԸՍՏ ՎԵՑ ԱՒՈՒՐՑ



ՎԱՍՆ

ԵՐԿՐՈՐԴ ԱՒՈՒՐ ԱՐԱՐՉՈՒԹԵԱՆՆ

ԵՒ ՎԱՍՆ

ԵՐԿՆԱՑՆՈՑ ԶՕՐԱՑՆ ։

### ԵՐԿՈՒՇԱԲԹԻ

ԲՀ․ Արարչական Բանին Հրամանին ՚ի յերկրորդումն աւուր սկզբան․ զջուրն ՚ի ջուրցն բաժանեաց հաստատութեամբ պարունակեաց․ որով զաշխարհս հողեղէ

նաց՝ անջըրպետաց ՚ի հրեղինաց․ ընդ նոսին որդիք լուսոյ՝ տուք օրհնութիւն Երրեակ Լուսոյն ։

Բազմաչեայ հոյլք Քրովբէից՝ երեքսըրբեանըդ Սրովբէից․ աթոռք անեղ Աստուածութեանըն՝ համագոյ Երրորդութեանն․ բարեխօս լերուք առ Տէր՝ վասըն մանկանց Եկեղեցւոյ․ ընդ նոսին որդիք"։

Գերբարդոյն իշխանութիւնք՝ և անփոփոխ միշտ Տէրութիւնք․ անյաղթելի սուրբ զօրութիւնք՝ ՚ի յարարչին փառաւորութիւն․ աղաչեցէք զՏէրն ողորմած՝ անսասան չառնել զգործըս ձեռաց․ ընդ"։

Պատուական անմարմնոցըն պետութեանց՝ հրեշտակապետքդ բարձրութեանց․ հոգիք հրեղէնք և սպասաւորք՝ հրեշտակաց զինուորութիւնք․ մաղթեցէք զՏէրըն տերանց՝ վասըն մարդկան երկրաւորաց․ ընդ նոսին որդիք լուսոյ"։

Երկնաւորաց դասուց վերնոց՝ օրհնաբանեկց քոց զուարթնոց։ քաղցրաձայն առ քեզ զըղձ ած՝ որ վասըն մեր ձայն մաղթանաց․ զորս և տայցես մեզ պահապան՝ յայսմ հետէ մինչ ՚ի վախճան․ ընդ նո"։

Օրութեանց և Տէրութեանց՝ իշխանութեանց և պետութեանց. և ամենայն անուանելեաց՝ որ ՚ի յերկինս պաշտամանք. ընկալ ՔՐԻՍՏՈՍ ուրախութեամբ՝ զմեզ յօր մահու և յարութեան. ընդ նոսին օրհնել հոգւով՝ ըզքեզ ընդ Հօր փառատրելով.

ՎԱՍՆ
ԵՐՐՈՐԴ ԱՒՈՒՐ ԱՐԱՐՉՈՒԹԵԱՆՆ
ԵՒ ՎԱՍՆ
ԵՐՐՈՐԴԻ ԴԱՐՈՒՆ
ԵՒ
՚Ի ՅՈՎՀԱՆՆԷՍ ՄԿՐՏԻՉՆ ։

ԵՐԵՔՇԱԲԹԻ

Գ.Հ. Լուսական Բանն որ ընդ Հօր՝ աթոռակից և համազօր. յերրորդ աւուր զջուրսն զատոյց՝ ըզգեղս և զտունկս բըղխեցոյց. իսկ ՚ի յերրորդ դարուն դարձեալ զջուրսն հեղեղ ցամաքեցոյց. զՆոյ տապանաւն իւր ապրեցոյց՝ ըզկենդանեաց սեռս ածեցոյց. տուր օրհնութիւն անձառ ըլուսոյն, Հօր և Որդւոյ և սուրբ Հոգւոյն.

Ընդ ծառոց երկրի դալարեաց տընկեաց՝

եւ ըզքառասնեկըս խնամակալեաց · զՀեղեղ մեղա
ցըն ցածուցեալ` զդասս արդարոց բազ
մացուցեալ · յորոց և մեծն 'ի ծնունդս
կանանց` միջնորդ շնորհաց և օրինաց ·
տուք օրհնութիւն անձառ":

Թագաւորին երկնից զինուոր` արքայ
ութեանն աւետաւոր · խորհրդեան գրնել
եալ 'ի սրտի` առ 'ի հովուէս տրամականէ ·
յուխտեալ տեղին Տէրունական` 'ի խոս
տացեալն որդւոց մարդկան · տուք օրհն":

Ճառագայթին հօր սպասաւոր` և յայր
գաւնոտէ երկրպագօղ · Կարապետ և Մըկ
կըրտիչ` այնմ որ մեղաց մերոց քաւիչ ·
լեր բարեխօս առ նոյն գըթած` ջընջել
ըզգիր մեր յանցանաց · տուք օրհն":

Պօր լոյս ծագեցար` մեռեալ բնու
թեանս կենդանարար · առաքեցեր յա
ւաղընթաց` սուրբ զՅովհաննէս քարոզ
կենաց · որ բուն հայցմամբն ամենակալ`
զպաղատանս մեր ընկալ · տուք օրհն":

Լուսաշաւիղ յերկինս ելին` հողանիւ
թեայ սուրբ Հրեշտակին · արժանացո ըզ
մեզ նորին` նեղ և անձուկ ճանապար
հին · զի հետևող գոլով նորին` Հօր

Կուսին նախնւոյ մօրն Եւայի յորմէ Ադամին հին պարտի. բարձման անէծքին որ բովանդակն. քո սուրբ ծննդեամբ կոյս Մարիամ. աղաչեմ զքո միածինն թողուլ ըզմեղս որդւոց նոցին. յոր օրհ։

Զարմանք ընծայեալ յերկրէ յերկինս յոր համբառնամք առ քեզ զհոգիս. յոր լըսելոյ քո զաւետիս խնդրեմ լինել մեզ լըսելիս. զձայն աւետեաց քո միածնին եթէ եկայք օրհնեալք Հօր իմ. յոր ժառանգեցայք ազգք երկրածինք տուք օրհնութիւն պըտղոյ կուսին։

Զայնիւ առ քեզ Տէր պաղատիմք և առաջի քո անկանիմք. աղաչանօք Աստուածածնին. շիջո ի մէնջ զբոց հնոցին. տուր արտասուօք զմեղս ջնջել և վերըստին զմեզ նորոգել. յոր օրհ։

Ղեկավար Ճարտարապետ անցեր ընդ ծով կենցաղոյս անհեղձ. վերաբերեմք ընդ Պետրոսի զմեզ ի յալեաց մեղաց ծովէս. պաղատանօք գերագունին անապականն քում ծննողին. յոր օրհնեցայք ազգք երկրածինք տուք օրհնութիւն պըտղոյ կուսին։

ՎԱՍՆ
ՀԻՆԳԵՐՈՐԴ ԱԻՈՒՐ ԱՐԱՐՉՈՒԹԵԱՆՆ
ԵՒ ՎԱՍՆ
ՀԻՆԳԵՐՈՐԴԻ ԴԱՐՈՒՆ
ԵՒ
'Ի ՍՈՒՐԲ ԱՌԱՔԵԱԼՍՆ ՔՐԻՍՏՈՍԻ :

## ՀԻՆԳՇԱԲԹԻ

ԵՂ· Ճառագայթեալ Բանն 'ի Հօրէ յօր հինգերորդին հրամայէ · բղխել 'ի ջրոց սեռս կայտառաց և թեւաւորս օդականաց · Եւ 'ի դարձուն հինգ մըկերորդին յամին ե՛ 'ի ծոցն Խորայէլ Հին · տացուք հրաշից նորագործողին պատիւ և փառս անեղ բանին :

Մաքրապէս օրինակի առաքելոցն Քրիստոսի · որք 'ի ծովէն Տիբերականն 'ի յերկնայինսն կոչեցան · անցին ընդ ծովլ աշխարհականն և 'ի հոգին մկրտեցան · տացուք հրաշից նորագործողին :

Յուրախութեանն անդրանկան 'ի հարսանիսն անապական · զձեզ առաքեաց Հայրըն փառաց՝ հրաւիրատուք տէրունականաց · սուրբ հարսանեացն այն հայցեցէք ընդ ձեզ լինել մեզ պարակից · տա :

Նորոգօղք տիեզերաց 'ի նախահօրն

ստեղծեալ մարդ յիւր պատկերին՝ 'ի վե-ցերորդն աւուրն․ և 'ի յերրորդ ժամ զկողածինն՝ 'ի յօգնութիւն եւ հողած-նին․ զոր 'ի դրախտին եդ վայելել բայց 'ի պտղոյն մահու արգել։

Պապանձեալ առ դատողին՝ յետ յան-ցանացն Ադամին հին․ զկինն պատճառ եդեալ խաբմանն՝ և կինն զօձն դաւա-ճանն․ որով երկիրս այս անիծաւ՝ փուշ և տատասկ 'ի սմա բուսաւ․ վճիռ մահու մարդոյն տուաւ՝ դառնալ 'ի հող ուստի առեալ է։

Ջնջել փութայր Հայրն փառաց՝ զգիր պարտեաց մեր յանցանաց․ որով զգեցաւ Որդին գթած՝ 'ի վեց դա-րուն զմարմին մեղաց․ Հօր հաճութեամբ 'ի մահ խաչին՝ եկն կամաւ 'ի յուրբա-թին․ գառն զենաւ 'ի հին զատկին՝ փո-խան գառանցն օրինակին։

Ռահիւ լուսոյ պատուիրանին՝ արդա-րութեան ճանապարհին․ բարձրանալով քո 'ի խաչին՝ բարձրացուցեր զմեզ․ 'ի յերկինս․ քո անպատում խոնարհու-թեամբդ՝ և կամաւոր խաչելութեամբ․

Հաշտեա ընդ մեզ Տէր դու թողութեամբ՝ և թող զմեղս ողորմութեամբ ։

Սոսկալիդ Սերովբէից՝ և ահաւորդ Քերովբէից. խոնարհեցար ՚ի չարչարանս չարչարելի բնութեամբ մարդկան. ՚ի խաչին զմեղս ապաներ՝ և զդատապարտեալս մահու լուծեր. Հաշտեա ընդ մեզ Տէր դու թողութեամբ՝ և թող զմեղս ողորմութեամբ ։

Վեհագոյն բնութեանց էից՝ և արարիչդ բոլորից. յորժամ ծագես խաչիդ նշան՝ ՚ի գալստեան քո միւսանգամ. զերկրպագուս այժմ հաւատով՝ լուսաւորեա նորին լուսով. զի համաձայն խաչազգեցիցն ըզքեզ օրհնեմք յաւիտեանց ։

ՎԱՍՆ

ԵՕԹՆԵՐՈՐԴ ԱՒՈՒՐ ԱՐԱՐՉՈՒԹԵԱՆՆ

ԵՒ ՎԱՍՆ

ԵՕԹՆԵՐՈՐԴԻ ԴԱՐՈՒՆ

ԵՒ

՚Ի ԽՈՐՀՈՒՐԴ ՀԱՆԳՍՏԵԱՆՆ ։

## ՇԱԲԱԹ

ՇԲ. Տէրն յետ ստեղծման արարածոց՝ հանգեաւ յեօթն օրն ՚ի գործոց. այն որ հանգիստ աշխատելոց՝ և կամքն գործ

էլ եղելոց · ուստի և մեզ յոյս հաստատուն՝ եա հանդըստեամբըն շաբաթուն · թէ տաա գործել զգործս Աստուծոյ՝ անդ էն՝ հանգչել ընդ Աստուծոյ ։

Բարունաբար վարդապետիմք՝ յօրինակէ Տեառն խրատիմք · որ 'ի յերկրորդ արարչութեանն՝ յետ կատարման անօրէնութեաննն · յեօթներորդ օր հանգըստեան՝ իջեալ մարմնովն 'ի գերեզման · զկապեալ հոգիսըն վերածեաց՝ զանանց հանգիստըն պատրաստեաց ։

Ցօղդ որ 'ի քոյդ կողէ ցօղեալ՝ բըժըշկեսցէ ըզհանգուցեալսն · իջցէ 'ի հող մահու նոցին՝ և բուսուսցէ յօրըն վերջին · կենդանարար ձայնիւըդ քո՝ կոչեա ըզնոսա 'ի կեանըս քո · և դասեսցէ ընդ արդարոցն երգել քեզ փառս ընդ զուարթնոցն ։

Իւծեալ զընութիւնս կենաց ունող՝ դարձոյց յանցանքն 'ի մահու հող · իսկ անմահիդ մեռելութիւն՝ շնորհեաց դարձեալ զանմահութիւն · զորս են ընդ քեզ թաղեալ մահուամբ՝ աւազանին մկըրտութեամբ · յարո ընդ քեզ քոյին փառօք՝ արեգական նըման լուսով ։

փայլին արդարքն յարքայութեանն՝ և ճըգնաւորքն ՚ի հանգըստեան։ Մաքուր րոսքըն պըսակին՝ և կուսանաց լապտերք վառին։ Դասեցո Տէր ընդ նոսին՝ որք զքեզ Աստուած խոստովանին։ Արդարութեամբ մի դատեսցին՝ այլ գըթութեամբ քո քաւեսցին։

Ո՛վ անպատում խոնարհութեամբդ՝ որ թաղեցար մեռելութեամբ։ Եւ յարուցեր յորդւոց մարդկան՝ որք հաւատով ՚ի քեզ անկան։ Յարո և զմեզ արդարութեամբ՝ և զննջեցեալսն ողորմութեամբ։ Զի կենդանանեցուս բերանով տացեն քեզ փառս ընդ Հօր և Հոգւով։



# ՄԱՂԹԱՆՔ
## ՊԱՀՈՑ

Ցեփ Արտաշաւեան Երգոյն։

Խաչ քո եղիցի մեզ ապաւէն Տէր Յիսուս․ յորժամ երևիս փառօք Հօր ընդ ամպս լուսաւորս։ Յայնժամ մեք մի ամաչեսցուք յուսացեալքս ՚ի քեզ․ այլ զօրութեամբ քով մեծաւ բերկրեսցուք ընդ աջմէ քումմէ՝ որպէս զորդիս լուսոյ և որդիս տունջեան։

քո՝ վերին օթեվանին. և երգեսցուք ընդ երջանկացն որդւոց լուսոյ քեզ եւ երգ փառաց։

ՎԱՍՆ

ՉՈՐՐՈՐԴ ԱՒՈՒՐ ԱՐԱՐՉՈՒԹԵԱՆՆ

ԵՒ ՎԱՍՆ

ՉՈՐՐՈՐԴԻ ԴԱՐՈՒՆ

ԵՒ

ԱՒԵՏԵԱՑ ԱՍՏՈՒԱԾԱԾՆԻՆ ։

## ՉՈՐԵՔՇԱԲԹԻ

ԴՇ. Խաւարն անդնդոյ և սկզբնածին՝ հալածեցաւ յօրն առաջին. լոյսն այն պայծառ յօր չորրորդին՝ յարեգական նուաճ հաւաքեալ. լուսինն ՝ի տիպ լուսոյ սահմանեալ՝ և աստեղաց պարք յօրինեալ. որով օրհնի ստեղծողն էից ՝ի բանաւոր պաշտօնէից։

Ծածկեալ խորհուրդն ծանուցաւ չորրորդ դարուն Իսահակաւ. ՝ի չորրորդ ՟Ռ դարձեալ հրեշտակն եւ զաւետ ուխտին կուսական. թէ լոյսն որ ճշ բո վանդակի ՝ի քէն մարմնով պայծառանայ. յոր օրհնեսցուք ազգք երկրածինք՝ տուք օրհնութիւն պտղոյ կուսին ։

Կուսին նախնւոյ մօրն Եւայի յորմէ Ադամին հին պարտէ · բարձան անէծքըն տըրտմական՝ քո սուրբ ծնընդեամբ կոյս Մարիամ · աղաչեմ զքո միածինն Թողուլ ըզմեղս որդւոց նոցին · յոր օրհ"։

Հարսն ընծայեալ յերկրէ յերկին՝ յոր համբառնամք առ քեզ զհոգիս · յոր լըսելոյ քո զաւետիս խընդրեմ լինել մեզ լըսելիս · զձայն աւետեաց քո միածնին եթէ՝ եկայք օրհնեալք Հօր իմ · յոր օրհնեցայք ազգք երկրածինք՝ տուք օրհ նութիւն պըտղոյ կուսին ։

Ձայնիւ առ քեզ Տէր պաղատիմք՝ և առաջի քո անկանիմք · աղաչանօք Աստուածածնին՝ շիջո ՚ի մէնջ ըզբոց հնոցին · տուր արտասուօք զմեղս ջընջել և վերըստին զմեզ նորոգեա · յոր օրհ"։

Պսակաւոր ճարտարապետ անցեր ընդ ծով կենցաղոյս անհետ · վերաբերեալ ընդ Պետրոսի զմեզ ՚ի յալեաց մեղաց ծովէս · պաղատանօք գերադունին անապական քում ծընողին · յոր օրհնեցայք ազգք երկրածինք՝ տուք օհնութիւն պըտղոյ կուսին ։

ՎԱՍՆ
ՀԻՆԳԵՐՈՐԴ ԱՒՈՒՐ ԱՐԱՐՉՈՒԹԵԱՆՆ
ԵՒ ՎԱՍՆ
ՀԻՆԳԵՐՈՐԴԻ ԴԱՐՈՒՆ
ԵՒ
'Ի ՍՈՒՐԲ ԱՌԱՔԵԱԼՍՆ ՔՐԻՍՏՈՍԻ ։

## ՀԻՆԳՇԱԲԹԻ

ԽՀ. Ճառագայթեալ բանն 'ի Հօրէ յոր հինգերորդըն հրամայէ. բըղխել 'ի ջրոց սեռս կայտառաց, և թևաւորս օդականաց. Իսկ 'ի դարուն հինգ մըկրտին յամին և 'ի ծովն Իսրայէլ հին. տացուք հրաշից ներգործողին պատիւ և փառս անեղ բանին ։

Մաքրապէս օրհնեմք առաքելոցն Քրիստոսի. որք 'ի ծովէն Տիբերական 'ի յերկնայինսըն կոչեցան. անցին ընդ ծով աշխարհական, և 'ի հոգին մըկըրտեցան. տացուք հրաշից ներգործողին ։

Յուրախութիւնսն անզրաւական 'ի հարսանիսն անապական. զձեզ առաքեաց Հայրըն փառաց՝ հրաւիրատուք տըրտամականաց. սուրբ հարսանեացն այն հայցեցէք ընդ ձեզ լինել մեզ պարկեց. տա ։

Նորոգողք տիեզերաց՝ 'ի նախահօրըն

յանցանաց · նորափետուր զարդարեցէք զեկեղեցիս հեթանոսաց · պաղատեցէք առ նոյն գթածն զմեզ նորոգել 'ի հնոյ մեղաց · տացուք հրաշիցն ։

Շինող էիցս համայնից` արարածոց 'ի յանգոյից · նոյն շինեցեր զեկեղեցի վէմն 'ի վերայ վիմին բանի · ընդ եղեալ հիմն ուսն 'ի նոր Սիոն` ըզմեզ յօդեալ շէն մամբ 'ի նոյն · տացուք հրաշիցն ։

Ուրախացաւ գնացից գետոցն` քաղաք 'ի քէն շինեալ Սիոնս · յորմէ վտակք շնորհաց հոսեն` զորդիս մարդկան առոգանեն · արբեալ և զմեզ 'ի ջրոյն կենաց` հայց մամբ հոգւոյն մատուցանաց · զի բանաւոր երկրպագուք պատուաբերեն 'ի փառս անուանս քո ։

ՎԱՍՆ

ՎԵՑԵՐՈՐԴ ԱՒՈՒՐ ԱՐԱՐՉՈՒԹԵԱՆՆ

ԵՒ ՎԱՍՆ

ՎԵՑԵՐՈՐԴԻ ԴԱՐՈՒՆ

ԵՒ

'Ի ԽԱՉԵԼՈՒԹԻՒՆՆ ՔՐԻՍՏՈՍԻ ։

ՈՒՐԲԱԹ

ՈՒՐ · Զըհանդուրժելի բնութեամբ բարւոյն` ունիլ միայն զանձամբ բարին · այլ

ստեղծեալ մարդ յիւր պատկերին՝ ՚ի վեցերորդն աւուրն․ և ՚ի յերրորդ ժամ զկողածինն՝ ՚ի յօգնութիւն եւ հողածնին․ զոր ՚ի դրախտին եդ վայելել՝ բայց ՚ի պտղոյն մահու արգելեալ։

Պապանձեալ առ դատողին՝ յետ յանցանացն Ադամին հին․ զկինն պատճառ եղեալ խաբմանն՝ և կինն զօձն դաւաճան․ որով երկիրս այս անիծաւ՝ փուշ և տատասկ ՚ի սմա բուսաւ․ վճիռ մահու մարդոյն տուաւ՝ դառնալ ՚ի հող ուստի ստեղծաւ։

Ջնջել փութայր հայրն փառաց ըզ֊գիր պարտեաց մեր յանցանաց․ որով զգեցաւ Որդին գթածն ՚ի վեց դարուն զմարմին մեղաց․ հօր հաճութեամբ ՚ի մահ խաչին՝ եկն կամաւ ՚ի յուրբաթին․ գառն զենաւ ՚ի հին զատկին՝ փոխան գառանցն օրինակին։

Սահիւ լուսոյ պատուիրանին՝ արդարութեան ճանապարհին․ բարձրանալով քո ՚ի խաչին՝ բարձրացուցեր զմեզ ՚ի յերկինս․ քո անպատում խոնարհութեամբդ՝ և կամաւոր խաչելութեամբ․

Հաշտեա ընդ մեզ Տէր գթութեամբ՝ և թող զմեղս ողորմութեամբ :

Որ սկայլիդ Սերովբէից և անհաւորդ Քերովբէից. խոնարհեցար ը'ի չարչարանս չարչարելի բնութեամբ մարդկան. 'ի խաչին զմեղս սպաներ՝ և զդատակնիք մահու լուծեր. Հաշտեա ընդ մեզ Տէր գթութեամբ՝ և թող զմեղս ողորմութեամբ :

Վեհագոյն բնութեանց էից՝ և արարչելդ բոլորից. յորժամ ծագեսս խաչիդ նշան՝ 'ի գալստեան քոյ միւսանգամ. զերկրպագուս այժմ հաւատով՝ լուսաւորեա նորին լուսով. զի համաձայն խաչազգեցիցն՝ ընդ քեզ օրհնեմք յաւիտենից :

ՎԱՍՆ

ԵՕԹՆԵՐՈՐԴ ԱՒՈՒՐ ԱՐԱՐՉՈՒԹԵԱՆՆ

ԵՒ ՎԱՍՆ

ԵՕԹՆԵՐՈՐԴԻ ԴԱՐՈՒՆ

ԵՒ

'Ի ԽՈՐՀՈՒՐԴ ՀԱՆԳՍՏԵԱՆՆ :

ՇԱԲԱԹ

ՇԲ. Տէրն յետ ստեղծմանն արարածոց՝ հանգեաւ յեօթն օրն 'ի գործոց. այն որ հանգիստ աշխատելոց՝ և կամքն գործ

է՛ եղերո՛ց. ո՞ւստի և մե՜զ յոյս հաստատութեա՛ն՝ եւ հա՛նգըստեամբըն շա՛բաթո՛ւն. թէ՞ աստ գործե՛լ զգործս Աստուծո՛յ՝ անդ էն հա՛նգչել ընդ Աստուծո՛յ:

Բա՞բունարա՜ր վարդա՛պետութի՛մք՝ յօրինեա՛կէ Տեառն խորանի՛ մէջ. ո՞ր ՚ի յերկրո՜ ըդ ա-րա՛րչութեա՛նն՝ յետ կա՛տա՛րման անօրէ՛նութեա՛նն. յե՞թներո՜րդ օր հա՛նգըստեա՛ն՝ յիշեա՛լ մա՛րմնոյն ՚ի գե՛րեզմա՛ն. զկա՞պեալ հոգի՜սըն վե՛րածեա՛ց՝ զանա՛նց հա՛նգիստըն պա՛տրաստեա՜ց:

Ցո՞ղդ որ ՚ի քո՜յդ կողէ՛ ցօղեա՛լ՝ բըժըշկե՛սցէ ըզհա՛նգուցեա՛լսն. ի՞ջցէ ՚ի հո՜ղ մահո՛ւ նոցի՛ն՝ և բո՛ւսո՛ւսցէ յօրը՛ն վերջի՛ն. կե՞նդանարա՜ր ձայնի՛ւըդ քո՝ կոչեա՛ զննա՛ս ՚ի կեա՛նըս քո. և՞ դասեցո՜ ընդ ա՛րդարո՛ցն երգե՛լ քե՛զ փառս ընդ զո՛ւարթնո՛ցն:

Ի՞ւծեալ զընութի՜ւնս կենա՛ց ունո՞ղ դարձո՛յց յանցանքըն ՚ի մա՛հու հո՛ղ. ի՞սկ անմահի՛դ մեծե՛լութի՛ւն՝ շնորհեա՛ց դա՛րձեալ զանմա՛հութի՛ւն. զո՞րս են ընդ քե՜զ թաղեա՛լ մահուա՛մբ՝ ասա՛զա՛նեն մըկըրտութեա՛մբ. յա՞րո ընդ քե՜զ քոյի՛ն փառօ՛քը արեգա՛կան նըմա՛ն լո՛ւսո՛վ:

փայլին արդարքն յարքայութեանն՝ և ճգնաւորքն ՚ի հանդերձեալն․ մարտիրոսքն պսակին՝ և կուսանաց լապտերք վառին․ դասեցո Տէր ընդ նոսին՝ որք զքեզ Աստուած խոստովանին․ արդարութեամբ մի դատեսցին՝ այլ գթութեամբ քո քաւեսցին։

Ով անպատում խոնարհութեամբդ՝ որ թաղեցար մեռելութեամբ․ և յարուցեր յորդւոց մարդկան՝ որք հաւատան ՚ի քեզ անկան․ յարո և զմեզ արդարութեամբ՝ և զննջեցեալսն ողորմութեամբ․ զի կենդանեացս բերանով տացին քեզ փառս ընդ Հօր Հոգւով։



## ՄԱՂԹԱՆՔ
### ՊԱՀՈՑ

Յետ Առաջնոյն Երգոյն ։

Խաչ քո եղիցի մեզ ապաւէն Տէր Յիսուս․ յորժամ երևիս փառօք Հօր ընդ ամպս լուսաւորս ։ Յայնժամ մեք մի ամաչեսցուք յուսացեալքս ՚ի քեզ․ այլ զօրութեամբ քով մեծաւ բերկրեսցուք ընդ աջմէ քումմէ՝ որպէս զորդիս լուսոյ և որդիս տունջեան ։

—310—

# ՔԱՐՈԶ

Աղաչեսցո՛ւք զամենակալն Աստուած, զի պահպանեսցէ զժողովուրդս իւր ընդ հովանեաւ սուրբ և պատուական խաչին իւրոյ ՚ի խաղաղութեան ։ Ամենակա՛լ Տէր Աստուած մեր, կեցո՛ և ողորմեա՛ ։

---

# ԱՂՕԹՔ

## ՊԱՀՈՑ

Օգնեա՛ մեզ Տէր, օգնեա՛ մեզ Աստուած փրկիչ մեր՝ վասն մեծի փառաց անուանդ քո. Տէր փրկեա՛ զմեզ, և քաւեա՛ զմեղս մեր վասն անուան քոյ սրբոյ ։ Պարսպեա՛լ պահեա՛ զառ ՚ի քեզ զապաւինեալ և զյուսացեալ ժողովուրդս քո՝ ընդ հովանեաւ սուրբ և պատուական խաչիւդ քով ՚ի խաղաղութեան ։ Փրկեա՛ յերևելի և յաներևոյթ թշնամեոյն ։ Արժանաւորեա՛ գոհութեամբ փառաւորել զքեզ ընդ Հօր և ընդ սրբոյ Հոգւոյդ, այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. Ամէն ։

Յիշեա՛ Տէր զպաշտօն": Բարերար և բազումողորմ": Գ-է՛փ յէՂ, 288—289 ։

---

# ԿԱՐԳԱՒՈՐՈՒԹԻՒՆ

## ՀԱՄԱՌԱԿԱՑ ԱՂՕԹԻՑ ԱՐԵՒԱԳԱԼԻ ԺԱՄՈՒՆ
## ՈՐ ԿԱՏԱՐԻ Ի ԴԷՄՍ ՀՈԳՒՈՅՆ ՍՐԲՈՅ
ԱՅԼ ԵՒ
## Ի ԴԷՄՍ ՅԱՐՈՒԹԵԱՆՆ ՔՐԻՍՏՈՍԻ
ԵՒ
## ԵՐԵՒՄԱՆ ԱՇԱԿԵՐՏԱՑՆ



**Օրհնեալ Տէր մեր Յիսուս Քրիստոս Ամէն ։**
**Հայր մեր որ յերկինս ես" ։**

Եղիցի անուն Տեառն օրհնեալ յաւիտեան ․ զի յառաջ քան զարեւ է անուն նորա ։

Ի նա օրհնեսցին ամենայն ազգք երկրի, եւ ամենայն ազինք երանեսցեն նմա ։

Օրհնեալ Տէր Աստուած Իսրայէլի որ առնէ սքանչելիս միայն ․ եւ օրհնեալ է անուն սուրբ փառաց նորա յաւիտեան ․ լցցի փառօք նորա ամենայն երկիր ․ եղիցի եղիցի ։

Փառք Հօր եւ Որդւոյ եւ" ։ Այժմ եւ" ։

Եւ եւս խաղաղութեան զՏէր աղաչեսցուք. ընկալ կեցո եւ ողորմեա։

Օրհնութիւն և փառք Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ. այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. Ամէն։

ԵՐԳ

ԱՐԵՒԱԳԱԼԻՆ

Յարեւելից մինչ ի մուտս. ի հիւսիսոյ և ի հարաւոյ. ամենայն ազգ և ազինք. յօրհնութիւն նոր օրհնեսցէք զարարիչն արարածոց. որ ծագեաց զլոյս արեգական ի յսօր յաշխարհս։

Եկեղեցիք արդարոց. փառաբանեսջիք ամենասուրբ Երրորդութեանն. յառաւօտուս լուսոյ զառաւօտ խաղաղութեան ՔՐԻՍՏՈՍ գովեցէք ընդ Հօր և Հոգւոյն. որ ծագեաց զլոյս գիտութեանն իւրոյ ի մեզ։

ՅՈՐԴՈՐԱԿ

Յարեւելից յարեւմուտս մանկունք Սիովնի. օրհնեցէք միշտ անդադար ընդ ծագողն լուսոյ։

Ընկեղե՛ցէք ա՛րդարո՛ց և՛ փառաւո՛րա՛ նի՛ջէք · բա՛րեբա՛նեցէ՛ք որ ե՛ս զե՛մա՛ս ա՛րս լո՛ւսոյ ։

## ՔԱՐՈԶ

Յարևելից մինչև 'ի մուտս արևու ընդ ամենայն տեղիս Քրիստոնէութեան, ուր և կարդան զանուն Տեառն սրբութեամբ՝ Տէր աղօթիւք նոցա և բարեխօսութեամբ մեզ ողորմեսցէ ։ Ուխտիւք զԱստուած աղաչեսցուք · զի նա փրկեսցէ զմեզ 'ի մեղաց և 'ի ցանկութենէ աշխարհի ։ Ընկալցէ զուխտս և զխնդրուածս սրտից մերոց · և արժանի արասցէ զմեզ հաւատոց և պատուիրանաց իւրոց ընդ ամենայն սուրբս իւր ։ Ամենակալ Տէր Աստուած մեր կեցո՛ և ողորմեա՛ ։

Զառաւօտս լուսոյ և զառաւշակայ օրս խաղաղութեամբ անցուցանել՝ հաւատով 'ի Տեառնէ խնդրեսցուք։" Զհրեշտակ խաղ"։" Զքաւութիւն և"։" Զսրբոյ խա"։" Իւ ես մեզ"։" Զանձինս"։" Ողորմեա՛ց մեզ Տէր"։"

## ԱՂՕԹՔ

Յարևելից մինչև 'ի մուտս արևու օրհնեալ ես Տէր · վասն զի թագաւոր քաղցր ես · և անուն քո ահեղ է ընդ ամենայն տիեզերս ։

ՙՔաղցրասցին Սաղմոսերգութիւնք մեր առաջի քո. ելցեն իբրեւ խունկք յարդարութենէ քումմէ ՚ի տկարութիւնս մեր, և փառաւորեսցի ամենասուրբ անուն քո։ Եւ մեք արժանի եղիցուք կալ ՚ի պատուիրանի քում. քեզ երգել զօրհնութիւն և զփառս Հօր և Որդւոյ և Հոգւոյդ սրբոյ. այժմ և միշտ և՚՚։

Խաղաղութիւն ամենեցուն ։

Աստուած մշտնջենաւոր՝ Աստուած յաւիտենական. որ ՚ի սուրբն աշխարհս լոյս ծագեցար՝ և լուսաւորեցեր զմեզ ՚ի խաւարային մեղաց մերոց։ Որ վասն մեր ՚ի չափաւորութիւն եկիր անչափդ Աստուած. և հեղեալ ծաւալեցեր զշնորհս Հոգւոյդ սրբոյ յարարածս քո։ Այժմ և յաւիտեանս ժամանակաց բարեբանեալ ես ամենամեծդ Աստուած, ընդ Հօր և ամենասուրբ Հոգւոյդ. այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. Ամէն ։

## ՍԱՂՄՈՍ

ՂԹ. Աղաղակեցէք առ Տէր ամենայն երկիր. ծառայեցէք Տեառն ուրախութեամբ ։

Մտէք առաջի նորա ցնծութեամբ. ծանիջի՛ք զի նա է Տէր Աստուած մեր ։

Նա՛ արար զմեզ, և ո՛չ մեք էաք. մեք ժողովուրդք և խաշն արօտի նորա ։

Մտէք ընդ դրունս նորա խոստովանութեամբ, և օրհնութեամբ ՚ի յարկս նորա ։

Խոստովան եղերուք Տեառն, և օրհնեցէք զանուն նորա ։

Քաղցր է Տէր, յաւիտեան է ողորմութիւն նորա. յազգէ մինչև յազգ է ճշմարտութիւն նորա ։

Փառք Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ ։

Այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. Ամէն ։

ԵՐԳ

Երգնաւորք Աստուծոյ. և ժառանգորդք երկնից արքայութեանն. որք փոխանակեալք զանցաւորս աւիք զանանցն բարութիւնսն. բարեխօսեցէք առ Տէր վասն մանկանց Սիոնեկեղեցւոյ ։

Նահատակք պանծալիք. և սերեցեալք ՚ի յերկնաւոր Հօրէն. որք մըկըրտեցայք ընդ ՔՐԻՍՏՈՍԻ արեամբ ձերով ՚ի մահ խաչին. բարեխօսեցէք առ Տէր վասն մանկանց Սիոնեկեղեցւոյ ։

Մարտիրոսք ցանկալիք. և օթե

վանք հոգւոյն ճշմարտութեան . որք յաղթեցիք հոգւով կարեաց և ցանկութեան . բարեխօսեցէք առ Տէր վասն մանկանց Եկեղեցւոյ .

Գովելիք էք աշխարհի . և բաղձալիք վերնոցն պետութեանց . որք երանութեան մաքրին հասիք քան զամենայն որդիս մարդկան . բարեխօսեցէք առ Տէր վասն մանկանց Եկեղեցւոյ .

Կամաւոր պատարագք . մանկունք ախոյք և կատարեալք իմաստութեամբ . որք փոխանակ կաթին արբէք զգինին զմայլեցուցիչ . բարեխօսեցէք առ Տէր վասն մանկանց Եկեղեցւոյ .

## ՑՈՐԴՈՐԱԿ

Զինուորք ճշմարիտք և վկայք Քրիստոսի . բարեխօսեցէք առ Տէր վասն անձանց մերոց .

Նահատակք կենդանիք սիրողք Քրիստոսի . որք չարչարեցայք մարմնով վասն անուանն Տեառն .

Մարտիրոսք ցանկալիք մարդկան

ըղձալիք · հայցեցէք 'ի սուրբ հոգւոյն տալ մեզ ըղբարբիս :

Գովեալք վերնոց դասուց՝ պարծանք աշխարհի · խնդրեցէք զխաղաղութիւն տալ Եկեղեցւոյ :

Կամաւոր սուրբ պատարագք հասկաւ մանկունք · հայցեցէք լինել և մեզ ձեզ պսակա կից :

## ՄԱՂԹԱՆՔ

Աղաչեմք ողորմեաց Տէր բարերար՝ աղաչեմք ողորմեաց · վասն աղօթից սրբոց ճըգնաւորացն՝ աղաչեմք ողորմեաց :

## ՔԱՐՈԶ

Սուրբ ճգնաւորօքն աղաչեսցուք զՏէր՝ որք զչարսն պարտեցին, նեղութեանցն համբերեցին : Լուսեղէն և երկնային անթառամ պսակացն արժանի եղեն : Աղօթիւք նոցա և բարեխօսութեամբ մեզ ողորմեսցէ : Ամենակալ Տէր Աստուած մեր կեցո և ողորմեա :

## ԱՂՕԹՔ

Սուրբ ես Տէր, և 'ի սուրբս հանգուցեալ և մեք սուրբ վկայիւքս աղաչեմք զքեզ · բա-

բեխօսութեամբ սուրբ Աստուածածնին՝ և աղաչանօք ամենայն սրբոց քոց՝ մի՛ մերժեր զմեզ յողորմութենէ քումմէ. այլ կեցո՛ զմեզ աղօթիւք սոցին. զի դու ես բազումողորմ Աստուած. և քեզ վայել է փառք իշխանութիւն և պատիւ, այժմ և միշտ և յաւէ՛":

Յիշեա՛ Տէր զպաշտօն": Բարբերար և բազումողորմ": Պոլ՛ս ՋէՂ, 288—289.

# ՍԱՂՄՈՍ

ԺԲ. Աստուա՛ծ Աստուա՛ծ իմ, ես առ քեզ առաւօտ առնեմ. ծարաւեաց առ քեզ հոգի իմ. քանի՞ պատիկ եւս և մարմին իմ.

Որպէս երկիր անապատ և անջուր, ուր ո՛չ գոյ 'ի նմա ճանապարհ:

Այնպէս 'ի սուրբս երևեցայց քեզ, տեսանել ինձ զզօրութիւն քո և զփառս քո:

Վասն զի լաւ է ինձ ողորմութիւն քո քան զկեանս իմ. և շրթունք իմ գովեսցեն զքեզ:

Այնպէս օրհնեցից զքեզ 'ի կեանս իմ, և յանուն քո համբարձից զձեռս իմ:

Որպէս 'ի ճարպոյ պարարտութենէ լցցի անձն իմ. շրթամբք ցնծութեան օրհնեսցէ զքեզ բերան իմ:

Ո՜ւ ի թէ յիշէի զքեզ յանկողնի իմում, ընդ առաւօտս կանխեալ խօսէի ընդ քեզ ·

Ո՜ւ ի եղեր իմ օգնական, 'ի հովանի թեւոց քոց ցնծացայց ։

Եղէն զհետ քո անձն իմ, և զիս ընկալաւ աջ քո · և նոքա 'ի նանիր խնդրեցին զանձն իմ ։

Մտցեն 'ի ներքոյ անդնդոց երկրի · մատնեսցին 'ի ձեռս սրոյ, և բաժինք աղուեսուց եղիցին ։

Թագաւոր յուսացաւ 'ի Տէր · գովեսցին ամենեքեան՝ որք երդնուն նովաւ · խցցին բերանք այնոցիկ՝ որք խօսէին զանիրաւութիւն ։

Լո՛ւր Աստուա՛ծ աղօթից իմոց յաղաչել ինձ առ քեզ · յերկիւղէ թշնամւոյն փրկեա՛ զանձն իմ ։

Ծածկեսցես զիս 'ի ժողովոց չարաց · 'ի բազմութենէ՝ որք գործեն զանօրէնութիւն ։

Որք սրեցին որպէս սուսեր զլեզուս իւրեանց · լարեցին զաղեղունս իւրեանց յիրս դառնութեան ։

Ձգել 'ի գաղտնիս այնոցիկ՝ որք ուղիղ են սրտիւք · յանկարծակի ձգեսցեն 'ի նոսա, և մի՛ երկիցեն ։

Որք զօրացուցին յանձինս իւրեանց զբանս չարութեան · խորհեցան թագուցանել ինձ որոգայթ · և ասացին ո՛չ տեսանէ զայս Տէր ·

Քննեցին զանօրէնութիւն , պատրաստեցան 'ի քննել զքննութիւն ։

Մատիցէ այր 'ի խորութիւն սրտի իւրոյ , և բարձր եղիցի Աստուած ։

Նետք տղայոց եղեն վէրք նոցա . տկարացան 'ի նոսա լեզուք նոցա , և խռովեցան ամենեքեան՝ որք հայէին ընդ նոսա ։

Երկեաւ ամենայն մարդ 'ի պատմել զգործս Աստուծոյ . և զարարածս նորա 'ի միտ առին ։

Ուրախ եղիցի արդար 'ի Տէր , և յուսասցի 'ի նա . նովաւ գովեսցին ամենեքեան որք ուղիղ են սրտիւք ։

Փառք Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ ։

Այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից . Ամէն ։

ԵՐԳ

Լոյս արարիչ լուսոյ առաջին լոյս . բնակեալ 'ի լոյս յանմատոյց Հայր երկնաւոր . 'ի դասուց լուսեղինաց օրհնեալ . 'ի ծագել լուսոյ առաւօտուս . ծագեա 'ի հոգիս մեր ըզլոյս քո իմանալի ։

Լոյս 'ի լուսոյ ծագումն արեգական արդար . անճառ ծընունդ Հօր Որ-

դի · յառաջ քան զարեւ անուն քո գովեալ ընդ Հօր · 'ի ծագել լուսոյ առաւօտուս · ծագեա 'ի հոգիս մեր ըզլոյս քո իմանալի :

Որ 'ի Հօրէ բղխումն աղբեւր բարութեան · Հոգիդ սուրբ Աստուածոյ · մանկունք Եկեղեցւոյ ընդ հրեշտակս ըզքեզ բարեբանեն · 'ի ծագել լուսոյ առաւօտուս · ծագեա 'ի հոգիս մեր ըզլոյս քո իմանալի :

Որ երրեակ եւ մի անբաժանելի սուրբ Երրորդութիւն · զքեզ ընդ երկնայնոցն երկրածինքս միշտ փառաւորեմք · 'ի ծագել լուսոյ առաւօտուս · ծագեա 'ի հոգիս մեր ըզլոյս քո իմանալի :

ՑՈՐԴՈՐԱԿ

Անեղանելդ Աստուած Հայր ամենակալ · ընկալ զաղաչանս մեր քոց պաշտօնէից :

'Ի Հօրէ ծագումն անճառ արեգակն արդար · ծագեա 'ի յանձինս մեր զլոյս ողորմութեան :

'Ի Հօրէ ըղխեալ Հոգի աղբիւր բարութեան. լուսով քով լցո ըզ միտ յայսմ առաւօտուս:

Երեք անձինք և մի բնութիւն. մի Աստուածութիւն. զքեզ խոստովանիմք յաւէտ սուրբ Երրորդութիւն:

## ՄԱՂԹԱՆՔ

Լուսովդ քո ՔՐԻՍՏՈՍ ամենեքեան լուսաւորեցաք. և 'ի սուրբ խաչ քո փրկիչ հաւատացեալքս ապաւինեցաք: Լուր մեզ Աստուած փրկիչ մեր. տուր մեզ զխաղաղութիւն քո. և արա առ մեզ զողորմութիւն քո մարդասէր Տէր:

## ՔԱՐՈԶ

Եւ ևս խաղաղութեան զՏէր աղաչեսցուք:

Փառաւորեսցուք զամենակալն Աստուած՝ որ ծագեաց զլոյս առաւօտու յարարածս իւր. ծագեսցէ և այժմ զառատ ողորմութիւն իւր 'ի վերայ փառաբանչաց անուան իւրոյ: Ամենակալ Տէր Աստուած մեր. կեցո և ողորմեա:

## ԱՂՕԹՔ

Զառաւօտու աղօթս և զգանձեալ պաշտօնս՝ ընկալ ամենակալ ամենամեծդ Աստուած ՚ի քո անապական և յերկնային խորանդ: Զարդեա՛ տա մեզ զարդարութեան և զիմաստութեան զլոյս քո. արա՛ զմեզ որդիս լուսոյ և որդիս տունջեան: Որպէս զի ՚ի գալ աւուրս երկիւղածութեամբ վարեսցուք զկեանս մեր. և առանց գայթակղութեան կատարեսցուք: Զի դու ես օգնական և փրկիչ մեր. և քեզ վայել է փառք՝ իշխանութիւն և պատիւ. այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. Ամէն:



## ՍԱՂՄՈՍ

իբ. Տէր հովուեսցէ զիս. և ինձ ինչ ոչ պակասեսցի:

՚Ի վայրի դալարւոջ անդ բնակեցոյց զիս. և առ ջուրս հանգստեան սնոյց զիս:

Դարձոյց զանձն իմ առ իս. և առաջնորդեաց ինձ ՚ի ճանապարհս արդարութեան վասն անուան իւրոյ:

Թէպէտ և գնացից ես ՚ի մէջ ստուերաց մահու, ոչ երկեայց ՚ի չարէ, զի դու Տէր ընդ իս ես:

Ցուպ քո և գաւազան՝ նոքա մխիթարեսցեն զիս :

Պատրաստ արարեր առաջի իմ զսեղան՝ ակն յանդիման նեղչաց իմոց :

Օծեր իւղով զգլուխ իմ . բաժակ քո որպէս անապակ արբեցոյց զիս :

Ողորմութիւն քո Տէր զհետ իմ եկեսցէ՝ զամենայն աւուրս կենաց իմոց . բնակել ինձ 'ի տան Տեառն ընդ երկայն աւուրս :

Ցոյց ինձ ճանապարհ՝ յոր և գնացից . զի առ քեզ Տէր համբարձի զանձն իմ :

Փրկեա զիս 'ի թշնամեաց իմոց Տէր , զի զքեզ ապաւէն ինձ արարի :

Ուսո ինձ առնել զկամս քո , զի դու ես Աստուած իմ :

Հոգի քո բարի առաջնորդեսցէ ինձ 'ի յերկիր ուղիղ :

Վասն անուան քոյ Տէր՝ կեցուսցես զիս , արդարութեամբ քով հանցես 'ի նեղութենէ զանձն իմ :

Ողորմութեամբ քով սատակեա զթշնամիս իմ . և կորո զամենայն նեղիչս անձին իմոյ , զի ես ծառայ քո եմ :

Աստուած մեր ապաւէն և զօրութիւն . օգնական 'ի վերայ նեղութեանց , որք գտին զմեզ յոյժ :

Վասն այսորիկ ոչ երկիցուք մեք 'ի խառ-

վել երկրի · 'ի փոփոխել լերանց 'ի սիրտս ծովու ։

Գոչեցին և խռովեցան ջուրք նոցա · խռովեցան լերինք 'ի զօրութենէ նորա ։

Գնացք գետոց ուրախ առնեն զքաղաքն Աստուծոյ · և սուրբ արար զյարկս իւր բարձրեալն ։

Աստուած 'ի մէջ նոցա, և նոքա մի՛ սասանեսցին · օգնեսցէ նոցա Աստուած 'ի վաղորդենէ մինչև 'ի վաղորդեան ։

Խռովեցան հեթանոսք, և խոնարհեցան թագաւորութիւնք · ետ զձայն իւր բարձրեալն՝ և խռովեցաւ երկիր ։

Տէր զօրութեանց ընդ մեզ · ընդունելի՛ է մեր Աստուած Յակովբայ ։

Եկա՛յք և տեսէք զգործս Աստուծոյ, որ արար զնշանս և զարուեստս 'ի վերայ երկրի ։

Եհար զպատերազմ 'ի ծագաց մինչև 'ի ծագս երկրի · զաղեղունս փշրեաց, զզէնս խորտակեաց, և զասպարս այրեաց հրով ։

Կանխեցէք և ծաներո՛ւք, զի ես եմ Աստուած · բարձր եղէց 'ի հեթանոսս, և բարձրացայց 'ի վերայ երկրի ։

Տէր զօրութեանց ընդ մեզ · ընդունելի՛ է մեր Աստուած Յակովբայ ։

Աստուա՛ծ յօգնել ինձ նայեա՛ց · և Տէր յընկերել ինձ փութա՛ ։

Ամաչեսցեն և յամօթ լիցին, որք խնդրեն զանձն իմ. դարձցին յետս և ամաչեսցեն, որք խորհէին ինձ չար։

Դարձցին առ ժամայն ամաչեցեալք. որք ասէին ինձ վաշ վաշ։

Ցնծասցեն և ուրախ լիցին 'ի քեզ ամենեքեան, որք խնդրեն զքեզ Տէր։

Ասասցեն յամենայն ժամ, մեծ է Աստուած. և որք սիրեն զփրկութիւնս քո։

Ես աղքատ և տնանկ եմ, Աստուած օգնեա ինձ. օգնական և փրկիչ իմ ես. և դու Տէր իմ՝ մի յամենար։

Տուր զօրութիւն ծառայի քո. կեցո զորդի աղախնոյ քո. և արա առ ին նշան բարութեան։

Տեսցեն ատելիք իմ և ամաչեսցեն. զի դու Տէր օգնեցեր ինձ, և մխիթարեցեր զիս։

Փառք Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ։

Այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. Ամէն։

ԵՐԳ

Զանմահ պարգև. և զշնորհ տուողութիւն. և կեանք ՔՐԻՍ-
ՏՈՍ. առաջնորդեա հոգւոյ մե-
րոյ. յերկրէ ելանել յերկինս։
Գովամ զմեծութիւն կենաց

մըտից Յիսուսի · մաքրեայծ և ըզ մեզ առ հայր քո և հոգի · երգել մի՛շտ ըզփառս ։

ՅՈՐԴՈՐԱԿ

Ճանապարհ բարի Քրիստոս և ճըշմարտութիւն · առաջնորդ հոգւոց մերոց յերկրէ ՚ի յերկինս ։

Գուռալըն կենաց մըտից Յիսուս · Աստուած ճըշմարիտ · մայծ և ըզմեզ առ հայրըդ քո · հոգւովըդ սըրբով ։

ՄԱՂԹԱՆՔ

Տէր ուղղեա՛ զգնացս մեր ՚ի ճանապարհս խաղաղութեան · Տէր ուղղեա՛ և առաջնորդեա՛ հոգւոց մերոց և ամենայն հաւատացելոց՝ գնալ յարդարութեան ճանապարհն և ՚ի կեանսն յաւիտենից ։

ՔԱՐՈԶ

Աղաչեսցուք զամենակալն Աստուած՝ զի յաջողեալ ուղղեսցէ զճանապարհս ծառայից իւրոց ՚ի բարի և ՚ի խաղաղութիւն ։ Ամենակալ Տէր Աստուած մեր · կեցո՛ և ողորմեա՛ ։

## ԱՂՕԹՔ

Առաջնորդ կենաց և պարգևիչ խաղաղութեան ՔՐԻՍՏՈՍ Աստուած մեր․ առաջնորդեա մեզ գնալ 'ի ճանապարհս արդարութեան․ և խաղաղութեամբ ժամանել 'ի նաւահանգիստն կենաց և փրկութեան՝ շնորհօք ողորմութեան քո․ զի դու ես օգնական և փրկիչ մեր․ և քեզ վայել է փառք՝ իշխանութիւն և պատիւ․ այժմ և. միշտ և յաւիտեանս յաւի"։

## ԱՂՕԹՔ

### ՊԱՀՈՑ

### ՅՈՐՄ ՏՕՆ ՈՉ ԼԻՆԻ

Օրհնեալ ես Տէր Աստուած փրկիչ մեր՝ որ յամենայն ժամ ընդ մեզ ես․ և ոչ երբէք թողուս 'ի ձեռանէ քումմէ զայնոսիկ որք հաւատով և ճշմարտութեամբ կարդան առ քեզ։ Աղաչեմք և խնդրեմք 'ի քէն Տէր՝ ճանապարհորդակից լեր ծառայից քոց քոյին վերակացութեամբդ՝ պահելով 'ի խաղաղութեան․ և առաջնորդեա մեզ միւսանգամ խաղաղութեամբ և խնդութեամբ հասանել յիւրաքանչիւր բնակութիւնս 'ի ՔՐԻՍՏՈՍ ՅԻՍՈՒՍ 'ի Տէր մեր։ Որում վայել է փառք իշխանութիւն և պատիւ․ այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից․ Ամէն։

# ԱՊԱՇԽԱՐՈՒԹԻՒՆ

ՀԱՄԱՐԱԿԱՑ ԱՂՕԹԻՑ ԵՐՐՈՐԴ ԺԱՄՈՒՆ
ՈՐ ԿԱՏԱՐԻ ՚Ի ԴԷՄՍ ԻՋՄԱՆ ՀՈԳՒՈՅՆ ՍՐԲՈՅ
ԵՒ
՚Ի ԴԷՄՍ ՆԱԽԱՄՕՐՆ
ԾԱՂԱԿՄԱՆ ԵՒ ԱԶԱՏՈՒԹԵԱՆՆ
ՔՐԻՍՏՈՍԻ



Օրհնեալ Տէր մեր Յիսուս Քրիստոս. Ամէն։
Հայր մեր որ յերկինս ես"։
Օրհնեալ Հոգին սուրբ Աստուած ճշմարիտ.
Ամէն։

## ՍԱՂՄՈՍ

Ծ. Ողորմեա ինձ Աստուած ըստ մեծի ողորմութեան քում. ըստ բազում գթութեան քում՝ քաւեա զանօրէնութիւնս իմ։

Առաւել լուա զիս յանօրէնութենէ իմմէ. և ՚ի մեղաց իմոց սուրբ արա զիս։

Զանօրէնութիւնս իմ ես ինձէն գիտեմ, և մեղք իմ առաջի իմ են յամենայն ժամ։

Քեզ միայն մեղայ Տէր, և չար առաջի քո արարի։

Որպէս արդար եղիցիս 'ի բանս քո, և յաղթեսցես 'ի դատել քում։

Անօրէնութեամբ յղացայ, և 'ի մեղս ծնաւ զիս մայր իմ։

Դու Տէր զճշմարտութիւն սիրեցեր, զանյայտս և զծածկեալս՝ իմաստութեամբ քով յայտնեցեր ինձ։

Ցօղեա՛ յիս մշտկաւ և սուրբ եղէց, լուա՛ և քան զձիւն սպիտակ եղէց։

Լսելի՛ արա ինձ զցնծութիւն և զուրախութիւն, և ցնծասցեն ոսկերք իմ տառապեալք։

Դարձո՛ զերեսս քո 'ի մեղաց իմոց. և զամենայն անօրէնութիւնս իմ քաւեա՛ յինէն։

Սիրտ սուրբ հաստատեա՛ յիս Աստուա՛ծ, և հոգի ուղիղ նորոգեա՛ 'ի փորի իմում։

Մի՛ ընկենուր զիս Տէր յերեսաց քոց. և զհոգի քո սուրբ մի՛ հաներ յինէն։

Տո՛ւր ինձ ցնծութիւն փրկութեան քոյ, և հոգւով պետութեան քոյ հաստատեա՛ զիս։

Ուսուցից անօրինաց զճանապարհս քո, և ամբարիշտք առ քեզ դարձցին։

Փրկեա՛ զիս յարենէ Աստուա՛ծ, Աստուած փրկութեան իմոյ. ցնծասցէ լեզու իմ յարդարութեան քում։

Տէր՝ եթէ զչըթունս իմ բանաս, բերան իմ երգեսցէ զօրհնութիւնս քո ։

Թէ կամեցեալ էիր պատարագս մատուցանէաք. բայց դու ընդ ողջակէզս իսկ ոչ հաճեցար ։

Պատարագ Աստուծոյ՝ հոգի խոնարհ. ըզսիրտ սուրբ և զհոգի խոնարհ՝ Աստուած ոչ արհամարհէ ։

Բարի արա Տէր կամօք քովք Սիօնի, և շինեսցին պարիսպքն Երուսաղէմի ։

Յայնժամ հաճեսցիս ընդ պատարագս արդարութեան. յորժամ ուխտից պատարագս հանցեն 'ի սեղան քո զուարակս ։

Փառք Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ ։

Այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. Ամէն ։



ԵՐԳ

ԵՐՐՈՐԴԻ ԺԱՄՈՒ ԱՒՈՒՐՆ

Ձայնի Ողորմեա Սաղմոսին ։

Օրհնեալ ըզքեզ հայր անըսկիզբն էից էակ 'ի յանդոյից. բարձեր ձեռօք նիւթ 'ի հողոյ և ստեղծեր մարդ 'ի պատկեր քո. զըլուխն ոտից խոնարհեցաւ զի զպատուիրան քո մոռացաւ. դարձեալ ա-

սեմք ստանառակին թէ Հայր մեղայ քեզ
՚ի յերկինս ։

Երկնաւորացն անքննելի եղեր մարդկան տեսանելի. զգեցար պատկեր հողեղէնի պատկերըդ Հօր անփոփոխելի. եկեր յերրորդ ժամ ՚ի խաչէն վասն Ադամայ նախաստեղծին. ընդ աւազակին քում խաչակցին արժանացո ըզմեզ դրախտին ։

Թագաւոր Թագաւորաց առատ բուղխ Հոգի շնորհաց. ժողովելոցն ՚ի վերնատանն առաքելոցն երկոտասան. ՚ի հրոյ լեզուս երևեցար յորժամ նոցա վերա նըստար. լուր յանուն քո ժողովելոցս էջ և առ մեզ յերրորդ ժամուս ։

## ՄԱՂԹԱՆՔ

Յամենայն ժամու աղաչանք իմ այս են, ՚ի մեղաց իմոց սուրբ արա զիս Տէր. և յօտարէն պահեա զծառայս քո մարդասէր Տէր ։

Եւ եւս խաղաղութեան զՏէր աղաչեսցուք ընկալ կեցո և ողորմեա ։

Օրհնութիւն և փառք Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ. այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. Ամէն ։

# ՔԱՐՈԶ

## ՄԵԾ ՊԱՀՈՑ

’Ի ՅՈՎՀԱՆՆՈՒ ՄԱՆԴԱԿՈՒՆՒՈՅ ԱՍԱՑԵԱԼ :

Միաբան ամենեքեան գոհացարո՛ւք ըզմարդասիրէն Աստուծոյ և զփրկչէն մերմէ ՅԻՍՈՒՍԷ ՔՐԻՍՏՈՍԷ : Որ ազատեաց զազգս մարդկան ’ի դատապարտութենէ անիծիցն . և եբարձ զմեղս աշխարհի ’ի ժամու յայսմիկ՝ խաչիւն իւրով . և շնորհեաց առատապէս ըզպարգևս հոգւոյն սրբոյ երանելի առաքելոցըն : Խնդրեսցո՛ւք հաւատով զի զմեզ զամենեսեան՝ արասցէ հաղորդս մեծամեծաց և Աստուածայի՛ն բարեացն այնոցիկ, աղօթիւք և բարեխօսութեամբ ամենայն սրբոց . որք աստ և ընդ ամենայն տիեզերս : Որպէս զի անարատ վարուք, և ճշմարիտ առաքինութեամբ կացեալք ըստ կամաց նորա յայսմ աշխարհիս, զմասն և զվիճակ ժառանգութեան ընկալցուք ընդ ամենայն սուրբս նորա՝ զբնակութիւն յաւիտենական և երկնային խորանացն : Զոր խոստացաւ սիրելեաց իւրոց ճշմարիտն Աստուած ՅԻՍՈՒՍ ՔՐԻՍՏՈՍ . Տէր մեր կեցո՛ և ողորմեա՛ :

Զժամս և զառաջակայ օրս խաղաղութեամբ անցուցանել հաւատով ’ի Տեառնէ խնդրեսցո՛ւք :" Զհրեշտակ խաղաղութեան" :"

Օ՜ քաղցրութիւն և"։" Օ՜ սրբոյ խաչին մեծ և"։" Յու եւս միաբան"։" Օ՜ անձինս մեր"։" Ողորմեա՛ց մեզ Տէր Աստուած մեր"։"

# ԱՂՕԹՔ

Որ 'ի Քրովբէական և յանպատում Հանգուցեալ ես յաթոռ՝ և այցելու ես միշտ արարածոց քոց ։ Որ և 'ի ժամուս յայսմիկ հեղեր յերանելի առաքեալսն զշնորհս Հոգւոյդ սրբոյ ։ Դու Տէր յառաջիկայ ժամուս և յաւէտ մինչև 'ի կենցաղոյս աւարտումն՝ ապաւորեալ միացո՛ զմեզ ընդ ամենայն բարեգործութեան յորդորմունս. և խոստացելոց բարեացդ հաղորդս լինել զմեզ արժանի արա՛ Տէր մեր և փրկիչ ՅԻՍՈՒՍ ՔՐԻՍՏՈՍ ։ Որ ես օրհնեալ ընդ Հօր և ընդ սրբոյ Հոգւոյդ. այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. Ամէն ։

Խաղաղութիւն ամենեցուն ։

Որ էիր յառաջ քան զյաւիտեանս Բանդ Աստուած էակից Հօր, և արարչակից սուրբ Հոգւոյդ ։ Որ և զնախաստեղծին պատուիրանազանցութիւն պաղոյն ճաշակման՝ նշանաւ ամենայաղթ խաչիւ քո 'ի ժամուս յայսմիկ ենթադրեալ՝ 'ի կենդանութիւն փոխեցեր. և զանօրէնութիւնս մեր 'ի նմա բևեռեալ՝ կեանք անապական, և նորոգումն կենաց յուսացելոց 'ի քեզ խոստացար ։ Որոց մասնա-

ւորիլ և զմեզ արժանի արա Տէր մեր ՅԻՍՈՒՍ ՔՐԻՍՏՈՍ · որ ես օրհնեալ ընդ Հօր և ընդ սրբոյ Հոգւոյդ այժմ և միշտ և յաւիտեանս″ ։

## ՍԱՂՄՈՍ

Տէր Աստուած օրհնեալ՝ օրհնեալ է Տէր զօրհանապազ ։

Աստուած մեր Աստուած կենարար · և նա փրկեսցէ զմեզ ։

Տէր Աստուած օրհնեալ · օրհնեալ Տէր զօրհանապազ, առաջնորդեսցէ մեզ Աստուած փրկիչ մեր ։

## ՔԱՐՈԶ

Խնդրեսցուք հաւատով՝ ի Տեառնէ վասն ճանապարհորդաց հարց և եղբարց մերոց, որք ընդ ծով և ընդ ցամաք գնասցեն · որպէս զի առաջնորդեսցէ նոցա, խաղաղութեամբ պահեսցէ, և տարեալ հասուսցէ յիւրաքանչիւր տեղիս Տէր Աստուած մեր ։ Վասն զի նա ինքն է առաջնորդ կենաց և յոյս փրկութեան · որ յաջողէ ծառայից խաղաղութեամբ հասանիլ ՚ի նաւահանգիստն կենաց և փրկութեան ։ Ամենակալ Տէր Աստուած մեր կեցո՛ և ողորմեա ։

# ԱՂՕԹՔ

Առաջնորդեա մեզ Տէր Աստուած մեր, և ուսո մեզ գնալ 'ի ճանապարհս քո արդարութեամբ. պահեա 'ի խաղաղութեան զկեանս մեր, և ըղձնացս 'ի հաճոյս քո։ Ժամանեցո զհոգևոր և զմարմնաւոր ընթացս ծառայից քոց անարատ ճանապարհաւդ յաւիտենական 'ի կեանս։ Շնորհօք միածնի քո Տեառն մերոյ և փրկչին ՅԻՍՈՒՍԻ ՔՐԻՍՏՈՍԻ. որ եղև մեզ առաջնորդ կենաց և յոյս փրկութեան։ Ընդ որում օրհնեալ ես Հայր ամենակալ հանդերձ կենդանարար և ազատիչ սուրբ Հոգւովդ. այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. Ամէն։

Յիշեա Տէր զպաշտօն"։ Բարերար և բազումողորմ"։ Գ.է՛.փ. ժէԼ, 288—289։

# ՍԱՂՄՈՍ

ԻԲ. Տէր հովուեսցէ զիս, և ինձ ինչ ո՛չ պակասեսցի։
'Ի վայրի դալարւոջ անդ բնակեցոյց զիս. և առ ջուրս հանգստեան սնոյց զիս։

Դարձոյց զանձն իմ առ իս, և առաջնորդեաց ինձ 'ի ճանապարհս արդարութեան վասն անուան իւրոյ.

Թէպէտ և գնայցեմ ես 'ի մէջ ստուերաց մահու, ոչ երկեայց 'ի չարէ՝ զի դու Տէր ընդ իս ես:

Ցուպ քո և գաւազան՝ նոքա մխիթարեսցեն զիս:

Պատրաստ արարեր առաջի իմ զսեղան՝ ակն յանդիման նեղչաց իմոց:

Օծեր իւղով զգլուխ իմ. բաժակ քո որպէս անապակ արբեցոյց զիս:

Ողորմութիւն քո Տէր զհետ իմ եկեսցէ զամենայն աւուրս կենաց իմոց. բնակել ինձ 'ի տան Տեառն ընդ երկայն աւուրս:

Ցոյց ինձ ճանապարհ՝ յոր և գնացից, զի առ քեզ Տէր համբարձի զանձն իմ.

Փրկեա զիս 'ի թշնամեաց իմոց Տէր. զի զքեզ ապաւէն ինձ արարի.

Ուսո ինձ առնել զկամս քո, զի դու ես Աստուած իմ:

Հոգի քո բարի՝ առաջնորդեսցէ ինձ 'ի յերկիր ուղիղ.

Վասն անուան քոյ Տէր կեցուսցես զիս. արդարութեամբ քով, հանցես 'ի նեղութենէ զանձն իմ:

Ողորմութեամբ քով սատակեա զթշնամիս

իմ. և կորո՛ զամենայն նեղիչս անձին իմոյ, զի ես ծառայ քո եմ ։

Փառք Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ. Այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից՛ ։

## ՔԱՐՈԶ

Եւ եւս խաղաղութեան զՏէր աղաչեսցուք ։

Գոհաբանելով աղաչեսցուք զբարերար Հոգին Աստուած, և խնդրեսցուք զողորմութիւն ՚ի նմանէ. զի անցուսցէ ՚ի մէնջ ըզցասումն պատուհասի յանցանաց մերոց բարերարութեամբն իւրով ։ Ամենակալ Տէր Աստուած մեր կեցո՛ և ողորմեա՛ ։

## ԱՂՕԹՔ

Խաղաղութեամբ քով Հոգիդ սուրբ Աստուած Ճշմարիտ՝ որ ՚ի վեր է քան զամենայն միտս և զխորհուրդս, մխիթարեա՛ զանձինս ծառայից քոց՝ ընդունելով զաղաչանս մեր. անցո՛ ՚ի մէնջ զցասումն պատուհասի յանցանաց մերոց բարերութեամբ քով ։ Կերեա՛ և լոյս մեզ, քաւեա՛ և թո՛ղ զմեզս մեր. արժանաւորեա՛ գոհութեամբ փառաւորել զքեզ ընդ Հօր և ընդ Որդւոյն միածնի. այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. Ամէն ։

# ԿԱՐԳԱՒՈՐՈՒԹԻՒՆ

## ՀԱՄԱՌԱԿԱՑ ԱՂՕԹԻՑ ՎԵՑԵՐՐՈՐԴ ԺԱՄՈՒՆ
## ՈՐ ԿԱՏԱՐԻ Ի ԴԷՄՍ ՀՕՐ ԱՍՏՈՒԾՈՅ
ԱՅԼԵՒ Ի ԴԷՄՍ
## ՉԱՐՉԱՐԱՆԱՑ ԵՒ ԽԱՉԵԼՈՒԹԵԱՆ
## ՈՐԴՒՈՅՆ ԱՍՏՈՒԾՈՅ



**Օրհնեալ Տէր մեր Յիսուս Քրիստոս. Ամէն։**
**Հայր մեր որ յերկինս ես"։**

**Օրհնեալ Հայր սուրբ Աստուած ճշմարիտ. Ամէն։**

## ՍԱՂՄՈՍ

ԺԹ. ՈՂՈՐՄԵԱ ինձ Աստուած ըստ մեծի ողորմութեան քում. ըստ բազում գթութեան քում՝ քաւեա զանօրէնութիւնս իմ։

Առաւել լուա զիս յանօրէնութենէ իմմէ. և ՚ի մեղաց իմոց սուրբ արա զիս։

Զանօրէնութիւնս իմ ես ինձէն գիտեմ, և մեղք իմ"։ Գ. Է՛փ ձէԼ, 529—531։

340

# ԵՐԳ

## ՎԵՑԵՐՈՐԴԻ ԺԱՄՈՒ ԱՒՈՒՐՆ

Ձայնի Ողորմեա Սողմոսին :

Խաւարեցաւ լոյսն արեւուն 'ի վեցե
րորդ ժամ ուրբաթուն · ծանոյց թէ լոյսն
արարչական նսեմացոյց զլոյսն եղական ·
կախեալ ըզքեղ մերկ 'ի խաչին քօղով
ստուերաւըն ծածկէին · հերքեա 'ի մէնջ
ըզծանրութիւն՝ շըրջօղ դիւին միջօրէի :
Զանձրութիւն մարտ այսօրն չարի՝ որ
յայժմ ժամուս պատերազմի · դողեալ յո
գւոց մեր հերքեսցի՝ քո նշանաւ սրբոյ
խաչին · ճշմարտութեան քո ճառագայթ
ղաւ 'ի յերկնից անկեալ փայլակն · մեր
ժեալ 'ի մէնջ հալածեսցէ՝ և՝ զմեզ լու
սով քո՝ վառեսցէ :
Յայս միջօրեայ տուընջեան ժամուս վայ
ելչական աչաց մարմնոյս · նետիւք գաղտ
նեաց մի խոցեսցուք 'ի խաւարէն որ
'ի ծածուկ · շուրջանակի բանակեսցեն
ըզմեօք բանակք հրեշտակաց · որք պահա
կից մեզ լինելով զքեզ ընդ Հօր փա
ռաւորելով :

## ՄԱՂԹԱՆՔ

Յամենայն ժամու աղաչանք իմ՝ այս են, ՚ի մեղաց իմոց սուրբ արա զիս Տէր և յօտարէն պահեա զծառայս քո մարդասէր Տէր ։

Եւ ևս խաղաղութեան զՏէր աղաչեսցուք ընկա՛լ կեցո՛ և ողորմեա՛ ։

Օրհնութիւն և փառք Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ · այժմ և միշտ և յաւիտեանս"։

## ՔԱՐՈԶ

### ՄԵԾ ՊԱՀՈՑ

Արթուն մտօք և անզգօս խորհրդով կացցուք միաբան յաղօթս առաջի Տեառն մերոյ և փրկչին ՅԻՍՈՒՍԻ ՔՐԻՍՏՈՍԻ ։ Հաւատով խնդրեսցուք ՚ի նմանէ զհրեշտակ խաղաղութեան՝ պահապան անձանց մերոց · որ եկեալ բանակեսցէ շուրջ զմեօք, և աներկիւղ պահեսցէ զմեզ յամենայն հրեղէն նետից սատանայի՝ որ թռչի ՚ի տուէ · յիրաց խաւարային գնացից · ՚ի դայթակղութենէ դիւին ՚ի հասարակ աւուր ։ Յորմէ զգուշութեամբ պահելով աղօթիւք և բարեխօսութեամբ ամենայն սրբոց, շնորհեսցէ մեզ մարդասէրն Աստուած կեալ առաքինու-

թեամբ ՚ի փրկութիւն անձանց մերոց. ՚ի պատիւ և ՚ի փառս կենդանացուցիչ անուան իւրոյ ։ Այս հաղորդութեան ընկալցուք ՚ի յայտնութեան միածնի Որդւոյն Աստուծոյ. կերպարանակից առնել զմարմին խոնարհութեան մերոյ՝ ըստ նմանութեան մարմնոյ փառաց իւրոց ։ Վասն զի զայս խոստացաւ սիրելեաց իւրոց ճշմարիտն Աստուած ՅԻՍՈՒՍ ՔՐԻՍՏՈՍ Տէր մեր. կեցո՛ և ողորմեա՛ ։

Զժամս և զառաջակայ օրս խաղաղութեամբ անցուցանել՝ հաւատով ՚ի Տեառնէ խնդրեսցուք ։

Շնորհեա՛ Տէր ։

Զհրեշտակ խաղաղութեան պահապան անձանց մերոց՝ ՚ի Տեառնէ խնդրեսցուք ։

Շնորհեա՛ Տէր ։

Զքաւութիւն և զթողութիւն յանցանաց մերոց՝ ՚ի Տեառնէ խնդրեսցուք ։

Շնորհեա՛ Տէր ։

Զսուրբ խաչին մեծ և կարող զօրութիւն յօգնութիւն անձանց մերոց՝ ՚ի Տեառնէ խնդրեսցուք ։

Շնորհեա՛ Տէր ։

Եւ ևս միաբան վասն ճշմարիտ և սուրբ հաւատոյս մերոյ՝ զՏէր աղաչեսցուք ։

Տէր ողորմեա՛ ։

Զանձինս մեր և զմիմեանս Տեառն Աս-

տուծոյ ամենակալին յանձն արասցուք ։

Քեզ Տեառնդ յանձն եղիցուք ։

Ողորմեա՛ց մեզ Տէր Աստուած մեր՝ ըստ մեծի ողորմութեան քում ․ ասասցուք ամենեքեան միաբանութեամբ ։

Տէր ողորմեա՛ ․ Տէր ողորմեա՛ ․ Տէր ողորմեա՛ ։

## ԱՂՕԹՔ

Օգնեա՛ մեզ Տէր Աստուած մեր ըստ առատութեան քո ․ զօրաւոր և յաղթող լինել ընդդէմ սատանայական պատերազմաց ․ և զամենայն Հրեղէն նետս նորա շիջուցանելով՝ անկասկած լիցուք յերկիւղէ խաւարային գնացից՝ ՚ի գայթակղութենէ դիւին ՚ի հասարակ աւուր ։ Եւ զգաստացեալք վայելչական աւուրնջեամբն՝ առաքինութեամբ կեցցուք ՚ի փրրկութիւն անձանց մերոց ․ ՚ի փառս և ՚ի պատուի սրբոյ Երրորդութեանդ ․ այժմ և միշտ ։

Խաղաղութիւն ամենեցուն ։

Երկնաւոր խաղաղութեամբդ քով՝ պարսպեալ պահեա՛ զանձինս մեր Տէր զօրութեանց ։ Վասն զի դու ես Աստուած խաղաղութեան ․ և բաց ՚ի քէն զայլ ոք ոչ գիտեմք ․ և զանուն քո անուանեմք՝ կարդամք յաղթականութիւն անձանց մերոց ։ Դիցես յերկրպագութիւնս մեր ․ և ուժ մեզ տանելք

զարդարութիւն ճշմարտութեան ։ Եւ գոհութեամբ ։ փառաւորեսցուք զՀայր և զՈրդի և զսուրբ Հոգին ․ այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից ․ Ամէն ։

## ՍԱՂՄՈՍ

Տէր՝ մի՛ յիշեր զմեղս մեր զառաջինս ․ վաղվաղեսցէ առ մեզ ողորմութիւն քո Տէր՝ զի աղքատացաք յոյժ ։

Օգնեա՛ մեզ Աստուած փրկիչ մեր՝ վասն փառաց անուան քոյ ։

Տէր փրկեա՛ զմեզ և քաւեա՛ զմեղս մեր վասն անուան քոյ ։

## ՔԱՐՈԶ

Վասն հիւանդաց և ամենայն վշտացելոց՝ աղաչեսցուք զփրկիչն մեր ՔՐԻՍՏՈՍ ․ զի ողորմեսցի ըստ մեծի ողորմութեան իւրում և բժշկեսցէ զախտս և զհիւանդութիւնս հոգւոց և մարմնոց ծառայից իւրոց ․ և կատարեալ առողջութեամբ հաստատեսցէ զամենեսեան 'ի մշտնջենաւոր և յանախտ կեանս ։ Որ առաքեցաւ 'ի Հօրէ 'ի բժշկութիւն ազգի մարդկան՝ միածին Որդին Աստուծոյ ․ Տէր մեր և փրկիչ ՅԻՍՈՒՍ ՔՐԻՍՏՈՍ ․ կեցո՛ և ողորմեա՛ ։

# ԱՂՕԹՔ

Փարատեմ զցաւս և բժշկեմ զհիւանդութիւնս ՚ի ժողովրդենէ քումմէ Տէր Աստուած մեր. և շնորհեմ ամենեցուն զկատարեալ առողջութիւն՝ նշանաւ ամենայաղթ խաչիւ քով. որով բարձեր զտկարութիւն ազգի մարդկան, և դատապարտեցեր զթշնամին կենաց և փրկութեան մերոյ։ Դու ես կեանք մեր և փրկութիւն՝ բարերար և բազումողորմ Աստուած. որ միայն կարօղ ես թողուլ զմեղս՝ և մերժել զախտս և զհիւանդութիւնս ՚ի մէնջ. որում յայտնի են պէտք կարեաց մերոց. պարգևիչդ բարեաց՝ պարգևեա զառատ ողորմութիւն քո ՚ի վերայ արարածոց քոց՝ ըստ իւրաքանչիւր պիտոյից. յորոց Հանապազ փառաւորեալ գովի ամենասուրբ Երրորդութիւնդ. այժմ և միշտ և յաւէ՛։

Յիշեա Տէր զպաշտօն"։ Բարերար և բազումողորմ"։ Գ․է՛փ ժէՆ, 288—289։

# ՍԱՂՄՈՍ

ժէ. Երանի որ խորհի զաղքատն և զտնանկն. յաւուր չարի փրկէ զնա Տէր։

Տէր փրկէ զնա և կեցուցանէ. երանելի

առնէ զնա 'ի վերայ երկրի · և ոչ մատնէ զնա 'ի ձեռս թշնամեաց իւրոց ։

Տէր օգնական է նմա 'ի մահիճս ցաւոց իւրոց · և զամենայն անկողինս նորա դարձուցանէ 'ի հիւանդութենէ նորա ։

Ես ասացի Տէր ողորմեա ինձ · բժշկեա զանձըն իմ · ես մեղայ քեզ ։

Որ բնակեալն է յօգնութիւն բարձրելոյն, ընդ հովանեաւ Աստուծոյ յերկնից հանգիցէ ։

Ասասցէ Տեառն ընդունող իմ ես դու , ապաւէն իմ Աստուած , և ես յուսամ 'ի նա ։

Նա փրկեսցէ զիս յորոգայթէ որսողին · և 'ի բանից 'ի խռովութենէ ։

'Ի թիկունս իւր ընկալցի զքեզ · 'ի հովանի թևոց նորա յուսասցիս ։

Որպէս զէն շուրջ եղիցի զքև՝ ճշմարտութիւն նորա ։

Ոչ երկիցես դու յերկիւղէ գիշերի · և ոչ 'ի նետէ՝ որ թռչի 'ի տուէ ։

Յիրէ՝ որ շրջի 'ի խաւարի · 'ի դայթակղութենէ դիւին 'ի հասարակ աւուր ։

Անկցին 'ի կողմանէ քումմէ հազարք , և բիւրք ընդ աջմէ քումմէ · և առ քեզ ինչ ոչ մերձեսցին ։

Բայց միայն աչօք քովք հայեսցիս դու · և զհատուցումն մեղաւորաց տեսցես · զի դու Տէր յոյս իմ ես ։

Զբարձրեալն արարեր քեզ ապաւէն. զի ո՛չ հասցեն առ քեզ չարք. և տանջանք մի մերձեսցին 'ի յարկս քո:

Հրեշտակաց իւրոց պատուիրեալ է վասն քո՝ 'ի պահել զքեզ յամենայն ճանապարհս քո:

'Ի բազուկս իւրեանց ընկալցին զքեզ. զի մի երբէք հարցես զքարի զոտն քո:

'Ի վերայ իժից և քարբից գնասցես դու. և առ ոտն կոխեսցես զառիւծն և զվիշապն:

Քանզի յիս յուսացաւ, և փրկեցից զնա. հովանի եղէց նմա, զի ծանեաւ զանուն իմ:

Կարդասցէ առ իս՝ և ես լուայց նմա. և առ նմա եղէց 'ի նեղութեան:

Փրկեցից և փառաւոր արարից զնա. երկայն աւուրբք լցուցից, և ցուցից նմա ըզփրկութիւն իմ:

Փառք Հօր և Որդւոյ": Այժմ և միշտ և":

## ՔԱՐՈԶ

Եւ ևս խաղաղութեան զՏէր աղաչեսցո՛ւք:

Խնդրեսցո՛ւք հաւատով 'ի Հօրէ վասն քաւութեան մեղաց և թողութեան յանցանաց. փրկելոյ զմեզ 'ի վշտաց և 'ի նեղութեանց. խնայելոյ 'ի վերայ մեր ողորմութեան և գթութեան Տեառն Աստուծոյ ամենակալին. կեցո՛ և ողորմեա՛:

# ԱՂՕԹՔ

Հայր գթութեանց եւ Աստուած ամենայն մխիթարութեանց. որ մխիթարես զմեզ յամենայն նեղութեան մերում. լո՛ւր եւ այժմ ձայնի պաղատանաց ծառայից քոց ընդունելով զաղաչանս մեր: Անցո՛ 'ի մէնջ զցասումն պատուհասի յանցանաց մերոց բարերարութեամբ քով: Նորոգեա՛ եւ լո՛ւր մեզ` քաւեա՛ եւ թո՛ղ զմեղս մեր. արժանաւորեա՛ գոհութեամբ փառաւորել զքեզ ընդ Որդւոյ եւ ընդ սրբոյ Հոգւոյդ: Այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից. Ամէն:

# ԿԱՐԳԱՒՈՐՈՒԹԻՒՆ

ՀԱՄԱՌԱԿԱՑ ԱՂՕԹԻՑ ԻՆՆԵՐՈՐԴ ԺԱՄՈՒՆ
ՈՐ ԿԱՏԱՐԻ 'Ի ԴԷՄՍ ՈՐԴԻՈՑՆ ԱՍՏՈՒԾՈՅ

ԱՅԼԵՒ

ՄԱՀՈՒԱՆ ԵՒ ԲԱՆԱԿԱՆ ՀՈԳԻՈՑՆ ԱՈՒԱՆԴՄԱՆՆ



Օրհնեալ Տէր մեր Յիսուս Քրիստոս. Ամէն:
Հայր մեր որ յերկինս ես":
Օրհնեալ Որդիդ սուրբ Աստուած ճշմարիտ.
Ամէն:

## ՍԱՂՄՈՍ

Ծի. Ողորմեա՛ ինձ Աստուած ըստ մեծի ողորմութեան քում. ըստ բազում գթութեան քում՝ քաւեա՛ զանօրէնութիւնս իմ:

Առաւել լուա՛ զիս յանօրէնութենէ իմմէ. և 'ի մեղաց իմոց սուրբ արա զիս:

Զանօրէնութիւնս իմ ես ինձէն գիտեմ, և մեղք իմ առաջի իմ": Գ·է՛փ ՃԷ, 329—331:

# ԵՐԳ

## ԻՆՆԵՐՈՐԴԻ ԺԱՄՈՒ ԱՒՈՒՐՆ

Ջնէ Բողոքեա Սամուէլին.

Զարչարակցեալ քեզ տիւ լուսոյ ե-
րիւք ժամու խաւարելոյ. պայծառացեալ
յիններորդին 'ի տիպ լըրման մահու ստուե
րին. Զահըգ լուսոյ մեծապայծառ ա-
ւանդեցեր զհոգիդ առ Հայր. ռահիւ
կցորդ քեզ 'ի յերկինս ըզմեզ ուղղեա
հոգւովդ քոյին.

Սանդարամետք սարսեցան կապեալ հո-
գիքն արձակեցան. վէմք 'ի վիմէդ պատա-
ռեցան 'ի տապանաց մեռեալք յարեան.
տարերք երկրի տատանէին և աշխարհի
սիւնք դողային. ըմմեալքս առ քեզ պա-
ղատեսցուք զի ընդ արդարոցն դասես-
ցուք.

Ցուցեր յայնժամ ըսքանչելիս և այ-
ժըմ մեզ ողորմեսցիս. ւիւծեալ բնութիւնս
քե ողջացաւ շնորհեա եւ մեզ լինել ան-
ցաւ. փոխան մահու քո կենարար կեցո
ըզմեզ Տէր բարերար. քեզ պաղատիմք ատա-
ւազակէն յիշեա ըզմեզ յօրն ահաւորին.

# ՄԱՂԹԱՆՔ

Յամենայն ժամու աղաչանք իմ այս են. 'ի մեղաց իմոց սուրբ արա զիս Տէր. և յաւարէն պահեա զծառայս քո մարդասէր Տէր:

Եւ ես խաղաղութեան զՏէր աղաչեսցուք ընկալ կեցո և ողորմեա:

Օրհնութիւն և փառք Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ. այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. Ամէն:

---

# ՔԱՐՈԶ

## ՄԵԾ ՊԱՀՈՑ

Սուրբ սրտիւ և հաստատուն հաւատով կացցուք միաբան յաղօթս առաջի Տեառն մերոյ և փրկչին ՅԻՍՈՒՍԻ ՔՐԻՍՏՈՍԻ. Յիշելով զմեծամեծս նորա զանչափ շնորհս. զհամբերութիւն կենսատու խաչին, և զհեղումն ազատեցուցիչ արեան նորա, և զսոցին նմանս որ յայսմ ժամու վասն մեր մեղաւորացս կրեաց նա: Եւ մեք զայս ամենայն զմտաւ ածելով՝ սրբեսցուք 'ի մեղաց զխորհուրդս՝ զբանս՝ և զգործս մեր. կատարեսցուք զսրբութիւն անձանց մերոց ահիւն Աստուծոյ: Մի՛ յապաղեսցուք խոստովան լինել նմա զմեղս մեր և

խնդրել զթողութիւն մեղաց մերոց. զի մի՛ կորիցիմք անապաշխար՝ զյաւիտենական կորուստն։ Այլ մինչդեռ ժամանակս 'ի ձեռս է, գործեսցուք զբարիս 'ի կեանս յայսմիկ, օրինակ վարուց մերոց ունելով զամենայն սուրբս և զյաղթօղ նահատակսն. որք միանգամ 'ի սկզբանէ հաճոյեցին Տեառն և փըրկչին բոլորեցունց։ Որոց աղօթիւք և բարեխօսութեամբն՝ շնորհեսցէ մեզ մարդասէրն Աստուած՝ զհաճոյսն իւր և զօգուտն մեր խորհել միշտ և առնել, և անպատում պարգևացն հաղորդս գտանիլ։ Զոր խոստացաւ սիրելեաց իւրոց ճշմարիտն Աստուած ՅԻՍՈՒՍ ՔՐԻՍՏՈՍ Տէր մեր. կեցո՛ և ողորմեա՛։

Զ ժամն և զառաջակայ օրս խաղաղութեամբ անցուցանել"։" Զ հրեշտակ խաղաղութեան պահապան"։" Զ քաւութիւն և զթողութիւն յանցանաց"։" Զ սուրբ խաչին մեծ և կարող զօրութիւն"։" Եւ ևս միաբան վասն ճշմարիտ և սուրբ"։" Զ անձինս մեր"։" Ողորմեա՛ց մեզ"։

## ԱՂՕԹՔ

Տէր զօրութեանց՝ որ կամաւոր մահուամբ քով 'ի ժամուս յայսմիկ կենդանացուցեր զմեզ 'ի մեռելութենէ մեղաց մերոց. և բևեռեցեր զկնիք դատապարտութեան մերոյ 'ի խաչին. և շնորհեցեր ազատութիւն ազգի

մարդկան՝ ի ծառայութենէ ապականութեան՝ յազատութիւն փառաց՝ հեղմամբ արեան քո սրբոյ։ Ընկալ և այժմ զաղաչանս մեր. և յաղօթեմ մեզ՝ ուղիղ հաւատով և առաքինասէր վարուք՝ կեալ յայսմ աշխարհիս, և արժանաւոր լինիլ յաւիտենական և երկնային ուրախութեանցն ընդ ամենայն սուրբս քո. Եւ գոհանալով փառաւորել զքեզ ընդ Հօր և սրբոյ Հոգւոյդ. այժմ և միշտ և յաւի՛։

Խաղաղութիւն ամենեցուն։

Բազումողորմ Աստուած և Հաստիչ խաղաղութեան՝ հաստատեա՛ զանձինս մեր քոյով խաղաղութեամբդ. որով ունիս յիւրաքանչիւր կարգի զամենայն արարածս քո՝ ուղիղ հրամանաւդ մատակարարելով. վասն զի՝ այդ իսկ է կամք քո՝ խաղաղական և հոգևոր սիրով կալ մեզ առ միմեանս, և սպասել արթուն մտօք յայտնութեան միածնիդ Աստուծոյ և փրկչիդ մերոյ ՅԻՍՈՒՍԻ ՔՐԻՍՏՈՍԻ։ Իբրում արժանաւորք եղիցուք հանդիպել ամպովք ընդ առաջ Տեառն յօդս. զուարթերեսս կացցուք յաջմէ քումմէ ընդ սուրբս և ընդ սիրելիս անուանդ քո սրբոյ. և ժառանգեսցուք զպատրաստեալն՝ ի սկզբանէ աշխարհի սրբոց քոց զարքայութիւնդ։ Եւ ընդ նոսին գոհանալով փառաւորեսցուք զքեզ ընդ Հօր և ամենասրբոյ Հոգւոյդ. այժմ և՛՛։

## ՍԱՂՄՈՍ

Տէր մի՛ մատներ զմեզ իսպառ վասն անուանդ քում սրբոյ · մի՛ ցրեր զուխտս քո · և մի՛ 'ի բացեայ առներ զողորմութիւնս քո 'ի մէնջ ։

Վասն Աբրահամու սիրելւոյ քոյ, Իսահակայ ծառայի քոյ, և Իսրայէլի սրբոյ քոյ ։

Տէր մի՛ մատներ զմեզ իսպառ վասն անուանդ քում սրբոյ · մի՛ ցրեր զուխտս քո · և մի՛ 'ի բացեայ առներ զողորմութիւնս քո 'ի մէնջ ։

## ԵՐԳ

### ՏԵԱՌՆ ՆԵՐՍԻՍԻ

Ա՛յհամպետին Աբրահամու հայցմամբ ընկալ Տէր զաղաչանս ։ Ե՛ւ ծառային քում Սահակայ խնդրուածովք 'ի մեզ գթա ։ Ընտանեացն Իսրայէլի ։ Սիրով սրբոյն 'ի մեզ խնայեա ։ Երեքսրբեան երիւք սոցին ։ Սրբեա զհոգի զմիտս և զմարմին ։

## ՔԱՐՈԶ

Աղաչեսցուք զկենդանատու փրկիչն մեր ՔՐԻՍՏՈՍ՝ որ կամաւոր խաչելութեամբն իւ-

րով զարարածս փրկեաց. և հեղմամբ արեան իւրոյ՝ զթողութիւն շնորհեաց յուսացելոց իւրոց ։ Ամենակալ Տէր Աստուած մեր. կեցո՛ և ողորմեա՛ ։

## ԱՂՕԹՔ

Անկեալ առաջի քո բարերար և բազումողորմ Աստուա՛ծ՝ աղաչեմք ամենայն սրտիւք մերովք և խնդրեմք զթողութիւն ՚ի քէն. որպէս խոստացար ծառայից քոց և ասացեր, զամենայն զոր ինչ խնդրիցէք հաւատով յանուն Որդւոյ ՚ի Հօրէ՝ տացի ձեզ ։ Շնորհեա՛ և այժմ հաւատացելոցս ՚ի քեզ, և կատարեա՛ ՚ի բարի զխնդրուածս մեր. զի ՚ի քեզ եմք ապաւինեալ ։ Եւ քո առատ ողորմութեամբդ մխիթարեա՛ զմեզ ՚ի կեանս յայսոսիկ, և առաջնորդեալ հասո՛ յանձառ երկնից արքայութիւնդ. ՚ի փառաբանութիւն և ՚ի պատիւ ամենասուրբ Երրորդութեանդ. այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. Ամէն ։

„Յիշեա՛ Տէր զպաշտօնն"։ „Բարերար և բազումողորմ"։ Գ․ է՛․ փ․ ՃԽԸ, 288—289 ։

# ՍԱՂՄՈՍ

ճի · Սիրեցի՝ զի լուիցէ Տէր զձայն աղօթից իմոց · զի խոնարհեցոյց զունկն իւր առ իս , և ես յաւուրս իմ կարդացի առ նա ։

Շրջեցան զինև երկունք մահու · և վիշտք դժոխոց գտին զիս ։

Զնեղութիւն և զանձկութիւն գտի · և զանուն Տեառն կարդացի ։

Ո՛ Տէր՝ փրկեա՛ զանձն իմ · ողորմած Աստուած մեր՝ ողորմի և պահէ զտղայս Տէր ։

Ես խոնարհ եղէ՝ և Տէր կեցոյց զիս · դա՛րձ անձն իմ 'ի հանգիստ քո՛ զի Տէր օգնեաց քեզ ։

Փրկեաց զանձն իմ 'ի մահուանէ , զաչս իմ յարտասուաց · և զոտս իմ 'ի գայթակղութենէ · հաճոյ եղէց առաջի Տեառն յերկրին կենդանեաց ։

Հաւատացի՝ զոր և խօսեցայ · և ես խոնարհ եղէ յոյժ ։

Ես ասացի 'ի զարմանալ իմում · թէ ամենայն մարդ սուտ է ։

Զի՞նչ տաց տրիտուր Տեառն՝ ընդ ամենայնի զոր և ետ ինձ ։

Զբաժակ փրկութեան ընկալայց · և զանուն Տեառն կարդացից ։

Զաղօթս իմ Տեառն տաց՝ առաջի ամենայն ժողովրդեան նորա ։

Պատուական է առաջի Տեառն մահ սրբոց իւրոց ։ ո՛ Տէր ես ծառայ քո եմ․ ծառայ և որդի աղախնոյ քոյ ։

Հատեր զկապանս իմ, քեզ մատուցից պատարագ օրհնութեան, և զանուն Տեառն կարդացից ։

Զաղօթս իմ Տեառն տաց՝ առաջի ամենայն ժողովրդեան նորա ․ ՚ի գաւիթս տան Տեառն՝ և ՚ի մէջ քո Երուսաղէմ ։

Օրհնեցէք զՏէր ամենայն ազգք ․ գովեցէք զնա ամենայն ժողովուրդք ։

Զօրացաւ ողորմութիւն նորա ՚ի վերայ մեր ․ և ճշմարտութիւն Տեառն մնայ յաւիտեան ։

Փառք Հօր և Որդւոյ"։ Այժմ և միշտ"։



# ԿԱՆՈՆ

## ՆՆՋԵՑԵԼՈՑ

### ՇԱՐԱԿԱՆ ԸՍՏ ՈՒԹ ՁԱՅՆԻՑՆ



### ԱՌԱՋԻՆ ՁԱՅՆ

ԱՁ․ Որ ստեղծմամբ ըստ պատկերի քո Տէր պատուեցեր զմեզ․ ընկալ՝ այժմ՝ զննջեցեալսն ՚ի քեզ ուղիղ հաւատով

# ԵՐԳ

## ԻՆՆԵՐՈՐԴԻ ԺԱՄՈՒ ԱՒՈՒՐՆ

Ձայնէ Ութերորդ Սաղմոսին։

Զարչարակցեալ քեզ տէր լուսոյ երիւք ժամու խաւարելոյ. պայծառացեալ յիններորդին՝ ի տիպ լրման մահու ստուերին. ջահերդ լուսոյ մեծապայծառ աւանդեցեր զհոգիդ առ հայր. ուրախ կցորդ քեզ՝ ի յերկինս ընդ մեզ ուղղեա հոգւովդ քոյին։

Սանդարամետք սարսեցան կապեալ հոգիք արձակեցան. վէմք ՝ի վիմէդ պատառեցան՝ ի տապանաց մեռեալք յարեան. տարերք երկրի տատանեցին և աշխարհի սիւնք դողային. ըմեալքս առ քեզ պաղատեսցուք զի ընդ արդարսն դասեսցուք։

Յուցեր յայնժամ ըզքանչելիս և այժմ մեզ ողորմեսցիս. լուծեալ բնութիւնս քո՝ ողջացաւ շնորհեա՝ և մեզ լինել անցաւ. փոխան մահու քո կենարար կեցո ընդ մեզ Տէր բարերար. քեզ պաղատիմք աւազակին յիշեա զմեզ յօրն ահագին։

# ՄԱՂԹԱՆՔ

Յամենայն ժամու աղաչանք իմ այս են . 'ի մեղաց իմոց սուրբ արա զիս Տէր . և յօտարէն պահեա զծառայս քո մարդասէր Տէր ։

Եւ ևս խաղաղութեան զՏէր աղաչեսցուք ընկալ կեցո և ողորմեա ։

Օրհնութիւն և փառք Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ . այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից . Ամէն ։

---

# ՔԱՐՈԶ

## ՄԵԾ ՊԱՀՈՑ

Սուրբ սրտիւ և հաստատուն հաւատով կացցուք միաբան յաղօթս առաջի Տեառն մերոյ և փրկչին ՅԻՍՈՒՍԻ ՔՐԻՍՏՈՍԻ . Յիշելով զմեծամեծս նորա զանչափ շնորհս . զհամբերութիւն կենսատու խաչին , և զհեղումն ազատեցուցիչ արեան նորա , և զսոցին նմանս որ յայսմ ժամու վասն մեր մեղաւորացս կրեաց նա ։ Եւ մեք զայս ամենայն զմտաւ ածելով՝ սրբեսցուք 'ի մեղաց զխորհուրդս՝ զբանս՝ և զգործս մեր . կատարեսցուք զսրբութիւն անձանց մերոց ահիւն Աստուծոյ ։ Մի յապաղեսցուք խոստովան լինել նմա զմեղս մեր և

խնդրել զթողութիւն մեղաց մերոց. զի մի կորիցիմք անապաշխար՝ զյաւիտենական կորուստն: Այլ մինչդեռ ժամանակս ՚ի ձեռս է, գործեսցուք զբարիս ՚ի կեանս յայսմիկ, օրինակ վարուց մերոց ունելով զամենայն սուրբս և զյայլթող նահատակսն. որք միանգամ ՚ի սկզբանէ հաճոյեցան Տեառն և փրկչին բոլորեցունց: Որոց աղօթիւք և բարեխօսութեամբն՝ շնորհեսցէ մեզ մարդասէրն Աստուած՝ զհաճոյսն իւր և զօգուտն մեր խորհիլ միշտ և առնել, և անպատում պարգևացն հաղորդս գտանիլ: Զոր խոստացաւ սիրելեաց իւրոց Ճշմարիտն Աստուած ՅԻՍՈՒՍ ՔՐԻՍՏՈՍ Տէր մեր. կեցօ և ողորմեա:

Զժամս և զառաջակայ օրս խաղաղութեամբ անցուցանել": Զհրեշտակ խաղաղութեան պահապան": Զքաւութիւն և զթողութիւն յանցանաց": Զսուրբ խաչին մեծ և կարող զօրութիւն": Եւ ևս միաբան վասն Ճշմարիտ և սուրբ": Զանձինս մեր": Ողորմեա՛ց մեզ":

## ԱՂՕԹՔ

Տէր զօրութեանց՝ որ կամաւոր մահուամբ քով ՚ի ժամուս յայսմիկ կենդանացուցեր զմեզ ՚ի մեռելութենէ մեղաց մերոց. և բևեռեցեր զկնիք դատապարտութեան մերոյ ՚ի խաչին. և շնորհեցեր ազատութիւն ազգի

մարդկան 'ի ծառայութենէ ապականութեան՝ յազատութիւն փառաց՝ հեղմամբ արեան քո սրբոյ: Ընկա՛լ և այժմ զաղաչանս մեր. և յաջողեա՛ մեզ՝ ուղիղ հաւատով և առաքինասէր վարուք՝ կեալ յայսմ աշխարհիս, և արժանաւոր լինիլ յաւիտենական և երկնային ուրախութեանցն ընդ ամենայն սուրբս քո. Զի գոհանալով փառաւորել զքեզ ընդ հօր և սրբոյ հոգւոյդ. այժմ և միշտ և յաւի՛:

Խաղաղութիւն ամենեցուն:

Բազումողորմ Աստուած և հաստիչ խաղաղութեան՝ հաստատեա՛ զանձինս մեր քոյով խաղաղութեամբդ. որով ունիս յիւրաքանչիւր կարգի զամենայն արարածս քո՝ ուղիղ հրամանաւդ մատակարարելով. վասն զի՛ այդ իսկ է կամք քո՝ խաղաղական և հոգևոր սիրով կալ մեզ առ միմեանս, և սպասել արթուն մտօք յայտնութեան միածնիդ Աստուծոյ և փրկչիդ մերոյ ՅԻՍՈՒՍԻ ՔՐԻՍՏՈՍԻ: Որում արժանաւորք եղիցուք հանդիպել ամպովք ընդ առաջ Տեառն յօդս. զուարթերես կացցուք յաջմէ քումմէ ընդ սուրբս և ընդ սիրելիս անուանդ քո սրբոյ. և ժառանգեսցուք զպատրաստեալն 'ի սկզբանէ աշխարհի սրբոց քոց զարքայութիւնդ: Զի ընդ նոսին գոհանալով փառաւորեսցուք զքեզ ընդ հօր և ամենասրբոյ հոգւոյդ. այժմ և:

## ՍԱՂՄՈՍ

Տէր մի՛ մատներ զմեզ իսպառ վասն անուանդ քում սրբոյ. մի՛ ցրեր զուխտս քո. և մի՛ 'ի բացեայ առներ զողորմութիւնս քո 'ի մէնջ:

Վասն Աբրահամու սիրելւոյ քոյ, Իսահակայ ծառայի քոյ, և Իսրայէլի սրբոյ քոյ:

Տէր մի՛ մատներ զմեզ իսպառ վասն անուանդ քում սրբոյ. մի՛ ցրեր զուխտս քո. և մի՛ 'ի բացեայ առներ զողորմութիւնս քո 'ի մէնջ:



## ԵՐԳ

### ՏԵԱՌՆ ՆԵՐՍԻՍԻ

Նա՛հապետին Աբրա՛հա՛մու՛ հայցմամբ ընկա՛լ Տէր զաղաչա՛նս: Ե՛ւ ծառա՛յի՛ն քում Իսա՛հա՛կա՛յ խը՛նդրուածո՛վք 'ի՛ մեզ գթա՛: Բե՛նաստեղծին Ի՛սրայէլի՛: Սիրով սրբո՛յն 'ի մեզ խնայեա՛: Ե՛րեքսըրբեա՛ն երի՛ւք սա՛ցի՛ն: Սրբեա զհոգի՛ զմի՛տս և՛ զմարմի՛ն:



## ՔԱՐՈԶ

Աղաչեսցո՛ւք զկենսատու փրկիչն մեր ՔՐԻՍՏՈՍ՝ որ կամաւոր խաչելութեամբն իւ-

րով զարարածս փրկեաց․ և հեղմամբ արեան իւրոյ՝ զթողութիւն շնորհեաց յուսացելոց իւրոց։ Ամենակալ Տէր Աստուած մեր․ կեցո և ողորմեա։

## ԱՂՕԹՔ

Անկեալ առաջի քո բարերար և բազումողորմ Աստուած՝ աղաչեմք ամենայն սրտիւ ք մերովք և խնդրեմք զթողութիւն ՚ի քէն․ որպէս խոստացար ծառայից քոց և ասացեր, զամենայն զոր ինչ խնդրիցէք հաւատով յանուն Որդւոյ ՚ի Հօրէ՝ տացի ձեզ։ Շնորհեա և այժմ հաւատացելոցս ՚ի քեզ, և կատարեա ՚ի բարի զխնդրուածս մեր․ զի ՚ի քեզ եմք ապաւինեալ։ Եւ քո առատ ողորմութեամբդ մխիթարեա զմեզ ՚ի կեանս յայսմիկ, և առաջնորդեալ հասո յանձառ երկնից արքայութիւնդ․ ՚ի փառաբանութիւն և ՚ի պատիւ ամենասուրբ Երրորդութեանդ․ այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից․ Ամէն։

Յիշեա Տէր զպաշտօն"։ Բարերար և բազումողորմ"։ Գ․Ե՛․ ԺԷ, 288—289։



# ՍԱՂՄՈՍ

ճժ · Սիրեցի՝ զի լուիցէ Տէր զձայն աղօթից իմոց · զի խոնարհեցոյց զունկն իւր առ իս , և ես յաւուրս իմ կարդացի առ նա ։

Պղջեցան զինև երկունք մահու · և վիշտք դժոխոց գտին զիս ։

Օ՛նեղութիւն և զանձկութիւն գտի · և զանունն Տեառն կարդացի ։

Ո՛ Տէր՝ փրկեա՛ զանձն իմ · ողորմած Աստուած մեր՝ ողորմի և պահէ զտղայս Տէր ։

Ես խոնարհ եղէ՝ և Տէր կեցոյց զիս · դարձ անձն իմ ՚ի հանգիստ քո՛ զի Տէր օգնեաց քեզ ։

Փրկեաց զանձն իմ ՚ի մահուանէ , զաչս իմ յարտասուաց · և զոտս իմ ՚ի գայթակղութենէ · հաճոյ եղէց առաջի Տեառն յերկրին կենդանեաց ։

Հաւատացի՝ զոր և խօսեցայ · և ես խոնարհ եղէ յոյժ ։

Ես ասացի ՚ի զարմանալ իմում · թէ ամենայն մարդ սուտ է ։

Օ՛ինչ տաց տրիտուր Տեառն՝ ընդ ամենայնի զոր և ետ ինձ ։

Օ՛բաժակ փրկութեան ընկալայց · և զանուն Տեառն կարդացից ։

Օ՛աղօթս իմ Տեառն տաց՝ առաջի ամենայն ժողովրդեան նորա ։

Պատուական է առաջի Տեառն մահ սրբոց իւրոց ։ ո՛ Տէր ես ծառայ քո եմ ։ ծառայ և որդի աղախնոյ քոյ ։

Հատեր զկապանս իմ, քեզ մատուցից պատարագ օրհնութեան, և զանուն Տեառն կարդացից ։

Զուխտս իմ Տեառն տաց՝ առաջի ամենայն ժողովրդեան նորա ։ 'ի գաւիթս տան Տեառն՝ և 'ի մէջ քո Երուսաղէմ ։

Օրհնեցէք զՏէր ամենայն ազգք ։ գովեցէք զնա ամենայն ժողովուրդք ։

Զօրացի ողորմութիւն նորա 'ի վերայ մեր ։ և ճշմարտութիւն Տեառն մնացէ յաւիտեան ։

Փառք Հօր և Որդւոյ" ։ Այժմ և միշտ" ։



# ԿԱՆՈՆ

## ՆՆՋԵՑԵԼՈՑ

## ՀԱՐԱԿԱՆ ԸՍՏ ՈՒԹ ՁԱՅՆԻՑՆ



## ԱՌԱՋԻՆ ՁԱՅՆ

ԱՁ · Որ ստեղծմամբ ըստ պատկերի քո Տէր պատուեցեր ըզմարդ · ընկալ այժմ ըզննջեցեալսն 'ի քեզ ուղիղ հաւատով

ըստ մեծի քում ողորմութեան։ Որ ձեռնհասք սուրբ Հոգւոյն լուսաւորեցեր․ յիշատակի իւրեանց զհոգիս նոցա ընկալ մարդասէր․ ըստ մե"։ Որք հաղորդեցան մարմնոյ և արեան քո Տէր․ Հանգո զհոգիս նոցա ընդ սուրբս քո Քրիստոս Աստուած․ քանզի գինք սուրբ արեան քո են։ Միայն օրհնեալդ ի կանայս․ մայր և միշտ կոյս և իմանալի լոյս․ ծընող արարչին մերոյ անդադար բարեբանեսցուք։

ԱՌԱՋԻՆ ԿՈՂՄ

ԱԿ․ Արարիչ Աստուած և ըստեղծիչ ազգի մարդկան․ մի անտես առներ զննջեցեալսըն մեր․ այլ հանգո զհոգիս նոցա ընդ սուրբս քո։ Որդի փառածին յարութիւն անեղերականց․ մի անտես առ"։ Հոգիդ ճշմարիտ մխիթարիչ որդ դաւորականց․ մի անտես առ"։ Հոգւոյն ըղջև հովանացեալ միայն Սըրբուհի․ ծընար ըզԲանն Աստուած զանձնաւոր լուոյ հօր ծընդեան․ և յայտնեցաւ միութիւն Երրորդութեան։

բնութեամբ բարձեր 'ի վերայ խաչին անարատ ձեռօք . հանդո" : Որ լուծեր զեչխանութիւն մահու . կամաւորական մահուամբ քո Քրիստոս . բանաւորաց զաղաչանս առաջի քո հեղեալ մաղթեմք . հանդո" : Տիրուհի անարատ մայր Տեառն և կոյս Մարիամ . Բարձրեալն աթոռ ըղձեղ անառ 'ի յերկրի . բարեխօսեա առ Տէր վասն մերոյ փրկութեան :

## ԵՐՐՈՐԴ ՁԱՅՆ

ԳՁ . Հայր բարեգութ որ զըթացար 'ի յորդս որդւոց մարդկան . առաքեցեր ըղ միածինդ 'ի փրկութիւն . յիշեա զհոգիս ննջեցելոց մերոց . և հանդո ընդ սուրբս քո : Որդիդ միածին որ յարեարդ 'ի մեռելոց . 'ի միւսանգամ գալըստեանըն քո յարութիւն մեզ խառատեար . յիշ" : Հոգիդ ճըշմարիտ մըխիթարիչ որդւաւորաց . աղաչանօք սուրբ Աստուածածնի և ամենայն քոց սրբոց . յիշ" : 'Ի բարեխօսութիւն փութացիր մեզ սուրբ Աստուածածին . առ 'ի փրկել ըզժողովուրդս 'ի մեղաց և յապականութենէ :

## ԱՒԱԳ ԿՈՂՄ

գկ․ Յանըսկըզըբնական ծոցոյ Հօր խոնարհեալ Բանըդ մարմնացար 'ի կուսէն վասըն փըրկութեան մերոյ․ աղաչեմք ըզքեզ․ զնընջեցեալըսն մեր 'ի քեզ ուղիղ հաւատով․ յիշեա Տէր յորժամ գաս թագաւորութեամբըդ քո ։ Ընդ խաչակալ քաջ զօրութեամբ Որդի Աստուծոյ․ հաճեցար բանալ ըզդրունս աշխարհի քո խաչելութեամբն․ աղա"։ Կամաւորական մահուամբ քո լուծեր զերկունըս մահու․ և արժանի արարեր թողութեան յանցանաց քաւիչ քո արեամբ․ աղա"։ Որ փոխանակ մեղաւորաց ըզմահ առնել յանձն առեր․ իջանելով 'ի դըժոխըս փըրկեցեր 'ի մեղսաւորէ բանտէն ըզգերեալըսն․ աղա"։ Բարեբանեմք զանչափ քո զմարդասիրութիւնդ․ որ երեքօրեայ յարուցեալ զկենդանութիւն պարգևեցեր աշխարհի․ աղա"։ Մաքուր և անբիծ կոյս յետ ծննդեանն․ որ մարմնով ծընար զարձակօղըն 'ի կապից մահու․ բարեխօս լեր վասն անձանց մերոց․ փըրկել 'ի սպառնալեաց գեհենոյն ։

## ՉՈՐՐՈՐԴ ՁԱՅՆ

ԴՁ · Յօրժամ հարկանի փող գալըս-
տեան քո Տէր · յայնժամ զարհու-
րեալ դողան արարածք ՚ի յահէ քում
մէ · աղաչեմք ըզքեզ փրկիչ · հանդերձ
և ըզմեր ըզննջեցեալսն ընդ սուրբըս
քո · որ միայնդ ես բազումողորմ ։
Յահաւորեկ լուսոյ ծագման քո Տէր ·
ցընծան դասք առաքինեացն ՚ի մեր
րայ լուսեղէն ամպոյն · աղաչեմք ըզ
քեզ փրկիչ · հանդերձ և ըզմեր ըզննջե
ցեալսն ընդ սուրբըս քո · որ միայնդ
ես բազումողորմ ։ Ընոխակալ բազ
մագութ ողորմած Տէր · մի անտես առ
ներ ըզմեղուցեալքս յահագին աւու
րն · որ մի" ։ Որ էջեր ՚ի յերկնից և մարմ
նացար ՚ի սուրբ կուսէն · անճառելի
քոյին ծնընդեամբդ , և զիս մի անտես
առներ · այլ պահեա պատուականն և
սուրբ խաչիւ քո ։

## ՎԵՐՋ

Դկ · Որ Թագաւոր ես յաւիտենից Վրդ Մ-
ՏՈՍ Աստուած · ընկալ ըզծառայս քո ՚ի

բարի՛ · ե՛ւ շնո՛րհեա՛ ՚ի յա՛ւ Ջակողմեա՛ն քո՛ւմ դասի՛լ : Ո՛ր ունիս իշխանութի՛ւն մահո՛ւ եւ կենաց · հանդո՛ զհո՛գիս քո՛ց ծառայի՛ց · եւ" : Յո՛րժամ կարգի՛ աթո՛ռ Տէրութեա՛նդ քո · եւ հաստատի՛ ատեան դատաստանի՛ն · յայնժամ խնդրեա՛ ՚ի ծա՛ռայս քո՛ · եւ" : Ամե՛նօրհնեա՛լ Ա՛ստուածամայր Մարիամ · Քե՛րո՛վբէ՛ական աթո՛ռ ա՛րարչի՛ն մե՛րոյ տիրօ՛րէնութեա՛ն զո՛ր երանեցի՛ն ամենա՛յն ազի՛նք հա՛նապազ :

## ՄԱՂԹԱՆՔ

Հոգւոյն հանգուցելոց ՔՐԻՍՏՈՍ Աստուած՝ արա հանգիստ եւ ողորմութիւն · եւ մեզ մեղաւորացս շնորհեա զթողութիւն յանցանաց :

## ՔԱՐՈԶ

Եւ ևս խաղաղութեան զՏէր աղաչեսցուք :

Վասն հանգուցեալ հոգւոյն աղաչեսցուք զփրկիչն մեր ՔՐԻՍՏՈՍ · զի զնոսա ընդ արդարսն դասեսցէ՝ եւ զմեզ կեցուսցէ շնորհիւ ողորմութեան իւրոյ : Ամենակալ Տէր Աստուած մեր կեցո եւ ողորմեա" :

Տէր ողորմեա , Տէր ողորմեա · Տէր ողորմեա :

## ԱՂՕԹՔ

ՔՐԻՍՏՈՍ Որդի Աստուծոյ անոխակալ և բարեգութ՝ գթա՛ քո արարչական սիրովդ 'ի հոգիս հանգուցեալ ծառայից քոց ։ Յիշեա՛ յաւուր մեծի գալստեան արքայութեան քոյ ։ Արա՛ արժանի ողորմութեան քաւութեան և թողութեան մեղաց ։ Պսակաւորեալ պայծառացո՛ ընդ սուրբս քո յաջակողման դասուն ։ Զի դու ես Տէր և արարիչ ամենեցուն՝ դատաւոր կենդանեաց և մեռելոց ։ Եւ քեզ վայել է փառք իշխանութիւն և պատիւ՝ այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից" ։
Օրհնեալ Տէր մեր ՅԻՍՈՒՍ ՔՐԻՍՏՈՍ․ Ամէն ։
Հայր մեր որ յերկինս ես" ։

## ՄԱՂԹԱՆՔ

ԶՍաղմոսերգութիւնս և զաղաչանս ընկալցի մարդասէրն Աստուած 'ի հաճոյս բարերար կամաց իւրոց ․ մեր մեղացն և բազում յանցանացն թողութիւն շնորհեսցէ , 'ի չարեաց փրկեսցէ , 'ի մեղաց պահեսցէ , և նմա փառք յաւիտեանս ․ Ամէն ։

Օրհնեալ թագաւորութիւնն Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ ․ այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից ․ Ամէն ։

# ԺԱՄԱՄՈՒՏՔ

## ԸՍՏ ՊԱՏՇԱՃԻ ԱՒՈՒՐ



### ՊԱՀՈՑ

ԲՁ. ԳՁ. ԵՁ. Որ ՚ի Հօրէ առաքեցար փրկիչ՝ և մարմնացար ՚ի սրբոյ կուսէն. որ վասն մեր ՚ի յերկնից իջեր և լուսաւորեցեր զտիեզերս ։ Զխաղաղութիւն քո տուր մեզ Տէր՝ որ խաղաղութեանց ես թագաւոր. զխաղաղութիւն և զողորմութիւն՝ որ յամենայնի ես կարող մարդասէր ։



ԴՁ. ՈՒՐ. Որ ըստ ամենայն միտս անցանես. զխաղաղութիւն քո Աստուած տուր մեզ հանապազ՝ զքեզ աղաչեմք ։



ԿԻՐ. Միածին Որդի և Բանդ Աստուած և անմահ էութիւն, որ յանձն առեր մարմնանալ ՚ի սրբուհւոյ Աստուածածնէն և ՚ի միշտ կուսէն. անփոփոխելի մարդ եղեալ խաչեցար ՔՐԻՍՏՈՍ Աստուած մեր. մահուամբ զմահ կոխեցեր. մինդ ՚ի սրբոյ Երրորդութենէն՝ փառաւորակից ընդ Հօր և սրբոյ Հոգւոյն՝ կեցո՛ զմեզ ։

## ԾՆՆԴԵԱՆ ԵՒ ԱՍՏՈՒԱԾԱԾՆԻ։

Ըստ ցուցակի Տօնացուցին ։

Աստուածածին անհարսնացեալ՝ զԲանն անսկիզբն յղացար և զԱստուածն անխառնելի ծնար․ զանպարագրելին 'ի գիրկս քո բարձեր․ նմա անդադար բարեխօսեա վասն անձանց մերոց ։

Աստուածածին զքեզ խոստովանեալ երկրպագէ Եկեղեցի ուղղափառաց․ քանզի՝ ուր Քերովբէքն բազմաչեայք և աթոռք հրանիւթք և վեցթևեան Սերովբէքն նայել ոչ իշխէին, կրեցեր անսերմնաբար զանապականումն 'ի յարգանդի քում որպէս աղախին զՏէր․ և ծնար որպէս զմարդ զԱստուածն բոլորից զմարմնացեալն առ 'ի քէն զանճառ զԲանն 'ի փրկութիւն աշխարհի և կեանք անձանց մերոց ։

Աղաչեմք զքեզ զանուրբ կոյս Մարիամ Աստուածածին՝ բարձրելոյն զօրութեամբն հովանաւորեալ և սուրբ Հոգւոյն եկաւորութեամբն լուսաւորեալ, որ զամենայն գոյութեանց ստեղծիչն յղացեալ ծնար անճառապէս․ մարմնացելոյն առ 'ի քէն բարեխօսեա կեցուցանել զանձինս մեր ․

## ՏԵԱՌՆ ԸՆԴ ԱՌԱՋԻ ·

Ծերունին այսօր Սիմէոն՝ Հոգւովն գայր 'ի տաճարն՝ երևելով Քերովբէիցն վեհագոյն, զի որոց թևօքն սաւառնեալ ոչ իշխէին հայիլ 'ի յահեղ փառացն, սա 'ի գիրկս իւր բարձեալ համբուրէր համարձակապէս և գգուէր որպէս զմանուկ · և աղերսելով հայցէր արձակիլ 'ի խաղաղութիւն ։

Անսկզբնական Բանդ Աստուած 'ի վերջին աւուրս յանձն առեր լինել մարդ 'ի կուսէն · և արարիչդ յաւիտենից՝ փակեցար ընդ ժամանակաւ · սուրբ Տէր սրբութեանց և անկարօտ մաքրութեանց · եկիր 'ի տաճարն քառասնօրեայ, զօրինացն կատարեցեր զարդարութիւն ։ Ո՛ որ բարձեալ Սիմէոնի զանպարագրելիդ 'ի գիրկս իւր հայցէր, որ արձակիչդ ես կապելոց՝ արձակեա՛ զիս 'ի խաղաղութիւն ։ Վասնորոյ՝ ընդ ծերունւոյն Սիմէոնի վերագոչեմք առ քեզ Տէր, սուրբ՝ սուրբ՝ սուրբ՝ Տէր զօրութեանց, լի են երկինք և երկիր փառօք քովք 'ի փրկութիւն մեզ. ՔՐԻՍՏՈՍ Աստուած փառք քեզ ։

---

## ՂԱԶԱՐՈՒ ՅԱՐՈՒԹԵԱՆ

ԶՂազարու ննջումն՝ որպէս կանխատեսա յառաջ ասէիր · որ և 'ի Բեթանիա յառա-

ջէիր՝ զի յարուցես զսիրելին քո ։ Արդ՝ և մեք գոչելով ասեմք, օրհնեալ որ գաս 'ի չարչարանս կամաւ Հօր՝ 'ի փրկութիւն անձանց մերոց ։

Յորժամ եկեալ կենարարդ 'ի գերեզմանըն Ղազարու. յորժամ եկեալ կենարարդ 'ի գերեզմանն Ղազարու. աւետաւոր ձայնիւդ աղաղակէիր ասելով՝ Ղազարէ՝ արի եկ արտաքս ։ Իսկ մեռեալն 'ի գերեզմանէն յարեաւ. և նոյն ինքնդ զանմահութեան պարգևսդ ետուր սիրելւոյդ, և Աստուածային ձայնիւդ 'ի գերեզմանէն կոչեցեր ։ Վասն որոյ՝ և մանկունք Եբրայեցւոց ոստովք օրհնէին զանմահ թագաւորութիւն քո ։ Ընդ նոսին և մեք ասեմք, Ովսաննա՝ օրհնեալ է գալուստ քո. օրհնութիւն 'ի բարձունս, օրհնեալ որ գալոցդ ես անուամբ Տեառն ։

## ԾԱՂԿԱԶԱՐԴԻ

Ցնծա՛ Երուսաղէմ և զարդարեա՛ զառագաստ քո Սիոն. քանզի՝ ահա թագաւոր քո ՔՐԻՍՏՈՍ նստեալ 'ի յաւանակի նորոյ՝ հեզութիւն ցուցանելով գայ մտանէ յառագաստ քո ։ Եւ մեք աղաղակեմք, Ովսաննա օրհնեալ եկեալ 'ի յանուն Տեառն. որ ունի զմեծ ողորմութիւն ։

## ԶԱՏԿԻ

Քրիստոս յարեաւ ՚ի մեռելոց ․ մահուամբ զմահ կոխեաց ․ և յարութեամբն իւրով մեզ զկեանս պարգևեաց ․ Նմա փառք յաւիտեանս ․ Ամէն ։

## ՅԻՆԱՆՑ

Ահաւոր և սքանչելի է խորհուրդ փրկութեան մերոյ ․ որ անսկիզբն ՚ի Հօրէ անճառաբար մարմնացաւ ՚ի կուսէն ․ խաչի համբերելով և կամաւոր մահուամբն իւրով զկենդանութեան մեզ պարգևեաց շնորհս ։

Քանզի յարեաւ ՚ի մեռելոց Քրիստոս Աստուած յաւիտենից՝ արարիչ և յարութիւն ազգի մարդկան ․ զոր օրհնեն անդադար զինուորութիւնք հրեշտակաց և ամենայն զուարթիւնք երկնից ։ Ընդ որս գոչելով ասեմք փառք սոսկալի յարութեան քո Տէր ։

## ՀԱՄԲԱՐՁՄԱՆ

Հիացան վերնական բազմութիւնքն տեսանելով զքեզ ՚ի հրեղէն կառս բազմեալ՝ սարսեալ ասէին ․ ո՞վ է դա որ դիմեալ գայ յԷդովմայ ․ և եկեալ մտանէ փառօք ՚ի փառս ․ Տէր փառք քեզ ։

Որ յանպատում աթոռ՝ նստիս և յանմարմնոցն վերօրհնիս, անհասանելի Բանդ Աստուած 'ի յերկրի երևեցար ճշմարիտ մարդ. զտնօրէնութեանն կատարեալ զխորհուրդ, խաչի և մահու համբերեցեր. և զհրաշալի ըդյարութիւնդ քո ցուցեր հզօր զօրութեամբ. այսօր համբարձար փառօք 'ի յերկինս և զկուսածին մարմինդ քո հրաշափառապէս լուսազարդեցեր՝ զոր տեսեալ Եսայիաս՝ նախաձայնեալ ասէր, ո՞վ է սա որ դիմեալ գայ յերկրէ։ Հիացեալ պետութեանց երկնից գոչէին առ միմեանս, համբարձէք իշխանք զդրունս ձեր 'ի վեր, և մտցէ թագաւոր փառաց։ Արդ՝ որ յամենայնի կարօղդ ես և հզօր, շնորհեա՛ և մեզ հանդիպիլ քեզ ամպովք 'ի միւսանգամ քո գալստեանդ. որ միայնդ ես մարդասէր։

## ՀՈԳԻՈՑ ԳԱԼՍՏԵԱՆ

Աստուա՛ծ զքեզ խոստովանիմք զսուրբ Հոգիդ և երկրպագանեմք. որ ես պատճառ կենդանութեան եղելոցս և խաղաղարար աշխարհի. որ զգիտութիւն աշակերտացն բազում գիտութեամբ լցեր. և 'ի հրեղէն լեզուս բաժանեալ անճառելեօք ցուցար նոցա. աղաղակեմք Տէր խնայեա՛ և կեցո՛ զմեզ։

ԲՀ. Այսօր 'ի հրեղէն լեզուս բաժանեալ

Հանդերձ յառաքելովն՝ լուսաւորելով զնոսա ։ և այժմ աղաչեմք զքեզ սուրբ Հոգիդ Աստուած, որ ես պատճառ կենդանութեան եղելոց և խաղաղարար աշխարհի, խնայեա և կեցո զմեզ ։

Գր․ Ասնորդ և մեք զՀոգիդ սուրբ Աստուած ընդ Հօր և ընդ Որդւոյ միաձնական խոստովանիմք ։ և հայցեմք մեզ 'ի վերնատուողէդ զհոգևորական խաղաղութիւնդ ։ Տէր փառք քեզ ։

---

ՊԱՅԾԱՌԱԿԵՐՊՈՒԹԵԱՆ

Երևի Տէրդ այսօր աշակերտացն 'ի Թաբօրական լերինն ։ և աշակերտացդ զարհուրեալք աղաղակէին ասելով ։ արասցուք երիս տաղաւարս՝ մի Տեառնդ, և մի Մովսիսի և մի Եղիայի ։ Արդ՝ և մեք բանաւոր հօտքս երգեմք ընդ քո ճշմարիտ վկայիցդ ։ առաքեա 'ի մեզ զլոյս քո շնորհացդ 'ի քոյ միւսանգամ գալստեանդ և կեցո ։

---

ԽԱՉԻ

Առաջի պատուական ամենայաղթ խաչի քոյ անկանիմք երկրպագելով և խնդրեմք զթողութիւն յանցանաց մերոց ։ քանզի սովաւ բարձեր զդատապարտութիւն ազգի մարդ-

կան ։ Եւ այժմ վասն սրբոյ Աստուածային քոյ նշանի՝ շնորհեա՛ զերկնային զխաղաղութիւնդ ամենայն աշխարհի ։

## ԷՋՄԻԱԾՆԻ

Տէր մեր և փրկիչ ՅԻՍՈՒՍ ՔՐԻՍՏՈՍ, որ աղօթիւք և միջնորդութեամբ բազմաչարչար վկային քոյ և հօրն մերոյ սրբոյն Գրիգորի լուսաւորչին, մեծաւ փառօք և բազմութեամբ զօրացդ լուսեղինաց իջեր յերկնից 'ի դաշտն Արարատեան, յայցելութիւն փոքու հօտիդ քոյ ազգիս Հայոց՝ և 'ի ցուցումն յաւ-կականի սիրոյդ և մեծի ողորմութեանդ · և ոսկեուռամբ բաղխեցեր զխորս անդնդոց, և հալածեցեր զդունդս սանդարամետականաց · ուր և լուսաձև յօրինմամբ հրաշակերտեցեր զմայր աթոռն մեր զսուրբ Էջմիածին · և արարեր զնա շտեմարան անսպառելի շնորհացդ Աստուածայնոց՝ 'ի լինել ծնօղ՝ դաստիարակ և կատարելագործիչ ամենայն Եկեղեցեաց Հայաստանեայց ։ Արդ՝ պահեա՛ զնա անարատ, հաստատուն և անաղօտ, 'ի պայծառազարդութիւն Եկեղեցեաց մերոց և մանկանց սոցին՝ մինչև 'ի կատարած աշխարհի · յորոց միշտ փառաւորի ամենասուրբ անուն քո յաւիտեանս յաւիտենից · Ամէն ։

## ԵԿԵՂԵՑԻՈՑ

Օ՜ խաղաղութիւն շնորհեա՛ Եկեղեցւոյ քում՝ սրբոյ, զխաղաղութիւն և զանշարժութիւն ՚ի թշնամեաց պատերազմէ. և հաստատեա՛ ՚ի մի հաւատ զկաթուղիկէ Եկեղեցի. ըզքեզ խոստովանիմք Տէր և Աստուած կեցո՛ զմեզ։

## ՅՈՎՀԱՆՆՈՒ ՄԿՐՏՉԻՆ

Օ՜ յառաջընթացութիւն քո և զկարապետութիւն Աստուծոյ Բանին խափանել կարծելով՝ որ ՚ի ձեռն կնոջն զնախաստեղծն ՚ի դրախտէն արտաքս ընկէց։ Նա՛ և այժմ Հերովդիադա անօրէնութեամբ բորբոքեալ. և բազմելոցն Հերովդիայ՝ զկաքաւս ոտից աղջկանն հաճոյացոյց՝ զի զքոյդ հատցէ զգլուխ որ զամենեցուն ձեռնադրեցեր զգլուխն ՔՐԻՍ-ՏՈՍ։ Այլ դու որ յանապատէ բարբառոյ ձայն, գոչեա՛ որում ձեռնադրեցեր պարգևել զխաղաղութիւն և զմեծ ողորմութիւն։

## ՍՏԵՓԱՆՆՈՍԻ

Ցնծա՛ այսօր ցնծա՛ և զուարճացի՛ր կաթուղիկէ Եկեղեցի սուրբ՝ յիշատակաւ սրբոյն Ստեփաննոսի նախավկային ՔՐԻՍՏՈՍԻ վկայեցելոյ Հօր։ Որ աղօթիւք բանայր զերկինս զոր փակեաց Ադամ. և հրեշտակակերպ

տեսլեամբ տեսանէր զկերպարանն Հօր 'ի կերպի Ադամայ նստեալ 'ի յաթոռ փառաց : Որ զքաղմութիւն քարանցն որպէս զծաղիկս Հաւաքելով՝ բոլորէր պսակս փոխանակ փշոցն և եղեգանն : Եւ զմարտիրոսական արիւնն իւր խառնէր ընդ փրկական արեանն ՔՐԻՍՏՈՍԻ Հոսեցելոյն 'ի կողէն : Ամանորոյ՝ գերազանցեալ 'ի փառս առաւել՝ քան զամենայն սուրբս՝ Հայցէ և վասն մեր 'ի վերնատուողէն զպարգևս կենաց անվախճանից և զմեծ զողորմութիւն :

Յորովայնէ ընտրեալ սուրբն Ստեփաննոս , յորովայնէ ընտրեալ սուրբն Ստեփաննոս · վկայ ճշմարիտ առաքելական քարոզութեանցն · որ 'ի վերայ անօրէն քարաձգողացն աղօթէր առ ՔՐԻՍՏՈՍ Աստուած ասելով՝ մի՛ Համարիր սոցա զայս մեղս : Արդ՝ 'ի ձեռն սորին բարեխօսութեանն շնորհեա՛ մեզ Տէր զմեծ քո զողորմութիւնդ ·

ԼՈՒՍԱՒՈՐՉԻՆ

Ցնծայ այսօր ցնծայ և զուարճանայ Եկեղեցի սուրբ՝ տօնելով մեծաւ Հանդիսիւ զՀանրատենչ յիշատակս քո՝ ով գերազանցեալդ 'ի Հարս սուրբ Հայրապետս և լուսաւորիչ տանս Թորգոմայ սուրբդ Գրիգորիոս : Որ քոյով անսահմանելի չարչարանօքդ զաշխարհս

ամենայն հիացուցեր ։ Անօրինակ ծննդութեամբդ զհրեղէնսն զարմացուցեր ․ որք և զունդ զունդ յերկնից 'ի յերկիր խոնարհեալ՝ 'ի տես հանդիսի նահատակութեանդ փութային ։ Իսկ անհամեմատ համբերութեամբդ զդոռոզացեալ արքայն բռնական զօրօքն ընդ ոտիւքըդ նուաճեցեր ։ Իսկ Աստուածահաճոյ աղօթիւքդ զկուրացեալ միտս նոցին լուսաւորեցեր և Աւետարանին ՔՐԻՍՏՈՍԻ պաշտօնեայս արարեր ։ Ընդ նմին և զազգս Հայոց նորոգ հոգևոր ծննդեամբ 'ի լոյս Աստուածգիտութեան ածեր ։ Վասնորոյ և յատկապէս լուսափայլեցար 'ի մէջ ամենայն սրբոց , և զառաքելականն ընկալար զաթոռ և զպատիւ , և ընդ նոսին պսակեցար 'ի ՔՐԻՍՏՈՍԷ Աստուծոյ ։ Արդ ո՛վ հայր մեր և լուսաւորիչ հոգւոց մերոց ․ աղաչեմք զքեզ միաբան ուխտիւք Եկեղեցւոյ քոյ , զի յաւուրս հրաշալւոյ տօնի քոյ ․ յատկապէս բարեխօսեսցես առ ՔՐԻՍՏՈՍ Աստուածն մեր , զի զԵկեղեցիս և զմնացորդս ժողովրդեան քոյ պահեսցէ 'ի խաղաղութեան՝ փրկելով 'ի հոգևոր և մարմնաւոր թշնամեաց ․ զի և մեք միշտ զյիշատակս քո կատարելով փառաւորեսցուք զՀայր և զՈրդի և զսուրբ Հոգին յաւիտեանս ․ Ամէն ։

Գրիգո՛ր սուրբ քահանայապետ՝ որ զհաւատս ուսուցեր և զբանակս դիւացն հալա-

ծեցեր . մարդկան ուսուցեր քարոզել զԵր-
րորդութիւնն, պատկերացար յարքայութեանն .
արդ բարեխօս լեր առ Տէր վասն մեր :

## ԱՌԱՔԵԼՈՑ

Առաքեալք և վկայք ՔՐԻՍՏՈՍԻ Աստու-
ծոյ՝ ամենակալ Հոգւոյն զօրութեամբն զա-
մենեսեան ընդհանուր յարդէգրութիւն կե-
նաց կոչելով, միաձնական սուրբ Երրորդու-
թեանն յորդորեցին երգել զփառս 'ի յաւի-
տեանս . Ամէն :

## ՈՐԴԻՈՑ ՈՐՈՏՄԱՆ

Այսօր ահաւոր ձայնք որոտման հնչեցին
յերկնից 'ի յերկիր՝ կոչելով յորդէգրու-
թիւն զմեզ վերնոյն Սիովնի . հաստատու-
թիւնքն հաւատոյ և պարծանքն Եկեղեցւոյ .
որք ցօղով արեան իւրեանց մաքրեցին զտիե-
զերս յանօրէն կռապաշտութեանց . և միշտ
հայցեն 'ի ՔՐԻՍՏՈՍԷ զքաւութիւն տօնողացս
անուանց իւրեանց : Արդ՝ մաղթանօք սոցա
Տէր՝ խնայեա 'ի փրկեալ քո ժողովուրդս որ
միայնդ ես մարդասէր :

## ՄԱՐԳԱՐԷԻՑ

Տէր որ հիմնեցուցեր զԵկեղեցի քո 'ի
վերայ վիմի հաւատոյ, և կարգեցեր 'ի սմա

առաքեալըն և մարգարէս, Հովիւս և վարդապետս՝ առ ՚ի հաստատութիւն սրբոց. և ճգնութեամբ վկայից զթշնամին սորա վանեցեր. ՚ի խաղաղութեան զսա պահեա՛ Աստուած որպէս մարդասէր։

ՀԱՅՐԱՊԵՏԱՑ

Ո՛վ Հայրապետականն զարդարեցեր աթոռ ՚ի յերկրի, առաքելական առեր զպատիւ յերկնուստ՝ ծառայ ՔՐԻՍՏՈՍԻ. ո՛վ երանելիդ ՚ի Հարս սուրբ Հայրապետ. Քանզի՝ քո՛ վարդապետութեանդ սերմունք՝ բարեպաշտութեան բուսուցին հասկս. ուրախութեան պըտուղ հատուցանելով և հաւատացելոցս փըրկութիւն շնորհելով. վասն որոյ բարեխօսեա՛ առ Տէր վասն անձանց մերոց։

ԹԱԳԱՒՈՐԱՑ

Որպէս յետ Աստուածասէր Թագաւորին Իսրայէլի Եզեկիա՝ յարոյց Աստուած զՅովսէ՛ որ զամենայն կռապաշտութիւնսն ՚ի բաց ընկէց, որպէս և զբարեպաշտն Կոստանդիանոս, որ զարիոսի զմոլութիւն խափանեաց. և զՄեծն Թէոդոս յարոյց Աստուածայինն նախանձուն վառեալ՝ ընդդէմ այնոցիկ որք զսուրբ Հոգին հայհոյէին։ Արդ՝ ո՛վ Աստուածարեալ և ուղղափառ սուրբ Թագաւոր՝ աղաչեա՛ ըզ-

Տէր 'ի փրկել զմեզ 'ի մարդապաշտ հայհոյութենէ . զի և մեք տօնեսցուք զյիշատակս քո՝ խնդրելով 'ի ՔՐԻՍՏՈՍԷ զհաշտութիւն և մեծ զողորմութիւն :

Որպէս յետ Աստուածասէր թագաւորին Իսրայէլի Եզեկիա՝ յարոյց զՅովսէ՝ որ զամենայն կռապաշտութիւնսն հնոյ ժողովրդեանն 'ի բաց ընկէց , որպէս և 'ի նորումն յարոյց զանդրանիկն թագաւորաց զբարեպաշտն Աբգարիոս , որ 'ի հեռաստանէ ծանեաւ զերկնաւոր թագաւորն զՔՐԻՍՏՈՍ . և եղև քարոզ Աստուածութեան նորա ընդ ծագս տիեզերաց : Յետ նորին և զմեծն Տրդատիոս . որ իսպառ հալածեաց զդիւամոլ կռապաշտութիւնսն յաշխարհէս Հայաստանեայց . և զարդարեաց ճշմարիտ և ուղղափառ հաւատով : Արդ՝ ո՛վ Աստուածարեալ և բարեպաշտ սուրբ թագաւոր , աղաչեա՛ զՏէր , 'ի փրկել զմեզ յանօրէն բռնաւորաց . զի և մեք տօնելով զյիշատակս քո՝ խնդրեսցուք 'ի ՔՐԻՍՏՈՍԷ զխաղաղութիւն և զմեծ ողորմութիւն .

ՄԱՐՏԻՐՈՍԱՑ

Ի տաճարի սրբոց և յիշատակի սրբոց մարտիրոսաց՝ զձեռս համբառնալով աղաչեմք . բարեխօսութեամբ սոցա և աղօթիւք՝

զկենդանութիւնս մեր խաղաղացո՛ Աստուած որպէս մարդասէր ։

## ԾԸՆԱՒՈՐԱՑ

Ծընաւո՛րք Քրիստոսի, որք տանջանաց անօրինացն համբերեցիք և զմոլութիւն կըռոցն խափանեցիք. դասաւորեալք ընդ հրեշտակս 'յերկինս. որք ունիք զհամարձակութիւն 'ի Քրիստոսէ՝ բարեխօսեցէք կեցուցանել զանձինս մեր՝ զձեզ աղաչեմք ։

## ՀՌԻՓՍԻՄԵԱՆՑ

Որք ծագեցան մեզ յարևմտից որպէս զարեգակն, և լուսաւորեցին համանգամայն աշխարհս Հայաստանեայց. փարատեցին ըզխաւարն անգիտութեան կռապաշտութեան. և լուսաւորեցին զամենայն հոգի հաւատով Աստուածգիտութեան ։ Սոցա բարեխօսութեամբն Քրիստո՛ս Աստուած՝ պարգևեա՛ աշխարհի քում զխաղաղութիւն. և անձանց մերոց զմեղաց թողութիւն. որպէս մարդասէր Տէր ։

## ԳԱՅԻԱՆԵԱՆՑ

Օ յաղթանակ ձեր զհանդէս զուարճացեալ տօնէ Եկեղեցի սուրբ. քանզի՝ սրբու-

թեամբ ստացայք զկուսութիւն . և ՚ի մարմնի զանմարմնոցն ցուցիք զհանդէս ։

ԿՈՒՍԱՆԱՑ

Հարսնացեալք ՔՐԻՍՏՈՍԻ երկնաւոր փեսային դստերք վերին Սիոնի . խնդրեցէք ՚ի ՔՐԻՍՏՈՍԷ զհաշտութիւն և զմեծ զողորմութիւն ։

ՎԱՐԴԱՆԱՆՑ

Յաշխարհական ՚ի ճակատամարտին , յաշխարհական ՚ի ճակատամարտին և ՚ի մեծ պատերազմին ընդդիմամարտեալ լինէր անօրինացն պատերազմ ։ Իսկ երանելի նահատակքըն՝ զմոլութիւն անօրինացն խափանեցին և յաղթօղ գտան . քանզի որոց ստացեալ էր՝ զԱստուածային զօրութիւն , ոչ ժուժկալէր նոցա մարմնաւորական պատերազմ ։ Որդ ՔՐԻՍՏՈՍ Աստուած սոցա բարեխօսութեամբ խնայեա ՚ի մեզ և ողորմեա ։

ՋԻՆՈՒՈՐԱՑ

Զօրական և վկայ ճշմարիտ՝ քաջ նահատակդ ՔՐԻՍՏՈՍԻ սուրբդ ( Թէոդորոս ) . որ փոխանակեցեր զմարմինդ ընդ հոգւոյդ քում փրկանս . և ոչ ածեր զմտաւ զապառնալիսն

անօրէն բռնաւորացն ։ Այլ վերին ազդեցութեամբն դիտելով զայրեցումն հոգւոց նոցա վասն այնորիկ լուցեր զտաճար կռոցն և անարգեցեր զպաշտամունս նոցա ։ Արդ՝ 'ի յաղթող պատերազմի տօնողացս զօր նահատակութեան քոյ , բարեխօսեա առ Տէր վասն անձանց մերոց ։

## ՔԱՌԱՍՈՒՆ ՄԱՆԿԱՆՑ

Գնալով փառաց քոց 'ի փառս կաթուղիկէ Եկեղեցի քո ՔՐԻՍՏՈՍ մեծապէս պայծառանայ ․ քանզի՝ թագաւորեալքն 'ի քէն դիմեալք 'ի յերկինս , 'ի Սեբաստիա նահատակին՝ 'ի յամօթ և 'ի քարընկէց յերեսս բանսարկուին ։ Որք և քաջալերէին զմիմեանս , զի մի լուծեալ ոք բաղանեօք անցաւորիս պակասեսցի ․ այլ դողալով առաքինաբար՝ զինքն ըղերձեալ 'ի յանիւս Աստուածային գանձուցն հոլովեսցի աղապակելով առ ՔՐԻՍՏՈՍ ։ Արդ՝ սոցա բարեխօսութեամբն՝ ընկալ և զորդէգրութիւն ժողովոյս մերոյ 'ի յոյս սիրողաց քոց՝ Տէր փառք քեզ ։

## ԵՐԻՑ ՄԱՆԿԱՆՑ

Որ 'ի վերայ Քերովբէիցն հանգչիս և 'ի զօրացն հրեղինաց օրհնաբանիս , իջեր 'ի

Բաբելոնի և փրկեցեր զերիս մանկունսն 'ի
հրոյն բռնութենէ ։ Արդ աղաղակելով գո-
չէին երգ նոր ․ ամենայն գործք օրհնեցէք և
բարձր արարէք ։ Թագաւոր փառաց և արա-
րիչ բոլորից , որ մարդասիրապէս գթացար
'ի սուրբ մանկունսն և փրկեցեր 'ի բորբո-
քեալ բոցոյն ․ որք անարգեցին զբռնութիւն
թագաւորին և շիջուցին զզօրութիւն հրոյն ․
ընդ նոսին և մեք քեզ վերադասեմք , փրկեա
զմեզ 'ի հրոյն յաւիտենից ։ Ո՜վ ի դու միայն
ես բազմագութ Տէր՝ քեզ փառք յաւիտեա-
նըս ․ Ամէն ։

## ՀՐԵՇՏԱԿԱՊԵՏԱՑ

Զոր օրհնեն անլռելի ձայնիւ խմբա-
կի Զօրութիւնք՝ երկնաւոր Նահապետու-
թիւնք ․ Հրեշտակք և Հրեշտակապետք ․ Ա-
թոռք և Տէրութիւնք ․ Իշխանութիւնք և
Պետութիւնք ․ Սերովբէք և Քերովբէք ․ և
մեք օրհնեսցուք զնոյն ամենասուրբ Երրորդու-
թիւնն և զմի Աստուածութիւնն ։

Այսօր երկրաւորս Եկեղեցւոյ քահանայա-
պետութիւն ցնծայ հրաշա փառապէս՝ զերկ-
նաւոր քահանայապետութեանցդ կատարե-
լով զտօնախմբութեան տօնս ։ Եւ ընդ ան-
մարմնականաց և հողեղինաց դասուցդ՝ և մեք
մարմնականքս և հողեղէնքս համաձայնեալ

փառաւորեմք զփառաւորեցեալն 'ի ձէնջ ։ Արդ՝ ո՛վ սուրբ Գաբրիէլ և Միքայէլ մեծ հրեշտակապետք բարձրելոյն • և ամենայն զինուորութիւնք երկնից , որք կայք միշտ առաջի աթոռոյ Աստուածութեանն • անդադար բարեխօս լերուք վասն մեր առ Տէր • վերաբերել զմեզ զամենեսեան ընդ ձեզ յերկնից արքայութիւնն • և միաձայն բարբառով երգել զփառս ։

## ԱՄԵՆԱՅՆ ՍՐԲՈՑ

Բարեխօսութեամբ սրբուհւոյ Աստուածածնին , սրբոյն Յովհաննու կարապետին , սրբոյն Ստեփաննոսի նախավկային , և սրբոյն Գրիգորի մերոյ լուսաւորչին • և սրբոց Առաքելոց և Մարգարէից , Հայրապետաց և Վարդապետաց , Մարտիրոսաց և Թագաւորաց , Ճգնաւորաց և Կուսանաց , Նահատակաց և Միանձանց , և Ամենայն սրբոց քոց Հնոց և Նորոց , Յայտնից և Անյայտից , որոց այսօր է յիշատակ • զխաղաղութիւն և զերկնային ողորմութիւն քո պարգևեա՛ մեզ մարդասէր Տէր ։

## ՔԱՐՈԶ

Եւ ևս խաղաղութեան զՏէր աղաչեսցո՛ւք • ընկա՛լ կեցո՛ և ողորմեա՛ ։

Օրհնութիւն եւ փառք Հօր եւ Որդւոյ եւ Հոգւոյն սրբոյ. այժմ եւ միշտ եւ յաւիտեանս"։
Խաղաղութիւն ամենեցուն ։

# ՃԱՇՈՒ ՓՈԽՔ

## ԸՍՏ ՊԱՏՇԱՃԻ ԱՒՈՒՐ

## ԱՒԵՏԵԱՑ ԾՆՆԴԵԱՆ
## ՏԵԱՌՆ ԸՆԴ ԱՌԱՋԻ
## ՊԱՏԾԱՌԱԿԵՐՊՈՒԹԵԱՆ ՎԵՐԱՓՈԽՄԱՆ
## ԵՒ
## ԱՄԵՆԱՅՆ ՏՕՆԻՑ ԱՍՏՈՒԱԾԱԾՆԻ

Մեծացուցէ անձն իմ զՏէր, եւ ցնծասցէ հոգի իմ Աստուծով փրկչաւ իմով ։

Այց արար ՚ի վերայ խոնարհութեան աղախնոյ իւրոյ. այսուհետեւ երանիցեն ինձ ամենայն ազգք ։

Արար ընդ իս մեծամեծս հզօրն, եւ սուրբ է անուն Նորա ։

Ողորմութիւն արար ազգաց յազգս երկիւղածաց իւրոց, արար զօրութիւն բազկաւ իւրով ։

Ցրուեաց զամբարտաւանս ՚ի մտաց սրտից, եւ քակեաց զհզօրս յաթոռոց ։

Զխոնարհս բարձրացոյց՝ զկարօտս ելից բարութեամբ, և զմեծատունս արձակեաց ունայնս ։

Պաշտպանեաց Իսրայէլի ծառայի իւրոյ, յիշել զողորմութիւն իւր ։

Որպէս խօսեցաւ առ հարսն մեր՝ ընդ Աբրահամու և զաւակի նորա յաւիտեան ։

Փառք Հօր և Որդւոյ"։ Այժմ և միշտ և"։



## ԱՂՈՒՀԱՑԻ, ԾԱՂԿԱԶԱՐԴԻ, ՀՈԳԻՈՑ ԳԱԼՍՏԵԱՆ ԽԱՉԻ, ԵԿԵՂԵՑԻՈՑ ԵՒ ԱՄԵՆԱՑՆ ԿԻՒՐԱԿԷԻՑ

Տէր թագաւորեաց վայելչութիւն զգեցաւ, զգեցաւ Տէր զօրութիւն ընդ մէջ իւր էած ։

Հաստատեաց զաշխարհ զի մի սասանեսցի. պատրաստ է աթոռ քո ՚ի սկզբանէ յաւիտենից դու ես ։

Ամբարձան գետք Տէր, և ամբարձին գետք զձայնս իւրեանց. և յարիցեն գետք ՚ի գնացս իւրեանց ։

՚Ի ձայնէ ջուրց բազմաց՝ սքանչելիք եղեն զբօսանք ծովու ։

Սքանչելի ես դու Տէր ՚ի բարձունս, վկայութեանց քոց մեք յոյժ հաւատացաք ։

Տան քում վայելէ սրբութիւն Տէր՝ ընդ երկայն աւուրս :

Փառք Հօր և Որդւոյ" : Այժմ և միշտ" :

---

ԶԱՏԿԷՆ
ՄԻՆՉ
Ց'ՀՈԳԵԳԱԼՈՒՍՏՆ

Գովեա Երուսաղէմ զՏէր :

Եւ օրհնեա զԱստուած քո Սիոն :

Զի զօրացոյց զնիգս դրանց քոց , և օրհնեաց զորդիս քո 'ի քեզ :

Որ եդ զսահմանս քո 'ի խաղաղութիւն . պարարտութեամբ ցորենոյ լցոյց զքեզ :

Առաքէ զբան իւր յերկիր . վաղվաղ ընթասցին պատգամք նորա :

Դնէ զձիւն որպէս զասր , և զմէգ որպէս փոշի ցանեաց :

Արկանէ զսառն որպէս պատառս . առաջի ցրտոյ նորա ո կարէ կեալ :

Առաքէ զբան իւր՝ և հալէ զնոսա . շնչեսցեն հողմք՝ և գնասցեն ջուրք :

Պատմէ զբան իւր Յակոբայ , զարդարութիւն և զիրաւունս Իսրայէլի :

Ոչ այսպէս արար ամենայն ազգաց Տէր . և զդատաստանս իւր ոչ յայտնեաց նոցա :

Փառք Հօր և Որդւոյ" : Այժմ և միշտ" :

## ԱՄԵՆԱՅՆ ՍՐԲՈՑ ՏՕՆԻՑ

Սիրեցի՛ զի լուիցէ Տէր զձայն աղօթից իմոց. զի խոնարհեցոյց զունկն իւր առ իս, և ես յաւուրս իմ կարդացի առ՛ նա։

Շրջեցան զինև երկունք մահու. և վիշտք դժոխոց գտին զիս։

Զնեղութիւն և զանձկութիւն գտի. և զանուն Տեառն կարդացի։

Ո՛ Տէր՝ փրկեա՛ զանձն իմ. ողորմած Աստուած մեր՝ ողորմի և պահէ զտղայս Տէր։

Ես խոնարհ եղէ՝ և Տէր կեցոյց զիս. դա՛րձ անձն իմ' ի հանգիստ քո՛ զի Տէր օգնեաց քեզ։

Փրկեաց զանձն իմ 'ի մահուանէ, զաչս իմ յարտասուաց. և զոտս իմ 'ի գայթակղութենէ. հաճոյ եղէց առաջի Տեառն յերկիրն կենդանեաց։

Փառք Հօր և Որդւոյ"։ Այժմ և միշտ"։

---

## ՇԱԲԱԹԱՊԱՀՈՑ
### ՅՈՐՍ ՏՕ՛Ն ՈՉ ՏՕՆԻ
### ԵՒ ԱՄԵՆԱՅՆ
### ՉՈՐԵՔՇԱԲԱԹԻ ԵՒ ՈՒՐԲԱԹՈՒ
### ՊԱՀՈՑ

Օրհնեցէք զՏէր ամենայն ազգք. գովեցէք զնա ամենայն ժողովուրդք։

Զօրացաւ ողորմութիւն նորա 'ի վերայ

մեր • և ճշմարտութիւն Տեառն մնասցէ յաւիտեան ։

Փառք Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ ։
Այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից •
Ամէն ։



Եւ ապա ասի ՃԱՇՈՒ ՇԱՐԱԿԱՆ ըստ պատշաճի աւուր, ըստ ցուցակի Տօնացուցին ։

# ՃԱՇՈՒ ՇԱՐԱԿԱՆՔ

## ԸՍՏ ՊԱՏՇԱՃԻ ԱՒՈՒՐ



## ԿԻՒՐԱԿԷԻՑ ՅԱՐՈՒԹԵԱՆ



### ՃԱՇՈՒ ՇԱՐԱԿԱՆ • ԱՌԱՋԻՆ ՁԱՅՆ

Ճ • ԱՁ • Օ թագաւորըն փառաց Քրիստոս • որ վասն մեր մարմնացաւ ի սրբոյ կուսէն և խաչի համբերելով • միաբանութեամբ երգով բարեբանեսցուք ։ Որ զթաղումն երեքօրեայ յանձն էառ յարուցեալ ի մեռելոց իշխանութեամբ • մեա" ։ Կարողապէս ըզդրունս դժոխոց խորտակեաց • Եկեղեցւոյ իւրում զգեցոյց զմեծավայելչութիւն • մեա" ։

# ԿԱՆՈՆ
## ՀՐԵՇՏԱԿԱՊԵՏԱՑ



### ՃԱՇՈՒ ՇԱՐԱԿԱՆ · ՎԵՐՋ

Ճ· Գկ· Այսօր ուրախացեալ սուրբ Եկեղեցի Քրիստոսի. տօնէ խնդութեամբ զտօն վերին Երուսաղէմի. սըրբասաց ձայնիւ փառաւորելով ըզՔրիստոս։ Այսօր համաձայնեալ որդիք Սիովնի երկնայնոյ. տօնիւ զուարճանան որ դասք անդրանկաց վերին Սիովնի. ալր։ Այսօր դասք անմարմնոցն երգս առնեն և պարեն ընդ մարդկան. զերգըս հոգեւորս յանմահ փեսային յառագաստ. ալր։

# ԿԱՆՈՆ
## ՄԱՐԳԱՐԷԻՑ



### ՃԱՇՈՒ ՇԱՐԱԿԱՆ · ԱՌԱՋԻՆ ՁԱՅՆ

Ճ· Աձ· Ճառագայթ անճառ լուսոյ ան քըննելի Տէրութիւն. յառաջագոյն հրաշալ ցուցեր զանսողութիւն մարգարէիցն։

իջանելով ի սուրբս Աստուածային անօ
րէնութեամբ։ Որք ըղձանձար հաւատոյ
հեծեցուցին շնորհօք սուրբ Հոգւոյն·
յորս եմուտ Բանն Աստուած եօթնարփեան
ճառագայթիւք · իջա՛ ։ Երևեցաւ յաշ
խարհի ճշմարիտ մարդեղութեամբ · զոր
քարոզեցին մեզ հրաւիրօղքն համագոյ
Հօր և Հոգւոյն · լուսաւորել ըղձե
զերս Աստուածային անօրէնութեամբ ։

# ԿԱՆՈՆ

## ՉՈՐԵՔՇԱԲԱԹԻ

## ՊԱՀՈՑ ԵՒ ՈՒՏԵԱՑ



### ՃԱՇՈՒ ՇԱՐԱԿԱՆ · ՎԱՌ

Ճ·
Գկ· Փառաբանութիւն առաքեմք
քեզ Հայր երկնաւոր · յիշեա զննջե
ցեալսն մեր · և հանգո՛ ընդ սուրբս քո ։
Որ Էակիցդ ես Հօր և Հոգւոյ Որդիդ
միածին · յիշեա զննջեցեալսն մեր ·
և հանգո՛ ընդ սուրբս քո ։ Որ փառա
կիցդ ես Հօր և Որդւոյ Հոգիդ ճշմա
րիտ · յիշեա զննջեցեալսն մեր · և ։

# ԿԱՆՈՆ
## ՀԻՆԳՇԱԲԱԹԻ
## ԱՌԱՔԵԼՈՑ



### ՃԱՇՈՒ ՇԱՐԱԿԱՆ. ԱՌԱՋԻՆ ԿՈՂՄ

Ձ.
Ակ. Որ սիրողդ էք արարչին արարածոց Քրիստոսի սուրբ առաքեալք. բարեխօսեցէք առ Տէր վասն մեր։ Որ քարոզդ էք ընդհանուր տիեզերաց. Քրիստոսի սուրբ առաքեալք. բա՛՛։ Որ պսակդ էք ամենայն Եկեղեցեաց. Քրիստոսի սուրբ առաքեալք. բա՛՛։

# ԿԱՆՈՆ
## ՈՒՐԲԱԹՈՒ
## ՊԱՀՈՑ ԵՒ ՈՒՏԵԱՑ



### ՃԱՇՈՒ ՇԱՐԱԿԱՆ. ՎԵՐՋ.

Ձ.
Դկ. Որ անսկիզբն ինքնութեան եկիր յաշխարհ. մարմնացար ի կուսէն յաղագս մերոց պարտեաց. հանդերձ ջնջեցեալսն մեր։ Որ ի հօրէ լուսոյ լոյս ծագեցար մեզ եւ կեանք. Միածին Որ-

դի Հօր համագոյակից. Հանդո": Որ 'ի վերդ ես քան ըզմտաւ եւ զխորհուրդս. եւ խաչի համբերեալ փրկեցեր ըզմեզ եղերս. Հանդո":

## ԿԱՆՈՆ
### ՇԱԲԱԹԱՊԱՀՈՑ
### ՑՈՐՈՒՄ ՍՈՒՐԲՔ ՈՉ ՏՕՆԵՍՑԻՆ
### ԵՐԿՈՒՇԱԲԹԻ ԵՐԵՔՇԱԲԹԻ ՀԻՆԳՇԱԲԹԻ



ՃԱՇՈՒ ՇԱՐԱԿԱՆ. ԵՐՐՈՐԴ ՁԱՅՆ

ճ. գձ. Քրիստոս Աստուած. յիշեա զնընջեցեալըսն 'ի սուրբ անուընդ քո։ Ըզգեննս արեան քո Տէր. յիշեա եւ հանգո ընդ սուրբըս քո։ Եւ 'ի միւս անգամ քո գալստեանն. ըզնըննջեցեալ սըն մեր. յիշ":

## ԿԱՆՈՆ
### ՈՒՐԲԱԹՈՒ



ՃԱՇՈՒ ՇԱՐԱԿԱՆ. ՎԵՐՋ

ճ. դկ. Որ յանէից ստեղծօղըդ գոլ յ էից արարչակից Հօր Բանդ Աստը-

ուած. Թողութիւն շնորհեա ննջեցելոց
քոց ծառայից, յորժամ դաս դա
տել զօր ահաւորաւ ձեռօք ստեղծեր:
Որ ի հօրէ առաքեցար. և
մարմնացար ի սուրբ կուսէն. Թո-
ղութիւն: Որ ի խաչին անշնչա-
ցար. զմահու լուծեր զիշխանու-
թիւն. Թողութիւն: Որ պըսակիչ
ես քոց սըր բոց. և անվախճան
բարեաց բաշխօղ. Թողութիւն:

# ԿԱՆՈՆ
## ՄԱՐՏԻՐՈՍԱՑ

ՃԱՇՈՒ ՇԱՐԱԿԱՆ. ՎԱՌ

Ձ.
Գ.Կ. Որըգնաւորք ճըշմարիտք և մը-
կայք Քրիստոսի. որք դժուարչարանս և
ըզմահ յանձն առիք վասըն Տեառն. ըզ-
ձեզ ունիմք բարեխօս առ Քրիստոս վասն
անձանց մերոց: Քանզի հեղմամբ արեան
ձերոյ պայծառացան սուրբ Եկեղեցիք.
և ըզստուերամած խաւար կռապաշ-
տութեանըն բարձիք. ըզձեզ: Երկնայ

Տան քում վայելէ սրբութիւն Տէր՝ ընդ երկայն աւուրս ։

Փառք Հօր և Որդւոյ" ։ Այժմ և միշտ" ։

---

## ՋԱՏԿԷՆ
### ՄԻՆՉ
### Ց'ՀՈԳԵԳԱԼՈՒՍՏՆ

Գովեա Երուսաղէմ զՏէր ։

Եւ օրհնեա զԱստուած քո Սիոն ։

Զի զօրացոյց զնիգս դրանց քոց, և օրհնեաց զորդիս քո 'ի քեզ ։

Որ եդ զսահմանս քո 'ի խաղաղութիւն. պարարտութեամբ ցորենոյ լցոյց զքեզ ։

Առաքէ զբան իւր յերկիր. վաղվաղ ընթանան պատգամք նորա ։

Դնէ զձիւն որպէս զասր, և զմէգ որպէս փոշի ցանեաց ։

Արկանէ զսառն որպէս պատառս. առաջի ցրտոյ նորա ո՞ կարէ կեալ ։

Առաքէ զբան իւր՝ և հալէ զնոսա. շնչեսցեն հողմք՝ և գնասցեն ջուրք ։

Պատմէ զբան իւր Յակոբայ, զարդարութիւն և զիրաւունս Իսրայէլի ։

Ոչ այսպէս արար ամենայն ազգաց Տէր. և զդատաստանս իւր ոչ յայտնեաց նոցա ։

Փառք Հօր և Որդւոյ" ։ Այժմ և միշտ" ։

## ԱՄԵՆԱՅՆ ՍՐԲՈՑ ՏՕՆԻՑ

Սիրեցի՛ զի լուիցէ Տէր զձայն աղօթից իմոց. զի խոնարհեցոյց զունկն իւր առ իս, և ես յաւուրս իմ կարդացի առ նա։

Շրջեցան զինև երկունք մահու. և վիշտք դժոխոց գտին զիս։

Զնեղութիւն և զանձկութիւն գտի. և զանուն Տեառն կարդացի։

Ո՛ Տէր՝ փրկեա՛ զանձն իմ. ողորմած Աստուած մեր՝ ողորմի և պահէ զտղայս Տէր։

Ես խոնարհ եղէ՝ և Տէր կեցոյց զիս. դա՛րձ անձն իմ 'ի հանգիստ քո՛ զի Տէր օգնեաց քեզ։

Փրկեաց զանձն իմ 'ի մահուանէ, զաչս իմ յարտասուաց. և զոտս իմ 'ի գայթակղութենէ. հաճոյ եղէց առաջի Տեառն յերկիրն կենդանեաց։

Փառք Հօր և Որդւոյ"։ Այժմ և միշտ"։



## ՇԱԲԱԹԱՊԱՀՈՑ

### ՅՈՐՍ ՏՕՆ ՈՉ ՏՕՆԻ

ԵՒ ԱՄԵՆԱՅՆ

## ՉՈՐԵՔՇԱԲԱԹԻ ԵՒ ՈՒՐԲԱԹՈՒ

### ՊԱՀՈՑ

Օրհնեցէք զՏէր ամենայն ազգք. գովեցէք զնա ամենայն ժողովուրդք։

Զօրացաւ ողորմութիւն նորա 'ի վերայ

մեր. և ճշմարտութիւն Տեառն մնասցէ յաւիտեան։

Փառք Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ.
Այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից.
Ամէն։



Եւ ապա ասի ՃԱՇՈՒ ՇԱՐԱԿԱՆ ըստ պատշաճի աւուր, ըստ ցուցակի Տօնացուցին։

# ՃԱՇՈՒ ՇԱՐԱԿԱՆՔ

## ԸՍՏ ՊԱՏՇԱՃԻ ԱՒՈՒՐ



## ԿԻՒՐԱԿԷԻՑ ՅԱՐՈՒԹԵԱՆ



### ՃԱՇՈՒ ՇԱՐԱԿԱՆ. ԱՌԱՋԻՆ ՁԱՅՆ

Ճ. ԱՁ. Օթագաւորըն փառաց Քրիստոս. որ վասըն մեր մարմնացաւ ի սրբոյ կուսէն և խաչի համբերելով. միաբանեալ թեւամբք երգով բարեբանեսցուք։ Որ ըզթաղումն երկրաւորաց յանձն էառ յարուցեալ ի մեռելոց իշխանութեամբ. միա″։ Կարողապէս ըզդըրունս դըժոխոց խորտակեաց. Եկեղեցւոյ իւրում ետ ցոյց զմեծվայելչութիւն. միա″։

## ԿԱՆՈՆ
## ՀՐԵՇՏԱԿԱՊԵՏԱՑ



### ՃԱՇՈՒ ՇԱՐԱԿԱՆ. ՎԵՐՋ.

Ճ. ԴԿ. Այսօր ուրախացեալ սուրբ Եկեղեցի Քրիստոսի. տօնէ խնդութեամբ զտօն վերին Երուսաղեմի. սրբասաց ձայնիւ փառաւորելով զՔրիստոս։
Այսօր համաձայնեալ որդիք Սիոնի երկնայնոյ. տօնիւ զուարճանան որդւոց անդրանկաց վերին Սիոնի. սուր"։
Այսօր դասք անմարմնոցն երգս առեալ պարեն ընդ մարդկան. զերգս հոգեւորս յանմահ փեսային յառագաստ. սուր"։

## ԿԱՆՈՆ
## ՄԱՐԳԱՐԷԻՑ



### ՃԱՇՈՒ ՇԱՐԱԿԱՆ. ԱՌԱՋԻՆ ՁԱՅՆ

Ճ. ԱՁ. Ճառագայթ անճառ լուսոյ անքննելի Տէրութեան. յառաջագոյն հրաշացուցեր զաստուածութիւն մարգարէիցն։

իջանելով ի ստորինս Աստուածային անօրէնութեամբ։ Որք ըղձաձայր հաւատոյ հիմնեցուցին շնորհօք սուրբ Հոգւոյն. յոր եմուտ Բանն Աստուած եօթնարփեան ճառագայթիւք. իջա"։ Երևեցաւ յաշխարհի ծնեալ մարդեղութեամբ. զոր քարոզեցին մեզ հրաւիրօղքն համագոյ Հօր և Հոգւոյն. լուսաւորելով ըզտիեզերս Աստուածային անօրէնութեամբ։



## ԿԱՆՈՆ

### ՉՈՐԵՔՇԱԲԱԹԻ ՊԱՀՈՑ ԵՒ ՈՒՏԵԱՑ

#### ՃԱՇՈՒ ՇԱՐԱԿԱՆ. ՎԱԹ

Ճ.
Դկ. Փառաբանութիւն առաքեմք քեզ Հայր երկնաւոր. յիշեա զննջեցեալսն մեր. և հանգո ընդ սուրբս քո։ Որ էակիցդ ես Հօր և Հոգւոյ Որդիդ միածին. յիշեա զննջեցեալսն մեր. և հանգո ընդ սուրբս քո։ Որ փառակիցդ ես Հօր և Որդւոյ Հոգիդ ճշմարիտ. յիշեա զննջեցեալսն մեր. և Ո։

# ԿԱՆՈՆ
## ՀԻՆԳՇԱԲԱԹԻ
## ԱՌԱՔԵԼՈՑ



### ՃԱՇՈՒ ՇԱՐԱԿԱՆ · ԱՌԱՋԻՆ ԿՈՂՄ

Ճ·
ԱԿ· Որ սիրօղք էք արարչին արարածոց Քրիստոսի սուրբ առաքեալք. բարեխօսեցէք առ Տէր վասն մեր։ Որ քարոզք էք ընդհանուր տիեզերաց. Քրիստոսի սուրբ առաքեալք. բա՛։ Որ պըսակք էք ամենայն Եկեղեցւոյ. Քրիստոսի սուրբ առաքեալք. բա՛։

# ԿԱՆՈՆ
## ՈՒՐԲԱԹՈՒ
## ՊԱՀՈՑ ԵՒ ՈՒՏԵԱՑ



### ՃԱՇՈՒ ՇԱՐԱԿԱՆ · ՎԵՐՋ.

Ճ·
ԴԿ· Որ անըսկիզբն յէութեան էկիր յաշխարհ. մարմնացար 'ի կուսէն յաղագս մերոց պարտեաց. հանգո զընընչեցեալ լսըն մեր։ Որ 'ի հօրէ լուսոյ լոյս ծագեցար մեզ եւ կեանք. մօտեին Որ-

դի Հօր համագոյակից · Հանգոյ"։ Որ 'ի
վերդ ես քան ըզմիտս և զխորհուրդս ·
և խաչի համբերեալ փրկեցեր ըզգոյ
եղերս · Հանգոյ"։

# ԿԱՆՈՆ
## ՇԱԲԱԹԱՊԱՀՈՑ
### ՑՈՐՈՒՄ ՍՈՒՐԲՔ ՈՉ ՏՕՆԵՍՑԻՆ
### ԵՐԿՈՒՇԱԲԹԻ ԵՐԵՔՇԱԲԹԻ ՀԻՆԳՇԱԲԹԻ



ՃԱՇՈՒ ՇԱՐԱԿԱՆ · ԵՐՐՈՐԴ ՁԱՅՆ

Ճ· գՁ· Քրիստոս Աստուած · յիշեա
ըզննջեցեալսն 'ի սուրբ անուն քո։
Ըզգինս արեան քո Տէր · յիշեա
և հանգո ընդ սուրբըս քո։ Եւ 'ի միւս
անգամ քո գալստեանն · ըզննջեցեալ
սըն մեր · յիշ"։

# ԿԱՆՈՆ
## ՈՒՐԲԱԹՈՒ



ՃԱՇՈՒ ՇԱՐԱԿԱՆ · ՎԵՐՋ

Ճ· դԿ· Որ յանէից ստեղծօղդ գոյ
էից արարչական Հօր Բանդ Աստուա-

ուած. Թողութիւն շնորհեա ննջեցելոց
քոց ծառայից. յորժամ գաս գա
տել զոր անարատ ձեռօք ստեղծեր.
Որ ՚ի հօրէ առաքեցար. և
մարմնացար ՚ի սուրբ կուսէն. Թո
ղութիւն": Որ ՚ի խաչէն անշընչա
ցար. զմահու լուծեր զիշխանու
թիւն. Թողութիւն": Որ պըսակե-
ես քոց սըրբոց. և անվախճան
բարեաց բաշխօղ. Թողութիւն":

# ԿԱՆՈՆ
## ՄԱՐՏԻՐՈՍԱՑ



### ՃԱՇՈՒ ՇԱՐԱԿԱՆ. ՎԱՌ

ձ.
գ.կ. Զինաւորըք ճըշմարիտք և վը
կայք Քրիստոսի. որք զչարչարանս և
ըզմահ յանձն առիք վասըն Տեառն. ըզ
ձեզ ունիմք բարեխօս առ Քրիստոս վասն
անձանց մերոց: Քանզի համարձակ առ երեան
ձերոյ պայծառացան սուրբ Եկեղեցիք.
և զըստուերամած խաւար կռապաշ
տութեանըն բարձիք. ըզձեզ": Երկնայ

ին զօրք եղեալ ՚ի պատիւ պատարագի
մահուան ձերոյ · և զպըսակս անա
պականն առընկալով ՚ի Հօրէ լուսոյ ·
ըղձեղ ։

# ԿԱՆՈՆ

## ԱԻԵՏԵԱՑ



### ՃԱՇՈՒ ՇԱՐԱԿԱՆ · ՎԵՐՋ

Ճ ·
Դկ · Աստուածածին խորան լուսոյ ան
վայրափակ արփւոյն կենաց · որ եղեր
արևելք աներգականն արդարութեան ·
և նըստելոցս ՚ի խաւարի լոյս ծագե
ցեր · վասն որոյ ամենեքեան ըզքեզ
միշտ մեծացուցանեմք ։ Անապական
տաճար · և մորենի անկիզելի · որ
զանշէջ հուր Աստուածութեանն ՚ի
քեզ տարեալ կրեցեր · ծրով բնութեան
նըս կիզեալ չէջաւ կրեց բոց · վասն որոյ ։
Աենդանի տապանակ կտականաց
նորոյ ուխտիս · որով ելք յերկիր ա-
ւետեաց հորդեալ · զուով ՚ի քեզ տը
պաւլարեալ Բանին · վասն որոյ ։

ին զօրք եկեալ ՚ի պատիւ պատարագի
մահուան ձերոյ. և զպսակս անա-
պական առբերելով ՚ի հօրէ լուսոյ.
ըզձեզ։

# ԿԱՆՈՆ

## ԱՒԵՏԵԱՑ



### ՃԱՇՈՒ ՇԱՐԱԿԱՆ. ՎԵՐՋ

Ճ. Դկ. Աստուածածին խորան լուսոյ ան-
վայրափակ արփիոյն կենաց. որ եղեր
արքունիք անեղականն արդարութեան.
և ննջարան ՚ի խաւարի լոյս ծագե-
ցեր. վասն որոյ ամենեքեան ըզքեզ
միշտ մեծացուցանեմք։ Անապական
տաճար. և մորենւոյ անկիզելի. որ
զանշէջ հուր Աստուածութեանն ՚ի
քեզ տարերաւ կրեցեր. որով բնութեան
նըս կիզեօղ շիջաւ կրից բոց. վասն որոյ։
Կենդանի տապանակ կտակարանաց
նորոյ ուխտի. որով ելք յերկիր ա-
ւետեաց հորդեալ. հոգւով ՚ի քեզ տը-
պաւորեալ Բանին. վասն որոյ։

յեսցէ․ Աստուածորդին որ ՚ի ծոց
Հօր․ տղայ քառամսօրեայ բանն ՚ի
գերկըս ծերունոյն․ և յայտնապէս ծա-
նուցանի․ Ամ։ Կանոնօրք և Սիմէոնի
ցընծայր հոգւովն աղաղակէր ՚ի տաճա-
րին․ արդ արձակես ըզծառայս քո
Տէր ըստ բանի քում ՚ի խաղաղութիւն․
զի ընդհանուր տես ըզփրկօղդ․ Ամ։

## ԿԱՆՈՆ
## ԾԱՂԿԱԶԱՐԴԻ



### ՃԱՇՈՒ ՇԱՐԱԿԱՆ․ ՎԵՐՁ

Ճ․ ԴԿ․ Անըսկիզբըն Բանըն Հօր որ ՚ի վե-
րայ Քերովբէիցըն հանգչի․ այսօր ՚ի
վերայ յաւանակի նորոյ նըստեալ․ Օրհ
նեալ արքայ եկեալ անյաղթելի թագա-
ւոր։ Յառաջ քան զյաւիտեանս Որդին
որ ՚ի վերայ քառակերպեանցըն բազմի․
այսօր ՚ի ծերոց և ՚ի տղայոց փառաւո-
րեցաւ․ Օրհ։ Եկայք նոր ժողովուրդք
ընդ անմարմնոցըն դասս բարձրութեան․
ըզսա հընչմամբ երգով քաղցըր ձայնիւ
փառաւորեսցուք․ Օրհ։

# ԿԱՆՈՆ
## ՋԱՏԿԻ



ՃԱՇՈՒ ՇԱՐԱԿԱՆ · ԱՌԱՋԻՆ ՁԱՅՆ

Ճ · ԱՁ · Յարեաւ Քրիստոս ՚ի մեռելոց ալէլուիա։ Եկայք ժողովուրդք երգեցէք Տեառն ալէլուիա։ Յարուցելոյն ՚ի մեռելոց ալէլուիա. որ զաշխարհս լուսաւորեաց ալէլուիա։

---

# ԿԱՆՈՆ
## ՀԱՄԲԱՐՁՄԱՆ



ՃԱՇՈՒ ՇԱՐԱԿԱՆ · ԱՌԱՋԻՆ ՁԱՅՆ

Ճ · ԱՁ · Որ համբարձար այսօր Աստուածային իշխանութեամբ ՚ի հայրական ՚ի կառս. պատուաւորեալ ՚ի հրեշտակական դասուցն. որք նուագէին ասելով. համբարձէք իշխանք զդրունս ձեր ՚ի վեր. և մտցէ թագաւոր փառաց։ Զարմացան վերնական իշխանութիւնքն և սոսկալի ձայնիւ աղաղակէին առ միմեանս. ո՞վ է սա թագաւոր փառաց. երկեալ մար

# ԿԱՆՈՆ
## ՎԵՐԱՓՈԽՄԱՆ



### ՃԱՇՈՒ ՇԱՐԱԿԱՆ · ԵՐԿՐՈՐԴ ՁԱՅՆ

Ծ·
ԲՁ· Անթառամ ծաղիկ անդաստա-
պարտ շառաւիղ · վերաբուսեալ յար-
մատոյն Յեսսեայ · զքեզ Եսայիաս
կանխաւ վերագոչեաց · եօթնարփին
շնորհաց հոգւոյն ընդունարան գոլ ·
Աստուածածին եւ կոյս · զքեզ ը-
մեծացուցանեմք ։ Համեղաճաշակ
պտղոյն բանաւոր ըբարունակ ·
յորմէ կթեցաւ մեզ ողկոյզն անըս-
պառ յուրախութիւն տրտմեցելոց ·
Ի ճաշակմանէ ծառոյն գիտու-
թեան · Սրբուհի անարատ ամե-
նեքեան · զքեզ ։ Քաղաքավարեալ
Ի մարմնի անարատ ըվկրուք ·
այսօր յաւաքելոցն ամփոփեալ վերին
ակընարկութեամբըն վերափոխեցար
յարքայութիւն · որդւոյ քո եւ Աս-
տուծոյ ըմերոյ · բարեխօսեա խոս-
տովանողացս · զքեզ ։

# ԿԱՆՈՆ
## ԽԱՉԻ



### ՃԱՇՈՒ ՇԱՐԱԿԱՆ. ՎԱՌ

Ճ. Գկ. Յաղթող եւ զնոր օրհնութիւն մշտ ՚ի բարձունս երգեցուք. Թագաւորին ՔՐԻՍՏՈՍԻ հաւատացեալ ժողովուրդք։ Որ եկն ՚ի լուսաւորել զընտրեալ սուրբ զեկեղեցի. եւ պսակեաց սուրբ խաչիւն. Նըմա ըզփառս երգեսցուք։ Այսօր եւ մեք տօնեսցուք զնաւակատիս սուրբ խաչին. եւ փրկողին մատուսցուք. փառք եւ պատիւ յաւիտեանս։

# ԿԱՆՈՆ
## ՏԱՊԱՆԱԿԻՆ



### ՃԱՇՈՒ ՇԱՐԱԿԱՆ. ԱՌԱՋԻՆ ԿՈՂՄ

Ճ. Ակ. Որ ՚ի սկըզբանէ իմաստութեամբ հաստատեցեր զեկեղեցի նոր իմաստութիւն. զոր նախանըկար աստուածութեամբ նըշանակեալ Մովսէս խորանաւն երկնաւ հանգոյն ՚ի Սինա լերին. լուսաւորեալ լոյ

փառօքն Աստուծոյ։ Որ ըզխորհուրդ ա-
նապական տնօրէնութեանըդ քո ՝ի սըր
բոյ կուսէն. տըպաւորեցեր զտապանակն
Աստուածային ուխտին կտակարանաց Բան-
նիդ Աստուծոյ. փառաց անեղիդ տեղի
հանգըստեան։ Որ ՝ի կեանս վերադարձ
ծի բնութեան դարձման մը Յորդանանու
օրինակեցեր. և ըզքըքանութիւն մահու
և դըժոխոց կործանման մըն Երիքովի տա-
պանակաւ խաչին հրաշագործեալ նոր
Իսրայէլի. օրհնութիւն քեզ Տէր եր
գեցեն մանկունք։

ԿԱՆՈՆ
ԵԿԵՂԵՑՒՈՅ



ՃԱՇՈՒ ՇԱՐԱԿԱՆ. ՉՈՐՐՈՐԴ ՁԱՅՆ

Ճ. ԴՁ. Որ հաստատեցեր Բանիւ. զեկե
ղեցի քո ՔՐԻՍՏՈՍ. ՝ի վերայ առաքելա
կան վիմի. Երգել ՝ի սմա զերգըս հո
գևորս։ Կանգնեալ ՝ի սմա սեղան սըրբու
թեան. բաշխէ զմարմին իւր և զարիւն
և տայ ՝ի սմանէ մեզ նորոգութիւն. ՝ի

Թողութիւն մեղաց մերոց։ Իջեալ Հոգւոյն սրբոյ · աղաւնակերպ երեւմամբ · ի վերայ մարմնոյ և արեանն Տեառն · ի բժշկութիւն հոգւոց մերոց։

# ԿԱՆՈՆ
## ՀԱՅՐԱՊԵՏԱՑ



### ՃԱՇՈՒ ՇԱՐԱԿԱՆ · ՉՈՐՐՈՐԴ ՁԱՅՆ

Ճ․
Դ Չ․ Այսօր երկնայնոցն ընդ մեզ · տօնախմբելով զյիշատակ սուրբ վարդապետացն · որք լուսաւորեցին զհաւատոյ մանկունս · և ընդ հրեշտակացն դասս վերակարգեցան։ Այսօր առաքելոց և մարգարէիցն դասք · տօնակից գոլով դըստեր վերին Սիովնի · ի յիշատակի սուրբ վարդապետացն · որք զիմաստից նոցին զխորոց յայտնեցին զխորհուրդ։ Այսօր քահանայք և պաշտօնեայք սուրբ Եկեղեցւոյ · վերնապատուեն զյիշատակ սուրբ վարդապետացն · որով զարդարեցան երկնային շնորհօքն · երգեն ընդ նոսին զփառս յաւիտեան։

Սուրբ Աստուած․ սուրբ և հզօր․ սուրբ և անմահ․ որ՛ ։ Եւ այլն ըստ պաշտամ՝, երեքս կրկնեա՛․ եւ ապա զՓառաւորեալն Դ՛ ձայնէր ։

## ՔԱՐՈԶ

Եւ ևս խաղաղութեան զՏէր աղաչեսցուք ։

Վասն խաղաղութեան ամենայն աշխարհի, և հաստատութեան սրբոյ Եկեղեցւոյ․ զՏէր աղաչեսցուք ։

Վասն ամենայն սուրբ և ուղղափառ եպիսկոպոսաց․ զՏէր աղաչեսցուք ։

Վասն հայրապետին մերոյ Տեառն (այս անուն) կենաց՝ և փրկութեան հոգւոյ նորին․ զՏէր աղաչեսցուք ։

Վասն վարդապետաց՝ քահանայից՝ սարկաւագաց՝ դպրաց՝ և ամենայն ուխտի մանկանց Եկեղեցւոյ․ զՏէր աղաչեսցուք ։

Վասն բարեպաշտ թագաւորաց՝ և Աստուածասէր իշխանաց՝ զօրավարաց՝ և զօրաց նոցին․ զՏէր աղաչեսցուք ։

Վասն հոգւոցն ։ Զանձինս մեր ։ Եւ ևս միաբան վասն ճշմարիտ ։ Ողորմեաց մեզ ։

## ԱՂԱԹԱՆՔ

Զի ողորմած և մարդասէր ես Աստուած գոլով․ և քեզ վայել է փառք իշխանութիւն և պատիւ․ այժմ և միշտ և յաւիտեանս ։

# ՃԱՇՈՒ ՍԱՂՄՈՍՔ

## ԸՍՏ ՊԱՏՇԱՃԻ ԱՒՈՒՐ



Սաղմոս ճաշու՝ որ առի Ցինանցն, ունէաւ Ա. գլխէ յառաջա-րըն երեք տուն. չէ մինչև 'ի Հոգւոյ Գալստեան ճշ. գլուխ տուն Սաղմոս Դաւթի վճարեսցի. Եւ ամէն տունի Ներքին երեք Ալէլուիա ասա՛։

### ՑԻՆԱՆՑ

Երանեալ է այր՝ որ ոչ գնաց՝ 'ի խորհուրդս"։"Ալէլուիա. Ալէլուիա. Ալէլուիա։

Ընդէ՞ր խռովեցան հեթանոսք. և ժողովուրդք խորհեցան 'ի սնոտիս։" Ալէլուիա։

Տէր զի բազում եղեն նեղիչք իմ. և բազումք յարեան 'ի վերայ իմ։" Ալէլուիա"։



### ՀԱՄԲԱՐՁՄԱՆ

(ՍԱՂ, ԿՑ. ԳԼ, ԽԶ։)

Համբարձաւ Աստուած օրհնութեամբ. և Տէր մեր ձայնիւ փողոյ։

Ծափս հարէք ամենայն հեթանոսք, աղաղակեցէք առ Աստուած 'ի ձայն ցնծութեան։



### ՀՈԳՒՈՅ ԳԱԼՍՏԵԱՆ

(ՍԱՂ, ԿՑ. ԳԼ. ՃԽԲ։)

Հոգի քո բարի՝ առաջնորդեսցէ ինձ 'ի յերկիր ուղիղ։

Տէր՝ լո՛ւր աղօթից իմոց. ունկնդիր լեր խնդրուածոց իմոց ճշմարտութեամբ քով:

## ՏԱՊԱՆԱԿԻ

(ՍԱՂ, ԿԹ. ԳԼ, ՃԼԱ:)

Արի Տէր ՚ի հանգիստ քո՝ դու և տապանակ կտակի սրբութեան քո:

Յիշեա՛ Տէր զԴաւիթ, և զամենայն հեզութիւն նորա:

## ՊԱՏՃԱՌԱԿԵՐՊՈՒԹԵԱՆ

ԿԻՐ. Տէր՝ ո՛վ կացցէ ՚ի խորանի քում, կամ ո՛վ բնակեսցի ՚ի լերան սուրբ քո:

Որ գնայ անբիծ գործէ զարդարութիւն, խօսի զճշմարտութիւն ՚ի սրտի իւրում:

ԲՀ. Որ ո՛չ նենգաւորեաց լեզուաւ իւրով, և չար ընկերի իւրում ո՛չ արար:

Նախատինս ՚ի մերձաւորաց նա ո՛չ առնու. արհամարհեալ է առաջի նորա չարագործն:

ԳՀ. Զերկիւղածս Տեառն փառաւոր առնէ. որ երդնու ընդ ընկերի իւրում և ո՛չ ստէ:

Զարծաթ իւր ՚ի վարձու ո՛չ տայ, և կաշառս ՚ի վերայ իրաւանց ո՛չ առնու. որ զայս արասցէ՝ նա մի՛ սասանեսցի յաւիտեան:

## ՎԵՐԱՓՈԽՄԱՆ

( ՍԱՂ , ԿՑ · ԳԼ , ՃԼԱ ։ )

Արի՛ Տէր 'ի հանգիստ քո՝ դու և տապանակ կտակի սրբութեան քո ։

Յիշեա՛ Տէր զԴաւիթ, և զամենայն հեզութիւն նորա ։

---

## ԽԱՉԻ

( ՍԱՂ , ԿՑ · ԳԼ , Դ ։ )

Նշանեցաւ առ մեզ՝ լոյս երեսաց քոց · և ետուր ուրախութիւն սրտից մերոց ։

Ի կարդալ իմում լուար ինձ Աստուած ըստ արդարութեան · 'ի նեղութենէ ինձ անդորր արարեր · ողորմեա ինձ և լո՛ւր աղօթից իմոց ։

---

## ՇՈՂԱԿԱԹԻ ԵՒ ԵԿԵՂԵՑԻՈՑ

( ՍԱՂ , ԿՑ · ԳԼ , ԽԷ ։ )

Աստուած հիմունս էարկ նմա յաւիտեան · ընկալաք Աստուած զողորմութիւն քո 'ի մէջ ժողովրդեան քոյ ։

Մեծ է Տէր, և օրհնեալ է յոյժ 'ի քաղաքս Աստուծոյ մերոյ, 'ի լերան սուրբ նորա ։

---

## ԱՒԵՏԵԱՑ ԱՍՏՈՒԱԾԱԾՆԻ

( ՍԱՂ , ԿՑ · ԳԼ , ԿԷ ։ )

Տէր տայցէ զբան, որք աւետարանեն զօրութեամբ բազմաւ ։

Յարիցէ Աստուած՝ և ցրուեսցին ամենայն թշնամիք նորա, փախիցեն ատելիք նորա յերեսաց նորա ։

ԾՆՆԴԵԱՆ

( ՍԱՂ, ԿՑ․ ԳԼ, Բ ։ )

Տէր ասաց ցիս՝ որդի իմ ես դու, և ես այսօր ծնայ զքեզ ։

Ընդէ՞ր խռովեցան հեթանոսք․ և ժողովուրդք խորհեցան ՚ի սնոտիս ։

ՏԵԱՌՆ ԸՆԴ ԱՌԱՋԻ

( ՍԱՂ, ԿՑ․ ԳԼ, ՂԷ ։ )

Տեսին ամենայն ծագք երկրի զփրկութիւն Աստուծոյ մերոյ ։

Օրհնեցէք զՏէր յօրհնութիւն նոր․ զի սքանչելիս արար ։

ՄԵԾԻ ՈՂՈԳՈՄԵԱՆՆ

ՈՐ Է

ԾԱՂԿԱԶԱՐԴԻ

( ՍԱՂ, ԿՑ․ ԳԼ, ՂԷ ։ )

Լերինք ցնծասցեն առաջի Տեառն, զի գայ զի հասեալ է Տէր ՚ի դատել զերկիր ։

Օրհնեցէք զՏէր յօրհնութիւն նոր․ զի սքանչելիս արար ։

## ՀԱՄԱՐԱԿԱՑ ԿԻՐԱԿԷԻՑ

Քեզ վայել է օրհնութիւն Աստուած՝ ’ի Սիոն · և քեզ տացին աղօթք յԵրուսաղէմ ։

Լուր աղօթից իմոց, զի առ քեզ ամենայն մարմին եկեսցէ ։

Բանք անօրինաց զօրացան ’ի վերայ մեր · և զամբարշտութիւնս մեր դու քաւեսցես ։

Երանի զոր ընտրեցեր և ընկալար · և բնակեսցին ’ի դաւիթս քո ։

Լցցուք մեք ’ի բարութենէ տան քո · սուրբ է տաճար քո՝ սքանչելի արդարութեամբ ։

Լուր մեզ Աստուած փրկիչ մեր, յոյս ամենայն ծագաց երկրի, և որ ’ի ծով հեռի ։

Ո՛ պատրաստէ զլերինս զօրութեամբ իւրով · և զգեցեալ է զօրութիւն ։

Ո՛ խռովեցուցանէ զմեծութիւն ծովու, և զձայն ալեաց նորա ցածուցանէ ։

Խռովեսցին հեթանոսք, և երկիցեն բնակիչք երկրի ’ի նշանաց քոց ։

Ելս առաւօտու՝ ընդ երեկոյս զուարճացին · հայեցար յերկիր, արբեցուցեր զնա, և բազում արարեր զմեծութիւն նորա ։

Գետն Աստուծոյ լի եղև ջուրբ · պատրաստ արարեր զկերակուր նորա, զի այսպէս է պատրաստութիւն ։

Զակօս նորա արբեցուցեր, և բազում արարեր զարմտիս նորա ։

'Ի ցօղել նորա զուարթ եղիցի բոյս նորա . օրհնեսցի պսակ տարւոյ քաղցրութեան քո :

Շաւիղք քո լցցին պարարտութեամբ . պարարտասցին գեղեցկութիւնք անապատի :

Բլուրք զցնծութիւն զգեցցին, և զգեցցին խոյք մաքեաց :

Հովիտք բազում արասցեն զցորեան, աղաղակեսցեն և օրհնեսցեն :

---

## ՀՐԵՇՏԱԿԱՊԵՏԱՑ

( ՍԱՂ. ԿՑ. ԳԼ. ԺԳ. )

Ո՞ արար զհրեշտակս իւր հոգիս, և զպաշտօնեայս իւր 'ի հուր կիզելոյ :

Օրհնեա՛ անձն իմ զՏէր . Տէր Աստուած իմ մեծ եղեր յոյժ :

---

## ԱՌԱՔԵԼՈՑ և ՄԱՐԳԱՐԷԻՑ

( ՍԱՂ. ԿՑ. ԳԼ. ԺԲ. )

Ընդ ամենայն երկիր ել բարբառ նոցա, և մինչև 'ի ծագս աշխարհի են խօսք նոցա :

Երկինք պատմեն զփառս Աստուծոյ, և զարարածս ձեռաց նորա պատմէ հաստատութիւն :

## ԼՈՒՍԱՒՈՐՉԻ

### ՄՈՒՏՆ 'Ի ՎԻՐԱՊՆ

(ՍԱՂ. ԿԸ. ԳԼ. ՁԷ.)

*Եդիր զիս 'ի գբի ներքնումն, 'ի խաւարի և 'ի ստուերս մահու ։*

*Տէր Աստուած փրկութեան իմոյ · 'ի տուէ կարդացի և գիշերի առաջի քո ։*

### ԵԼՆ 'Ի ՎԻՐԱՊԷՆ

(ՍԱՂ. ԿԸ. ԳԼ. ԼԹ.)

*Եհան զիս 'ի գբոյ տառապանաց · 'ի կաւոյ և 'ի տղմոյ ։*

*Համբերելով համբերի Տեառն, և նայեցաւ առ իս · և լուաւ աղօթից իմոց ։*

### ԳՒՒՑԻ ՆՇԽԱՐԱՑ

(ՍԱՂ. ԿԸ. ԳԼ. ՃԼԱ.)

*Քահանայք քո զգեցցին զարդարութիւն · և սուրբք քո ցնծալով ցնծասցեն ։*

*Յիշեա Տէր զԴաւիթ, և զամենայն հեզութիւն նորա ։*

---

## ՀԱՅՐԱՊԵՏԱՑ ԵՒ ՎԱՐԴԱՊԵՏԱՑ

(ՍԱՂ. ԿԸ. ԳԼ. ՃԼԱ.)

*Քահանայք քո զգեցցին զարդարութիւն · և սուրբք քո ցնծալով ցնծասցեն ։*

*Յիշեա Տէր զԴաւիթ, և զամենայն հեզութիւն նորա ։*

## ՄԱՐՏԻՐՈՍԱՑ

( ՍԱՂ , ԿԸ · ԳԼ , ՃԺԵ ։ )

Պատուական է առաջի Տեառն մահ սրբոց իւրոց · ո՜ Տէր ես ծառայ քո եմ , ծառայ և որդի աղախնոյ քո ։

Հաւատացի զոր և խօսեցայ · և ես խոնարհ եղէ յոյժ ։



# ՃԱՇՈՒ ՄԵՍԵԴԻՔ

### ԸՍՏ ԳԱՑՇԱԺԻ ԱՒՈՒՐ



### ԾԻՆԱՆՑ

ԴՀ · Գովեմ Երուսաղէմ զՏէր ։
Եւ օրհնեմ զԱստուած քո Սիոն ։



ԵՀ · Բարձր արարէք զՏէր Աստուած մեր · երկիրպագէք պատուանդանի ոտից նորա՝ զի սուրբ է ։

Տէր թագաւորեաց՝ բարկացան ժողովուրդք · որ նստիս ՚ի Քերովբէս , սասանեսցաւ երկիր ։



ՁԻՐ · Տեսին ամենայն ծագք երկրի · զփրկութիւն Աստուծոյ մերոյ ։

Օրհնեցէք զՏէր յօրհնութիւն նոր . զի սքանչելիս արար ։

Ճ.Բ . Աստուած ողորմեա՛ մեզ և օրհնեա՛ զմեզ . երևեցո՛ զերեսս քո ՚ի մեզ՝ և ողորմեա՛ մեզ ։

Ծանուցել յերկրի զճանապարհս քո . յազգս ամենայն զփրկութիւնս քո ։

ԿԻՐ . } ԲՃ . } Քեզ վայելէ օրհնութիւն Աստուած՝ ՚ի Սիոն . և քեզ տացին աղօթք յԵրուսաղէմ ։

Լուր աղօթից իմոց , զի առ քեզ ամենայն մարմին եկեսցէ ։

ԳՃ . Տէր՝ որպէս զինու հաճութեամբ քով պսակեցեր զմեզ ։

Բանից իմոց ունկնդիր Տէր , և ՚ի միտ առ զաղաղակ իմ ։

## ՇԱԲԱԹԱՊԱՀՈՑ

ԲՃ . Արքայութիւն քո արքայութիւն ամենայն յաւիտենից . և Տէրութիւն քո յազգ մինչև յազգ ։

Հաւատարիմ է Տէր յամենայն բանս իւր , և արդար է յամենայն գործս իւր ։

ԳՂ. Երկիրպագից 'ի տաճար սուրբ քո՝ երկիւղիւ քո Տէր ։

Զարծեսցին 'ի քեզ սիրելիք անուան քո՝ զի օրհնեսցես դու զարդարն ։

ԴՂ. Կեցո՛ զժառանգս քո Աստուած իմ, որ 'ի քեզ յուսացայ ։

Ողորմեա՛ ինձ Տէր, զի առ քեզ աղաղակեցի զօրհանապազ ։

ԵՂ. Բա՛րձր արարէք զՏէր Աստուած մեր. երկիրպագէք պատուանդանի ոտից նորա՝ զի սուրբ է ։

Տէր թագաւորեաց՝ բարկացան ժողովուրդք. որ նստիս 'ի Քրովբէս, սասանեսցա երկիր ։

ՈՒՐ. Տեսին ամենայն ծագք երկրի՝ զփրկութիւն Աստուծոյ մերոյ ։

Օրհնեցէք զՏէր յօրհնութիւն նոր. զի սքանչելիս արար ։

## ԱՂՈՒՀԱՑԻ

ԲՂ. Դարձո՛ զիս Տէր 'ի մեղաց իմոց. և զամենայն անօրէնութիւնս իմ քաւեա՛ յինէն ։

Ողորմեա՛ ինձ Աստուա՛ծ՝ ըստ մեծի ողոր-

մութեան քում · ըստ բազում գթութեան քում, քաւեա՛ զանօրէնութիւնս իմ ։

---

ԳՃ· Երանի ամենեցուն՝ ոյք երկնչին 'ի Տեառնէ, և գնան 'ի ճանապարհս նորա ։
Զվաստակս ձեռաց քոց կերիցես · երանի է քեզ, և բարի եղիցի ։

---

ԴՃ· Մի՛ թողուր զիս Տէր Աստուած իմ · և մի՛ 'ի բացեայ առնիր յինէն, հայեա՛ց յօգնել ինձ՝ Տէր փրկութեան իմոյ ։
Տէր՝ առաջի քո է ամենայն ցանկութիւն իմ · և հեծութիւն իմ 'ի քէն ոչ ծածկեցաւ ։

---

ԵՃ· Մի՛ ընկենուր զիս Տէր 'ի ժամանակի ծերութեան · 'ի պակասիլ զօրութեան իմոյ մի՛ թողուր զիս ։
Ի քեզ Տէր յուսացայ՝ մի՛ ամաչեցից յաւիտեան · յարդարութեան քում փրկեա՛ և ապրեցո՛ զիս ։

---

ՈւՐ· Արձակեցի՛ն խնդրուածք իմ առաջի քո Տէր · ըստ բանի քում իմաստո՛ւն արա զիս ։
Զայնի իմում լո՛ւր Տէր՝ ըստ ողորմութեան քում · և յիրաւունս քո կեցո՛ զիս ։

## ՅԱՐՈՒԹԵԱՆ

ԱՁ․ Ամենայն երկիր երկիրպագցեն քեզ․ և սաղմոս ասասցեն քեզ։

Աղաղակեցէք առ Աստուած ամենայն երկիր․ սաղմոս ասացէք անուան նորա․ և տուք զփառս օրհնութեան նորա։

ԱԿ․ Մեծ արարէք զՏէր Աստուած մեր․ և բարձր արասցուք զանուն նորա ՚ի միասին։

Օրհնեցից զՏէր յամենայն ժամ, յամենայն ժամ օրհնութիւն նորա ՚ի բերան իմ։

ԲՁ․ Օրհնեցէք զՏէր յօրհնութիւն նոր․ զի սքանչելիս արար։

Օրհնեցէք զՏէր ամենայն երկիր․ օրհնեցէք զՏէր, և օրհնեցէք զանուն նորա։

ԲԿ․ Օրհնեցէք զԱստուած մեր․ օրհնեցէք և սաղմոս ասացէք Տեառն Աստուծոյ։

Տէր Աստուած օրհնեալ․ օրհնեալ է Տէր զօրհանապազ։

ԳՁ Մեծ է Տէր, և մեծ է զօրութիւն նորա․ իմաստութեան նորա ոչ գոյ թիւ։

Օրհնեցէք զՏէր՝ զի բարի է սաղմոս․ Աստուծոյ մերում քաղցր եղիցի օրհնութիւն։

Դկ. Սաղմոս ասացէք Աստուծոյ մերում, սաղմոս ասացէք թագաւորին մերում. սաղմոս ասացէք։

Ձեռս հարէք ամենայն հեթանոսք, աղաղակեցէք առ Աստուած ՚ի ձայն ցնծութեան։

Դ2. Սուրբ է տաճար քո՝ սքանչելի արդարութեամբ։

Քեզ վայելէ օրհնութիւն Աստուած՝ ՚ի Սիոն. և քեզ տացին աղօթք յԵրուսաղէմ։

Դկ. Այսօր է զոր արար Տէր. եկա՛յք ցնծասցուք և ուրա՛խ եղիցուք ՚ի սմա։

Խոստովա՛ն եղերուք Տեառն. զի բարի է. զի յաւիտեան է ողորմութիւն նորա։

ԱՂՕԻՀԱՑԻ ԿԻՒՐԱԿԷԻՑ

Ուխտս դիք և կատարեցէք Տեառն Աստուծոյ մերոյ։

Յայտնի է ՚ի Հրէաստանի Աստուած, և յԻսրայէլ մեծ է անուն նորա։

Մինչև աստ ընթեռնանի՝ Գործք Առաքելոց, Հին Կտակարան, Թուղթ Կաթուղիկէից, և Թուղթ Երանելւոյն Պօղոսի, ըստ ցուցակի Տօնացուցին։

# ՍՏՈՂՈԳԻՔ

## ԱՒԱԳ ՈՒՐԲԱԹՈՒ

( ԱՌԱՋԻՆ ՍԱՂ, ԿՏ · ԳԼ, ԼԴ ։ )

Յարեան ՚ի վերայ իմ վկայք չարաց · և զոր ինչ ո՛չ գիտէի՝ հարցանէին ցիս ։

Դատեա՛ Տէր զայնոսիկ՝ որք դատեն զիս · մարտի՛ր ընդ այնոսիկ, որք մարտնչին ընդ իս ։

( ԵՐԿՐՈՐԴ ՍԱՂ, ԿՏ · ԳԼ, ԼԵ ։ )

Ես ՚ի տանջանս պատրաստ եմ · և ցաւք իմ առաջի իմ են յամենայն ժամ ։

Տէր՝ մի՛ սրտմտութեամբ քով յանդիմանե՛ր զիս · և մի՛ բարկութեամբ քով խրատեր զիս ։

( ԵՐՐՈՐԴ ՍԱՂ, ԿՏ · ԳԼ, Խ ։ )

Մտանէր տեսանել զնանրութիւն , խօսէր ՚ի սրտի իւրում · և ժողովէր զանօրէնութիւն յանձն իւր ։

Երանի որ խորհի զաղքատն և զտնանկն · յաւուր չարի փրկէ զնա Տէր ։

( ՉՈՐՐՈՐԴ ՍԱՂ, ԿՏ · ԳԼ, ԻԱ ։ )

Բաժանեցին զհանդերձս իմ ՚ի մէջ իւրեանց · և ՚ի վերայ պատմուճանի իմոյ վիճակս արկանէին ։

Աստուած Աստուած իմ՝ նայեաց առ իս, ընդէ՞ր թողեր զիս. հեռի եղէ ՚ի փրկութենէ իմմէ՝ վասն բանից յանցանաց իմոց:

(ՀԻՆԳԵՐՈՐԴ ՍԱՂ, ԿԵ. ԳԼ, Լ:)

՚Ի ձեռս քո յանձն առնեմ զհոգի իմ:

Ի քեզ Տէր յուսացայ, մի՛ ամաչեցից յաւիտեան. յարդարութեան քում փրկեա՛ և ապրեցո՛ զիս:

(ՎԵՑԵՐՈՐԴ ՍԱՂ, ԿԵ. ԳԼ, ԿԸ:)

Ետուն ՚ի կերակուր ինձ լեղի. և ՚ի ծարաւ իմ արբուցին ինձ քացախ:

Ապրեցո՛ զիս Աստուած, զի հասին ջուրք յանձին իմ. ընկղմայ ես ՚ի խորս անդնդոց, ուր ոչ գոյ ինձ հանգիստ:

(ԵՕԹՆԵՐՈՐԴ ՍԱՂ, ԿԵ. ԳԼ, ԶԵ:)

Եղէ ես որպէս մարդ առանց օգնականի, և ՚ի մեռեալս ազատ:

Տէր Աստուած փրկութեան իմոյ, ՚ի տուէ կարդացի և գիշերի առաջի քո:

(ՈՒԹԵՐՈՐԴ ՍԱՂ, ԿԵ. ԳԼ, ՁԷ:)

Կցեցաւ ոսկր իմ ՚ի մարմնի իմ. նմանեցայ ես հաւալուսան անապատի:

Տէր՝ լո՛ւր աղօթից իմոց. աղաղակ իմ առ քեզ եկեսցէ. և մի՛ դարձուցաներ զերեսս քո յինէն:

# ՃԱՇՈՒ ԱՂՕԹԻՒՆՔ

## ԸՍՏ ՊԱՏՇԱՃԻ ԱՒՈՒՐ

### ՊԱՀՈՑ

ԱՁ. Հոգի քո բարի՝ առաջնորդեսցէ ինձ ՚ի յերկիր ուղիղ ։

Կամ. Վասն անուան քո Տէր՝ կեցուսցես զիս արդարութեամբ քով ։

ԱԿ. Տէր՝ մի սրտմտութեամբ քով յանդիմաներ զիս ։ և մի բարկութեամբ քով խրատեր զիս ։

Կամ. Զգնացս իմ ուղիղ արա ինձ ըստ բանի քում ։ և մի տիրեսցեն ինձ ամենայն մեղք ։

ԲՁ. Սիրտ իմ խռովեցաւ յիս, և երկիւղ մահու անկաւ ՚ի վերայ իմ ։

ԲԿ. Դարձ Տէր՝ և փրկեա զանձն իմ. կեցո զիս Տէր՝ ըստ ողորմութեան քում ։

ԳՁ. Վասն անուան քո Տէր՝ քաւեա ըզմեղս իմ, զի բազում եղեն յոյժ ։

ԳԿ. Ողորմեա ինձ Տէր՝ զի հիւանդ եմ ես ։ բժշկեա զանձն իմ, զի խռովեցան ոսկերք իմ ։

ԴՁ. Յիշեա Տէր՝ զգթութիւնս քո, և զողորմութիւնս քո՝ որք են յաւիտենից ։

կոծ. Զմեղս մանկութեան իմոյ՝ և զանգիտութեան իմոյ մի՛ յիշեր. այլ յիշեա՛ զիս Տէր ըստ ողորմութեան քում՝ վասն քաղցրութեան քոյ. զի քաղցր և ուղիղ ես ։

դկ. Տէ՛ր՝ ողորմութիւն քո յաւիտեան. զգործս ձեռաց քոց մի՛ անտես առներ ։

կոծ. Զմեղս մանկութեան իմոյ՝ և զանգիտութեան իմոյ մի՛ յիշեր. այլ յիշեա՛ զիս Տէր ըստ ողորմութեան քում՝ վասն քաղցրութեան քոյ. զի քաղցր և ուղիղ ես ։

կոծ. Աղաղակեցի առ քեզ Տէր՝ և ասացի, դու ես յոյս և բաժին իմ յերկրին կենդանեաց ։



## ՀԱՐԱԹԸՊԱՀՈՑ

### ԵՐԿՈՒՇԱԲԹԻ ԵՐԵՔՇԱԲԹԻ ՀԻՆԳՇԱԲԹԻ

ԵՐԳ ԱՁ և ԴԿ ԼԻՆԻ ։

ԲՀ. Եկա՛յք ցնծասցուք ՚ի Տէր, աղաղակեսցո՛ւք առ Աստուած փրկիչ մեր ։

ԳՀ. Երգեցէք Տեառն երգ նոր. երգեցէք Տեառն ամենայն երկիր. երգեցէք Տեառն և բա՛րձր արարէք զանուն նորա ։

ԴՀ. Բա՛րձր արարի զընտրեալն ՚ի ժողովրդենէ իմմէ ։ Գտի զԴաւիթ ծառայ իմ, և իւղով սրբով իմով օծի զնա ։

## ԱՂՈՒՀԱՑԻ ԿԻՒՐԱԿԷԻՑ

Աղաղակեցէք առ Տէր ամենայն երկիր. ծառայեցէք, Տեառն ուրախութեամբ։

Մտէք առաջի նորա ցնծութեամբ. ծանիրո՛ւք զի նա է Տէր Աստուած մեր։

Նա՛ արար զմեզ, և ո՛չ մեք էաք. մեք ժողովուրդք և խաշն արօտի նորա։

Մտէք ընդ դրունս նորա խոստովանութեամբ, և օրհնութեամբ ՚ի յարկս նորա։

Խոստովա՛ն եղերուք Տեառն, և օրհնեցէք զանուն նորա։

Քա՛ղցր է Տէր, յաւիտեան է ողորմութիւն նորա. յազգէ մինչև յազգ է ճշմարտութիւն նորա։



## ՅԱՐՈՒԹԵԱՆ

ԱՁ. Դու յարուցեալ գթասցիս ՚ի վերայ Սիոնի. ժամանակ գթալոյ նորա հասեալ է ժամ։

կոչ. Թագաւոր մեծ ՚ի վերայ ամենայն երկրի Աստուած է. սաղմոս ասացէք նմա իմաստութեամբ։

ԱԿ. Օրհնեցէք զՏէր յօրհնութիւն ՚ի նոր. օրհնութիւն նմա յեկեղեցիս սրբոց.

ԲՁ. Ծա՛փս հարէք ամենայն հեթանոսք.

աղաղակեսցէք առ Աստուած 'ի ձայն ցնծութեան:

կաՏ. Աստուա՛ծ՝ դու դարձեալ կեցուսցես զմեզ. և ժողովուրդ քո ուրախ եղիցի 'ի քեզ:

ԲԿ. Արի Տէր Աստուած իմ 'ի հրամանաց քո՝ զոր պատուիրեցեր. և ժողովք ժողովրդոց շուրջ եղիցին զքև. վասն այսորիկ 'ի բարձունս դարձ Տէր:

ԳԶ. Ուրախ եղև Իսրայէլ յարարիչ իւր. որդիք Սիոնի ցնծասցեն 'ի Թագաւորն իւրեանց:

ԳԿ. Եկա՛յք և տեսէք զգործս Աստուծոյ, որպէս զի ահեղ են խորհրդով՝ քան զամենայն որդւոց մարդկան:

ԴԶ. Հաճեցար Տէր ընդ երկիր քո, և դարձուցեր զգերութիւն Յակոբայ:

ԴԿ. Յարեաւ Աստուած՝ և ցրուեսցին ամենայն թշնամիք նորա, փախեան ատելիք նորա յերեսաց նորա:

ԶԱՏԿԻ

Հասեալ կային ոտք մեր առ դրունս քո Երուսաղէմ:

ԶԱՏԿԻ ՅԱՐՈՒԹԵԱՆ ՅԻՆԱՆՑ

ԿԻՐ. }
ԲՂ. } Գովեա՛ Երուսաղէմ զՏէր:

Եւ օրհնեա՛ զԱստուած քո Սիոն ։

Զի զօրացոյց զնիգս դրանց քոց, և օրհնեաց զորդիս քո ՚ի քեզ ։

Որ եդ զսահմանս քո ՚ի խաղաղութիւն · պարարտութեամբ ցորենոյ լցոյց զքեզ ։

Առաքէ զբան իւր յերկիր · վաղվաղ ընթանան պատգամք նորա ։

Դնէ զձիւն որպէս զասր, և զմէգ որպէս փոշի ցանեաց ։

Արկանէ զսառն որպէս պատառս · առաջի ցրտոյ նորա ո՞ կարէ կեալ ։

Առաքէ զբան իւր՝ և հալէ զնոսա · շնչեսցեն հողմք՝ և գնասցեն ջուրք ։

Պատմէ զբան իւր Յակոբայ, զարդարութիւն և զիրաւունս Իսրայէլի ։

Ոչ այսպէս արար ամենայն ազգաց Տէր ։ և զդատաստանս իւր ոչ յայտնեաց նոցա ։

ԲՀ. Գովեա՛ Երուսաղէմ զՏէր ։

ԳՀ. Տէր ՚ի զօրութեան քում ուրախ եղիցի թագաւորն · ՚ի փրկութեան քում ցնծասցէ յոյժ ։

Զցանկութիւն սրտի նորա ետուր նմա · և զկամս շրթանց նորա ոչ արգելեր ՚ի նմանէ ։

Քանզի առաջերզնա յօրհնութիւն քաղցրութեան քո · և եդեր ՚ի գլուխ նորա պսակ ՚ի քարէ պատուականէ ։

Կեանս խնդրեաց ՚ի քէն. և ետուր նմա ընդ երկայն աւուրս՝ յաւիտեանս յաւիտենից ։

Մեծ են փառք նորա ՚ի փրկութեան քում. զփառս մեծվայելչութեան քո դիցես ՚ի վերայ նորա ։

Տացես զնա յօրհնութիւն յաւիտեանս յաւիտենից. և ուրախ արասցես զնա յուրախութեան երեսաց քոց ։

Թագաւոր յուսացաւ ՚ի Տէր, յողորմութենէ բարձրելոյն նա մի սասանեսցի ։

Գտցի ձեռն քո ՚ի վերայ թշնամեաց քոց. և աջ քո գտցէ զամենայն ատելիս քո ։

Դիցես զնոսա որպէս հնոց ՚ի հուր. ՚ի ժամանակի երեսաց քոց ։

Տէր բարկութեամբ իւրով խռովեցուսցէ զնոսա. և հուր կերիցէ զնոսա ։

Զպտուղ նոցա յերկրէ կորիցէ. և զաւակ նոցա յորդւոց ՚ի մարդկանէ ։

Խորհեցան ՚ի քէն չարութեամբ. խորհեցան զխորհուրդ, զոր ոչ կարասցեն հաստատել ։

Արասցես զնոսա հալածեալս՝ ՚ի մնացուածս քո. և պատրաստեսցես զերեսս նոցա ։

Բարձր լեր Տէր ՚ի զօրութեան քում. օրհնեսցուք, և սաղմոս ասասցուք ՚ի զօրութեան քում ։

# ՍՏՈՂՈԳԻՔ

## ՃԻԱԳ ՈՒՐԲԱԹՈՒ

( ԱՌԱՋԻՆ ՍԱՂ , ԿՑ . ԳԼ , ԼԴ : )

Յարեան 'ի վերայ իմ վկայք չարաց . և զոր ինչ ոչ գիտէի՝ հարցանէին ցիս :

Պատեա՛ Տէր զայնոսիկ՝ որք դատեն զիս . մարտեա՛ ընդ այնոսիկ , որք մարտնչին ընդ իս :

( ԵՐԿՐՈՐԴ ՍԱՂ , ԿՑ . ԳԼ , ԼԷ : )

Ես 'ի տանջանս պատրաստ եմ . և ցաւք իմ առաջի իմ են յամենայն ժամ :

Տէր՝ մի սրտմտութեամբ քով յանդիմանե՛ր զիս . և մի բարկութեամբ քով խրատեր զիս :

( ԵՐՐՈՐԴ ՍԱՂ , ԿՑ . ԳԼ , Ի : )

Առնուէր տեսանել զնանրութիւն , խօսէր 'ի սրտի իւրում . և ժողովէր զանօրէնութիւն յանձն իւր :

Երանի որ խորհի զաղքատն և զտնանկն . յաւուր չարի փրկէ զնա Տէր :

( ՉՈՐՐՈՐԴ ՍԱՂ , ԿՑ . ԳԼ , ԻԱ : )

Բաժանեցին զհանդերձս իմ 'ի մէջ իւրեանց . և 'ի վերայ պատմուճանի իմոյ վիճակս արկանէին :

# ՃԱՇՈՒ ՄԱՂԹԱՆԱՑՔ

## ԸՍՏ ՊԱՏՇԱՃԻ ԱՒՈՒՐ



### ՊԱՀՈՑ

ԱՁ․ Հոգի քո բարի՝ առաջնորդեսցէ ինձ 'ի յերկիր ուղիղ ։

Կաֆ․ Վասն անուան քո Տէր՝ կեցուսցես զիս արդարութեամբ քով ։

ԱԿ․ Տէր՝ մի սրտմտութեամբ քով յանդիմաներ զիս ․ և մի բարկութեամբ քով խրատեր զիս ։

Կաֆ․ Օգնեաց ինձ ուղիղ արա ինձ ըստ բանի քում ․ և մի ամօթեսցեն ինձ ամենայն մեղք ։

ԲՁ․ Սիրտ իմ խռովեցաւ յիս , և երկիւղ մահու անկաւ 'ի վերայ իմ ։

ԲԿ․ Դարձ Տէր՝ և փրկեա զանձն իմ․ կեցո՛ զիս Տէր՝ ըստ ողորմութեան քում ։

ԳՁ․ Վասն անուան քոյ Տէր՝ քաւեա՛ ըզմեղս իմ , զի բազում եղեն յոյժ ։

ԳԿ․ Ողորմեա ինձ Տէր՝ զի հիւանդ եմ ես ․ բժշկեա զանձն իմ , զի խռովեցան ոսկերք իմ ։

ԴՁ․ Յիշեա Տէր՝ զգթութիւնս քո , և զողորմութիւնս քո՝ որք են յաւիտենից ։

կաՏ . Օ՛ մեղս մանկութեան իմոյ՝ և զանգիտութեան իմոյ մի՛ յիշեր . այլ յիշեա՛ զիս Տէր ըստ ողորմութեան քում՝ վասն քաղցրութեան քո . զի քաղցր և ուղիղ ես :

ԴԿ . Տէր՝ ողորմութիւն քո յաւիտեան . զգործս ձեռաց քոց մի՛ անտես առներ :

կաՏ . Օ՛ մեղս մանկութեան իմոյ՝ և զանգիտութեան իմոյ մի՛ յիշեր . այլ յիշեա՛ զիս Տէր ըստ ողորմութեան քում՝ վասն քաղցրութեան քո . զի քաղցր և ուղիղ ես :

կաՏ . Ըզղաղակեցի առ քեզ Տէր՝ և ասացի , դու ես յոյս և բաժին իմ յերկրին կենդանեաց :



ՇԱԲԱԹԱՊԱՀՈՑ

ԵՐԿՈՒՇԱԲԹԻ ԵՐԵՔՇԱԲԹԻ ՀԻՆԳՇԱԲԹԻ

Երգ ԱՁ . ԴԿ ԼԻՆԻ :

ԲՀ . Եկա՛յք ցնծասցուք ՚ի Տէր , աղաղակեսցո՛ւք առ Աստուած փրկիչ մեր :

ԳՀ . Երգեցէք Տեառն երգ նոր . երգեցէք Տեառն ամենայն երկիր . երգեցէք Տեառն և բա՛րձր արարէք զանուն նորա :

ԴՀ . Բա՛րձր արարէք զընտրեալն ՚ի ժողովրդենէ իմմէ : Գտի զԴաւիթ ծառայ իմ , և իւղով սրբով իմով օծի զնա :

## ԱՂՈՒՀԱՑԻ ԿԻՒՐԱԿԷԻՑ

Աղաղակեցէք առ Տէր ամենայն երկիր․ ծառայեցէք, Տեառն ուրախութեամբ ։

Մտէք առաջի նորա ցնծութեամբ․ ծաներուք զի նա է Տէր Աստուած մեր ։

Նա արար զմեզ, և ոչ մեք էաք․ մեք ժողովուրդք և խաշն արօտի նորա ։

Մտէք ընդ դրունս նորա խոստովանութեամբ, և օրհնութեամբ 'ի յարկս նորա ։

Խոստովան եղերուք Տեառն, և օրհնեցէք զանուն նորա ։

Քաղցր է Տէր, յաւիտեան է ողորմութիւն նորա․ յազգէ մինչև յազգ է ճշմարտութիւն նորա ։



## ՅԱՐՈՒԹԵԱՆ

ԱՁ․ Դու յարուցեալ գթասցիս 'ի վերայ Սիօնի․ ժամանակ գթալոյ նորա հասեալ է ժամ ։

ԿԱՏ․ Թագաւոր մեծ 'ի վերայ ամենայն երկրի Աստուած է․ սաղմոս ասացէք նմա իմաստութեամբ ։

ԱԿ․ Օրհնեցէք զՏէր յօրհնութիւն 'ի նոր․ օրհնութիւն նմա յեկեղեցիս սրբոց ։

ԲՁ․ Ծափս հարէք ամենայն հեթանոսք,

աղաղակեցէք առ Աստուած 'ի ձայն ցնծութեան :

Կա՛. Աստուա՛ծ՝ դու դարձեալ կեցուսցես զմեզ. և ժողովուրդ քո ուրախ եղիցի 'ի քեզ :

ԲԿ. Արի՛ Տէր Աստուած իմ 'ի հրամանս քո՝ զոր պատուիրեցեր. և ժողովք ժողովրդոց շուրջ եղիցին զքեւ. վասն այսորիկ 'ի բարձունս դա՛րձ Տէր :

ԳՁ. Ուրախ եղև Իսրայէլ յարարիչ իւր. որդիք Սիոնի ցնծասցեն 'ի Թագաւորն իւրեանց :

ԳԿ. Եկա՛յք և տեսէք զգործս Աստուծոյ, որպէս զի ահեղ են խորհրդով՝ քան զամենայն որդւոց մարդկան :

ԴՁ. Հաճեցար Տէր ընդ երկիր քո, և դարձուցեր զգերութիւն Յակովբայ :

ԴԿ. Յարեաւ Աստուած՝ և ցրուեցան ամենայն թշնամիք նորա, փախեան ատելիք նորա յերեսաց նորա :



ԶԱՏԿԻ

Հասեալ կային ոտք մեր առ դրունս քո Երուսաղէմ :



ԶԱՏԿԻ ՅԱՐՈՒԹԵԱՆ ՅԻՆԱՆՑ

ԿԻՐ. } ԲՀ. } Գովեա՛ Երուսաղէմ զՏէր :

Եւ օրհնեա զԱստուած քո Սիովն ։

Զի զօրացոյց զնիգս դրանց քոց , եւ օրհնեաց զորդիս քո 'ի քեզ ։

Եդ զսահմանս քո 'ի խաղաղութիւն . պարարտութեամբ ցորենոյ լցոյց զքեզ ։

Առաքէ զբան իւր յերկիր . վաղվաղակի ընթանան պատգամք նորա ։

Դնէ զձիւն որպէս զասր , եւ զմէգ որպէս զմոխիր ցանեաց ։

Արկանէ զսառն որպէս պատառս . առաջի ցրտոյ նորա ո՞ կարէ կալ ։

Առաքէ զբան իւր՝ եւ հալէ զնոսա . շնչեսցեն հողմք՝ եւ գնասցեն ջուրք ։

Պատմէ զբան իւր Յակոբայ , զարդարութիւն եւ զիրաւունս Իսրայէլի ։

Ոչ այսպէս արար ամենայն ազգաց Տէր . եւ զդատաստանս իւր ոչ յայտնեաց նոցա ։

ԲՀ . Գովեա Երուսաղէմ զՏէր ։

ԳՀ . Տէր 'ի զօրութեան քում ուրախ եղիցի թագաւորն . 'ի փրկութեան քում ցնծասցէ յոյժ ։

Զցանկութիւն սրտի նորա ետուր նմա . եւ զկամս շրթանց նորա ոչ արգելեր 'ի նմանէ ։

Քանզի առաջեր զնա յօրհնութիւն քաղցրութեան քո . եւ եդեր 'ի գլուխ նորա պսակ 'ի քարէ պատուականէ ։

Որպէս խնդրեաց 'ի քէն. և ետուր նմա ընդերկայն աւուրս՝ յաւիտեանս յաւիտենից :

Մեծ են փառք նորա 'ի փրկութեան քում. զփառս մեծվայելչութեան քո դիցես 'ի վերայ նորա :

Տացես զնա յօրհնութիւն յաւիտեանս յաւիտենից. և ուրախ արասցես զնա յուրախութեան երեսաց քոց :

Թագաւոր յուսացաւ 'ի Տէր, յողորմութենէ բարձրելոյն նա մի սասանեսցի :

Գտցի ձեռն քո 'ի վերայ թշնամեաց քոց. և աջ քո գտցէ զամենայն ատելիս քո :

Դիցես զնոսա որպէս հնոց 'ի հուր. 'ի ժամանակի երեսաց քոց :

Տէր բարկութեամբ իւրով խռովեցուսցէ զնոսա. և հուր կերիցէ զնոսա :

Զպտուղ նոցա յերկրէ կորիցէ. և զաւակ նոցա յորդւոց 'ի մարդկանէ :

Խոտորեցան 'ի քէն չարութեամբ. խորհեցան զխորհուրդ, զոր ո՛չ կարասցեն հաստատել :

Արասցես զնոսա հալածեալս՝ 'ի մնացուածս քո. և պատրաստեսցես զերեսս նոցա :

Բարձր լեր Տէր 'ի զօրութեան քում. օրհնեսցուք, և սաղմոս ասասցուք 'ի զօրութեան քում :

ԴՀ. «Քեզ վայելէ օրհնութիւն Աստուած՝ 'ի Սիովն. և քեզ տացին աղօթք յԵրուսաղէմ:»

ԽՀ. «Տէր ով կացցէ 'ի խորանի քում. կամ ով բնակեսցէ 'ի լերան սուրբ քո:»

ՈԽՐ. «Տէր թագաւորեաց զվայելչութիւն զգեցաւ. զգեցաւ Տէր զօրութիւն ընդ մէջ իւր էած:»

ՀԲ. Ցնծացէք առ Աստուած, օգնական է մեր. աղաղակեցէք առ Աստուած Յակովբայ:

Առէք սաղմոս, և տուք օրհնութիւն. սաղմոս ասացէք նմա 'ի ձայն քաղցրութեան:

Փող հարէք 'ի գլուխս ամսոց, յաւուր նշանաւորի տարեկանաց մերոց:

Հրաման է այս Իսրայէլի, և իրաւունք են Աստուծոյ Յակովբայ:

Վկայութիւնն Յովսեփու՝ զոր եդ ընդ նմա. որպէս ելանէր նա յերկրէն Եգիպտացւոց, լեզու զոր ոչ գիտէր՝ լուաւ:

'Ի բաց արար 'ի բեռանց զթիկունս նորա. և զձեռս նորա յորթ և 'ի թիւ ծառայելոյ:

'Ի նեղութեան կարդացեր առ իս՝ և փրկեցի զքեզ. լուայ քեզ 'ի դաղտնութենէ մրրկին, և փորձեցի զքեզ 'ի վերայ Ջուրցն Հակառակութեան:

Լուր ժողովուրդ իմ՝ և վկայեմ քեզ. և Իսրայէլ՝ թէ լուիցես ինձ։

Մի՛ եւս եղիցին քեզ աստուածք առ ժամայնք. և մի՛ երկիրպագանիցես դու աստուծոյ օտարի։

Ես եմ Տէր Աստուած քո՝ որ հանի զքեզ յերկրէն Եգիպտացւոց. բա՛ց զբերան քո՝ և լցից զդա։

Ժողովուրդ իմ ոչ լուաւ ձայնի իմում, և Իսրայէլ յիս ինչ ոչ նայեցաւ։

Արձակի թողի զնոսա երթալ զհետ կամաց սրտից իւրեանց. զի գնացին նոքա ըստ կամս անձանց իւրեանց։

Օ՜ ի թէ ժողովրդեանն իմոյ լուեալ էր ինձ, կամ Իսրայէլ ի ճանապարհս իմ գնացեալ էր։

Որպէս զոչինչ՝ խոնարհ արարեալ էր իմ զթշնամիս նորա, և 'ի վերայ նեղչաց նորա արկեալ էր զձեռն իմ։

Թշնամիք Տեառն ստեցին նմա, և եղիցին ժամանակք նոցա յաշխարհի։

Կերակրեաց զնոսա 'ի պարարտութենէ ցորենոյ, և 'ի վիմէ մեղր յագեցոյց նոսա։



## ՆՈՐ ԿԻՒՐԱԿԷԻ

Գովեա՛ Երուսաղէմ զՏէր.
Եւ օրհնեա՛ զԱստուած քո Սիոն։

## ՀԱՄԲԱՐՁՄԱՆԷ՛Ն
### ՄԻՆՉ
## Ց'ՀՈԳԵԳԱԼՈՒՍՏ
### ՏԱՍՆ ԱՒՈՒՐՑ

Համբարձէք իշխանք զդրունս ձեր 'ի վեր . Համբարձցին դրունք յաւիտենից , և մտցէ Թագաւոր փառաց ։

Ոմանք զփոխն ըման ասեն .

Տեառն է երկիր լրիւ իւրով . աշխարհ՝ և ամենայն բնակիչք Նորա ։

Նա ինքն 'ի վերայ ծովու հիմունս էարկ նմա , 'ի վերայ գետոց պատրաստեաց զնա ։

Ո՞վ ելցէ 'ի լեառն Տեառն . կամ ո՞վ կացցէ 'ի տեղւոջ սրբութեան Նորա ։

Որ սուրբ է ձեռօք և անբիծ սրտիւ . որ ո՛չ էառ զնանրութիւն յանձն իւր . և ո՛չ երդուաւ ընդ ընկերի իւրում նենգութեամբ ։

Սա առցէ զօրհնութիւն 'ի Տեառնէ . զողոր-մութիւն յԱստուծոյ փրկչէ իւրմէ ։

Այս ազգ է՝ որ խնդրէ զՏէր , խնդրէ տե-սանել զերեսս Աստուծոյ Յակոբայ ։

Համբարձէք իշխանք զդրունս ձեր 'ի վեր . Համբարձցին դրունք յաւիտենից , և մտցէ Թագաւոր փառաց ։

Ո՞վ է սա Թագաւոր փառաց . Տէր հզօր զօրութեամբ իւրով . Տէր հզօր 'ի պատե-րազմի ։

Համբարձէք իշխանք զդրունս ձեր 'ի վեր. Համբարձցին դրունք յաւիտենից, և մտցէ Թագաւոր փառաց։

Ո՞վ է սա Թագաւոր փառաց. Տէր զօրութեանց՝ սա ինքն է Թագաւոր փառաց։



ՀՈԳԻՈՅ ԳԱԼՍՏԵԱՆ

ԿԻՐ, Ողորմութեամբ Տեառն լի եղև երկիր, և Բանիւ Տեառն երկինք հաստատեցան. և Հոգւով բերանոյ նորա ամենայն զօրութիւնք նոցա։

ԲՂ. Եկա՛յք ցնծասցուք 'ի Տէր, աղաղակեսցո՛ւք առ Աստուած փրկիչ մեր։

ԳՂ. Երգեցէք Տեառն երգ նոր. ծառայեցէք Տեառն ուրախութեամբ։

ԴՂ. Վասն անուան քո Տէր՝ կեցուսցես զիս, արդարութեամբ քով հանցես 'ի նեղութենէ զանձն իմ։

ԽՂ. Ողորմեա՛ ինձ Տէր զի հիւանդ եմ ես. բժշկեա՛ զանձն իմ, զի խռովեցան ոսկերք իմ։

ՈԻՐ. Յիշեա՛ Տէր՝ զգթութիւնս քո, և զողորմութիւնս քո՝ որք են յաւիտենից։

ՂԲ. Յ Եկեղեցիս օրհնեցէք զԱստուած, և զՏէր յաղբերացն Իսրայէլի։

## ՏԱՂԱՆԴԱԿԻ

Արի Տէր ՚ի հանգիստ քո՝ դու և տապանակ կտակի սրբութեան քո ։



## ՊԱՅԾԱՌԱԿԵՐՊՈՒԹԵԱՆ

ԿԻՐ ․ Ամպ լուսաւոր հովանի լինէր նոցա ․ ձայն եղև յամպոյն՝ որ ասէ , դա է Որդի իմ սիրելի ընդ որ հաճեցայ ։

ԲՀ ․ Խորհրդութիւնք լերանց նորա են ․ նորա է ծով՝ և նա արար զնա , և զցամաքս ձեռք նորա ստեղծին ։ Եկայք երկիրպագցուք նմա ․ անկցուք և լացցուք առաջի Տեառն արարչին մերոյ ։

ԳՀ ․ Քո են երկինք՝ և քո է երկիր ․ զաշխարհս լրիւ իւրով դու հաստատեցեր ։ Ըզհիւսիս և զծովս դու արարեր ․ Թաբօր և Ահերմոն յանուն քո ցնծասցեն ։



## ՆԱԽԱԿԱՏԵԱՑ ԽԱՉԻ ԵՒ ԵԿԵՂԵՑԻՈՅ

ՀԲ ․ Ընտրեաց Տէր զՍիոն , և ընտրեաց բնակել ՚ի նմա ․ ասէ՝ այս է հանգիստ իմ յաւիտեանս յաւիտենից ․ ՚ի սմա բնակեցայց՝ զի հաճեցայ ընդ սա ։

ԿԻՐ. Տուր զօրութիւն ծառայի քո. կեցո́ զորդի աղախնոյ քո. և արա́ առ իս նշան բարութեան ։

ԲՇ. Ետուր երկիւղածաց քոց նշան, զի ապրեսցին յերեսաց աղեղան ։

ԳՇ. Սիրեաց Տէր զՍիոն, և ընտրեաց բնակել 'ի նմա. ասէ՝ այս է հանգիստ իմ յաւիտեանս յաւիտենից. 'ի սմա բնակեցայց՝ զի հաճեցայ ընդ սա ։

ԴՇ. Տէր սիրեցի զվայելչութիւն տան քո, և զտեղի յարկի փառաց քոց ։

ԵՇ. Որպէս սիրելիք են յարկք քո Տէր զօրութեանց. ցանկայ և փափագէ անձն իմ 'ի գաւիթս քո ։ Սիրտ իմ և մարմին իմ՝ ցնծացէ առ Աստուած կենդանի ։

ՈՒՐ. Ետուր երկիւղածաց քոց նշան, զի ապրեսցին յերեսաց աղեղան ։

ՇԲ. Որպէս փրկեսցան սիրելիք քո. կեցո́ աջով քո, և լո́ւր մեզ ։

ԵԿԵՂԵՑԻՈՅ

Հիմունք նորա 'ի լեառն սուրբ նորա. սիրէ Տէր զդրունս Սիոնի առաւել քան զամենայն յարկսն Յակովբայ ։

ԵԻՍ

Փառաւորեալն խօսեցաւ վասն քո, ա-հաւադիկ քաղաքդ Աստուծոյ ։

ԵԻԹ

Տէր ո՞վ կացցէ ՚ի խորանի քում․ կամ ո՞վ բնակեսցի ՚ի լերան սուրբ քո ։

Որ գնայ անբիծ, գործէ զարդարութիւն․ խօսի զճշմարտութիւն ՚ի սրտի իւրում ։

ԽԱՉԻ

Նշանեցաւ առ մեզ լոյս երեսաց քոց․ և ետուր ուրախութիւն սրտից մերոց ։

ՎԵՐԱՓՈԽՄԱՆ
ԻՆՆ ԱԻՈՒՐՑ

Ըստ ցուցակի Տօնացուցին ։

ԿԻՐ․ Այսօր ծնաւ որ ՚ի Հօրէ յառաջ քան զյաւիտեանս Որդին․ որ է օծեալ Տէր ՚ի քաղաքի Դաւթի ։ ՚Ի վայելչութիւն սրբոց քոց՝ յարգանդէ յառաջ քան զարուսեակ ծնայ զքեզ ։

ԲՀ․ Ուրախ լեր բերկրեալդ Տէր ընդ քեզ․ օրհնեալ ես դու ՚ի կանայս․ և օրհնեալ է պտուղ որովայնի քո ։

ԳՀ․ Արի Տէր ՚ի հանգիստ քո․ դու և տապանակ կտակի սրբութեան քո ։

ԱՒԵՏԵԱՑ ԱՍՏՈՒԱԾԱԾՆԻ

Ուրախ լեր բերկրեալդ Տէր ընդ քեզ․ օրհնեալ ես դու ՚ի կանայս․ և օրհնեալ է պտուղ որովայնի քո ։

## ՃՐԱԳԱԼՈՒՑԻ ԾՆՆԴԵԱՆ

Հոգին սուրբ եկեսցէ ՚ի քեզ. և զօրութիւն բարձրելոյն հովանասցի քեզ։

---

## ԾՆՆԴԵԱՆ

### ԸՍՏ ՈՒԹ ԱՒՈՒՐՑ

Ա. Այսօր ծնաւ որ ՚ի Հօրէ յառաջ քան զյաւիտեանս Որդին. որ է օծեալ Տէր ՚ի քաղաքի Դաւթի։ ՚Ի վայելչութիւն սրբոց քոց՝ յարգանդէ յառաջ քան զարուսեակ ծնայ զքեզ։

Բ. Հոգւով սրբով զօրացեալ սուրբ Ստեփաննոս. և ընտրեալ յորովայնէ. Ճշմարիտ վկայ. սիրող և առաքեալ առաքողին. ՚ի ՔՐԻՍՏՈՍԷ ընկալար զզուարթնոցն պսակ։

Գ. Կարապետն Յովհաննէս զարհուրեալ՝ ՚ի յորովայնէ յորովայն երկրպագէր. սպասաւոր եղև Բանին Աստուծոյ. և լուեալ զահաւոր զձայնն՝ աղաղակէր ասելով, ահա Գառն Աստուծոյ որ բառնայ զմեղս աշխարհի։

Դ. Ուրախ լեր բերկրեալդ Տէր ընդ քեզ՝ օրհնեալ ես դու ՚ի կանայս. և օրհնեալ է պտուղ որովայնի քո։

Ե. Դու մանուկ՝ մարգարէ բարձրելոյն

կոչեսջիր · գնասցես առաջի Տեառն՝ պատրաստել զճանապարհս նորա ։

Զ · Եհան զիս 'ի գբոյ տառապանաց, 'ի կաւոյ և 'ի տղմոյ ։ Հաստատեաց 'ի վերայ վիմի զոտս իմ · և ուղղեաց զգնացս իմ ։

կաճ · Դու ես քահանայ յաւիտեան ըստ կարգին Մելքիսեդեկի · և Տէր ընդ աջմէ քումմէ ։

Է · Երդուաւ Տէր Դաւթի ճշմարտութեամբ՝ և ոչ ստեաց նմա, 'ի պտղոյ որովայնի նորա նստուցանել յաթոռ նորա ։

Ը · Ուրախ լեր բերկրեալդ Տէր ընդ քեզ · օրհնեալ ես դու 'ի կանայս · և օրհնեալ է պտուղ որովայնի քո ։



## ՏԵԱՌՆ ԸՆԴ ԱՌԱՋԻ

Տէր 'ի տաճար սուրբ իւրում · Տէր յերկինս յաթոռ իւրում ։



## ՄԵԾԻ ՈՂՈԳՈՄԵԱՆՆ
ՈՐ Է
## ԾԱՂԿԱԶԱՐԴԻ

Տէր Աստուած մեր երևեցաւ մեզ · արարէք տօնս ուրախութեան կանխաւ, մինչև յանկիւնս սեղանոյ ։

## ՀՐԵՇՏԱԿԱՊԵՏԱՑ

Ողորմութեամբ Տեառն լի եղև երկիր, և Բանիւ Տեառն երկինք հաստատեցան • և Հոգւով բերանոյ նորա ամենայն զօրութիւնք նոցա ։

## ՅՈՎՀԱՆՆՈՒ ԿԱՐԱՊԵՏԻՆ

Դու մանուկ՝ մարգարէ բարձրելոյն կոչեսջիր • գնասցես առաջի Տեառն՝ պատրաստել զճանապարհս նորա ։

## ՅՈՎՀԱՆՆՈՒ ԳԼԽԱՏՄԱՆ

Կարապետն Յովհաննէս զարհուրեալ՝ 'ի յորովայնէ յորովայն երկրպագէր • սպասաւոր եղև Բանին Աստուծոյ • և լուեալ զահաւոր զձայնն՝ աղաղակէր ասելով, ահա Գառն Աստուծոյ որ բառնայ զմեղս աշխարհի ։

## ՄԱՐԳԱՐԷԻՑ

Յեկեղեցիս օրհնեցէք զԱստուած, և զՏէր յաղբերացն Իսրայէլի ։

## ԱՌԱՔԵԼՈՑ

Կացուսցես զնոսա իշխանս ընդ ամենայն երկիր • և յիշեսցի անուն քո ընդ ամենայն ազգս ազգաց ։

Ընդ ամենայն երկիր ել բարբառ նոցա , և մինչև 'ի ծագս աշխարհի են խօսք նոցա ։

## ԴԱՒԹԻ ԵՒ ՅԱԿՈՎԲԱՅ

Յիշեա Տէր զԴաւիթ , և զամենայն հեզութիւն նորա ։

## ՆԱԽԱՀԱՐՑ

Պատմէ զբան իւր Յակովբայ , զարդարութիւն և զիրաւունս Իսրայէլի ։

## ԼՈՒՍԱՒՈՐՉԻ

Համբերելով համբերի Տեառն , և նայեցաւ առիս · և լուաւ աղօթից իմոց ։

## ՀԱՅՐԱՊԵՏԱՑ ԵՒ ՎԱՐԴԱՊԵՏԱՑ

Քահանայք քո զգեցցին զարդարութիւն · և սուրբք քո ցնծալով ցնծասցեն ։

## ՃԳՆԱՒՈՐԱՑ

Երանելի են որք բնակեալ են 'ի տան Տեառն · յաւիտեանս յաւիտենից օրհնեսցեն զքեզ ։

## ԿՈԽՍԱՆԱՑ

Կացցէ դշխոյ ընդ աջմէ քումմէ՝ ՚ի հանդերձս ոսկեհուռս զարդարեալ և պաճուճեալ ։ Տարցին թագաւորի կուսանք զհետ նորա՝ և զընկերս նորա տարցին նմա ։

## ԹԱԳԱՒՈՐԱՑ

Տէր ՚ի զօրութեան քում ուրախ եղիցի թագաւորն ․ ՚ի փրկութեան քում ցնծասցէ յոյժ ։

## ՔԱՌԱՍՆԻՑ ԵՒ ԵՐԿՈՒՑ ԲԻՒՐՈՑ

Անցաք մեք ընդ հուր և ընդ ջուր , և հաներ զմեզ ՚ի հանգիստ ։

## ԱՒԱԳ ՀԻՆԳՇԱԲԱԹԻ

Պատրաստ արարեր առաջի իմ զսեղան՝ ակն յանդիման նեղչաց իմոց ։

## ԱՅԳՈՒՑ

Ընդ երեկոյս հանգիցեն լալիք ․ առաւօտու եղիցի ուրախութիւն ։

## ՄԱՐՏԻՐՈՍԱՑ

ԱՁ․ Տէր սիրէ զիրաւունս ․ և ոչ ընդ վայր հարկանէ զսուրբս իւր ․ այլ յաւիտեան պահէ զնոսա ։

կամ. փրկութիւն արդարոց 'ի Տեառնէ է. վերակացու է նոցա 'ի ժամանակս նեղութեան ։

ԱԿ. Պարծեսցին սուրբքն փառօք՝ և ցընծասցեն 'ի հանգիստ իւրեանց. և բարձր արասցեն զԱստուած բերանօք իւրեանց ։

կամ. Լոյս ծագեաց արդարոց. ուղղոց սըրտից եղև ուրախութիւն ։

ԲՁ. Պարծեսցին սուրբքն փառօք՝ և ցընծասցեն 'ի հանգիստ իւրեանց՝ և բարձր արասցեն զԱստուած բերանօք իւրեանց ։

ԲԿ. Կարդացին արդարքն առ Տէր. և Տէր լուաւ նոցա. յամենայն նեղութենէ նոցա փրկեաց զնոսա ։

ԳՁ. Վասն քո մեռանիմք զօրհանապազ. համարեցաք որպէս զոչխար 'ի զենումն ։

ԳԿ. Ուրախ լիցին ամենեքեան՝ որք յուսացեալ են 'ի քեզ. յաւիտեան ցնծասցեն. և բնակեսցիս դու 'ի նոսա ։

ԴՁ. Արդարքն որպէս զարմաւենիս ծաղկեսցին. որպէս զմայրսն Լիբանանու բազումք եղիցին ։

ԴԿ. Բազում նեղութիւնք են արդարոց. յամենայնէ փրկէ զնոսա Տէր. և պահէ զամենայն ոսկերս նոցա. և մի 'ի նոցանէ ոչ կորիցէ ։

Ապա ընթեռնանի սուրբ Աւետարանն ըստ պատշաճի աւուրն ըստ ցուցակի Տօնացուցին։ Եւ յետոյ ասի հանգանակ հաւատոյ։

**Փառք քեզ Տէր Աստուած մեր։**

# ՀԱՆԳԱՆԱԿ
## ՀԱՒԱՏՈՅ
### ԵՐԵՔ ՀԱՐԻՒՐ ՏԱՍՆ ԵՒ ՈՒԹ ՀԱՅՐԱՊԵՏԱՑ ՆԻԿԻՈՅ ՍՈՒՐԲ ԺՈՂՈՎՈՅՆ

Հաւատամք ՚ի մի Աստուած Հայրն ամենակալ· յարարիչն երկնի և երկրի· երևելեաց և աներևութից։ Եւ ՚ի մի Տէր Յիսուս Քրիստոս Որդին Աստուծոյ· ծնեալն յԱստուծոյ Հօրէ միածին· այսինքն յէութենէ Հօր։ Աստուած յԱստուծոյ· Լոյս ՚ի Լուսոյ· Աստուած ճշմարիտ· յԱստուծոյ ճշմարտէ։ Ծնունդ և ոչ արարած։ Նոյն ինքն ՚ի բնութենէ Հօր· որով ամենայն ինչ եղև յերկինս և ՚ի վերայ երկրի· երևելիք և աներևոյթք։ Որ յաղագս մեր մարդկան, և վասն մերոյ փրկութեան՝ իջեալ ՚ի յերկնից՝ մարմնացաւ, մարդացաւ, ծնաւ կատարելապէս ՚ի Մարիամայ սրբոյ կուսէն Հոգւովն սրբով։ Որով էառ զմարմին, զհոգի, և զմիտ· և զամենայն որ ինչ է ՚ի մարդ· ճշմարտապէս և ոչ կարծեօք։ Չարչարեալ, խաչեալ, թաղեալ· յերրորդ աւուր յարուցեալ·

ելեալ 'ի յերկինս նովին մարմնովն նստաւ ընդ աջմէ Հօր ։ Գալոց է նովին մարմնովն և փառօք Հօր 'ի դատել զկենդանիս և զմեռեալս ․ որոյ թագաւորութեանն ոչ գոյ վախճան ։ Հաւատամք և 'ի սուրբ Հոգին ․ յանեղն և 'ի կատարեալն ։ Որ խօսեցաւ յօրէնս և 'ի Մարգարէս և յԱւետարանս ։ Որ էջն 'ի Յորդանան ․ քարոզեաց զառաքեալն ․ և բնակեցաւ 'ի սուրբսն ։ Հաւատամք և 'ի մի միայն ընդհանրական և յառաքելական Եկեղեցի ։ 'Ի մի մկրտութիւն ․ յապաշխարութիւն ․ 'ի քաւութիւն և 'ի թողութիւն մեղաց ։ 'Ի յարութիւն մեռելոց ․ 'ի դատաստանն յաւիտենից ․ Հոգւոց և մարմնոց ։ Յարքայութիւն երկնից և 'ի կեանսն յաւիտենականս ։

Իսկ որք ասեն՝ էր երբեմն, յորժամ ոչ էր Որդի ․ կամ էր երբեմն, յորժամ ոչ էր սուրբ Հոգի ․ կամ թէ՝ յոչէից եղեն ․ կամ յայլմէ էութենէ ասեն լինել զՈրդին Աստուծոյ՝ և կամ զսուրբ Հոգին ։ և թէ՝ փոփոխելիք են կամ այլայլելիք ․ զայնպիսիսն նզովէ կաթուղիկէ և առաքելական Եկեղեցի ։

ՅԵՏ ԺՈՂՈՎՈՅՆ ՆԻԿԻՈՅ

'Ի ՍՐԲՈՅՆ

ԳՐԻԳՈՐԷ ԼՈՒՍԱՒՈՐՉԷՆ ՄԵՐՄԷ ԱՍԱՑԵԱԼ

Իսկ մեք փառաւորեսցուք ․ որ յառաջ քան զյաւիտեանս ․ երկրպագանելով սրբոյ

Երրորդութեանն և միոյ Աստուածութեանն Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ, այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. Ամէն:

## ՔԱՐՈԶ

Եւ ևս խաղաղութեան զՏէր աղաչեսցուք:

Եւ ևս հաւատով աղաչեսցուք և խնդրեսցուք 'ի Տեառնէ Աստուծոյ և 'ի փրկչէն մերմէ ՅԻՍՈՒՍԷ ՔՐԻՍՏՈՍԷ 'ի ժամուս պաշտաման և աղօթից: Զի արժանի ընդունելութեան արասցէ, լուիցէ Տէր ձայնի աղաչանաց մերոց: Ընկալցի զխնդրուածս սրտից մերոց. Թողցէ զյանցանս մեր. ողորմեսցի 'ի վերայ մեր: Աղօթք մեր և խնդրուածք յամենայն ժամ մտցեն առաջի մեծի Տէրութեան նորա: Եւ նա տացէ մեզ միաբան միով հաւատով և արդարութեան վաստակիլ 'ի գործս բարեաց: Զի զողորմութեան զշնորհն իւր՝ արասցէ 'ի վերայ մեր Տէրն ամենակալ. կեցուսցէ և ողորմեսցի: Զժամս և զառաջիկայ օրս խաղաղութեամբ՝ անցուցանել հաւատով. 'ի Տեառնէ խնդրեսցուք:" Զհրեշտակ խաղաղութեան պահապան անձանց մերոց. 'ի Տեառնէ խնդրեսցուք:" Զքաւութիւն և զթողութիւն յանցանաց մերոց. 'ի Տեառնէ խնդրեսցուք:" Զսրբոյ խաչին մեծ և կարող զօրութիւն յօգնութիւն անձանց մերոց. 'ի

Տեառնէ խնդրեսցո՛ւք ։" Եւ եւս միաբան վասն ճշմարիտ և սուրբ հաւատոյս մերոյ ․ զՏէր աղաչեսցո՛ւք ։" Զանձինս մեր և զմիմեանս Տեառն Աստուծոյ ամենակալին յանձն արասցո՛ւք ։" Ողորմեաց մեզ Տէր Աստուած մեր՝ ըստ մեծի ողորմութեան քում ․ ասասցո՛ւք ամենեքեան միաբանութեամբ ։

Տէր ողորմեա՛ ․ Տէր ողորմեա՛ ․ Տէր ողորմեա՛ ։

## ԱՂՕԹՔ

Տէր մեր և փրկիչ ՅԻՍՈՒՍ ՔՐԻՍՏՈՍ ․ որ մեծդ ես ողորմութեամբ և առատ պարգևօք բարերարութեան քո ։ Որ դու քոյին կամաւըդ ՚ի ժամուս յայսմիկ համբերեցեր չարչարանաց խաչի և մահու՝ յաղագս մեղաց մերոց ։ Եւ պարգևեցեր առատապէս զպարգևս Հոգւոյդ սրբոյ երանելի առաքելոցն ։ Հաղորդըս արա և զմեզ Տէր աղաչեմք զքեզ՝ Աստուածային պարգևացդ ․ թողութեան մեղաց և ընդունելութեան Հոգւոյդ սրբոյ ։ Որպէս զի՝ արժանաւորք եղիցուք գոհութեամբ փառաւորել զքեզ ընդ Հօր և ընդ սրբոյ Հոգւոյդ , այժմ և միշտ և յաւիտեանս յաւի" ։

Խաղաղութի՛ւն ամենեցուն ։

Խաղաղութեամբ քով ՔՐԻՍՏՈՍ փրկիչ մեր ․ որ ՚ի վեր է քան զամենայն միտս և զբանըս ․ ամրացո՛ զմեզ և աներկիւղ պահեա՛ յամե-

նայն չարէ ։ Հաւատարեա՛ զմեզ ընդ ճշմարիտ երկրպագուս քո . որք հոգւով և ճշմարտութեամբ քեզ երկիրպագանեն ։ Վասն զի՝ ամենասուրբ Երրորդութեանդ վայելեն փառք իշխանութիւն և պատիւ , այժմ և միշտ և" ։

Օրհնեալ Տէր մեր ՅԻՍՈՒՍ ՔՐԻՍՏՈՍ . Տէր Աստուած օրհնեսցէ զամենեսեանդ . Ամէն ։

Հա՛յր մեր որ յերկինս ես . սո՛ւրբ եղիցի անուն քո ։ Եկեսցէ արքայութիւն քո . եղիցին կամք քո որպէս յերկինս և յերկրի ։ Զհաց մեր հանապազորդ տո՛ւր մեզ այսօր ։ Եւ թո՛ղ մեզ զպարտիս մեր , որպէս և մեք թողումք մերոց պարտապանաց ։ Եւ մի՛ տանիր զմեզ 'ի փորձութիւն , այլ փրկեա՛ զմեզ 'ի չարէ ։ Զի քո է արքայութիւն և զօրութիւն և փառք յաւիտեանս . Ամէն ։

Դպիրն . Միայն սուրբ . միայն Տէր . ՅԻՍՈՒՍ ՔՐԻՍՏՈՍ 'ի փառս Աստուծոյ Հօր . Ամէն ։

Քահանայն . Օրհնեալ Հայր սուրբ՝ Աստուած ճշմարիտ ։

Դպիրն . Ամէն ։

Քահանայն . Օրհնեալ Որդին սուրբ՝ Աստուած ճշմարիտ ։

Դպիրն . Ամէն ։

Քահանայն . Օրհնեալ Հոգին սուրբ՝ Աստուած ճշմարիտ ։

Դպիրք. Ամէն ։

Քահանայն ։ Օրհնութիւն և փառք Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ , այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից . Ամէն ։

Դպիրն . Հայր սուրբ ։ Որդի սուրբ ։ Հոգի սուրբ ։

Քահանայն . Օրհնութիւն Հօր և Որդւոյ և սրբոյ Հոգւոյն , այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից . Ամէն ։

Դպիրն . Եղիցի անուն Տեառն օրհնեալ յայսմ հետէ մինչև յաւիտեան ։

Երիցս կրկնեա՛ ։

Քահանայն . Կատարումն օրինաց և մարգարէից դու ես ՔՐԻՍՏՈՍ Աստուած փրկիչ մեր . որ լցեր զամենայն հայրական տնօրէնութիւնս քո . լից և զմեզ Հոգւովդ քով սրբով ։

Սարկաւագն . Օրհնեցէք զՏէր յամենայն ժամ . յամենայն ժամ օրհնութիւն նորա 'ի բերան իմ ։

Քահանայն . Օրհնեալ եղերուք 'ի շնորհաց սրբոյ Հոգւոյն . երթա՛յք խաղաղութեամբ և Տէր եղիցի ընդ ձեզ և ընդ ամենեսեանդ . Ամէն ։

# ՕՐՀՆՈՒԹԻՒՆ ՍԵՂԱՆՈՅ

ՎԱՍՆ

## ՄԱՐՄՆԱՒՈՐ ԿԵՐԱԿՐՈՑ ԵՒ ԸՄՊԵԼԵԱՑ



Պատրաստեն զսեղանն հացիւ , և շարադրեն կերակուրս · և կանգնին իւրաքանչիւրք 'ի տեղիս իւրեանց · և գայ Իշխանաւորն , կամ Քահանայն , և ասէ , ՍԱՂՄՈՍ կցուրդ ·

## ՍԱՂՄՈՍ

Իշխանաւորն · կամ · Քահանայն · Ընդ ամենեցուն 'ի քեզ յուսան , և դու տաս կերակուր նոցա 'ի ժամու ։

Դպիրն · Բարձր արարեմ զքեզ Աստուած իմ և թագաւոր իմ, և օրհնեմ զանուն քո յաւիտեան՝ և յաւիտեանս յաւիտենից ։

Զօրհանապազ օրհնեցից զքեզ , և գովեցից զանուն քո յաւիտեան՝ և յաւիտեանս յաւիտենից ։

Մեծ է Տէր և օրհնեալ է յոյժ , և մեծութեան նորա ո՛չ գոյ չափ ։

Ազգք և ազգք գովեսցեն զգործս քո , և զզօրութիւնս քո պատմեսցեն ։

Զմեծվայելչութիւն փառաց սրբութեան քո խօսեսցին , և զսքանչելիս քո պատմեսցեն ։

Զզօրութիւն ահի քո ասասցեն , և զմեծութիւնս քո պատմեսցեն ։

Զյիշատակ բազում քաղցրութեան քո բղխեսցեն, և արդարութեամբ քո ցնծասցեն։

Գթած ողորմած է Տէր, երկայնամիտ և բազումողորմ։

Քաղցր է Տէր առ ամենեսեան, և գթութիւն նորա ՚ի վերայ ամենայն արարածոց իւրոց։

Խոստովան եղիցին առ քեզ Տէր ամենայն գործք քո․ և սուրբք քո օրհնեսցեն զքեզ։

Զփառս արքայութեան քո ասասցեն, և զզօրութիւնս քո պատմեսցեն։

Ծանուցել որդւոց մարդկան զզօրութիւնս քո, և զփառս մեծվայելչութեան արքայութեան քո։

Արքայութիւն քո արքայութիւն ամենայն յաւիտենից․ և Տէրութիւն քո յազգ է մինչև յազգ։

Հաւատարիմ է Տէր յամենայն բանս իւր, և արդար է յամենայն գործս իւր։

Հաստատէ Տէր զամենայն գայթակղեալս, և կանգնէ զամենայն գլորեալս։

Աչք ամենեցուն ՚ի քեզ յուսան, և դու տաս կերակուր նոցա ՚ի ժամու։

Տաս դու նոցա և կերակրես, բանաս զձեռն քո, և լցուցանես զամենեսեան քաղցրութեամբ կամօք քովք։

Արդա՛ր է Տէր յամենայն ճանապարհս իւր, և սուրբ է յամենայն գործս իւր ։

Մե՛րձ է Տէր առ ամենեսեան՝ որք կարդան առ նա, առ ամենեսեան՝ որք կարդան առ նա ճշմարտութեամբ ։

Զկամս երկիւղածաց իւրոց առնէ Տէր․ աղօթից նոցա լսէ և կեցուցանէ զնոսա

Պահէ Տէր զամենեսեան որք սիրեն զնա, և զամենայն մեղաւորս սատակէ Տէր ։

Զօրհնութիւնս Տեառն խօսեսցի բերան իմ․ օրհնեսցէ ամենայն կենդանի զանուն սուրբ նորա յաւիտեան, և յաւիտեանս յաւիտենից ։

Փառք Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ․

Այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից" ։

Քահանայն․ Ողորմած գթած է Տէր․ կերակուր տայ երկիւղածաց իւրոց ։

Սարկաւագն․ Եւ ևս խաղաղութեան զՏէր աղաչեսցո՛ւք ։

Աղաչեսցո՛ւք զամենակալն Աստուած՝ զի պարգևեսցէ մեզ կերակուր ուրախութեան, և լցուսցէ զսիրտս մեր ՚ի լնութենէ արարածոց իւրոց ։ Ամենակալ Տէր Աստուած մեր" ։

Քահանայն․ Օրհնեա՛ ՔՐԻՍՏՈՍ Աստուած մեր հոգևոր օրհնութեամբ զկերակուրս և զըմպելիս ծառայից քոց․ և շնորհեա՛ առողջու-

թիւն հոգւոյ և մարմնոյ ։ Որպէս զի կրօնաւորական պարկեշտութեամբ վայելելով 'ի մարմնաւոր պիտոյիցս՝ անանց բարեացդ և երկնից արքայութեանդ հաղորդս լիցուք ընդ ամենայն սուրբս քո ։ Եւ գոհութեամբ փառաւորեսցուք զքեզ ընդ Հօր և ամենասուրբ Հոգւոյդ ․ այժմ և միշտ և յաւիտեանս յա՜ ։

Հայր մեր որ յերկինս ես՜ ։

Եւ օրհնօղ սեղանոյն յուշով յանգուն՝ և առնելով զհացն ճենջանէ ընդ դպրապետացն, որք ասրեննեք յան ․ յամ զհեփ այնորիկ, որ պատրաստեալ է ճաշոյն, և նոքա առ ամենեսեան, և ասէ, ճաշակեցէք խաղաղութեամբ ․ և նոքին 'ի ճաշն ․ իսկ եթէ վանականք իցեն, կամ անապատաւորք, նոքա միայն ցեղճարց 'ի եարշրագոյն փեղուղ, և առեալ ընթեռնուցու ըզգիրս Աստուածայինն ․ և ամենեքեան ունկն դիցեն ընթերցմանն՝ ամենայն ճաշակմամբ ։ Եւ եթէ ոք խնդրեսցէ շնորհ իւր փարախուսանաց, լուծցեն՝ որք կարօղն իցեն ․ և դարձեալ ճաշեսցին լռելեայն, և ո՛չ աղաղակաւ ։ Եւ յետ յառնելոյ 'ի սեղանոյն, դարձեալ կացցեն 'ի փեղկս խուրեանց ։ Եւ ասասցէ քահանայն ։

Քահանայն ․ Տէր Յիսուս լցաք 'ի բարութեանց քոց ։ Տացուք գոհութիւն Տեառն Աստուծոյ մերոյ ։

Դպիրն ․ Ըղձք Տեառն 'ի վերայ երկիւղածաց իւրոց և որք յուսան յողորմութիւն նորա ։

Փրկել 'ի մահուանէ զանձինս նոցա, և կերակրել զնոսա 'ի սովու ։

Անձինք մեր Համբերեսցեն Տեառն, զի օգնական և պաշտպան մեր է:

՚Ի նա ուրախ եղիցին սիրտք մեր, և յանուն սուրբ նորա յուսասցուք:

Եղիցի ողորմութիւն քո Տէր ՚ի վերայ մեր, որպէս յուսացաք ՚ի քեզ:

Փառք Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ. Այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. Ամէն:

Քահանայն. Կերակրիչ և ուրախարար Տէր. փառք քեզ. լցուցանող ՔՐԻՍՏՈՍ գոհանամք զքէն:

Սարկաւագ. Եւ ես խաղաղութեան զՏէր աղաչեսցուք:

Գոհացարո՛ւք ՚ի վերայ լրութեանց պարգևաց Տեառն Աստուծոյ մերոյ: Որ կերակրէ զմեզ օր ըստ օրէ առատապէս քաղցրութեամբ կամօք իւրովք: Զի հոգևոր բարութեանն և երկնից արքայութեանն հաղորդս արասցէ զծառայս իւր ըստ ակնկալութեան յուսոյն մերոյ: Ամենակալ Տէր":

# ԱՂՕԹՔ

Օրհնեալ ես Տէր Աստուած մեր՝ որ կերակրես զմեզ ՚ի մանկութենէ, և տաս կերակուր ամենայն մարմնոց. լցո՛ ուրախու-

թեամբ և բերկրութեամբ զսիրտս մեր ։ Որպէս զի զամենայն բաւականութիւն ունիցիմք առաւելեալք ՚ի գործս բարութեան ՚ի ՔՐԻՍՏՈՍ ՅԻՍՈՒՍ ՚ի Տէր մեր ։ Որում վայել է փառք իշխանութիւն և պատիւ , այժմ և" ։

Խաղաղութիւն ամենեցուն ։

Փառք քեզ Տէր՝ փառք քեզ Թագաւոր փառաց ․ որ ետուր մեզ կերակուր ուրախութեան ․ և լցուցեր զսիրտս մեր ՚ի լիութենէ ամենաբաւական ողորմութեան քո ․ լցո՛ և այժմ զմեզ Հոգւովդ քով սրբով ․ որպէս զի գտցուք առաջի քո հաճոյք , և մի՛ ամաչեցեալք , զի դու դաս և հատուցանես իւրաքանչիւր ըստ գործս իւր ․ և քեզ վայել է փառք իշխանութիւն և պատիւ , այժմ և" ։

Օրհնեալ Տէր մեր ՅԻՍՈՒՍ ՔՐԻՍՏՈՍ ․ Ամէն ։

Հայր մեր որ յերկինս ես" ։

Զկերողքս Աստուած օրհնեսցէ ․ սպասաւորացն և երախտաւորացն վարձս բարեաց պարգևեսցէ ․ և օրհնեսցէ զամենեսեան ։ ՔՐԻՍՏՈՍ Աստուած որ զմեզ կերակրեաց և լիացոյց , նմա փառք յաւիտեանս ․ Ամէն ։

# ԿԱՐԳԱՒՈՐՈՒԹԻՒՆ

## ՀԱՍԱՐԱԿԱՑ ԱՂՕԹԻՑ ԵՐԵԿՈՅԻ ԺԱՄՈՒՆ ՈՐ ԿԱՏԱՐԻ Ի ԴԷՄՍ ՈՐԴԻՈՅՆ ԱՍՏՈՒԾՈՅ

ՈՐ

ԷՋ 'Ի ԽԱՉԷՆ ԵՒ ՊԱՏԵԱԼ ՊԱՍՏԱՌԱԿԱԼԱՒ ԵԴԱՒ 'Ի ԳԵՐԵԶՄԱՆԻ



Օրհնեալ Տէր մեր ՅԻՍՈՒՍ ՔՐԻՍՏՈՍ. Ամէն։
Հայր մեր որ յերկինս ես"։

Ես առ Աստուած կարդացի, և նա լուաւ ինձ յերեկոյս՝ 'ի վաղորդայն՝ 'ի հասարակ աւուր։

Ապաւէի Աստուծոյ իմոյ, և ակնունէի կենարարէն. որ փրկէ զծառայս իւր և կեցուցանէ։

Փառք Հօր և Որդւոյ և"։ Այժմ և միշտ"։

Եւ ևս խաղաղութեան զՏէր աղաչեսցուք. ընկա՛լ կեցո՛ և ողորմեա՛։

Օրհնութիւն և փառք Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ. այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. Ամէն։

Խաղաղութիւն ամենեցուն։

# ՍԱՂՄՈՍ

Խոնարհեցո՛ Տէր զունկն քո և լո՛ւր ինձ. զի աղքատ և տնանկ եմ ես։

Պահեա՛ զանձն իմ սուրբ՝ Տէր. և փրկեա՛ զծառայս քո՝ Աստուած իմ, որ 'ի քեզ յուսացայ։

Ողորմեա՛ ինձ Տէր՝ զի առ քեզ աղաղակեցի զօրհանապազ, ուրա՛խ արա զանձն ծառայի քո, զի առ քեզ Տէր համբարձի զանձն իմ։

Զի դու Տէր՝ քաղցր և ուղիղ ես. բազումողորմ առ ամենեսեան՝ որք կարդան առ քեզ։

Ունկն դի՛ր Տէր աղօթից իմոց, և նայեա՛ 'ի ձայն խնդրուածոց իմոց։

Յաւուր նեղութեան իմոյ կարդացի առ քեզ, և լուար ինձ։

Ոչ ո՛ք է նման քեզ յաստուածս Տէր, և ո՛չ ոք է որպէս զգործս քո։

Ամենայն ազգս զոր արարեր՝ եկեսցեն և երկիրպագցեն առաջի քո, և փառաւոր արասցեն զանուն քո յաւիտեան։

Մե՛ծ ես դու Տէր, և առնես սքանչելիս. և դու միայն ես Աստուած ։

Առաջնորդեա՛ ինձ 'ի ճանապարհի քում, և գնացից 'ի ճշմարտութեան քում. և ուրախ եղիցի սիրտ իմ՝ երկնչիլ յանուանէ քումմէ ։

Խոստովան եղէց առ քեզ Տէր Աստուած իմ բոլորով սրտիւ իմով. փառաւոր արարից զանուն քո յաւիտեան ։

Մե՛ծ եղև 'ի վերայ իմ ողորմութիւն քո Տէր, և փրկեցեր զանձն իմ 'ի դժոխոց ներքնոց ։

Աստուա՛ծ՝ անօրէնք յարեան 'ի վերայ իմ, և ժողովք հզօրաց խնդրեցին զանձն իմ, և ո՛չ համարեցան զքեզ Աստուած առաջի իւրեանց ։

Այլ դու Տէր Աստուած իմ՝ գթած ես և ողորմած, երկայնամիտ՝ բազումողորմ և ճշմարիտ. նայեա՛ առ իս և ողորմեա՛ ինձ ։

Տո՛ւր զօրութիւն ծառայի քո, կեցո՛ զորդի աղախնոյ քո, և արա՛ առ իս նշան բարութեան ։

Տեսցեն ատելիք իմ և ամաչեսցեն, զի դու Տէր օգնեցեր ինձ և մխիթարեցեր զիս ։

Փառք Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ.
Այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. Ամէն ։

# ՄԱՂԹԱՆՔ

Փառք քեզ Աստուած՝ փառք քեզ․ յաղագս ամենայնի Տէր փառք քեզ ։

Եւ ես խաղաղութեան զՏէր աղաչեսցուք․ ընկալ կեցո և ողորմեա ։

Օրհնութիւն և փառք Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ, այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից․ Ամէն ։

Խաղաղութիւն ամենեցուն ։

# ՍԱՂՄՈՍ

Ապրեցո՛ զիս Տէր 'ի մարդոյ չարէ, յառնէ անիրաւէ փրկեա՛ զիս ։

Խորհեցան զանօրէնութիւն 'ի սիրտս իւրեանց, զօր ամենայն պատրաստեցան 'ի պատերազմ ։

Սրեցին զլեզուս իւրեանց որպէս զօձի, և թոյնք իժից 'ի ներքոյ շրթանց նոցա ։

Պահեա՛ զիս Տէր 'ի ձեռաց մեղաւորի, և 'ի մարդոյ չարէ փրկեա՛ զիս ։

Խորհեցան խափանել զգնացս իմ, թաքուցին ամբարտաւանք որոգայթ ինձ ։

Լարս ձգեցին որոգայթ ոտից իմոց, շուրջ 'զշաւղօք իմովք եդին ինձ գայթակղութիւն ։

Ասացի Տէր Աստուած իմ ես դու, ունկն դիր Տէր ձայնի աղօթից իմոց ։

Տէր Տէր զօրութիւն փրկութեան իմոյ , հովանի գլխոյ իմոյ յաւուր պատերազմի :

Մի մատներ զիս Տէր 'ի ցանկութիւն մեղաւորաց , ոյք խորհեցան վասն իմ՝ մի ընդ վայր հաքկաներ զիս :

Օ՛ի մի երբէք բարձրասցին , և խորհուրդք նոցա՝ մի կատարեսցին · վախճան կատարածի նոցա՝ վաստակ շրթանց իւրեանց ծածկեսցէ զնոսա :

Արկցես 'ի վերայ նոցա զկայծակունս հրոյ , և կործանեսցես զնոսա · 'ի տառապանաց մի կարասցեն կեալ :

Մարդոյ լեզուանոյ մի յաջողեսցի 'ի վերայ երկրի · զայր մեղաւոր չարիք իւր որսասցեն 'ի կորուստ :

Ծանեայ , զի առնէ Տէր՝ դատաստան աղքատի , և իրաւունս տնանկի :

Արդարք գոհասցին զանուանէ քումմէ , և բնակեսցին ուղիղք առաջի երեսաց քոց :

Տէր՝ կարդացի առ քեզ՝ և լո՛ւր ինձ , նայեա՛ 'ի ձայն աղօթից իմոց՝ 'ի կարդալ իմում առ քեզ :

Ուղիղ եղիցին աղօթք իմ որպէս խունկ առաջի քո Տէր · համբարձումն ձեռաց իմոց պատարագ երեկոյի :

Դի՛ր Տէր՝ պահապան բերանոյ իմոյ · և դուռն ամուր շրթանց իմոց , զի մի խոտո-

բեւոյի սիրտ իմ բանիւ չարութեան ։

՚Ի պատճառել զպատճառս մեղաց ընդ մարդս՝ որք գործեն զանօրէնութիւն ․ և ո՛չ եղէց կցորդ ընտրելոց նոցա ։

Խրատեսցէ զիս արդարն ողորմութեամբ՝ և յանդիմանս արասցէ , իւղ մեղաւորի մի օծ-ցէ զգլուխ իմ , այլ աղօթք իմ ՚ի կամս նոցա ։

Արգելան մերձ առ վիմին դատաւորք նո-ցա լուիցեն բանից իմոց և քաղցրասցին ։

Որպէս թանձրութիւն հողոյ՝ զի սփռեալ է ՚ի վերայ երկրի ․ ցրուեսցին ոսկերք նոցա մերձ ՚ի դժոխս ։

Առ քեզ Տէր Տէր են աչք իմ , ՚ի քեզ յուսացայ՝ մի հաներ զհոգի յինէն ։

Պահեա՛ զիս յորոգայթէ որ թագուցաւ ինձ , ՚ի գայթակղութենէ գործողին զանօ-րէնութիւն ։

Անկցին ՚ի ցանցս նոցա մեղաւորք ․ միայն եմ ես մինչև անցից ։

Ձայնիւ իմով ես առ Տէր կարդացի , ձայնիւ իմով զՏէր աղաչեցի ։

Սփռեցից առաջի Տեառն զաղօթս իմ , և զնեղութիւնս իմ առաջի նորա պատմեցից ։

՚Ի նուաղել յինէն հոգւոյ իմոյ , դու Տէր ծանեար զշաւիղս իմ ․ ՚ի ճանապարհ յոր և գնայի , թագուցաւ ինձ որոգայթ ։

Հայէի յաջմէ և տեսանէի , և ոչ ո՛ք ճա-

նաչէր զիս • կորեաւ յինէն փախուստ իմ • և ոչ գտաւ խնդրող անձին իմոյ ։

Աղաղակեցի առ քեզ Տէր՝ և ասացի, դու ես յոյս և բաժին իմ յերկրին կենդանեաց ։

Նայեա Տէր յաղօթս իմ, զի ես խոնարհ եղէ յոյժ • ապրեցո զիս 'ի հալածչաց իմոց, զի հզօրք եղեն քան զիս ։

Տէր՝ հան 'ի բանտէ զանձն իմ, գոհանամ զանուանէ քումմէ ։

Եւ քեզ սպասեն արդարք՝ մինչև հատուսցես ։

Փառք Հօր և Որդւոյ և": Այժմ և": 



## ԵՐԳ

### ԿԻՒՐԱԿԱՄՏԻՑ

Ալէլուիա • Ալէլուիա ։

Լոյս զուարթ սուրբ փառաց անմահ Հօր • երկնաւորի սրբոյ կենարարի ՅԻՍՈՒՍ ՔՐԻՍՏՈՍ • Եկեալքս 'ի մտանել արեգականն, տեսաք ըզլոյս երեկոյիս ։ Օրհնեմք ըզՀայր և զՈրդի և ըզսուրբ Հոգին Աստուծոյ ։ Եւ ամենեքեան ասեմք Ամէն ։ Արժանաւորեա ըզմեզ յամենայն ժամ • օրհնել ձայնիւ երգովլ զանուն

փառա՜ց ամե՛նա՛սուրբ Երրո՛րդութեա՛նդ ։ Որ տայ զկե՛նդա՛նութի՛ւն վանորո՛յ և աշխարհ ը՜զքեզ փա՛ռաւո՛րէ ։

## ՄԱՂԹԱՆՔ

Օրհնեալ Տէր՝ որ բնակեալդ ես 'ի բարձունս, և օրհնեալ են փառք մեծութեան քոյ․ որ հաստատեցեր զլուսաւորս 'ի բարձունս․ 'ի յերկնից լոյս ծագեցեր ընդ ամենայն տիեզերս ։ Արարեր զարեգակն լուսատու տուընջեան, զլուսինն և զաստեղս՝ լուսատու գիշերոյ, և զլոյս ճրագի․ դու ես լոյս գովելի․ սուրբ և առաջին լոյսն․ 'ի քէն փախնու խաւարն․ և զլոյսն քո կենդանի՛ Տէր ծագեա՛ 'ի սիրտս մեր ։ Եւ մեք միաբան ասասցուք, օրհնեալ է անունն սուրբ փառաց քոց․ և քեզ երգեմք զօրհնութիւն և զփառս Հօր և Որդւոյ և Հոգւոյդ սրբոյ, այժմ և միշտ և յա՛։

## ՔԱՐՈԶ

Հասեալքս 'ի ժամ երեկոյիս ամենեքեան համբառնալով զձեռս մեր՝ փառաւորեմք ըզքեզ Տէր Աստուած մեր․ որ շնորհեցեր մեզ զտիւս խաղաղութեամբ անցուցանել․ և հասանել 'ի ժամ երեկոյիս ։ Արժանաւորեա՛ ըզմեզ Տէր՝ սուրբ սրտիւ, հրեշտակային երգով՝ գոհաբանութիւն մատուցանել Տեառն

Աստուծոյ ամենակալիդ. կեցո՛ եւ ողորմեա՛։
Ողորմեա՛ց մեզ Տէր Աստուած մեր ըստ մեծի ողորմութեան քում. ասասցո՛ւք ամենեքեան միաբանութեամբ։
Տէր ողորմեա՛. Տէր ողորմեա՛. Տէր ողորմեա՛։

## ՄԱՂԹԱՆՔ

Հասեալքս ՚ի ժամ երեկոյիս ամենեքեան՝ անդադար փառաւորեմք զՀայր եւ զՈրդի եւ զսուրբ Հոգին, այժմ եւ միշտ եւ յաւէ″։



## ԵՐԵԿՈՅԵԱՆ ՄԵՍԵԴԻՔ

### ԸՍՏ ԴԱՏՃԱՌԻ ԱՒՈՒՐ



### ԾՆՆԴԵԱՆ, ԱՒԵՏԵԱՑ, ՎԵՐԱՓՈԽՄԱՆ ԵՒ ԱՅԼՈՑ ՏՕՆԻՑ ԱՍՏՈՒԱԾԱԾՆԻ

Ա. Տէր ասաց ցիս՝ որդի իմ ես դու, եւ ես այսօր ծնայ զքեզ։

Ընդէ՞ր խռովեցան հեթանոսք. եւ ժողովուրդք խորհեցան ՚ի սնոտիս։



Բ. Մեծացուսցէ անձն իմ զՏէր. եւ ցնծացէ հոգի իմ Աստուծով փրկչաւ իմով.

Օրհնութիւն եւ փառք Հօր եւ Որդւոյ եւ Հոգւոյն սրբոյ · այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից · Ամէն ։

Խաղաղութիւն ամենեցուն ։

# ՍԱՂՄՈՍ

Խոնարհեցո՛ Տէր զունկն քո եւ լո՛ւր ինձ · զի աղքատ եւ տնանկ եմ ես ։

Պահեա՛ զանձն իմ սուրբ՝ Տէր · եւ փրկեա՛ զծառայս քո՝ Աստուա՛ծ իմ, որ 'ի քեզ յուսացայ ։

Ողորմեա՛ ինձ Տէր՝ զի առ քեզ աղաղակեցի զօրհանապազ, ուրա՛խ արա զանձն ծառայի քո, զի առ քեզ Տէր համբարձի զանձն իմ ։

Զի դու Տէր՝ քաղցր եւ ուղիղ ես · բազումողորմ առ ամենեսեան՝ որք կարդան առ քեզ ։

Ունկն դիր Տէր աղօթից իմոց, եւ նայեա՛ 'ի ձայն խնդրուածաց իմոց ։

Յաւուր նեղութեան իմոյ կարդացի առ քեզ, եւ լուար ինձ ։

Ո՛չ ո՛ք է նման քեզ յաստուածս Տէր, եւ ո՛չ ոք է որպէս զգործս քո ։

Զամենայն ազգս զոր արարեր՝ եկեսցեն եւ երկիրպագցեն առաջի քո, եւ փառաւոր արասցեն զանուն քո յաւիտեան ։

Մե՛ծ ես դու Տէր, և առնես սքանչելիս. և դու միայն ես Աստուած ։

Առաջնորդեա՛ ինձ ՚ի ճանապարհի քում, և գնացից ՚ի ճշմարտութեան քում. և ուրախ եղիցի սիրտ իմ՝ երկնչել յանուանէ քումմէ ։

Խոստովան եղէց առ քեզ Տէր Աստուած իմ բոլորով սրտիւ իմով. փառաւոր արարից զանուն քո յաւիտեան ։

Մե՛ծ եղև ՚ի վերայ իմ ողորմութիւն քո Տէր, և փրկեցեր զանձն իմ ՚ի դժոխոց ներքնոց ։

Աստուա՛ծ՝ անօրէնք յարեան ՚ի վերայ իմ, և ժողովք հզօրաց խնդրեցին զանձն իմ, և ո՛չ համարեցան զքեզ Աստուած առաջի իւրեանց ։

Այլ դու Տէր Աստուած իմ՝ գթած ես և ողորմած, երկայնամիտ՝ բազումողորմ և ճշմարիտ. նայեա՛ առ իս և ողորմեա՛ ինձ ։

Տո՛ւր զօրութիւն ծառայի քո, կեցո՛ զորդի աղախնոյ քո, և արա՛ առ իս նշան բարութեան ։

Տեսցեն ատելիք իմ և ամաչեսցեն, զի դու Տէր օգնեցեր ինձ և մխիթարեցեր զիս ։

Փառք Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ.
Այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից.
Ամէն ։

# ՄԱՂԹԱՆՔ

Փառք քեզ Աստուած՝ փառք քեզ. յաղագս ամենայնի Տէր փառք քեզ։

Եւ ես խաղաղութեան զՏէր աղաչեսցուք. ընկա՛լ կեցո՛ և ողորմեա՛։

Օրհնութիւն և փառք Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ, այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. Ամէն։

Խաղաղութիւն ամենեցուն։

# ՍԱՂՄՈՍ

Ապրեցո՛ զիս Տէր 'ի մարդոյ չարէ, յառնէ անիրաւէ փրկեա՛ զիս։

Խորհեցան զանօրէնութիւն 'ի սիրտս իւրեանց, զօր ամենայն պատրաստեցան 'ի պատերազմ։

Սրեցին զլեզուս իւրեանց որպէս զօձի, և թոյնք իժից 'ի ներքոյ շրթանց նոցա։

Պահեա՛ զիս Տէր 'ի ձեռաց մեղաւորի, և 'ի մարդոյ չարէ փրկեա՛ զիս։

Խորհեցան խափանել զգնացս իմ, թագուցին ամբարտաւանք որոգայթ ինձ։

Լարս ձգեցին որոգայթ ոտից իմոց, շուրջ զշաւղօք իմովք եդին ինձ զգայթակղութիւն։

Ասացի՝ Տէր Աստուած իմ ես դու, ո՛ւնկն դիր Տէր ձայնի աղօթից իմոց։

Տէր Տէր զօրութիւն փրկութեան իմոյ, հովանի գլխոյ իմոյ յաւուր պատերազմի ։

Մի՛ մատներ զիս Տէր ՚ի ցանկութիւն մեղաւորաց, ոյք խորհեցան վասն իմ՝ մի՛ ընդ վայր հարկաներ զիս ։

Զի մի՛ երբէք բարձրասցին, և խորհուրդք նոցա՝ մի՛ կատարեսցին ․ վախճան կատարածի նոցա՝ վաստակ շրթանց իւրեանց ծածկեսցէ զնոսա ։

Արկցես ՚ի վերայ նոցա զկայծակունս հրոյ, և կործանեսցես զնոսա ․ ՚ի տառապանաց մի՛ կարասցեն կեալ ։

Մարդոյ լեզուանոյ մի՛ յաջողեսցի ՚ի վերայ երկրի ․ զայր մեղաւոր չարիք իւր որսասցեն ՚ի կորուստ ։

Ծանեայ, զի առնէ Տէր՝ դատաստան աղքատի, և իրաւունս տնանկի ։

Արդարք գոհասցին զանուանէ քումմէ, և բնակեսցին ուղիղք առաջի երեսաց քոց ։

Տէր՝ կարդացի առ քեզ՝ և լո՛ւր ինձ, նայեա՛ ՚ի ձայն աղօթից իմոց՝ ՚ի կարդալ իմում առ քեզ ։

Ուղիղ եղիցին աղօթք իմ որպէս խունկ առաջի քո Տէր ․ համբարձումն ձեռաց իմոց պատարագ երեկոյի ։

Դի՛ր Տէր՝ պահապան բերանոյ իմոյ ․ և դուռն ամուր շրթանց իմոց, զի մի՛ խոտո-

րեսցի սիրտ իմ բանիւ չարութեան ։

’Ի պատճառել զպատճառս մեղաց ընդ մարդս՝ որք գործեն զանօրէնութիւն ․ և ո՛չ եղէց կցորդ ընտրելոց նոցա ։

Խրատեսցէ զիս արդարն ողորմութեամբ՝ և յանդիմանն արասցէ , իւղ մեղաւորի մի՛ օծեսցէ զգլուխ իմ , այլ աղօթք իմ ’ի կամս նոցա ։

Ընդ եղեան մերձ առ վիմին դատաւորք նոցա լուիցեն բանից իմոց և քաղցրասցին ։

Որպէս թանձրութիւն հողոյ՝ զի սփռեալ է ’ի վերայ երկրի ․ ցրուեսցին ոսկերք նոցա մերձ ’ի դժոխս ։

Առ քեզ Տէր Տէր են աչք իմ , ’ի քեզ յուսացայ՝ մի՛ հաներ զհոգի յինէն ։

Պահեա՛ զիս յորոգայթէ որ թագուցաւ ինձ , ’ի գայթակղութենէ գործողին զանօրէնութիւն ։

Անկցին ’ի ցանցս նոցա մեղաւորք ․ միայն եմ ես մինչև անցից ։

Ձայնիւ իմով ես առ Տէր կարդացի , ձայնիւ իմով զՏէր աղաչեցի ։

Սփռեցից առաջի Տեառն զաղօթս իմ , և զնեղութիւնս իմ առաջի նորա պատմեցից ։

’Ի նուաղել յինէն հոգւոյ իմոյ , դու Տէր ծանեար զշաւիղս իմ ․ ’ի ճանապարհ յոր և գնայի , թագուցան ինձ որոգայթ ։

Հայէի յաջմէ և տեսանէի , և ոչ ո՛ք ճա-

նաչէր զիս · կորեաւ յինէն փախուստ իմ · և
ոչ գտաւ խնդրող անձին իմոյ ։

Աղաղակեցի առ քեզ Տէր՝ և ասացի, դու
ես յոյս և բաժին իմ յերկրին կենդանեաց ։

Նայեա Տէր յաղօթս իմ, զի ես խոնարհ
եղէ յոյժ · ապրեցո զիս ՚ի հալածչաց իմոց,
զի հզօրք եղեն քան զիս ։

Տէր՝ հան ՚ի բանտէ զանձն իմ, գոհանամ
զանուանէ քումմէ ։

Եւ քեզ սպասեն արդարք՝ մինչև հատուսցես ։

Փառք Հօր և Որդւոյ և"։ Այժմ և"։



## ԵՐԳ

### ԿԻՒՐԱԿԱՄՏԻՑ

Ալէլուիա · Ալէլուիա ։

Լոյս զուարթ սուրբ փառաց անմահ Հօր · երկնաւորի սրբոյ կենարարի Յիսուս Քրիստոս · Եկեալքս ՚ի մտանել արեգականն, տեսաք ըզլոյս երեկոյի ։ Օրհնեմք ըզՀայր և զՈրդի և ըզսուրբ Հոգիդ Աստուծոյ ։ Եւ ամենեքեան ասեմք Ամէն ։ Արժանաւորեա ըզմեզ յամենայն ժամ · օրհնել ձայնիւ երգով զանուն

փառա՞ց ամենա՛ սուրբ Երրո՛րդութեա՛նդ ։ Որ այ՛ս զկե՛նդա՛նութի՛ւն վասնորո՛յ և աշխարհ ը՞նդքեզ փա՛ռաւո՛րէ՛ ։

## ՄԱՂԹԱՆՔ

Օրհնեալ Տէր՝ որ բնակեալդ ես 'ի բարձունս, և օրհնեալ են փառք մեծութեան քո ・ որ հաստատեցեր զլուսաւորս 'ի բարձունս ・ 'ի յերկնից լոյս ծագեցեր ընդ ամենայն տիեզերս ։ Արարեր զարեգակն լուսատու տունջեան, զլուսինն և զաստեղս՝ լուսատու գիշերոյ, և զլոյս ճրագի ・ դու ես լոյս գովելի ・ սուրբ և առաջին լոյսն ・ 'ի քէն փախնու խաւարն ・ և զլոյսն քո կենդանի՛ Տէր ծագեա՛ 'ի սիրտս մեր ։ Եւ մեք միաբան ասասցուք, օրհնեալ է անուն սուրբ փառաց քոց ・ և քեզ երգեմք զօրհնութիւն և զփառս Հօր և Որդւոյ և Հոգւոյդ սրբոյ, այժմ և միշտ և յա՞ ։

## ՔԱՐՈԶ

Հասեալքս 'ի ժամ երեկոյիս ամենեքեան համբառնալով զձեռս մեր՝ փառաւորեմք ըզքեզ Տէր Աստուած մեր ・ որ շնորհեցեր մեզ զտիւս խաղաղութեամբ անցուցանել ・ և հասանիլ 'ի ժամ երեկոյիս ։ Արժանաւորեա՛ ըզմեզ Տէր՝ սուրբ սրտիւ, հրեշտակային երգով՝ զգոհաբանութիւն մատուցանել Տեառն

Աստուածոյ ամենակալիդ․ կեցո՛ և ողորմեա՛։ Ողորմեա՛ց մեզ Տէր Աստուած մեր ըստ մեծի ողորմութեան քում․ ասասցո՛ւք ամենեքեան միաբանութեամբ։
Տէր ողորմեա՛․ Տէր ողորմեա՛․ Տէր ողորմեա՛։

## ՄԱՂԹԱՆՔ

Հասեալքս ՚ի ժամ երեկոյիս ամենեքեան՝ անդադար փառաւորեմք զՀայր և զՈրդի և զսուրբ Հոգիդ, այժմ և միշտ և յաւէ″։



## ԵՐԵԿՈՅԵԱՆ ՄԵՍԵԴԻՔ

ԸՍՏ ՊԱՏՇԱՃԻ ԱՒՈՒՐ



ԾՆՆԴԵԱՆ, ԱՒԵՏԵԱՑ,
ՎԵՐԱՓՈԽՄԱՆ
ԵՒ
ԱՅԼՈՑ ՏՕՆԻՑ ԱՍՏՈՒԱԾԱԾՆԻ

Ա․ Տէր ասաց ցիս՝ որդի իմ ես դու, և ես այսօր ծնայ զքեզ։

Ընդէ՞ր խռովեցան հեթանոսք․ և ժողովուրդք խորհեցան ՚ի սնոտիս։



Բ․ Մեծացուսցէ անձն իմ զՏէր․ և ցնծասցէ հոգի իմ Աստուծով փրկչաւ իմով․

Օ՛ի հայեցաւ 'ի խոնարհութիւն աղախնոյ իւրոյ , ահա յայսմ հետէ երանեսցեն ինձ ամենայն ազգք ։

—◆—

Գ . Իջցէ որպէս զանձրև 'ի վերայ գեղման . որպէս ցօղ զի ցօղէ յերկիր ։

Աստուած զիրաւունս քո արքայի տուր , և զարդարութիւնս քո որդւոյ թագաւորի ։

—◆—

ՑԱՐՈՒԹԵԱՆ

ԱԶ . Տէր կարօղ և հզօր . Տէր կարօղ 'ի պատերազմի ։

Տեառն է երկիր լրիւ իւրով . աշխարհ՝ և ամենայն բնակիչք նորա ։

—◆—

ԱԿ . Աթոռ քո Աստուած յաւիտեանս յաւիտենից , գաւազան ուղղութեան՝ գաւազան արքայութեան քո ։

Բղխեաց սիրտ իմ զբան բարի . և ասեմ զգործս իմ թագաւորի ։

—◆—

ԲԶ . Տէր թագաւորեաց՝ ցնծասցէ երկիր . ուրախ եղիցին կղզիք բազումք ։

Երևեցան փայլատակունք նորա տիեզերաց եւտես՝ և սասանեցաւ երկիր ։

ԲԿ․ Երգեցէք Տեառն երգ նոր ամենայն երկիր․ ծառայեցէք Տեառն ուրախութեամբ։

Մտէք առաջի նորա ցնծութեամբ․ ծանիրո՛ւք զի նա է Տէր Աստուած մեր։

ԳՁ․ Եկա՛յք և տեսէք զգործս Աստուծոյ, որ արար զնշանս և զարուեստս 'ի վերայ երկրի։

Աստուած մեր ապաւէն և զօրութիւն․ օգնական 'ի վերայ նեղութեանց, որք գտին զմեզ յոյժ։

ԳԿ․ Աստուած մեր յերկինս և յերկրի, զամենայն զոր ինչ կամեցաւ և արար։

Յելանելն Իսրայէլի յԵգիպտոսէ․ տանն Յակովբայ 'ի ժողովրդենէ այլազգեաց։

ԴՁ․ Եղիցի ձեռն քո 'ի վերայ առն, աջ քո 'ի վերայ որդւոյ մարդոյ, զոր զօրացուցեր զնա 'ի քեզ։

Որ հովուես Իսրայէլի՝ նայեա՛ց, որ առաջնորդես որպէս խաշին Յովսեփու։

ԴԿ․ Աստուած աստուածոց Տէր խօսեցաւ, և կոչեաց զերկիր։

Յելից արեգական մինչև 'ի մուտս արևու։

## ԳԱԼՍՏԵԱՆ ՏԵԱՌՆ ՄԵՐՈՅ

Օրհնեալ որ գաս յանուն Տեառն . օրհնեալ որ գալոց ես ։

Տէր Աստուած մեր երեւեցաւ մեզ . արարէք տօնս ուրախութեան կանխաւ , մինչեւ յանկիւնս սեղանոյ ։

## ԵԿԵՂԵՑԻՈՅ

Արդ օրհնեցէք ամենայն ծառայք Տեառն զՏէր ։

Ո՛ կայք ՚ի տան Տեառն , և ՚ի գաւիթս Աստուծոյ մերոյ ։

## ԿԻԻՐԱԿԱՄՏԻՑ

Սիրեցի՛ զի լուիցէ Տէր զձայն աղօթից իմոց ։

Զի խոնարհեցոյց զունկն իւր առ իս , և ես յաւուրս իմ կարդացի առ նա ։

## ՄԱՐՏԻՐՈՍԱՑ

ԱՁ . Եղիցի ողորմութիւն քո Տէր ՚ի վերայ մեր . որպէս յուսացաք ՚ի քեզ ։

Ցնծացէք արդարք ՚ի Տէր . ուղղոց վայել է օրհնութիւն ։

ԱԿ . Տէր սիրէ զիրաւունս և ոչ ընդ վայր հարկանէ զաւուրբս իւր ։

Փրկութիւն արդարոց ՚ի Տեառնէ է . վերակացու է նոցա ՚ի ժամանակս նեղութեան ։

---

ԲՁ . Սքանչելի է Աստուած ՚ի վերայ սրբոց իւրոց , Աստուած Իսրայէլի ։

Տէր Աստուած օրհնեալ . օրհնեալ է Տէր զօրհանապազ ։

---

ԲԿ . Օգնութիւն ինձ ՚ի Տեառնէ եկեսցէ , որ արար զերկինս և զերկիր ։

Համբարձի զաչս իմ ՚ի լերինս , ուստի եկեսցէ ինձ օգնութիւն ։

---

ԳՁ . Աստուած փառաւորեալ է ՚ի խորհուրդս սրբոց իւրոց . մեծ և ահաւոր ՚ի վերայ այնոցիկ ոյք շուրջ են զնովաւ ։

Խոստովան եղիցին երկինք սքանչելեաց քոց Տէր , և ճշմարտութիւն քո յեկեղեցիս սրբոց ։

---

ԳԿ . Սիրեսցից զքեզ՝ Տէր զօրութիւն իմ . Տէր հաստատիչ իմ , ապաւէն իմ և փրկիչ իմ ։

Աստուած օգնական իմ , և ես յուսամ ՚ի նա . ապաւէն իմ , եղջիւր փրկութեան իմոյ՝ ընդունելի իմ է ։

ԴՁ. Մերձ է Տէր առ ամենեսեան, որք կարդան առ նա. առ ամենեսեան՝ որք կարդան առ նա ճշմարտութեամբ։

Զկամս երկիւղածաց իւրոց առնէ Տէր. աղօթից նոցա լուէ՝ և կեցուցանէ զնոսա։

ԴԿ. Արդարքն որպէս զարմաւենիս ծաղկեսցին. որպէս զմայրսն Լիբանանու բազումք եղիցին։

Տնկեալք եղիցին ՚ի տան Տեառն, և ՚ի գաւիթս Աստուծոյ մերոյ ծաղկեսցին։

## ԱՊԱՇԽԱՐՈՒԹԵԱՆ

ԱՁ. Տէր լուիցէ ինձ ՚ի կարդալ իմում առ նա։

Պահոց. Ի կարդալ իմում լուար ինձ Աստուած՝ ըստ արդարութեան իմոյ։

ԱԿ. Մի՛ ասասցէ թշնամին իմ թէ յաղթեցի նմա. կամ նեղիչք իմ ցնծասցեն, թէ ես սասանեցայց։

Մինչև յե՞րբ դարձուցանես զերեսս քո յինէն. մինչև յե՞րբ բարձրանայ թշնամին ՚ի վերայ իմ. նայեա՛ և լո՛ւր ինձ Տէր Աստուած իմ։

ԲՁ. Բերան արդարոյ պատմէ զիմաստութիւն. և լեզու նորա խօսեսցի զիրաւունս ։

Մի՛ նախանձիր ընդ չարս. և մի՛ ընդ այնոսիկ՝ ոյք գործեն զանօրէնութիւն ։

---

ԲԿ. Քաղցրութիւն արարեր ընդ ծառայի քում Տէր, ըստ բանի քում։

Քաղցր ես դու Տէր, և քաղցրութեամբ քով խրատեա՛ զիս ։

---

ԳՁ. Նայեա՛ և լո՛ւր ինձ Տէր Աստուած իմ։

Մինչև յե՞րբ Տէր՝ մոռանաս զիս իսպառ. մինչև յե՞րբ դարձուցանես զերեսս քո յինէն ։

---

ԳԿ. Գթութիւնք քո բազում են Տէր, ըստ իրաւանց քոց կեցո՛ զիս ։

Տես զխոնարհութիւն իմ, և փրկեա՛ զիս. զի զօրէնս քո ես ո՛չ մոռացայ ։

---

ԴՁ. Աստուա՛ծ՝ յօգնել ինձ նայեա՛ց. և Տէր յընկերել ինձ փութա՛ ։

Ամաչեսցեն և յամօթ լիցին, ոյք խնդրեն զանձն իմ։

---

ԴԿ. Լո՛ւր Աստուած աղօթից իմոց յաղաչել ինձ առ քեզ. յերկիւղէ թշնամւոյն փրկեա՛ զանձն իմ։

Ծածկեսցես զիս 'ի ժողովոց չարաց . 'ի բազմութենէ՝ որք գործեն զանօրէնութիւն :



ԱՒԱԳ ՀԻՆԳՇԱԲԱԹՈՒ

Լուացից սրբութեամբ զձեռս իմ . և շուրջ եղէց զսեղանով քո Տէր :

Տէր սիրեցի զվայելչութիւն տան քո , և զտեղի յարկի փառաց քոց :



ԱՒԱԳ ՈՒՐԲԱԹՈՒ

Ետուն 'ի կերակուր ինձ լեղի . և 'ի ծարաւ իմ արբուցին ինձ քացախ :

Եղիցին սեղանք նոցա առաջի նոցա յորոգայթ , 'ի հատուցումն և 'ի գայթակղութիւն :



ԽԱՉԻ

Ետուր երկիւղածաց քոց նշան , զի ապրեսցին յերեսաց աղեղան :

Որպէս փրկեսցան սիրելիք քո . կեցո՛ աջով քո և լո՛ւր մեզ :



ԿԱՐԳ ՈՒՂԻՂԵՂԵՑԵԱՑ

Ուղիղ ելեցին աղօթք իմ :
Որպէս խունկ առաջի քո Տէր :
Համբարձումն ձեռաց իմոց :
Պատարագ երեկոյի :

## ՅԱՏՈՒԿ ԱՌԱՋԱԿՈՂՄԱՆՆ

Ուղիղ եղիցին աղօթք իմ որպէս խունկ առաջի քո Տէր ․ համբարձումն ձեռաց իմոց՝ պատարագ երեկոյի ։

Տէր աղաղակեցի առ քեզ եւ լուր ինձ ։ Նայեա՛ց 'ի ձայն խնդրուածաց իմոց , յաղաղակել իմում առ քեզ ։

## ԱՒԱԳ ՀԻՆԳՇԱԲԱԹՈՒ

Ուղիղ եղիցին աղօթք իմ որպէս խունկ առաջի քո Տէր ։

Զերեկոյի աղօթս մեր ընկա՛լ Տէր ․ եւ զտարածումն ձեռաց մերոց ։

## ԱՒԱԳ ՈՒՐԲԱԹՈՒ

Ուղիղ եղիցին աղաչանք մեր որպէս խունկ առաջի քո Տէր ․ համբարձումն ձեռաց մերոց՝ պատարագ երեկոյի ։

# ՔԱՐՈԶ

## ԿԻՐԱԿԱՄՏԻՑ ԵՒ ԱՄԵՆԱՅՆ ԱՒՈՒՐՑ ՏԷՐՈՒՆԵԱՑ

Ասասցուք ամենեքեան միաբանութեամբ ․ Տէր ողորմեա՛ ։ Տէր ողորմեա՛ ։"

Վասն խաղաղութեան ամենայն աշխարհի

և հաստատութեան սրբոյ Եկեղեցւոյ. զՏէր աղաչեսցո՛ւք:

Վասն ամենայն սուրբ և ուղղափառ եպիս-կոպոսաց. զՏէր աղաչեսցո՛ւք:

Վասն Հայրապետին մերոյ Տեառն (այս-անուն) կենաց՝ և փրկութեան հոգւոյ նորին. զՏէր աղաչեսցո՛ւք:

Վասն վարդապետաց՝ քահանայից՝ սար-կաւագաց՝ դպրաց և ամենայն ուխտի մանկանց Եկեղեցւոյ. զՏէր աղաչեսցո՛ւք:

Վասն բարեպաշտ թագաւորաց և Աստ-ուածասէր իշխանաց՝ զօրավարաց և զօրաց նոցին. զՏէր աղաչեսցո՛ւք:

Վասն զի Տէրն ամենակալ հնազանդեցու-ցէ առաջի նոցա զամենայն պատերազմունս թշնամեաց. զՏէր աղաչեսցո՛ւք:

Յաղագս հարց և եղբարցն մերոց՝ որք 'ի գերութեան են և 'ի չար ծառայութեան. զՏէր աղաչեսցո՛ւք:

Յաղագս ճանապարհորդաց և նաւորդաց՝ խաղաղութեամբ հասանել 'ի նաւահանգիս-տըն բարութեան. զՏէր աղաչեսցո՛ւք:

Յաղագս հիւանդաց և ամենայն վշտացելոց՝ փութապէս առողջութեան. զՏէր աղա՛:

Յաղագս բարեխառնութեան օդոց՝ անձ-րևաց քաղցրութեան, և պտղոց առատու-թեան. զՏէր աղաչեսցո՛ւք:

Յաղագս ուխտաւորաց և պտղաբերից 'ի սուրբ Եկեղեցի Աստուծոյ · զՏէր աղա՛ :

Եւ յաղագս այնոցիկ, որք մատնեալք են 'ի ձեռս անօրինաց. վասն անուանն ՔՐԻՍՏՈՍԻ · զՏէր աղաչեսցուք :

Ազատեա՛ Տէր և ողորմեա՛ :

Յաղագս հոգւոցն հանգուցելոց · որք ճշմարիտ և ուղիղ հաւատով 'ի ՔՐԻՍՏՈՍ ննջեցին · զՏէր աղաչեսցուք :

Յիշեա՛ Տէր և ողորմեա՛ :

Յաղագս փրկելոյ զմեզ Տեառն Աստուծոյ՝ յերևելի և յաներևոյթ թշնամւոյն · զՏէր աղաչեսցուք :

Տէր ողորմեա՛ :

## ՄԱՂԹԱՆՔ

Բարեխօսութեամբ սուրբ զՄարիամ զԱստուածածինն զփառաւորեալ և օրհնեալ միշտ սուրբ կոյսն · սուրբ զՅովհաննէս Մկրտիչն · սուրբ զՍտեփաննոս նախավկայն · սուրբ զԱռաքեալսն և զՄարգարէսն · զարի և զյաղթող սուրբ զՎկայսն : Եւ զմեծ խոստովանողն ՔՐԻՍՏՈՍԻ զհայրապետն մեր զսուրբն Գրիգորիոս լուսաւորիչն Հայաստանեայց աշխարհի ·

Յիշեսցուք և զամենայն սուրբս և զնոքօք · զՏէր աղաչեսցուք :

Յիշեա՛ Տէր և ողորմեա՛ ։

Զերեկս մերձեալ և զառաջիկայ գիշերս խաղաղութեամբ անցուցանել՝ հաւատով 'ի Տեառնէ խնդրեսցուք ։

Շնորհեա՛ Տէր ։

Զհրեշտակ խաղաղութեան"։" Զքաւութիւն և զթողութիւն"։" Զսուրբ խաչին մեծ"։" Եւ ես մաքրան"։" Զանձինս մեր"։" Ողորմեա՛ց մեզ"։"

---

# ՔԱՐՈԶ
## Ի ՏՕՆԻ ՍՐԲՈՑ
### ԵՒ
## ՊԱՀՈՑ

Եւ ևս խաղաղութեան զՏէր աղաչեսցուք ։

Աղաչեսցուք զամենակալն Աստուած՝ ըզՀայր Տեառն մերոյ ՅԻՍՈՒՍԻ ՔՐԻՍՏՈՍԻ զթագաւորն խաղաղութեան յաղագս խաղաղութեան ։ և վասն միայնոյ սուրբ կաթուղիկէ և առաքելական Եկեղեցւոյ ։ զի զըաղում ամ խաղաղութեամբ տացէ մեզ Տէր Աստուած մեր ։ և զթագաւորս խաղաղարարս առաքեսցէ առ մեզ ։ վասն մեծի սուրբ և ահաւոր անուան իւրոյ ։ զպետս գաւառաց , զզօրավարս և զզօրագլուխս , զժողովուրդս , զմուտքս , և զելս մեր խաղաղութեամբ պահեսցէ ։ և զամենայն պատերազմունս թշնամւոյն խոր-

տակեսցէ 'ի մէնջ. Տէրն ամենակալ՝ կեցուսցէ և ողորմեսցի ։ Օ՜ երեկս մերձեալ՝ և զառակաջայ դէճերս խաղաղութեամբ անցուցանել հաւատով 'ի Տեառնէ խնդրեսցուք ։" Օ՜ Հրեշտակ խաղաղու"։" Օ՜ քաւութիւն և զթո"։" Օ՜ սրբոյ խաչին մեծ"։" Իւ եւս միաբան"։" Օ՜ անձինս մեր և"։" Ողորմեա մեզ Տէր"։"

# ԱՂՕԹՔ

Լո՛ւր ձայնից մերոց Տէր Աստուած մեր՝ ընկա՛լ զաղաչանս մեր, զհամբարձումն ձեռաց մերոց՝ և զբանս աղօթից, սրբելով զերեկոյի պատարագս մեր 'ի հոտ անուշից՝ 'ի հաճոյս քեզ պատրաստել ։ Յաւե՛լ 'ի մեզ Տէր ամենակալ՝ զհաւատ, զյոյս, զսէր, և զամենայն գործս առաքինութեան. որպէս զի ընդ կամաց քոց բարեսիրաց՝ միշտ կրօնաւորեալք բարեպաշտութեամբ 'ի տուէ և 'ի գիշերի. և արժանաւորք եղիցուք յաղագս անձանց մերոց փրկութեան. և վասն Հոգևոր կենացդ աղաչել զքեզ Տէր. և գտանել 'ի քէն զշնորհս և զողորմութիւն. և գոհանալով փառաւորեսցուք զՀայր և զՈրդի և զսուրբ Հոգիդ. այժմ և միշտ և յաւիտեանս յա"։

Խաղաղութիւն ամենեցուն ։

Քեզ երկրպագանելով Տէր Աստուած մեր՝ գոհանամք զքէն յաղագս խաղաղու-

թեամբ անցուցանելոյ 'ի մէնջ զերկարութիւն տանջեանս ։ Տո՛ւր մեզ Տէր աղաչեմք դքեզ՝ զերեկս և զառաջիկայ գիշերս առանց մեղաց , և առանց գայթակղութեան անցուցանել ․ Հաստատուն կալ և մնալ 'ի հաւատ՝ 'ի յոյս՝ 'ի սէր՝ և 'ի պատուիրանապահութեան քո ։ Խնդրելով զխաղաղութիւն ամենայն աշխարհի , և Եկեղեցւոյ քում սրբոյ զհաստատութիւն , և անձանց մերոց զփրկութիւն ։ Որպէս զի ընդունելով 'ի քէն զհայցուածս մեր՝ և զմեծ վայելչական փառաբանութիւն միշտ 'ի բարձունս առաքեսցուք ամենազօր Տէրութեանդ ․ ՔՐԻՍՏՈՍ Աստուած մեր ․ այժմ և"։

---

Սուրբ Աստուած ․ սուրբ և հզօր ․ սուրբ և անմահ"։ Գէ՛փ ջէՂ, 263—265 ․ Ըստ պաշտմին ․ Եւ եթէ կէ՞ս է՛ չէ՛ փառաւորեալ՝ տա՛ ։

## ՄԱՂԹԱՆՔ

Փրկեա զմեզ 'ի փորձութենէ , և յամենայն վտանգից մերոց ։

## ՔԱՐՈԶ

Եւ ևս խաղաղութեան զՏէր աղաչեսցուք ։

Վասն լսելի լինելոյ Տեառն Աստուծոյ ձայնի աղաչանաց մերոց՝ բարեխօսութեամբ սուրբ Աստուածածնին ։ Եւ կեցանելոյ 'ի

վերայ մեր ողորմութեան և գթութեան Տեառըն Աստուծոյ ։ Ամենակալ Տէր Աստուածմեր ․ կեցո՛ և ողորմեա՛ ։

Օրհնութիւն և փառք Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ ․ այժմ և միշտ և յաւի՛՛ ։

Խաղաղութիւն ամենեցուն ։

## ՕՐՀՆՈՒԹԻՒՆ
### ԱՍՏԻՃԱՆԱՑ

Համբարձի զաչս իմ ՚ի լերինս, ուստի եկեսցէ ինձ օգնութիւն ։

Օգնութիւն ինձ ՚ի Տեառնէ եկեսցէ, որ արար զերկինս և զերկիր ։

Մի՛ տար ՚ի սասանութիւն զոտն քո ․ և մի՛ նննջեսցէ պահապան քո ։

Որպէս ո՛չ ննջէ՝ և ո՛չ ՚ի քուն երթայ պահապանն Իսրայէլի ։

Տէր պահեսցէ զքեզ, և Տէր ընկալցի աջոյ ձեռամբն իւրով ։

Արեգակն ՚ի տուէ քեզ մի՛ մեղիցէ, և մի՛ լուսին ՚ի գիշերի ։

Տէր պահեսցէ զքեզ յամենայն չարէ ․ պահեսցէ Տէր զանձն քո ։

Տէր պահեսցէ զմուտ և զել քո՝ յայսմ հետէ մինչև յաւիտեան ։

Փառք Հօր և Որդւոյ և՛՛ ։ Այժմ և միշտ՛՛ ։

# ԿԱՆՈՆ

## ԿԻՐԱԿԱՄՏԻՑ

Բաց ՚ի յաղուհացէ և յինանց



### ՀԱՄԲԱՐՁԻ ՇԱՐԱԿԱՆ. ԱՌԱՋԻՆ ՁԱՅՆ

ՀՄ. ԱՁ. Սուրբ ես Տէր զօրութեանց որ
բնակեալդ ես ՚ի յերկինս. եւ բարեբանիս
՚ի սրբոց քոց: Երկնային զօրութիւնք
Սերովբէք եւ Քերովբէք. անդադար
օրհնեն սուրբ զանունդ քո: Քահա
նայք ընդ նոսին պաշտօնեայք եւ ժո
ղովուրդք. երկրպագեսցուք Տէրու
թեանդ քո: Լոյսդ որ յառաջ քան
զյաւիտեանս ՚ի Հօրէ առաքեցար. եւ
լուսով իմանալեաւ լցեր զարարածս.
օրհնեալ ես թագաւոր յաւիտենից: Որ
ընդ լոյսն ՚ի սկզբանէ հաստատեցեր վե
րստին. եւ զխաւարն անդիտութեան
յարութեամբդ քո հալածեցեր. օրհ:
Ուստի եւ մեք լուսաւորեալքս ընդ լու
սեղէն զուարթնոցն. երգեսցուք ցնծու
թեամբ ՚ի յարութեան երեկոյիս. օրհ:
Երկնաքաղաքացին Յովհաննէս մեծ

խորնաւյեա Տէրր 'ի յանձի նորս մեր. Որս ընտրեցեր յառաջ գիտութեամբ զարժանացելոցն անձինս. արպաւորեալ 'ի նոսա զհոգի շնորհաց քոց. որով վանեալ հերքեցին զապստամբ զթշնամին. բա: Որք զխաւարն անգիտութեան մերկացին յամենայն ազգաց. զգեստաւորեալ զհեթանոսս. առաքելական կոչմամբ 'ի յոյս կենացն յաւիտենից. բա: Սանորոյ և մեք հաստացեալք կատարեսցուք զյիշատակ սրբոց առաքելոցն. աղաչեմք զքեզ որ միայն գթած ես առատաձեռնեալ 'ի մեզ զգութ քո զողորմութիւնդ. Տէրր որ կեցուցաներ զամենայն արարածս: Փառք: Արդ աղաչեա մայր Աստուծոյ ըզծնեալն 'ի քէն վասն մեր. զի ընդ նմին պահեսլով, սուրբ յարութեամբ նորա նորոգեսցուք. առ նա միշտ բարեխօսեա կեցուցանել զմեզ: Այժմ: Այսօր ցնծային առաքեալքն. զարդարեալք 'ի շնորհաց հոգւոյն սրբոյ. մեծացուցանել զծնեալն 'ի հօրէ.

կոծ · Էջ Համբարձեալ ըղձալին Յու-
դայի խոնարհելով ի Տեառնէ ըղձանչա-
լին ամենեցուն սուրբ ըզխաչն · և Հաւա-
տով զոչէր եկայք երկրպագեսցուք
Աստուածային ոտիցն նորին · մեծա-
ցուցանելով ըզծննդեանն ի կուսէն :

# ԿԱՆՈՆ
## ՅԱՐՈՒԹԵԱՆ



### ՀԱՄԲԱՐՁԻ ՇԱՐԱԿԱՆ · ՎԵՐՋ

ՀՄ ·
ԴԿ · Ոզ քո յարութիւնդ օրհնեմք
մարդասէր · ողորմեա կեցո Տէր փառք
քեզ : Օ որ օրհնեն Սերովբէքն և գո-
վեն Քերովբէքն · ողոր՟ · Անդադար բե-
րանով անհանգիստ բարբառով · ողոր՟ :

ԵԻՍ
## ՅԱՐՈՒԹԵԱՆ



### ՀԱՄԲԱՐՁԻ ՇԱՐԱԿԱՆ · ՎԵՐՋ

ՀՄ ·
ԴԿ · Առեալ և մեր զօրհնութիւնս
հրեշտակաց երգեմք · և ամեն մեք
փառք յարութեան քո Տէր · Որ խաչե-
ցար վասն մեր թաղեցար · և յա-
րեար ազատեցեր զմեզ : Սուրբ

Աստուած · սուրբ եւ հըզօր · սուրբ անմահ Թագաւոր ։

# ԿԱՆՈՆ
## ՄԱՐՏԻՐՈՍԱՑ

### ՀԱՄԲԱՐՁԻ ՇԱՐԱԿԱՆ · ՎԱՌ

ՀՄ · ԳԿ · Այսօր մարտիրոսաց դասքն ցնծացեալ բերկրին · ընդ անուանս Տեառն · ՅԻՍՈՒՍԻ Որդւոյն Աստուծոյ ։ Ձայն ի յերկնից վըկայեալ ասէ · եկայք օրհնեալք Հօր իմոյ · ժառանգեցէք երկնից խորանացն ։ Լցէք ըզտեղի անկելոցն · ապըստամբողական Թըշնամոյն · որ ի յերկնից վայր անկաւ ։

# ԿԱՆՈՆ
## ԱՊԱՇԽԱՐՈՒԹԵԱՆ

### ՀԱՄԲԱՐՁԻ ՇԱՐԱԿԱՆ · ՎԵՐՋ

ՀՄ · ԳԿ · Արտօսրն աղօթք իմ Տէր ի տաճար սուրբ քո · և աղաչեմ ի մեզ Տէր զօգնութիւն ի լեռնէ սըրբոյ քում ։ Հովանասցի աջ քո Տէր ի

վերայ ստեղծուածոց քոց · և՛ առաքեա՛ ՚ի մեզ Տէր»։ Զերեկոյի աղօթս մեր ընկալ Տէր բարեխօսութեամբ ծնողի քո · և՛ առա»։

## ՔԱՐՈԶ

Վասն խաղաղութեան ամենայն աշխարհի, և հաստատութեան սրբոյ Եկեղեցւոյ ըզՏէր աղաչեսցուք ։ Ասասցուք ամենեքեան միաբանութեամբ ։
Տէր ողորմեա · Տէր ողորմեա · Տէր ողորմեա ։

## ԱՂՕԹՔ

Հայր գթած՝ բարեխնամօղ՝ արարիչ ամենայն արարածոց · ընկա՛լ զպաղատանս ծառայից քոց ՚ի ժամ երեկոյիս · որ առատ ես առ ամենեսեան՝ պարգևօք բարերարութեան քո ։ Ողորմեա Տէր ամենայն աշխարհի, և Եկեղեցւոյ քում սրբոյ · հիւանդաց՝ վշտացելոց՝ ճանապարհորդաց՝ նաւորդաց՝ խոստովանողաց՝ ապաշխարողաց՝ և հոգւոցն հանգուցելոց ։ Զի դու Տէր ամենակալ՝ գիտես զպէտս մեր՝ և զկարիս՝ առաւել քան զոր խնդրեմք և իմանամք · և քեզ ընդ Որդւոյ և ամենասուրբ Հոգւոյդ վայել է փառք իշխանութիւն և պատիւ, այժմ և միշտ և յաւէ՛ս։

# ՓՈԽ

## ԱՐՁԱԿՄԱՆ

Որ բնակեալն է յօգնութիւն բարձրելոյն, ընդ հովանեաւ Աստուծոյ յերկնից հանգիցէ ։

Ասասցէ Տեառն՝ ընդունող իմ ես, ապաւէն իմ Աստուած, և ես յուսամ ՚ի նա ։

Նա փրկեսցէ զքեզ յորոգայթէ որսողին, և ՚ի բանից ՚ի խռովութենէ ։

՚Ի թիկունս իւր ընկալցի զքեզ. ՚ի հովանի թևոց նորա յուսասցիս ։

Որպէս զէն շուրջ եղիցի զքեւ՝ ճշմարտութիւն նորա ։

Ոչ երկիցես դու յերկիւղէ գիշերի, և ոչ ՚ի նետէ՝ որ թռչի ՚ի տուէ ։

Յիրէ որ շրջի ՚ի խաւարի, ՚ի դայթակղութենէ գիւին ՚ի հասարակ աւուր ։

Անկցին ՚ի կողմանէ քումմէ հազարք, և բիւրք ընդ աջմէ քումմէ. և առ քեզ ինչ ոչ մերձեսցին ։

Բայց միայն աչօք քովք հայեսցիս դու, և զհատուցումն մեղաւորաց տեսցես. զի դու Տէր յոյս իմ ես ։

Զ բարձրեալն արարեր քեզ ապաւէն. զի ոչ հասցեն առ քեզ չարք, և տանջանք մի մերձեսցին ՚ի յարկս քո ։

Հրեշտակաց իւրոց պատուիրեալ է վասն քո, ՚ի պահել զքեզ յամենայն ճանապարհս քո ։

՚Ի բազուկս իւրեանց ընկալցին զքեզ. զի մի երբէք հարցես զքարի զոտն քո ։

՚Ի վերայ իժից և քարբից գնասցես դու. և առ ոտն կոխեսցես զառիւծն և զվիշապն ։

Քանզի յիս յուսացաւ, և փրկեցից զնա. հովանի եղէց նմա, զի ծանեաւ զանուն իմ ։

Կարդասցէ առ իս՝ և ես լուայց նմա. և առ նմա եղէց ՚ի նեղութեան ։

Փրկեցից և փառաւոր արարից զնա. երկայն աւուրբք լցուցից, և ցուցից նմա զփրկութիւն իմ ։

Առ քեզ Տէր համբարձի զաչս իմ. որ բնակեալդ ես ՚ի յերկինս ։

Որպէս աչք ծառայի ՚ի ձեռն Տեառն իւրոյ. և որպէս աչք աղախնոյ ՚ի ձեռն տիկնոջ իւրոյ ։

Այնպէս են աչք մեր առ քեզ Տէր Աստուած մեր. մինչև ողորմեսցիս ՚ի վերայ մեր ։

Ողորմեա́ մեզ Տէր՝ ողորմեա́ մեզ. զի բազում լցաք արհամարհանօք ։

Եւս առաւել լցան անձինք մեր նախատանօք, որք նախատէին զմեզ. և արհամարհանօք ամբարտաւանից ։

Աստուա́ծ՝ յանուան քում կեցո́ զիս,

և 'ի զօրութեան քում իրա՛ւ արա ինձ ։

Աստուա՛ծ՝ լո՛ւր աղօթից իմոց, ո՛ւնկնդիր բանից բերանոյ իմոյ ։

Օտարք յարեան 'ի վերայ իմ, և հզօրք խնդրեցին զանձն իմ, և ո՛չ համարեցան ըզ-քեզ Աստուած առաջի իւրեանց ։

Ահա՛ Աստուած օգնական իմ, և Տէր ընդ-ունող հոգւոյ իմոյ ։

'Ի դարձուցանել զչարն 'ի թշնամիս իմ, ճշմարտութեամբ քով սատակեա՛ զնոսա ։

Ես կամօք իմովք պատարագս մատուցից քեզ. և խոստովան եղէց անուան քում Տէր, զի բարի է ։

Յամենայն նեղութենէ իմմէ փրկեցեր զիս, և 'ի թշնամիս իմ ետես ակն իմ ։

Փառք Հօր և Որդւոյ" ։ Այժմ և միշտ և" ։

## ՄԱՂԹԱՆՔ

Օ՜ բարձրեալդ Ք·ՐԻՍՏՈՍ առաքեցո՛ւք մեզ ապաւէն, զի ո՛չ հասցեն առ մեզ չարք. և տանջանք մի՛ մերձեսցին 'ի յարկս մեր ։

## ՔԱՐՈԶ

Եւ մեք միաբան զողորմութիւն 'ի Տեառնէ խնդրելով, ասասցուք ամենեքեան միաբանութեամբ ։

Տէր ողորմեա՛. Տէր ողորմեա՛. Տէր ողորմեա՛ ։

# ԱՂՕԹՔ

Յոյս կենաց՝ ընդունող աղօթից՝ քաւիչ մեղաց՝ և կատարիչ խնդրուածոց ՔՐԻՍՏՈՍ Աստուած մեր. ընկա՛լ զպաղատանս մեր 'ի ժամ երեկոյիս՝ բարեխօսութեամբ սուրբ Աստուածածնին, և աղաչանօք ամենայն սրբոց քոց։ Լո՛ւր մեզ Տէր և ողորմեա՛. ներեա՛ քաւեա՛ և թո՛ղ զմեղս մեր. արժանաւորեա՛ գոհութեամբ փառաւորել զքեզ ընդ Հօր և ընդ սրբոյ Հոգւոյդ. այժմ և միշտ և"։

Յիշեա՛ Տէր զպաշտօն"։ Բարեբար և բազումողորմ"։ Գէ՛փ ժէՂ, 288—289։

Հա՛յր մեր որ յերկինս ես. սուրբ եղիցի անուն քո։ Եկեսցէ արքայութիւն քո. եղիցին կամք քո որպէս յերկինս և յերկրի։ Զհաց մեր հանապազորդ տո՛ւր մեզ այսօր։ Եւ թո՛ղ մեզ զպարտիս մեր, որպէս և մեք թողումք մերոց պարտապանաց։ Եւ մի՛ տանիր զմեզ 'ի փորձութիւն, այլ փրկեա՛ զմեզ 'ի չարէ։ Զի քո է արքայութիւն և զօրութիւն և փառք յաւիտեանս. Ամէն։

---

# ՓՈԽ

## ԿԻՒՐԱԿԱՄՏԻՑ

Արդ օրհնեցէք ամենայն ծառայք Տեառն զՏէր․ ո՛ կայք ՚ի տուն Տեառն, և ՚ի գաւիթս Աստուծոյ մերոյ ։

՚Ի գիշերի համբարձէք զձեռս ձեր ՚ի սրբութիւն․ և օրհնեցէք զՏէր ։

Օրհնեսցէ զմեզ Տէր ՚ի Սիօնէ․ որ արար զերկինս և զերկիր ։

Խոստովան եղէց քեզ Տէր՝ բոլորով սրտիւ իմով․ առաջի հրեշտակաց սաղմոս ասացից քեզ ։

Զի լուար զբանս բերանոյ իմոյ․ երկիրպագից ՚ի տաճար սուրբ քո․ և խոստովան եղէց անուան քում, վասն ողորմութեան և ճշմարտութեան քոյ ։

Մեծ արարեր յամենայնի զանուն սուրբ քո․ յորում աւուր կարդամ առ քեզ, վաղվաղակի լո՛ւր ինձ․ և բազում արասցես զզօրութիւնս յանձն իմ ։

Խոստովան եղիցին առ քեզ ամենայն թագաւորք երկրի, զի լուան զբանս բերանոյ քո, և օրհնեսցեն զճանապարհս քո ։

Մեծ են փառք Տեառն․ բարձր է Տէր․ զխոնարհս տեսանէ, և զբարձունս ՚ի հեռաստանէ ճանաչէ ։

Թէ գնացից ես 'ի մէջ նեղութեանց, կեցուցես զիս 'ի բարկութենէ թշնամւոյն ։

Ձգեցեր զձեռն քո՝ և փրկեաց զիս աջ քո. և Տէր հատուսցէ ընդ իմ ։

Տէր՝ ողորմութիւն քո յաւիտեան. զգործս ձեռաց քոց մի անտես առներ ։

Աստուած՝ յանուան քում կեցո զիս, և 'ի զօրութեան քում իրաւ արա ինձ ։

Աստուած՝ լուր աղօթից իմոց, ունկնդիր բանից բերանոյ իմոյ ։

Օտարք յարեան 'ի վերայ իմ, և հզօրք խնդրեցին զանձն իմ, և ոչ համարեցան ընդ քեզ Աստուած առաջի իւրեանց ։

Ահա Աստուած օգնական իմ, և Տէր ընդունօղ հոգւոյ իմոյ ։

'Ի դարձուցանել զչարն 'ի թշնամիս իմ, ճշմարտութեամբ քով սատակեա զնոսա ։

Ես կամօք իմովք պատարագս մատուցից քեզ. և խոստովան եղէց անուան քում Տէր, զի բարի է ։

Յամենայն նեղութենէ իմմէ փրկեցեր զիս, և 'ի թշնամիս իմ ետես ակն իմ ։

Փառք Հօր և Որդւոյ"։ Այժմ և միշտ և"։

## ՔԱՐՈԶ

Խնդրեսցուք հաւատով միաբանութեամբ 'ի Տեառնէ՝ զի ողորմութեան զշնորհս իւր

# ԿԱՐԳԱՒՈՐՈՒԹԻՒՆ

## ՀԱՍԱՐԱԿԱՑ ԱՂՕԹԻՑ ՀԱՆԳՍՏԵԱՆ ԺԱՄՈՒՆ

## ՈՐ ԿԱՏԱՐԻ 'Ի ԴԷՄՍ ՀՕՐ ԱՍՏՈՒԾՈՅ

ԶԻ

## ՊԱՀՊԱՆՈՂԱԿԱՆ ԱՋՈՎ ՄԻԱԾՆԻՆ

## ՊԱՀԵՍՑԷ ԶՄԵԶ 'Ի ԽԱՒԱՐԱՅԻՆ ԳԻՇԵՐԻՍ .



*Օրհնեալ Տէր մեր ՅԻՍՈՒՍ ՔՐԻՍՏՈՍ · Ամէն։ Հայր մեր որ յերկինս ես"։*

*ԱՌԱՔԵԱ՛ Տէր զլոյս քո՝ և զճշմարտութիւն քո · զի առաջնորդեսցեն ինձ, և հանիցեն զիս 'ի լեառն սուրբ և 'ի յարկս քո ։*

*Մտից առաջի սեղանոյ Աստուծոյ առ Աստուած · որ ուրախ առնէ զմանկութիւն իմ ։*

*Խոստովան եղէց քեզ օրհնութեամբ Աստուած Աստուած իմ ։*

Որ նըստիլ քո յատենի դատաւոր ահեղ · աղաչանօք սուրբ Աստուածածնին · յիշեա զհոգի ննջեցելոց լուսոյն ընծայեր · յորժամ գայցես ահաւոր փառօք · քանզի քո են փառք յաւիտեանս · Ամէն ։

## ԻԲԳ

## ԱՂՕԽՀԱՑԻՑ

Սկսեալ ի Գիշերէ Չորեքշաբաթէ

## ՉՈՐԵՔՇԱԲԱԹՈՒ

ԳՀ· Սրբուհի Մարիամ սափոր ոսկի և տապանակ կտակարանաց · որ զի վերուստ զհացն կենաց պարգևեցեր քաղցեալ բնութեանս · առ նա միշտ բարեխօսեա վասն քաւութեան մեղաց մերոց ։

Դասք անմարմնոց Հրեշտակաց · քեզ երանեն ամենօրհնեալ կոյս Մարիամ · որ զէակից Բանն որ ընդ Հօր կըրեցեր ՚ի քեզ անսերմնապէս · առ նա միշտ բարեխօսեա վասն քաւութեան մեղաց մերոց ։

Վասն որոյ և մեք հաւատացեալքս քեզ երկրպագեմք Քրիստոս և բարբառօք հայցեմք 'ի քէն · բարեխօսութեամբ Աստուածածնին զԱստուածայինն լոյս քո ծագեա յանձինս մեր · օրհնեմք զքեզ 'ի յարութեան երեկոյիս ահաւոր թագաւոր ։

ՀԻՆԳՇԱԲԱԹՈՒ

ԽՂ · Առաքեալք Աստուծոյ · ընտրեալք 'ի սկզբանէ նախ քան զաշխարհս · որք արժանի եղէք տեսանել զանտեսն հրեղինաց · բարեխօսեցէք առ Տէր վասն մանկանց Եկեղեցւոյ ։

Բարեկամք Քրիստոսի · հազարապետք Աստուածայինն խորհրդոյն · որք 'ի հոսանուտ մեղաց ծովէս վերածիք զմարդիկ 'ի կեանս անմահ · բարեխօսեցէք առ Տէր վասն մանկանց Եկեղեցւոյ ։

Գերագոյն քան զբնաւս · անճառելոյն հասիք երանութեան · որ

րք ՚ի գմբըթատեան Տեառըն նըստչիք յերկրպագատան աթոռ աւըն Քրիստոսի· բարեխօսեցէք առ Տէր փառըն մանկանց եկեղեցւոյ ։

## ՈՒՐԲԱԹՈՒ

ՈՒՐ. Պարունակեալ պահէին յանե ղաշէն դրախտին ըղձանապարհըս ծառոյն կենաց· Քերովբէական հոյլքըն բոցեղէն Սրովբէիւք· այսօր բար տափայլեալ ցուցար յերկիր Աստուածազարդ փայտ կենաց և փրկութեան· ըզ քեզ օրհնեն մանկունք սուրբ եկեղեցւոյ ։

Այն բեկոյ ծառոյն վերաբերեալ խոյ ողջակիզեալ փոխանակ Իսահակ կայ· այլ ՚ի վերայ քո զենաւ գառն անարատ· ՚ի հաշտութիւն Հօր և ՚ի բանալ ըզդրունս մեր· զքեզ օրհնեն մանկունք սուրբ եկեղեցւոյ ։

Պարծանօք Պօղոսեան· դաւանեալ ըզքեզ Աստուածային Բանին տեղի և

դենարան. քանզի քեւ ապրեցաք ՚ի խածանօղ եւ յաննմարմին գազանէն. Եւ ՚ի վերայ քո հեղեալ շիթք անապական արեամբն ըզկողածնին ջընջեաց ըզմեղս. Զքեզ օրհնեն մանկունք սուրբ Եկեղեցւոյ։

## ԵՐԿՈՒՇԱԲԱԹՈՒ

ԲՂ. Երկնաւոր հօտ ընտրեալ. զոր հովիւն քաջ թողեալ յերկինս. եւ եկեալ ՚ի խնդիր մեզ մոլորելոցս. որով լըցեալ զթիւ հարիւրոցդ. արարողութիւն ՚ի յերկինս երկնաւորացդ. աղաչեմք ըզձեզ բարեխօս լերուք առ Տէր վասն քաւութեան մեղաց մերոց։

Տեսանօղք անտեսին. խորհրդածուք խորոցն Աստուծոյ. որք իջեալ ընդ միածնին սպասաւորել տնօրէնութեանն. ՚ի ծննդեանն աւետաւորք հովուացն. Եւ կանանցն իւղաբերից կենաց քարոզք ըզկենդանւոյն. աղաչեմք ըզձեզ բարեխօս լերուք առ Տէր վասն քաւութեան մեղաց մերոց։

Որ յամպոյ բղխոյն վերկայեցար զատն Աստուածոյ բարձրեալ մեղաց. զոր զերծ բազում
անդարոց. ծանուցեր մեզ ի ծնունդ
դրս կամարանանց. և ձրագ որինացն.
որ և ի դժոխս ըղփրկական զալուս
տուն քո քարոզեաց. սորին մաղթանօք ողորմեա մեզ։

## ՄԱՂԹԱՆՔ

Հոգւոցն հանգուցելոց Քրիստոս Աստուած՝ տուր հանգիստ և ողորմութիւն. և մեզ
մեղաւորացս՝ շնորհեա զթողութիւն յանցանաց։

## ՔԱՐՈԶ

Եւ ևս խաղաղութեան զՏէր աղաչեսցուք։

Վասն հանգուցեալ հոգւոցն աղաչեսցուք զփրկիչն մեր Քրիստոս՝ զի զնոսա ընդ
արդարսն դասեսցէ. և զմեզ կեցուսցէ շնորհիւ ողորմութեան իւրոյ։ Ամենակալ Տէր
Աստուած մեր. կեցո և ողորմեա։

Տէր ողորմեա. Տէր ողորմեա. Տէր ողորմեա։

## ԱՂՕԹՔ

Քրիստոս Որդի Աստուծոյ աննախանձ և
բարեգութ՝ գթա քո արարչական սիրովդ ի

Հոգիս հանգուցեալ ծառայից քոց ։ Յիշեա՛
յաւուր մեծի գալստեան արքայութեան քոյ ։
Արա՛ արժանի ողորմութեան՝ քաւութեան և
թողութեան մեղաց ։ Պսակաւորեալ պայծա-
ռացո՛ ընդ սուրբս քո յաջակողման դասուն ։
Զի դու ես Տէր և արարիչ ամենեցուն ·
դատաւոր կենդանեաց և մեռելոց ։ Եւ քեզ
վայել է փառք իշխանութիւն և պատիւ , այ-
ժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից · Ամէն ։

Օրհնեալ Տէր մեր ՅԻՍՈՒՍ ՔՐԻՍՏՈՍ · Ամէն ։

Հայր մեր որ յերկինս ես · սուրբ եղիցի
անուն քո ։ Եկեսցէ արքայութիւն քո · եղի-
ցին կամք քո որպէս յերկինս և յերկրի ։
Զհաց մեր հանապազորդ տո՛ւր մեզ այսօր ։
Եւ թո՛ղ մեզ զպարտիս մեր , որպէս և մեք
թողումք մերոց պարտապանաց ։ Եւ մի՛ տա-
նիր զմեզ 'ի փորձութիւն , այլ փրկեա՛ զմեզ
'ի չարէ ։ Զի քո է արքայութիւն և զօրու-
թիւն և փառք յաւիտեանս · Ամէն ։

# ԿԱՐԳԱՒՈՐՈՒԹԻՒՆ

## ՀԱՄԱՌԱԿԱՑ ԱՂՕԹԻՑ ՀԱՆԳՍՏԵԱՆ ԺԱՄՈՒՆ
## ՈՐ ԿԱՏԱՐԻ 'Ի ԴԷՄՍ ՀՕՐ ԱՍՏՈՒԾՈՅ
ԶԻ
## ՊԱՀՊԱՆՈՂԱԿԱՆ ԱՋՈՎ ՄԻԱԾՆԻՆ
## ՊԱՀԵՍՑԷ ԶՄԵԶ 'Ի ԽԱՒԱՐԱՅԻՆ ԳԻՇԵՐԻՍ .



Օրհնեալ Տէր մեր Յիսուս Քրիստոս . Ամէն ։
Հայր մեր որ յերկինս ես" ։

Առաքեա՛ Տէր զլոյս քո՝ և զճշմարտութիւն քո . զի առաջնորդեսցեն ինձ , և հանցեն զիս 'ի լեառն սուրբ և 'ի յարկս քո ։

Մտից առաջի սեղանոյ Աստուծոյ առ Աստուած . որ ուրախ առնէ զմանկութիւն իմ ։

Խոստովան եղէց քեզ օրհնութեամբ Աստուած Աստուած իմ ։

Ընդ՝ ընդէր տրտում ես անձն իմ, կամ ընդէր խռովես զիս · յուսա՛ առ Աստուած, խոստովանեա՛ Նմա · փրկիչ երեսաց իմոց Աստուած է ։

Փառք Հօր և Որդւոյ" ։ Այժմ և միշտ և" ։

Եւ ես խաղաղութեան զՏէր աղաչեսցուք · ընկա՛լ կեցո՛ և ողորմեա՛ ։

Օրհնութիւն և փառք Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ · այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից · Ամէն ։

## ՍԱՂՄՈՍ

Եկեսցէ 'ի վերայ իմ ողորմութիւն քո Տէր · և փրկութիւն քո ըստ բանի քում ։

Տաց պատասխանի, ոյք նախատեն զիս բանիւք · զի ես 'ի բանս քո յուսացայ ։

Մի՛ 'ի բացեայ առներ 'ի բերանոյ իմմէ զբան ճշմարտութեան մինչև յոյժ · զի յիրաւունս քո յուսացայ ։

Պահեցի զօրէնս քո յամենայն ժամ, յաւիտեան՝ և յաւիտեանս յաւիտենից ։

Գնայի ես յանդորրու · զի զպատուիրանս քո խնդրեցի ։

Խօսէի զվկայութիւնս քո առաջի թագաւորաց, և ո՛չ ամաչէի ։

Խորհէի 'ի պատուիրանս քո, զոր սիրեցի

Համբարձի զձեռս իմ ՚ի պատուիրանս քո զոր սիրեցի. և խորհէի յարդարութեան քում։

Յիշեա զբան ծառայի քո, յոր և յուսացուցեր զիս։

Այս մխիթարեաց զիս ՚ի խոնարհութեան իմում. զի բան քո կեցոյց զիս։

Ամբարտաւանք անիրաւեցան յոյժ, այլ յօրինաց քոց ես ոչ խոտորեցայ։

Յիշեցի զիրաւունս քո յաւիտենից Տէր, և մխիթարեցայ։

Տրտմութիւն կալաւ զիս ՚ի մեղաւորաց, և ոյք թողին զօրէնս քո։

Գովելի են ինձ իրաւունք քո, ՚ի տեղւոջ պանդխտութեան իմոյ։

Յիշեցի ՚ի գիշերի զանուն քո Տէր. և պահեցի զօրէնս քո։

Այս եղև ինձ ճանապարհ ՚ի կեանս. զի զարդարութիւնս քո խնդրեցի։

Օ անօրէնս ատեցի. և զօրէնս քո սիրեցի։

Օգնական և փրկիչ իմ ես դու. և ես ՚ի բանս քո յուսացայ։

՚Ի բաց եղերուք յինէն չարք. և քննեցից զպատուիրանս Աստուծոյ իմոյ։

Օգնեա ինձ ըստ բանի քում, և կեցո զիս. և մի յամօթ առներ զիս ՚ի յուսոյ իմմէ։

Օգնեա ինձ, և ապրեցո զիս. և խորհեա

ցայց յիրաւունս քո յամենայն ժամ ։

Անարգեցեր զամենեսեան՝ որք ապստամբք եղեն յարդարութեանց քոց․ զի անիրաւութեամբ էին խորհուրդք նոցա ։

Յանցաւորս համարեցայ զամենայն մեղաւորս երկրի․ վասն այսորիկ՝ սիրեցի զպատուիրանս քո ։

Բեւեռեա ընդ երկիւղ քո զմարմին իմ․ զի ՚ի դատաստանաց քոց երկեայց յոյժ ։

Մերձեսցին խնդրուածք իմ առաջի քո Տէր․ ըստ բանի քում իմաստուն արա զիս ։

Մտցեն աղօթք իմ առաջի քո Տէր, և բանիւ քո փրկեա զիս ։

Բղխեսցեն շրթունք իմ զօրհնութիւնս քո, յորժամ ուսուսցես ինձ զարդարութիւնս քո ։

Խօսեսցի լեզու իմ զբանս քո, զի ամենայն պատուիրանք քո արդարութեամբ են ։

Եղիցի ձեռն քո ՚ի կեցուցանել զիս, զի զպատուիրանս քո ընտրեցի ։

Ցանկացայ փրկութեան քում Տէր, և օրէնք քո խօսք իմ էին ։

Կեցցէ անձն իմ, օրհնեսցէ զքեզ, և իրաւունք քո օգնեսցեն ինձ ։

Մոլորեցայ ես որպէս զոչխար կորուսեալ, խնդրեա զծառայս քո՝ զի զպատուիրանս քո ես ոչ մոռացայ ։

Մի՛ եկեսցեն 'ի վերայ մեր ոտք ամբարտաւանից, և ձեռք մեղաւորաց մի՛ դողացուսցեն զմեզ ։

Անդ անկցին ամենեքեան որք գործեն զանօրէնութիւն, մերժեսցին և այլ մի՛ կարասցեն հաստատիլ ։

Ես 'ի Տէր յուսացայ, ցնծացայց և ուրախ եղէց յԱստուած փրկիչ իմ ։

Տէր Տէր ետ ինձ զօրութիւն և կացո՛յց զոտըս իմ 'ի հաստատութեան, 'ի վերայ պարանոցի թշնամւոյն կացոյց զիս, և հանգոյց զիս երագ երագ ։

Որ բնակեալն է յօգնութիւն բարձրելոյն. ընդ հովանեաւ Աստուծոյ յերկինս հանգիցէ ։

Ասասցէ Տեառն՝ ընդունող իմ ես, ապաւէն իմ Աստուած, և ես յուսամ 'ի նա ։

Նա փրկեսցէ զիս յորոգայթէ որսողին, և 'ի բանիցն 'ի խռովութենէ ։

'Ի թիկնամէջս իւր ընկալցի զքեզ. 'ի հովանի թևոց նորա յուսասցիս ։

Որպէս զէն շուրջ եղիցի զքև՝ ճշմարտութիւն նորա ։

Ո՛չ երկիցես դու յերկիւղէ գիշերի, և ո՛չ 'ի նետէ՝ որ թռչի 'ի տուէ ։

Յիրէ որ շրջի 'ի խաւարի, 'ի դայթակղութենէ դիւէն 'ի հասարակ աւուր ։

Անկցին 'ի կողմանէ քումմէ հազարք, և

բիւրք ընդ աջմէ քումմէ · և առ քեզ ինչ ոչ մերձեսցին :

Բայց միայն աչօք քովք հայեսցիս դու, և զհատուցումն մեղաւորաց տեսցես · զի դու Տէր յոյս իմ ես :

Զբարձրեալն արարեր քեզ ապաւէն · զի ոչ հասցեն առ քեզ չարք, և տանջանք մի մերձեսցին 'ի յարկս քո :

Հրեշտակաց իւրոց պատուիրեալ է վասն քո, 'ի պահել զքեզ յամենայն ճանապարհս քո :

'Ի բազուկս իւրեանց ընկալցին զքեզ · զի մի երբէք հարցես զքարի զոտն քո :

'Ի վերայ իժից և քարբից գնասցես դու · և առ ոտն կոխեսցես զառիւծն և զվիշապն :

Քանզի յիս յուսացաւ, և փրկեցից զնա · հովանի եղէց նմա, զի ծանեաւ զանուն իմ :

Կարդասցէ առ իս՝ և ես լուայց նմա · և առ նմա եղէց 'ի նեղութեան :

Փրկեցից և փառաւոր արարից զնա · երկայն աւուրբք լցուցից, և ցուցից նմա զփրկութիւն իմ :

Առ քեզ Տէր համբարձի զաչս իմ · որ բնակեալդ ես 'ի յերկինս :

Որպէս աչք ծառայի 'ի ձեռն Տեառն իւրոյ · և որպէս աչք աղախնոյ 'ի ձեռն տիկնոջ իւրոյ :

Այնպէս են աչք մեր առ քեզ Տէր Աստուած մեր · մինչև ողորմեսցիս 'ի վերայ մեր ։

Ողորմեա մեզ Տէր՝ ողորմեա մեզ · զի բազում լցաք արհամարհանօք ։

Եւս առաւել լցան անձինք մեր նախատանօք, որք նախատէին զմեզ · և արհամարհանօք ամբարտաւանից ։

Աստուած յանուն քում կեցո զիս, և 'ի զօրութեան քում իրաւ արա ինձ ։

Աստուած լո՛ւր աղօթից իմոց, ունկնդիր բանից բերանոյ իմոյ ։

Օտարք յարեան 'ի վերայ իմ, և հզօրք խնդրեցին զանձն իմ, և ո՛չ համարեցան ըզ-քեզ Աստուած առաջի իւրեանց ։

Ահա Աստուած օգնական իմ, և Տէր ընդունող հոգւոյ իմոյ ։

'Ի դարձուցանել զչարն 'ի թշնամիս իմ, ճշմարտութեամբ քով սատակեա զնոսա ։

Ես կամօք իմովք պատարագս մատուցից քեզ · և խոստովան եղէց անուան քում Տէր, զի բարի է ։

Յամենայն նեղութենէ իմմէ փրկեցեր զիս, և 'ի թշնամիս իմ ետես ակն իմ ։

Օրհնեալ ես դու Տէր Աստուած հարցն մերոց, գովեալ և առաւել բարձրացեալ յաւիտեան ։

Եւ օրհնեալ է անուն սուրբ փառաց քոց, գովեալ և առաւել":

Օրհնեալ ես ՚ի տաճարի փառաց սրբութեան քո, գովեալ և առաւել":

Օրհնեալ ես ՚ի վերայ աթոռոյ արքայութեան քո, գովեալ և առաւել":

Օրհնեալ ես որ նստիս ՚ի Քրովբէս և հայիս յանդունդս, գովեալ և առաւել":

Օրհնեալ ես ՚ի վերայ հաստատութեան երկնից, գովեալ և առաւել":

Օրհնեցէք զԱստուած ՚ի սրբութեան նորա, օրհնեցէք զնա ՚ի հաստատութեան ՚ի զօրութեան նորա:

Օրհնեցէք զնա ՚ի զօրութեան նորա, օրհնեցէք զնա ՚ի բազում մեծութեան նորա:

Օրհնեցէք զնա ՚ի ձայն օրհնութեան, օրհնեցէք զնա սաղմոսիւք և օրհնութեամբ:

Օրհնեցէք զնա ցնծութեամբ, գովեցէք զնա ուրախութեամբ:

Օրհնեցէք զնա ՚ի բանս քաղցր, գովեցէք զնա ՚ի բարբառ լսելի:

Օրհնեցէք զնա ՚ի ձայն գոհութեան, ամենայն հոգիք օրհնեցէք զՏէր:

Արդ՝ արձակեա զծառայս քո Տէր՝ ըստ բանի քում ՚ի խաղաղութիւն, զի տեսին աչք իմ զփրկութիւն քո՝ զոր պատրաստեցեր առաջի ամենայն ժողովրդոց:

Լոյս յայտնեցար հեթանոսաց, և փառք ժողովրդեան քում Իսրայէլի ։

Զգեցեր զձեռն քո՝ և փրկեաց զիս աջ քո, և Տէր հատուսցէ ընդ իմ ։

Տէր ողորմութիւն քո յաւիտեան, զգործս ձեռաց քոց մի անտես առներ ։

Տէր՝ հա՛ն՚ի բանտէ զանձն իմ, գոհանամ զանուանէ քումմէ ։

Եւ քեզ սպասեն արդարք՝ մինչև հատուսցես ։

Մեծացուսցէ անձն իմ զՏէր, և ցնծասցէ հոգի իմ Աստուծով փրկչաւ իմով ։

Այց արար ՚ի վերայ խոնարհութեան աղախնոյ իւրոյ, այսուհետև երանեսցեն ինձ ամենայն ազգք ։

Արար ընդ իս մեծամեծս հզօրն, և սուրբ է անուն նորա ։

Ողորմութիւն արար ազգաց յազգս երկիւղածաց իւրոց, արար զօրութիւն բազկաւ իւրով ։

Ցրուեաց զամբարտաւանս ՚ի մտաց սրտից, և քակեաց զհզօրս յաթոռոց ։

Զխոնարհս բարձրացոյց՝ զկարօտս ելից բարութեամբ, և զմեծատունս արձակեաց ունայնս ։

Պաշտպանեաց Իսրայէլի ծառայի իւրոյ, յիշել զողորմութիւն իւր ։

Որպէս խօսեցաւ առ հարսն մեր՝ ընդ Աբրահամու և զաւակի նորա յաւիտեան ։

Տո՛ւր զօրութիւն ծառայի քո, կեցո՛ զորդի աղախնոյ քո, և արա՛ առ իս նշան բարութեան ։

Տեսցեն ատելիք իմ և ամաչեսցեն, զի դու Տէր օգնեցեր ինձ և մխիթարեցեր զիս ։

Փառք Հօր և Որդւոյ" ։ Այժմ և միշտ և" ։

## ՄԱՂԹԱՆՔ .

Անձն իմ 'ի ձեռս քո է յամենայն ժամ, և 'ի սուրբ խաչ քո յուսացեալ եմ Թագաւոր երկնաւոր · զբազմութիւն սրբոց քոց բարեխօս ունիմք առ քեզ ։ Որ երկայնամիտ ես առ ամենեսեան · մի՛ անտես առներ զապաւինեալս 'ի քեզ · այլ պահեա՛ պատուական և սուրբ խաչիւ քով 'ի խաղաղութեան ։

## ՔԱՐՈԶ

Աղաչեսցուք զամենակալն Աստուած · և խնդրեսցուք 'ի նմանէ · զի առաքեսցէ զհրեշտակ խաղաղութեան, որ եկեալ պահեսցէ զմեզ յերկիւղական գիշերիս, 'ի դիւական խռովութենէ՝ ամբողջ պահելով զհոգի և զմարմին մեր մինչև 'ի կատարումն ժամանակի ամաց մերոց ։ Ամենակալ Տէր Աստուած

մեր ․ կեցո՛ և ողորմեա՛ ։ Ո՜ հանդիստ գիշերիս խաղաղութեամբ"։" Ո՜ հրեշտակ խաղաղու"։" Ո՜ քաւութիւն և"։" Ո՜ սրբոյ խաչին"։" Եւ և․ միաբան"։" Ո՜ անձինս"։" Ողորմեա՛ց"։"

# ԱՂՕԹՔ

Տէր Աստուած մեր՝ դու պահեա՛ զմեզ խաղաղութեամբ 'ի գիշերիս յայսմիկ և յամենայն ժամանակի ։ Ընդ սուրբ երկիւղ քո բնակեցեալ պահեա՛ զմիտս և զխորհուրդս մեր ։ Որպէս զի յամենայն ժամ քեւ պահպանեալ լիցուք յորոգայթից թշնամւոյն ։ Եւ քեզ հանցուք զօրհնութիւն և զփառս Հօր և Որդւոյ և Հոգւոյդ սրբոյ, այժմ և միշտ և յա"։

Խաղաղութիւն ամենեցուն ։

Հրեշտակի խաղաղութեան յանձն արա՛ զանձինս մեր Տէր զօրութեանց ․ որ եկեալ պահեսցէ զմեզ անխռովս 'ի տուէ և 'ի գիշերի, յարթնութեան և 'ի հանգստեան մերում ․ զի դու ես արարիչ լուսոյ, և հաստիչ գիշերի ։ Եւ այժմ աղաչեմք զքեզ Տէր Աստուած մեր, զհանգիստ գիշերիս շնորհեա՛ խաղաղութեամբ անցուցանել, և հասանել 'ի պաշտօն առաւօտու յերկրպագութիւն և 'ի փառաբանութիւն ամենասուրբ Երրորդութեանդ ։ այժմ և միշտ և յաւիտեանս յաւի"։

# ՍԱՂՄՈՍ

Խաղաղութեամբ յայս և 'ի սոյն ննջեսցուք և զարթիցուք. զի դու Տէր միայն առանձին յուսով քո բնակեցուցեր զմեզ:

'Ի կարդալ իմում լուար ինձ Աստուած ըստ արդարութեան, 'ի նեղութենէ ինձ անդորր արարեր. ողորմեա ինձ և լուր աղօթից իմոց:

Որդիք մարդկան՝ մինչև յերբ էք խստասիրտք. ընդէր սիրէք զնանրութիւն, և խնդրէք զստութիւն:

Ծանիրուք զի սքանչելիս արար Տէր սրբոյ իւրում. և Տէր լուիցէ ինձ 'ի կարդալ իմում առ նա:

Բարկանայք՝ և մի մեղանչէք. զոր ինչ ասէք 'ի սիրտս ձեր՝ յանկողինս ձեր զղջացարուք:

Մատուցէք պատարագս արդարութեան, և յուսացարուք 'ի Տէր:

Բազումք ասէին թէ ո ցուցցէ մեզ զբարութիւն Տեառն. նշանեցաւ առ մեզ լոյս երեսաց քոց, և ետուր ուրախութիւն սրտից մերոց:

'Ի պտղոյ ցորենոյ գինոյ և ձիթոյ իւրեանց լցուցեր զնոսա:

Խաղաղութեամբ յայս և 'ի սոյն ննջեա-

ցուք և զարթիցուք ․ զի դու Տէր միայն ա-
ռանձին յուսով քո բնակեցուցեր զմեզ ։

Սարկաւագն

Ալէ՜լուիա Օ՛րթի ։

Քահանայն

Խաղաղութիւն ամենեցուն ։

Դպիրն

Եւ ընդ հոգւո՜յդ քում ։

Սարկաւագն

Երկիւղածութեամբ լուա՜րուք ։

Քահանայն

Սուրբ Աւետարանիս ՅԻՍՈՒՍԻ ՔՐԻՍՏՈՍԻ

որ ըստ

ՅՈՎՀԱՆՆՈՒ

( Գլ, ԺԲ ․ Հ , ՁԷ ։ )

Դպիրն

Փառք քեզ Տէր Աստուած մեր ։

Սարկաւագն

Պռօսխո՜ւմէ ։

Դպիրն

Ասէ Աստուած ։

Քահանայն

Տէրն մեր ՅԻՍՈՒՍ ՔՐԻՍՏՈՍ ասէ ։

Ամէն ամէն ասեմ ձեզ ․ եթէ ոչ հատն ցորենոյ անկեալ յերկիր մեռանիցի , նոյն

միայն կայ · ապա եթէ մեռանիցի՝ բազում արդիւնս առնէ ։ Որ սիրէ զանձն իւր կորձանէ զնա · եւ որ ատեայ զանձն իւր յաշխարհիս յայսմիկ, 'ի կեանսն յաւիտենականս պահեսցէ զնա ։ Եթէ ոք զիս պաշտիցէ, զկնի իմ եկեսցէ · եւ ուր եմ ես, անդ եւ պաշտօնեայն իմ եղիցի · եթէ ոք զիս պաշտիցէ, պատուեսցէ զնա Հայրն իմ ։ Վ. եւՂ. Հ, 26 ։

Փառք քեզ Տէր Աստուած մեր ։

## ՔԱՐՈԶ

Սուրբ խաչիւս աղաչեսցուք զՏէր · զի սովաւ փրկեսցէ զմեզ 'ի մեղաց՝ եւ կեցուսցէ շնորհիւ ողորմութեան իւրոյ ։ Ամենակալ Տէր Աստուած մեր · կեցո եւ ողորմեա ։

## ԱՂՕԹՔ

Պահպանեա զմեզ ՔՐԻՍՏՈՍ Աստուած մեր՝ ընդ հովանեաւ սուրբ եւ պատուական խաչիւդ քով 'ի խաղաղութեան · փրկեա յերեւելի եւ աներեւոյթ թշնամւոյն ։ Արժանաւորեա գոհութեամբ փառաւորել զքեզ ընդ Հօր եւ ընդ սուրբ Հոգւոյդ · այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից · Ամէն ։

Օրհնեալ Տէր մեր ՅԻՍՈՒՍ ՔՐԻՍՏՈՍ · Ամէն ։

Հայր մեր որ յերկինս ես ։

# ՄԱՂԹԱՆՔ

Ընկանիմք առաջի քո սուրբ Աստուածածին և աղաչեմք զանարատ զկոյսդ, բարեխօսեա վասն անձանց մերոց, և աղաչեա ընդ միածին որդիդ փրկել զմեզ 'ի փորձութենէ և յամենայն վտանգից մերոց :

Որ արձակիչդ ես կապելոց՝ պարգևատու ամենեցուն. այսօր հայցմամբ ծերունոյն՝ արձակեա և զիս զբազմամեղս 'ի կապանաց մահու 'ի կեանսն յաւիտենից :

---

ՆԱՐԵԿ. ԳԼ. ԺԲ.

[illegible]

Եւ արդ՝ քանզի յաւէտ յառաջնումն զղջմանն՝ յուսահատական բանիւ լքայ, և տարակուսանաց հեծանաւն 'ի մահ ձաղկեցայ, աստանօր յուսոյն կերպարան փոխեալ՝ յարդարահատել համարձակեցայ, զԵրրորդութիւնն սուրբ կարդալով՝ յօգնականութիւն ինձ մեղաւորիս : Որ և անդստին իսկ յօրհնաբանելն և 'ի դաւանելն զկենդանարարն բնաւից Աստուած, խոկոյն և կոչումն ընտանի ձայնին ահաւորութեան անուան շնորհաձիրն բարերարի՝ մահացելոյս է կենդանութիւն. ըստ մարգարէին Նախաձայնութեան, թէ որ կար-

դայ զանուն Տեառն՝ կեցցէ։ Իսկ ես ոչ միայն կարդամ, այլ նախ հաւատամ մեծութեան նորին։ Ոչ եթէ վասն պարգևաց նորա մատուցեալ յողոք դեգերիմ, այլ իբր զկենդանութիւն խնկապէս, և զշնչոյ տուրևառութիւն հաւատար, առանց որոյ ոչ է շարժողութիւն կամ ընթացութիւն. զի ոչ այնքան յուսոյն հանդուցիւ՝ որչափ սիրոյն կապանօք քերկրիմ։ Ոչ 'ի տուրսն, այլ 'ի տուօղն յաւէտ կարօտիմ. ոչ փառքն են ինձ անձկալի, այլ փառաւորեալն է համբուրելի. ոչ կենացն փափագանօք, այլ կենարարին յիշատակաւն միշտ ճենճերիմ. ոչ վայելիցն տարփանօք հեծեմ, այլ հանդերձողին տենչանօք յերիկամանց սաստիկ կականիմ. ոչ զհանգիստն խնդրեմ, այլ զհանգուցչին երեսս աղաչեմ. ոչ հարսնարանին խնճոյիւք, այլ փեսային անձկութեամբն մաշիմ։ 'Ի ձեռն որոյ զօրութեան վստահապէս ակնկալութեամբ վերագրեցելովք յանցանօք բեռանց՝ աներկմիտ յուսով հաւատամ 'ի կարողին ձեռն ապաստանեալ։ Ոչ քաւութեան միայն հասանել, այլ զնոյն ինքն տեսանել ողորմութիւն և գթութիւն և յերկնիցն ժառանգութիւն, թէպէտ և յոյժ եմ պարտապարտելի։

Եւ արդ՝ բազում պատկառանօք ամաչեցեալ դիմօք կորացեալ, զմեղմնարդ աղաչման

կափուցմանց երկակի շրթանցս՝ արժանափակ ադխիւ կարկեղոց՝ առ անհամարձակ լեզուիս շարժութիւն , Նորոգեցից երգ Համաչման պաղատանաց յեղանակութեանց՝ ողիողորմ Հեծեծանաց՝ 'ի բարձունս աղաղակելոյ ։

Մաղթանք զօրաւորք՝ արհաւրաց գիշերայնոց ,

Ընկա՛լ քաղցրութեամբ Տէր Աստուած Հզօր՝ զդառնացողիս զողոջանս · մատիր գըթութեամբ առ պատկառեալս դիմօք · փարատեա՛ ամենապարգև , զամօթական տխրութիւնս · բա՛րձ յինէն ո՛ղորմած , զանբերելի ծանրութիւնս · անջրպետեա՛ հնարաւոր , զմահացու կրթութիւնս · աւարեա՛ միշտ յաղթօղ , զխաբողին հաճութիւնս · բացադրեա՛ վերնային , զմոլելոյն մառախուղ · ճնքեա՛ կեցուցիչ , զկորուսչին ընթացմունս · ցրուեա՛ ծածկատես , զըմբռնողին չար դաւմունս · խորտակեա՛ անքննին , զմարտողին դիմեցմունս ։ Տեառնագրեա՛ քո անուամբդ զլուսանցոյց երդ յարկիս · պարփակեա՛ քո ձեռամբդ զառաստաղ տաճարիս · գծագրեա՛ քո արեամբդ զմուտ սեմոց սենեկիս · կերպագրեա՛ զքո նշանդ 'ի հետս ելից մաղթողիս · ամրացո՛ քո աջովդ զհանգստեանս խշտի · մաքրեսցես 'ի հաղբեաց զծածկարան անկողնոյս ։ պահեսցես քո կամօքդ զտառապեալ անձն ոգւոյս · անխար-

դա՛խ արասցես զքո շնորհեալ շունչ մարմնոյս • կարցուցես շղթափակ զպար զօրուդ երկնայնոյ • կարգեսցես ՚ի դիմի ընդդէմ դիւացն դասու ։ Տուր հաստատ բերկրութեան մնահահանգոյժս նիրհման ՚ի խորութեան գիշերիս , բարեխօսութեամբ հայցուածոց սրբոյ Աստուածածնին՝ և ամենայն ընտրելոց ։ Ամփոփեալ պարուրեալ զպատուհան տեսութեանց զգայարանացս իմաստից անզարհուրելի զետեղմամբ՝ ՚ի ծփական խռովութեանց , կենցաղական զբաղմանց , անրջական երազոց , խօլականաց ցնորից , յիշատակաւ քո յուսոյդ անմխասելի պաշտպանեալ ։

Եւ սթափեալ վերստին ՚ի նինջմանէ ծանրութեան , ամենազգաստ արթնութեամբ , հոգենորոգ զուարթութեամբ ՚ի քեզ արձանացեալ , զայս ձայն մաղթանաց՝ բուրմամբ հաւատոց քեզ ամենօրհնեալ Թագաւոր փառաց անճառելից , փառաբանողաց երկնագումար խմբից երգակցեալ , յերկինս առաքել ։ Զի դու փառաւորեալ ես յամենայն արարածոց յաւիտեանս յաւիտենից • Ամէն ։

## ՆԱՐԵԿ • ԳԼ, ՂԴ

Աստուած յաւիտենական՝ բարերար և ամենակալ • ստեղծիչ լուսոյ՝ և յօրինիչ գիշերոյ • կեանք ՚ի մահու՝ և լոյս ՚ի խաւարի •

յոյս անկելոցաց՝ և երկայնմտութիւն տա-
րակուսելոց ։ Որ անմահութեան խնամատու-
թեամբ քո՝ դարձուցանես յոյզ զստուերս
մահու ։ աննուաղ ծագումն՝ և անմուտ արե-
գակն ։ քանզի ոչ զօրէ ծածկել զփառս Տէ-
րութեան քո խաւար գիշերոյ ։ որում կրկնի
ծունր երկրպագութեան ամենայն եղելոց՝
երկնաւորաց և երկրաւորաց և սանդարամե-
տականաց ։ Որ լսես զհեծութիւն կապելոց ։
և հայիս յաղօթս խոնարհաց ։ և ընդունիս
զխնդրուածս նոցա ։ Աստուած իմ և Թա-
գաւոր իմ ։ կեանք իմ և ապաւէն իմ ։ յոյս
իմ և վստահութիւն իմ ։ ՅԻՍՈՒՍ ՔՐԻՍՏՈՍ
Աստուածդ ամենայնի ։ սուրբդ հանգուցեալ
'ի հոգիս սրբոց , մխիթարութիւն վշտաց ։
և քաւարան մեղուցելոց ։ որ գիտես զամենայն
յառաջ քան զլինել նոցա ։ Առաքեա զպահ-
պանողական զօրութիւն աջոյ քո , և փրկեա
զիս յերկիւղէ գիշերի և 'ի դիւէ չարէ ։ որ-
պէս զի՝ զյիշատակ տօնակալի և սուրբ քո ան-
ուանդ միշտ համբուրել՝ շրթամբք հոգւոյ
ըղձութեան ջերմոյ , կեցցեմ պահպանեալ ընդ-
այնոսիկ՝ որք կարդան զքեզ 'ի բոլոր սրտէ ։
Եւ 'ի դրօշմն խաչի քոյոյ նշանին , զոր
Աստուածային արեամբ քո ներկեալ նորոգե-
ցեր , և 'ի նոյն շնորհ որդեգրութեան զմեզ
մկրտեցեր , և 'ի փառս պատկերի քո նկարեալ

յօրինեցեր · այսու պարգեւօք Աստուածականօք՝ ամաչեսցէ սատանայ · քակտեսցին մեքենայքն · բարձցին որոգայթքն · պարտեսցին մարտուցեալքն · պակասեսցին զէնքն սայրասուրք · մերժեսցի մէգն · փարատեսցի խաւարն · մեկնեսցի մառախուղն · բազուկ քո հովանասցի եւ աջ քո կնքեսցէ ։ Վասն զի գըթած ես եւ ողորմած · եւ անուն քո կոչեցեալ է՝ի վերայ ծառայից քոց ։ Եւ քեզ ընդ Հօր՝ Հոգւովդ սրբով, փառք եւ իշխանութիւն յաւիտեանս յաւիտենից · Ամէն ։

ՆԱՐԵԿ · ԳԼ, ԽԱ

Որդի Աստուծոյ կենդանւոյ օրհնեալ յամենայնի՝ Հօրդ ահաւորի անքննելին ծնունդ, որ ակարանայ առ՝ի քէն եւ ոչ ինչ ։ Որ՝ի ծագել անստուեր նշուլից ողորմութեան քոյ փառաց, հալին մեղք · հալածին դեւք · ջնջին յանցանք · խզին կապանք · խորտակին շղթայք · կենդանածնին մահացեալք · բժշկին հարուածք · ողջանան վէրք · բառնին ապականութիւնք · տեղի տան ախտութիւնք · նահանջին հեծութիւնք · փախնու խաւարն, մեկնի մէգըն · մերժի մառախուղն · փարատի մթայլն · սպառի աղջամուղջն · վերանայ մութն · գընայ գիշերն · տարադրի տագնապն · չքանան չարիքն · հալածին յուսահատութիւնքն ·

և թագաւորէ ձեռն քո ամենակալ՝ քաւիչդ ամենայնի · որ ո՛չ եկիր կորուսանել զմարդկան հոգիս՝ այլ կեցուցանել, թո՛ղ ինձ զանթիւ չարիսն իմ՝ բազում ողորմութեամբդ · Զի դու միայն ես յերկնի անճառ, և յերկրի անզննին · 'ի տարր դոյի, և յեզըս ծագաց աշխարհի, սկիզըն ամենայնի, և յամենայնի · ամենայն լրմամբ օրհնեալ 'ի բարձունս · և քեզ ընդ Հօր և Հոգւոյդ սրբոյ փառք՝ յաւիտեանս · Ամէն ·



## ԱՂՕԹՔ

### ԻՒՐԱՔԱՆՉԻՒՐ ԱՆՁԱՆՑ ՀԱՒԱՏԱՑԵԼՈՑ 'Ի ՔՐԻՍՏՈՍ ·

### ԱՐԱՐԵԱԼ ՍՐԲՈՅՆ ՆԵՐՍԻՍԻ ՇՆՈՐՀԱԼՒՈՅՆ

Հաւատով խոստովանիմ՝ և երկիրպագանեմ քեզ՝ Հա՛յր և Որդի և սուրբ Հոգի, անեղ և անմահ բնութիւն, արարիչ հրեշտակաց և մարդկան և ամենայն եղելոց · և ողորմեա՛ քո արարածոց, և ինձ բազմամեղիս,

Հաւատով խոստովանիմ, և երկիրպագանեմ քեզ՝ անբաժանելի լոյս, միասնական սուրբ Երրորդութիւն և մի Աստուածութիւն, արարիչ լուսոյ և հալածիչ խաւարի ·

հալածեա՛ 'ի հոգւոյ իմմէ զխաւար մեղաց և անգիտութեան, և լուսաւորեա՛ զմիտս իմ 'ի ժամուս յայսմիկ աղօթել քեզ 'ի հաճոյս, և ընդունել 'ի քէն զխնդրուածս իմ. և ողոր″։

Հա՛յր երկնաւոր Աստուած ճշմարիտ՝ որ առաքեցեր զՈրդիդ քո սիրելի 'ի խնդիր մոլորեալ ոչխարին, մեղայ յերկինս և առաջի քո. ընկա՛լ զիս որպէս զանառակ որդին, և զգեցո՛ ինձ զպատմուճանն զառաջին զոր մերկացայ մեղօք. և ողոր″։

Որդի՛ Աստուծոյ Աստուած ճշմարիտ՝ որ խոնարհեցար 'ի Հայրական ծոցոյ՝ և առեր մարմին 'ի սրբոյ կուսէն Մարիամայ վասն մերոյ փրկութեան. խաչեցար՝ թաղեցար՝ և յարեար 'ի մեռելոց՝ և համբարձար փառօք առ Հայր, մեղայ յերկինս և առաջի քո. յիշեա՛ զիս որպէս զաւազակն՝ յորժամ գաս արքայութեամբ քով. և ողոր″։

Հոգի՛ Աստուծոյ Աստուած ճշմարիտ՝ որ իջեր 'ի Յորդանան և 'ի վերնատունն, և լուսաւորեցեր զիս մկրտութեամբ սուրբ աւազանին, մեղայ յերկինս և առաջի քո. մաքրեա՛ զիս վերստին Աստուածային հրով քով՝ որպէս հրեղէն լեզուօք սուրբ զառաքեալսն. և ողոր″։

Անեղ բնութիւն՝ մեղայ քեզ մտօք իմովք, հոգւով և մարմնով իմով. մի՛ յիշեր զմեղս

իմ զառաջինս վասն անուանդ քում սրբոյ ․ և ողոր"։

Տեսօղ ամենայնի՝ մեղայ քեզ խորհրդով բանիւ և գործով․ Ջնջեա՛ զձեռագիր յանցանաց իմոց, և գրեա՛ զանուն իմ ՚ի դպրութեան կենաց ․ և ողոր"։

Քննօղ գաղտնեաց՝ մեղայ քեզ կամայ և ակամայ, գիտութեամբ և անգիտութեամբ․ Թողութի՛ւն շնորհեա մեղաւորիս, զի ՚ի ծնընդենէ սուրբ աւազանին մինչև ցայսօր մեղուցեալ եմ առաջի Աստուածութեանդ քո զգայարանօք իմովք, և ամենայն անդամօք մարմնոյս ․ և ողոր"։

Ամենախնամ Տէր՝ դիր պահապան աչաց իմոց զերկիւղ քո սուրբ ոչ ևս հայիլ յարատ, և ականջաց իմոց՝ ոչ ախորժել լսել զբանս չարութեան, և բերանոյ իմոյ՝ ոչ խօսիլ զստութիւն, և սրտի իմոյ՝ ոչ խորհիլ զչարութիւն, և ձեռաց իմոց՝ ոչ գործել զանիրաւութիւն, և ոտից իմոց՝ ոչ գնալ ՚ի ճանապարհս անօրէնութեան․ այլ ուղղեա զշարժումս սոցա լինել միշտ ըստ պատուիրանաց քոց յամենայնի ․ և ողոր"։

Հուր կենդանի ՔՐԻՍՏՈՍ՝ զհուր սիրոյ քո զոր արկեր յերկիր, բորբոքեա յանձն իմ․ զի այրեսցէ զաղտ հոգւոյ իմոյ, և սրբեսցէ զխիղճ մտաց իմոց, և մաքրեսցէ զմեղս մարմնոյ

իմոյ, և վառեսցէ զլոյս գիտութեան քո 'ի սրտի իմում․ և ողոր",

Իմաստութիւն Հօր ՅԻՍՈՒՍ՝ տո՛ւր ինձ իմաստութիւն, զբարիս խորհիլ և խօսիլ և գործել առաջի քո յամենայն ժամ․ 'ի չար խորհրդոց՝ 'ի բանից և 'ի գործոց փրկեա՛ զիս․ և ողոր":

Կամեցօղ բարեաց Տէր կամարար՝ մի՛ թողուր զիս 'ի կամս անձին իմոյ գնալ․ այլ առաջնորդեա՛ ինձ լինիլ միշտ ըստ կամաց քոց բարեսիրաց․ և ողոր":

Արքա՛յ երկնաւոր՝ տո՛ւր ինձ զարքայութիւն քո, զոր խոստացար սիրելեաց քոց․ և զօրացո՛ զսիրտ իմ ատել զմեղս, և սիրել ըզքեզ միայն, և առնել զկամս քո․ և ողոր":

Խնամո՛ղ արարածոց՝ պահեա՛ նշանաւ խաչի քո զհոգի և զմարմին իմ 'ի պատրանաց մեղաց՝ 'ի փորձութեանց դիւաց, և 'ի մարդոց անիրաւաց, և յամենայն վտանգից հոգւոյ և մարմնոյ․ և ողոր":

Պահապան ամենայնի ՔՐԻՍՏՈՍ՝ աջ քո հովանի լիցի 'ի վերայ իմ 'ի տուէ և 'ի գիշերի․ 'ի նստիլ 'ի տան, 'ի գնալ 'ի ճանապարհ, 'ի ննջել և 'ի յառնել՝ զի մի՛ երբէք սասանեցայց․ և ողոր":

Աստուած իմ՝ որ բանաս զձեռն քո, և լնուս զամենայն արարածս ողորմութեամբ

քով, քեզ յանձն առնեմ զանձն իմ. դու հոգա՛ և պատրաստեա՛ զպէտս հոգւոյ և մարմնոյ իմոյ յայսմ հետէ մինչև յաւիտեան. և ողոր՞:

Դարձուցիչ մոլորելոց՝ դարձո՛ զիս ՚ի չար սովորութեանց իմոց ՚ի բարի սովորութիւն, և բևեռեա՛ ՚ի հոգի իմ զսոսկալի օր մահուն, և զերկիւղ գեհենոյն, և զսէր արքայութեանն, զի զղջացայց ՚ի մեղաց, և գործեցից զարդարութիւն. և ողոր՞:

Աղբիւր անմահութեան՝ աղբերացո՛ ՚ի սրտէ իմմէ զարտասուս ապաշխարութեան որպէս պոռնկին. զի լուացից զմեղս անձին իմոյ յառաջ քան զելանելն իմ յաշխարհէս. և ողոր՞:

Պարգևիչ ողորմութեան՝ պարգևեա՛ ինձ ուղղափառ հաւատով, և բարի գործով, և սուրբ մարմնոյ և արեան քո հաղորդութեամբ գալ առ քեզ. և ողոր՞:

Բարերար Տէր՝ հրեշտակի բարւոյ յանձն արասցես զիս քաղցրութեամբ աւանդել զհոգի իմ, և անխռով անցուցանել ընդ չարութիւն այսոցն որք են ՚ի ներքոյ երկնից. և ողոր՞:

Լոյս ճշմարիտ ՔՐԻՍՏՈՍ՝ արժանաւորեա՛ զհոգի իմ ուրախութեամբ տեսանել զլոյս փառաց քոց ՚ի կոչման աւուրն, և հանգչել

յուսով բարեաց յօթևանս արդարոց մինչև յօր մեծի գալստեան քո ։ և ողոր″ ։

Դատաւո՛ր արդար՝ յորժամ գաս փառօք Հօր դատել զկենդանիս և զմեռեալս, մի՛ մըտաներ ՚ի դատաստան ընդ ծառայի քում ։ այլ փրկեա՛ զիս ՚ի յաւիտենական հրոյն, և լսելի՛ արա ինձ զերանաւէտ կոչումն արդարոց յերկնից արքայութիւնդ ։ և ողոր″ ։

Ամենողո՛րմ Տէր՝ ողորմեա՛ ամենայն հաւատացելոց ՚ի քեզ, իմոց և օտարաց, ծանօթից և անծանօթից, կենդանեաց և մեռելոց ։ շնորհեա՛ և թշնամեաց իմոց և ատելեաց զթողութիւն որ առ իս յանցանաց, և դարձո՛ զնոսա ՚ի չարեացն զոր ունին վասն իմ, զի ողորմութեան քում արժանի եղիցին ։ և ողոր″ ։

Փառաւորեա՛լ Տէր՝ ընկա՛լ զաղաչանս ծառայիս քո, և կատարեա՛ ՚ի բարի զխնդրուածըս իմ՝ բարեխօսութեամբ սրբուհւոյ Աստուածածնին, և սրբոյն Յովհաննու մկրտչին, և սրբոյն Ստեփաննոսի Նախավկային, և սրբոյն Գրիգորի մերոյ լուսաւորչին, և սրբոց Առաքելոց՝ Մարգարէից՝ Վարդապետաց՝ Մարտիրոսաց՝ Հայրապետաց՝ Ճգնաւորաց՝ Կուսանաց, և ամենայն սրբոց քոց Երկնաւորաց և Երկրաւորաց ։ Եւ քեզ փառք և երկրպագութիւն անբաժանելի սուրբ Երրորդութեանդ յաւիտեանս յաւիտենից ։ Ամէն ։

## ՄԱՂԹԱՆՔ

Վասն սրբուհւոյ Աստուածածնին բարեխօսութեանն՝ Տէր՝ ընկա՛լ զաղաչանս մեր, և կեցո՛ զմեզ ։

## ՔԱՐՈԶ

Սուրբ զԱստուածածինն՝ և զամենայն սուրբս բարեխօս արասցուք առ Հայր՝ի յերկինս․ զի կամեցեալ ողորմեսցի՝ և գթացեալ կեցուսցէ զարարածս իւր ։ Ամենակա՛լ Տէր Աստուած մեր կեցուսցէ և ողորմեսցի ։

## ԱՂՕԹՔ

Ընկա՛լ Տէր զաղաչանս մեր՝ բարեխօսութեամբ սուրբ Աստուածածնին անարատ ծնողի միածնի Որդւոյ քո․ և աղաչանօք ամենայն սրբոց քոց․ և որոց այսօր է յիշատակ ։ Լո՛ւր մեզ Տէր, և ողորմեա՛․ ներեա՛ քաւեա՛ և թող զմեղս մեր ։ Արժանաւորեա՛ գոհութեամբ փառաւորել զքեզ ընդ Որդւոյ և ընդ սրբոյ Հոգւոյդ․ այժմ և միշտ և՛՛ ։
Օրհնեալ Տէր մեր ՅԻՍՈՒՍ ՔՐԻՍՏՈՍ․ Ամէն ։

Հա՛յր մեր որ յերկինս ես․ սո՛ւրբ եղիցի անուն քո ։ Եկեսցէ արքայութիւն քո․ եղիցին կամք քո որպէս յերկինս և յերկրի ։ Զհաց մեր հանապազորդ տո՛ւր մեզ այսօր ։ Եւ թո՛ղ մեզ զպարտիս մեր, որպէս և մեք թո-

ղումք մերոց պարտապանաց ։ Եւ մի տանիր զմեզ 'ի փորձութիւն, այլ փրկեա զմեզ 'ի չարէ ։ Զի քո է արքայութիւն և զօրութիւն և փառք յաւիտեանս ․ Ամէն ։

## ՄԱՂԹԱՆՔ

Զհանգստեան զաղօթս և զաղաչանս ընկալ մարդասէր Աստուած՝ 'ի հաճոյս բարեբար կամաց քոց ․ և մեր մեղաց և բազում յանցանացն թողութիւն շնորհեա ․ և քեզ փառք յաւիտեանս ․ Ամէն ։

Փառք քեզ Տէր Աստուած մեր, որ պարգևեցեր զօրս զայս բարեաւ և խաղաղութեամբ անցուցանել ։

Մարդասէր Աստուած՝ զառաջիկայ գիշերս որ 'ի վերայ մեր գալոց է, 'ի մեղաց փրկեա, 'ի չարեաց ազատեա, և 'ի գործս բարիս առաջնորդեա ։

Առաւօտու օրհնութեանցն և փառաբանութեանցն արժանիս արա զամենայն հաւատացեալս անուանդ քում սրբոյ, և պահեա 'ի խաղաղութեան ։

Տէր Աստուած մեր՝ տուր զքո խաղաղութիւնդ ամենայն աշխարհի, բարձ զցասումն և զպատուհասն 'ի յարարածոցս ։

Ողորմեա հարց և եղբարց մերոց՝ կենդանեաց և հանգուցելոց ։

Ողորմեա՛ Եկեղեցի և Դպրատուն շինողաց, երախտաւորաց, պտղատուաց, սպասաւորաց, և այնոցիկ որք ընդ հովանեաւ սրբոյ տաճարիս են հանգուցեալ։

Տէր Աստուած՝ օգնեա՛ թագաւորացն Քրիստոնէից, և իշխանացն բարեպաշտից, զօրաց և զաւակաց նոցին՝ պահելով 'ի խաղաղութեան։

Տէր Աստուած մեր՝ պահեա՛ զառաջնորդս և զեղբայրութիւնս մեր ամբողջ և անխռով 'ի կամս ողորմութեան քո։

Նշանաւ սուրբ և պատուական խաչիւ քո՝ հալածեա՛ զերեւելի և զաներեւոյթ թշնամին 'ի սահմանաց մերոց և 'ի բնակութենէս մերմէ․ փրկեա՛ զմեզ 'ի հրոյն յաւիտենից, և քեզ փառք յաւիտեանս․ Ամէն։

Օրհնեա՛լ եղերուք 'ի շնորհաց սուրբ Հոգւոյն․ հանգերո՛ւք խաղաղութեամբ․ և Տէր եղիցի ընդ ամենեսեանդ․ Ամէն։

# ԽՈՐՀՐԴ

## ՍԱՐԿԱՒԱԳՈՒԹԵԱՆ ԵՒ ԴՊՐՈՒԹԵԱՆ ՊԱՏԱՐԱԳԻ



Առնու քահանայն զերկու Սարկաւագունս, և մտանէ ի սրբարանն և ասէն ՍԱՂՄՈՍ։

Կ48 · Քահանայք քո զգեցցին զարդարութիւն · և սուրբք քո ցնծալով ցնծասցեն ։
Եր · Յիշեա Տէր զԴաւիթ, և զամենայն հեզութիւն նորա ։ ՍԱՂ · ԳԼ, ՃԼԱ ։

Խնդրեսցուք հաւատով միաբանութեամբ ’ի Տեառնէ՝ զի զողորմութեան զշնորհսն իւր արասցէ ’ի վերայ մեր · Տէրն ամենակալ կեցուսցէ և ողորմեսցի ։

Ողորմեա մեզ Տէր Աստուած մեր՝ ըստ" ։

Եւ ասէ քահանայն երկիցս Տէր ողորմեա · և ապա զԱղօթսն ։ Եւ Սարկաւագն առնու զՍաղաւարտն և ասէ ։

Եւ եւս խաղաղութեան զՏէր աղաչեսցուք · ընկալ կեցո և ողորմեա ։

Օրհնութիւն և փառք Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ · այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից · Ամէն ։

Սոյնպէս և Շապկին ասէ և Ուրարին և Գօտւոյն և Բազպանին և Շուրջառին ։

# ՆԵՐԲՈՂՈՒԹԻՒՆ
ՍՐԲՈՑ
# ՊԱՏԱՐԱԳԻ



## ՇԱՐԱԿԱՆ ՀԱՆԴԵՐՁԻ
ՅՈՐԺԱՄ
## ԶԳԵՆՈՒ ՊԱՏԱՐԱԳԻՉՆ

Դ. * ԽՈՐՀՈՒՐԴ խորին անհաս անս-
կզբն. որ զարդարեցեր զվերին պետու-
թիւնդ. ՚ի յառագաստ անմատոյց լու-
սոյն. գերապանծ փառօք զդասս
հրեշտակաց։ Անճառ ահարաշ զօրութեամբ.
ստեղծեր զԱդամ պատկեր տիրական.
և նազելի փառօք զգեստաւորեցեր
՚ի դրախտն Եդենի տեղի բերկրանաց։
Չարչարանօք քո սուրբ միածնին. նորո

* Դպիրն ասէ։

գեցան արարածք ամենայն · եւ վերըս
տին մարդն անմահացաւ · զարդա
րեալ ՚ի զգեստ անկողոպտելի ։ Անձրե
ւածին բաժակ հրահոսան · որ հեղեր
յառաքեալսն ՚ի սուրբ վերնատանն · Հեղ
եւ ՚ի մեզ հոգիդ սուրբ Աստուածայի ծ
ընդ պատմուճանի զքո զիմաստութիւն ։
Տան քում վայել է սրբութիւն · որ ըզ
գեցար ըզվայելչութիւն · սրբութիւն
փառաց ընդ մեզ քո ածեալ · պա
տեա ըզմեզ մեր ճըշմարտութեամբ ։
Որ զարարչագործ բազուկըս քո · տա
րածեցեր ընդդէմ ասատեղաց · Հաստա
տեա զբազուկս մեր կարողութեամբ ·
Համբարձմամբ ձեռաց աւ քեզ միջնոր
դել ։ Իսումամբ թագ ՚ի գլուխ · պա
տեսցես ըզմիտս եւ ըզգայարանս · խա
չանիշ ուրարամբ ըստ Ահարոնի ·
ծաղկեալ յուսկեթել ՚ի զարդ խորանի ։
Բամից բոլորից · տիրապէս Աստուածայե
տական · Նախորոտապատ սիրով զմեզ
զգեստաւորեցեր · քում սուրբ խոր
հըրդոյդ լինել սպասաւոր ։ Թագաւոր
երկնաւոր · զեկեղեցի քո անշարժ պա

հեա՝. և՛ զերկրպագո՛ւս անուանդ քո՛ւմ պա՛հեա՛մ ՚ի խա՛ղաղութեա՛ն ։

Քահանայն լռանալով պչեսան՝ ասէ ։

Ք. * Լուացից սրբութեամբ զձեռս իմ, և շուրջ եղէց զսեղանով քով Տէր ։

Ս. † Դա՛տ արա ինձ Տէր՝ զի ես յանբծութեան իմում գնացի, ՚ի Տէր յուսացայ՝ զի մի եղէց հիւանդ ։

Փորձեա՛ զիս Տէր և քննեա՛ զիս, փորձեա՛ զերիկամունս իմ և զսիրտ իմ ։

Ողորմութիւն քո Տէր առաջի աչաց իմոց, և հաճոյ եղէց ճշմարտութեան քում ։

Ո՛չ նստայց ես յաթոռս նանրաց, և ընդ անօրէնս ես ո՛չ մտից ։

Ատեցի ես զժողովս չարաց, և ընդ ամբարիշտս ես ո՛չ նստայց ։

Լուացից սրբութեամբ զձեռս իմ, և շուրջ եղէց զսեղանով քով Տէր ։

Լսել ինձ զձայն օրհնութեան քո, և պատմել զամենայն սքանչելիս քո ։

Տէր սիրեցի զվայելչութիւն տան քո, և զտեղի յարկի փառաց քոց ։

Մի՛ կորուսաներ ընդ ամբարիշտս զանձն իմ, և մի ընդ արս արիւնահեղս զկեանս իմ ։

---

* Քահանայն ասէ ։

† Սարկաւագն ասէ ։

Որոց ձեռք իւրեանց յանօրէնութեան են ·
և աջ նոցա լի է կաշառօք ։
Ես յանբծութեան իմում գնացի , փրկեա՛ զիս Տէր և ողորմեա՛ ինձ ։
Ոտն իմ կացցէ յուղղութեան ,
Յեկեղեցիս մեծս օրհնեցից զքեզ ։
Փառք Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ ։
Այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից" ։

Ք · Եւ վասն սրբուհւոյ Աստուածածնին" ։

Ս · Զսուրբ զԱստուածածինն և զամենայն սուրբս բարեխօս արասցուք առ Հայր'ի յերկինս , զի կամեսցեալ ողորմեսցի և գթասցեալ կեցուսցէ զարարածս իւր ։ Ամենակա՛լ Տէր Աստուած մեր · կեցո՛ և ողորմեա՛ ։

Ք · Ընկա՛լ Տէր զաղաչանս մեր բարեխօ" ։
Եւ այլս ասէ , Խոստովանիմ առաջի Աստու" ։
Եւ Դերջակոյ քահանայն ասէ ։ Ողորմեսցի" ։
Եւ ինքն ասէ · Ազատեսցէ և զձեզ" ։

Դ · Յիշեսջի՛ր և զմեզ առաջի անմահ Գառին Աստուծոյ ·

Ք · Յիշեալ լիջիք առաջի անմահ Գառին Աստուծոյ ։

Դ · Աղաղակեցէք առ Տէր ամենայն երկիր · ծառայեցէք" ։ Գ·է՛· ժէ, 314 ։

Ս · Սուրբ Եկեղեցաւս աղաչեսցո՛ւք զՏէր՝ զի սովաւ փրկեսցէ զմեզ'ի մեղաց · և կեցուսցէ շնորհիւ ողորմութեան իւրոյ ։ Ամենակա՛լ

Տէր Աստուած մեր · կեցո́ և ողորմեա́ ։

Գ · 'Ի մէջ տաճարիս և առաջի Աստուածընկալ"։ Մտից առաջի սեղանոյ Աստուծոյ առ Աստուած · որ ուրախ առնէ զմանկութիւն իմ ։

Ս · Դա́տ արա ինձ Աստուա́ծ , և իրաւ արա ինձ 'ի դատաստանի իմում ։

Յազգէ որ ո́չ է սուրբ , 'ի մարդոյ մեղաւորէ նենգաւորէ փրկեա́ զիս ։

Դու Աստուա́ծ հզօրիչ իմ ես՝ ընդէ՞ր մոռացար զիս , ընդէ՞ր տրտում գնամ ես 'ի նեղել թշնամւոյ իմոյ ։

Առաքեա́ Տէր զլոյս քո և զճշմարտութիւն քո , զի առաջնորդեսցեն ինձ և հանցեն զիս 'ի լեառն սուրբ և 'ի յարկս քո ։

Մտից առաջի սեղանոյ Աստուծոյ առ Աստուած , որ ուրախ առնէ զմանկութիւն իմ ։

Խոստովան եղէց քեզ օրհնութեամբ Աստուա́ծ Աստուած իմ ։

Արդ՝ ընդէ՞ր տրտում ես անձն իմ , կամ ընդէ՞ր խռովես զիս · յուսա́ առ Աստուած , խոստովանեա́ նմա · փրկիչ երեսաց իմոց Աստուած է ։

Փառք Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ ։

Ս · Այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից · Ամէն ։ Օրհնեցո́ւք զամենակալն Աստուած զՀայր Տեառն մերոյ ՅԻՍՈՒՍԻ ՔՐԻՍ-

ՏՈՍԻ. որ արժանի արար զմեզ կալ ՚ի տեղւոջ փառաբանութեան և երգել զերգս հոգևորս։ Ընդունելի Տէր Աստուած մեր. կեցո և ողորմեա։

Ք. ՚Ի յարկի սրբութեան՝ և ՚ի տեղւոջ փա՛՛։

Եւ ապա չգէին զվարագոյրն, և Դպիրքն եղանակէին ՄԵՂԵԴԻ՝ ըստ պատշաճի աւուրն, կամ ՏԱՂ խորհրդաւոր. և կամ ԸՆՏՐԵԱԼ։ Բայց ԸՆՏՐԵԱԼՆ որ ասեն՝ ՄԵՂԵԴԻ կամ ՏԱՂ չ՚ասէք։

## ՄԵՂԵԴԻՔ ԵՒ ՏԱՂՔ
## ԵՒ
## ԸՆՏՐԵԱԼ
## ԸՍՏ ՊԱՏՇԱՃԻ ԱՒՈՒՐ

### ԱՒԵՏԵԱՑ

Բարբառ աւետեաց ձայնիւ. Գաբրիէլ գոչէր Սրբուհւոյն։ Ընդ քեզ առաքիմ մաքուր. պատրաստեա տեղի Տէրունւոյն։

### ԾՆՆԴԵԱՆ

Այր ծաղիկ այսօր բղխեաց յարմատոյն Յեսսեայ. Եւ որդի Գաւթի ծնանի զՄրգին Աստուծոյ։

## ՄԱՐԳԱՐԷԻՑ

Աստուածային խորոցն անճառ. խոր հերդածուք սուրբ մարգարէք. բանիւ պատմողք զապագային. յառաջագոյն զեղելութիւն։

## ՀԱՅՐԱՊԵՏԱՑ

Որ հանդէս առնի. քո բախացեալ ցընծամք. հայր և վարդապետ սուրբ հայրապետ Պետրոսիս։

## ԵԿԵՂԵՑԻՈՅ

Եկեղեցի կաթուղիկէ ՚ի Հայաստան. այսօր զմանկունս ժողովեալ իւր համաձայն։

## ԸՆՏՐԵԱԼ

Ընտրեալ ընդ Աստուծոյ. ով երջանիկ սուրբ քահանայ։ Նմանեալ Ահարոնի. և Մովսիսի մարգարէին։ Այնմ որ զգեստուցն էր յօրինող. զոր Ահարոնի մեզ ըզգենոյր։ Յօրինէր ըզպատմուճանն. զոր ՚ի չորից կազմեալ նիւթոց։ ՚Ի կարմրոյ ՚ի կապուտոյ ՚ի բե

Հեղոյ ՚ի ծիլ բանւոյ ։ Թուել զթելըն յօրի-
նէր ․ կարգն առաջին էր կարկեհան ։
Եւ օծումըն գրապանին ․ շուրջանակի
բոլորակէն ։ Եւ յընթացս գարշապա-
րին ․ հընչէր երկիր ցընծայր խորանն ։
Որդ ՚ի նոյն նըմանութեան ․ Քրիստոս ըզ
մեզ Տէրս յօրինէ ։

Յորժամ մըտցես ՚ի սուրբ խորանն ․
անդ յիշեսցես զմեր ննջեցելոցն ։ Յոր
ժամ առնես ըզպատարագ ․ յիշեա և
զմեզ ըզդըռագլամս ։ Օ ի և մեզ ողոր
մեսցի ․ ՚ի միւսանգամ իւր գալըստ
եանն ։ Հօրըն փառք Որդւոյն պատիւ ․ և
սուրբ Հոգւոյն այժմ յաւիտեան ։ Յա
ւիտեանս յաւիտենից ․ Քրիստոս օրհ
նեալ ՚ի համայնից ։

ՇԱՐԱԿԱՆ

ԽՆԿԱՐԿՈՒԹԵԱՆ

Դ ․ Յայս յարկ նուիրանաց ուխտի Տեառ-
նըն տաճարիս ․ ժողովեալք ամենայնք ՚ի
խորհուրդ պաշտաման պաղատանաց առա-
ջի կայ սուրբ պատարագիս ․ խընկօք անու-
շիւք խնկմբ անուշ պարգեւք ՚ի վերնայ

յարկ սրահիս խորանիս · ուղղութեամբ
ընկալ զաղօթս մեր որպէս բուրումն
անուշահոտ խընկոց աշխէց և կենա
ծնաց · և ըզմատուցօղըս պահեա սըրբու
թեամբ միշտ և հանապազ քեզ սպասա
ւորել · բարեխօսութեամբ մօր քո և կու
սի · ընկալ զաղաչանս քոց պաշտօնէիցս ։
Որ գերագոյն քան զերկինըս պայծա
ռացուցեր սուրբ զեկեղեցի արեամբ
քո ՅԻՍՈՒՍ · և ըստ երկնայնոցըն կարգե
ցեր 'ի սմա զդասս առաքելոց և մարգա
րէից սուրբ վարդապետաց · այսօր ժո
ղովեալ դասք քահանայից սարկաւագաց
դըպրաց և գըերիկոսաց · խունկ մատու
ցանեմք առաջի քո Տէր յօրինակ ըստ
հընումն Զաքարիայ · ընկալ առ 'ի
մենջ ըզխընկանուէր մաղթանս · որպէս
զպատարագն Աբելի զՆոյի և զԱբրա
համու · բարեխօսութեամբ վերին քո
զօրացդ · միշտ անշարժ պահեա զաթոռ
Հայկազնեայս ·

Խընդա յոյժ դուստրը լուսոյ մայր
սուրբ կաթուղիկէ մանկամբք քո Սի
ոնի · զարդարեալ պըճնեալ հարսըն պայծա

լի երկնաւորման լուսաձեւ խորան. զի օծեալն Աստուած Էն ՚ի յԷէն անծախապէս ՚ի քեզ միշտ պատարագի. Հօր ՚ի հաշտութիւն մեզ ՚ի քաւութիւն բաշխէ զմարմին և զարիւն իւր սուրբ. վասն իւր կատարման սուրբ անօրէնութեան. շնորհէ զթողութիւն կանգնողի տաճարիս:

Զանապական կոյսին Մարիամ Աստուածածին խոստովանի սուրբ Եկեղեցի. ուստի տուաւ հայցն անմահութեան և բաժակ մեզ ուրախարար. տուք օրհնութիւնք նմա հոգևոր երգով:

Ս. Օրհնեա Տէր:

Ք. Օրհնեալ թագաւորութիւնն Հօր և":

` Եւ տես ձայնանիշ՝ ըստ պարզաձև տառերի : Գի՛ր ջէՀ, 365—383 :

Ս. Եւ ես խաղաղութեան": Օրհնեա Տէր:

Ք. Օրհնութիւն և փառք": Խաղաղու":

Դ. Եւ ընդ հոգւոյդ քում:

Ս. Աստուծոյ երկրպագեսցուք:

Դ. Առաջի քո Տէր:

Ք. Տէր Աստուած մեր. որոյ կարողութիւնդ անքննին":

Եւ տաղ փոխն և Շարականն ըստ պարզաձի տաւուր։ ըստ ցուցակի Ցանացուցին։ Գի՛ր ջէջ, 384—403։

Ս. Օրհնեա՛ Տէ՛ր։

Ք. Օ ի քո է կարողութիւն և զօրութիւն։

Ս. Պաօսխո ւմէ։

Նոյնպէս և զՍուրբ Աստուածն՝ ըստ պարզաձի տաւուր։ Գի՛ր ջէջ, 363—365։ Բայց զփառաւորեալն Դ՛ ձայն։

Ս. Եւ և՛ս խաղաղութեան ըզՏէ՛ր աղաչեսցուք։

Դ. Տէ՛ր ողորմեա։

Ս. Վասն խաղաղութեան ամենայն աշխարհի. և հաստատութեան սրբոյ Եկեղեցւոյ. զՏէ՛ր աղաչեսցուք։

Դ. Տէ՛ր ողորմեա։

Ս. Վասն ամենայն սուրբ և ուղղափառ եպիսկոպոսաց. զՏէ՛ր աղաչեսցուք։

Դ. Տէ՛ր ողորմեա։

Ս. Վասն հայրապետին մերոյ Տեառն (այս անուն) կենաց, և փրկութեան հոգւոյ նորին. զՏէ՛ր աղաչեսցուք։

Դ. Տէ՛ր ողորմեա։

Ս. Վասն վարդապետաց քահանայից սարկաւագաց դպրաց, և ամենայն ուխտի մանկանց Եկեղեցւոյ. զՏէ՛ր աղաչեսցուք։

Դ. Տէ՛ր ողորմեա՛։

Ս. Վասն բարեպաշտ թագաւորաց և Աստուածասէր իշխանաց. զօրավարաց, և զօրաց նոցին. զՏէ՛ր աղաչեսցուք։

Դ. Տէ՛ր ողորմեա՛։

Ս. Վասն հոգւոցն հանգուցելոց. ո՛րք ճշմարիտ և ուղիղ հաւատով ՚ի ՔՐԻՍՏՈՍ ննջեցին. զՏէ՛ր աղաչեսցուք։

Դ. Ընծայեա՛ Տէր և ողորմեա՛։

Ս. Եւ և՛ս միաբա՛ն վասն ճշմարիտ և սուրբ հաւատոյս մերոյ. զՏէ՛ր աղաչեսցուք։

Դ. Տէ՛ր ողորմեա՛։

Ս. Զանձինս մե՛ր և զմիմեանս Տեառն Աստուծոյ ամենակալին յանձն արասցուք։

Դ. Քե՛զ Տեա՛ռնդ յանձն եղիցո՛ւք։

Ս. Ողորմեա՛ց մեզ Տէր Աստուա՛ծ մեր ըստ մեծի ողորմութեան քում. ասասցուք ամենեքեան միաբանութեամբ։

Դ. Տէր ողորմեա՛. Տէր ողորմեա՛. Տէ՛ր ողորմեա՛։

Ս. Օ՛րհնեա Տէ՛ր։

Ք. Զի ողորմած և մարդասէր ես Աստուած զօրով. և քեզ։

Ըստ պատշաճի Սաղմոսն՝ Մեսեդին՝ Սրբասացին՝ Գի՛ր յէջ 405—419։ Գիրքն՝ Գործոցն՝ Կաթողիկեայցն՝ ըստ յաւուրն Տօնացուցին , պէս 'ի Ճաշուն ։ Աւետարան Գի՛ր յէջ 420—438 ։ ըստ պատշաճի Աւետարանն՝ ըստ յաւուրն Տօնացուցին ։

Դ. Փա՛ռք քե՛զ Տէ՛ր Աստուա՛ծ մե՛ր ։

Ժ. Հաւատամք 'ի մի Աստուած Հայրն ամենակալ" ։ Գի՛ր յէջ 439—440 ։

Ս. Օրհնեա՛ Տէ՛ր ։

Ժ. Իսկ մեք փառաւորեսցուք . որ յա" ։

Ս. Եւ և՛ս խաղաղութեան զՏէ՛ր աղաչեսցուք ։

Դ. Տէ՛ր ողորմեա՛ ։

Ս. Եւ և՛ս հաւատո՛վ աղաչեսցուք և խնդրեսցուք 'ի Տեառնէ Աստուծոյ և 'ի փրկչէ՛ն մերմէ Յիսուսէ՛ Քրիստոսէ՛ 'ի ժամուս պաշտաման և աղօթից ։ Զի արժանի՛ ընդունելութեա՛ն արասցէ՛ լուիցէ Տէր ձայնի աղաչանաց մերո՛ց ։ Ընկալցի ըղխնդրուա՛ծս սրտից մերո՛ց . թողցէ զյանցանս մե՛ր ողորմեսցի՛ 'ի վերա՛յ մե՛ր ։ Աղօ՛թք մեր և խնդրուածք յա՛մենայն ժամ . մտցեն առաջի մեծի՛ Տէրութեան նորա՛ ։ Եւ նա՛ տասցէ մե՛զ միաբան միով հաւատո՛վ արդարութեա՛ն վաստակե՛լ 'ի գործե՛ս բարիս ։ Զի ողորմութեան ըղշնո՛րհն իւր . արաս

ցէ ՚ի վերայ մեր. Տէ՛ր ամենակա՛լ. կեցուսցէ եւ ողորմեսցի:

Դ. Կե՛ցո Տէ՛ր:

Ս. Զժամ սուրբ պատարագիս եւ զգալուչեկայ օրս խաղաղութեամբ անցուցանել. Հաւատով ՚ի Տեառնէ խնդրեսցո՛ւք:

Դ. Շնո՛րհեա՛ Տէ՛ր:

Ս. Զհրեշտա՛կ խա՛ղաղութեա՛ն պահապան անձանց մերո՛ց. ՚ի Տեա՛ռնէ՛ խնդրեսցո՛ւք:

Դ. Շնո՛րհեա՛ Տէ՛ր:

Ս. Զքաւութի՛ւն եւ ըզթողութիւն յանցանաց մերոց. ՚ի Տեա՛ռնէ՛ խնդրեսցո՛ւք:

Դ. Շնո՛րհեա՛ Տէ՛ր:

Ս. Զսուրբ խաչին մե՛ծ եւ կարո՛ղ զօրութիւն յօգնութիւն անձանց մերոց. ՚ի Տեառնէ խնդրեսցո՛ւք:

Դ. Շնո՛րհեա՛ Տէ՛ր:

Ս. Եւ եւ՛ս միաբա՛ն վա՛սն ճշմարիտ եւ սուրբ հաւատոյս մերոյ՝ զՏէ՛ր աղաչեսցո՛ւք:

Դ. Տէ՛ր ողո՛րմեա՛:

Ս. Զանձի՛նս մե՛ր եւ ըզմիմեա՛նս Տեառն Աստուծոյ ամենակալի՛ն յա՛նձն ա՛րասցո՛ւք:

Դ. Քեզ Տեառն յանձն եղիցուք։

Ս. Ողորմեաց մեզ Տէր Աստուած մեր՝ ըստ մեծի ողորմութեան քում. ասասցուք ամենեքեան միաբանութեամբ։

Դ. Տէր ողորմեա. Տէր ողորմեա. Տէր ողորմեա։

Ս. Օրհնեա Տէր։

Ժ. Որպէս զի արժանաւորք″։ Խաղաղու″։

Դ. Եւ ընդ հոգւոյդ քում։

Ս. Աստուծոյ երկրպագեսցուք։

Դ. Առաջի քո Տէր։

Ժ. Խաղաղութեամբ քով ՔՐԻՍՏՈՍ փրկիչ մեր, որ 'ի վեր է քան″։

Ս. Օրհնեա Տէր։

Ժ. Տէր Աստուած օրհնեսցէ զամենեսեանս։

Ս. Մի՛ ոք յերախայից. մի՛ ոք 'ի թերահաւատից. եւ մի՛ ոք յապաշխարողաց. եւ յանմաքրից մերձեսցի յԱստուածային խորհրդս։

Դ. Մարմին Տէրունական. եւ Արիւն Փրկչական. կայ առաջի. երկնային զօրութիւնքն աներեւոյթս. երգեն եւ ասեն անհանգիստ բարբառով. սուրբ. սուրբ. սուրբ Տէր զօրութեանց։

ս. Սաղմոս ասացէք Տեառն Աստուծոյ մերոյ. դըպիրք ձայնիւ քաղցրութեան մը զերգըս հոգեւորս։



# ՍՐԲԱՍԱՑՈՒԹԻՒՆՔ

## ԸՍՏ ՊԱՏՇԱՃԻ ԱՒՈՒՐ

---

## ԾՆՆԴԵԱՆ, ԱՒԵՏԵԱՑ ՊԱՅԾԱՌԱԿԵՐՊՈՒԹԵԱՆ ԵՒ ԱՍՏՈՒԱԾԱԾՆԻ

Բազմութիւնք հրեշտակաց. եւ զօրաց երկնաւորաց. իջեալ ի յերկնից ընդ ըմիածին Թագաւորին. Սուրբ երգէին եւ ասէին. այս է Որդին Աստուծոյ. ամենեքեան ասացուք. ուրախ լերուք երկինք եւ ցընծասցեն հիմունք աշխարհի. Զի Աստուածն ըյաւիտենական ի յերկրի երեւեցաւ. եւ ընդ մարդկային շրջեցաւ. զի կեցուսցէ զանձինս մեր։

## ԱՒԱԳ ՀԻՆԳՇԱԲԱԹԻ

Որ վերայ նըստեալ 'ի կառս Հրա-
նիւթս քառակերպեան Քերովբէնս ։
Ընձամածուելի Բանըդ Ընթացուտր-
ուած ։ Ըն յաւր իջեալ 'ի յերկրնայնոյ
ցըն ընվասըն ըքո յ արարածոցս .
յանձն առեր բաժակըն ընդ աշա-
կերտսն ։ Եւ Սերովբէքն եւ Քէ-
րովբէքն հիացեալ զարմանային . եւ
պետութիւնքը վերին զօրացն ըսքանչա-
ցեալ աղաղակէին անսե ։ մըլով .
սուրբ . սուրբ . սուրբ Տէր
զօրութեանց ։

---

## ՅԻՆԱՆՑ ԵՒ ԽԱՉԻ

Ով է որպէս Տէր Աստուած
ըմեր . խաչեցաւ վասըն մեր . թաղե-
ցաւ . եւ յարեաւ հաւատարիմ եղե
յաշխարհի եւ համբարձաւ փառօք ։
Եկայք ժողովուրդք . զօրհնութիւն
ընդ հրեշտակս երգեսցուք նըմա ա-
սելով . սուրբ . սուրբ . սուրբ
ես Տէր Աստուած ըմեր ։

## ԿԻՒՐԱԿԷԻ · ԵԿԵՂԵՑԻՈՅ · ԾԱՂԿԱԶԱՐԴԻ ԵՒ ՀՐԵՇՏԱԿԱՑ

Հրեշտակային կարգաւորութեամբ լցեր Աստուած. զքո սուրբ զԵկեղեցի. Հազարք հազարաց հրեշտակապետք կան առաջի քո. Եւ բիւրք բիւրուց հրեշտակք պաշտեն զքեզ Տէր. և 'ի մարդկանէ հաճեցար նորոգել զօրհնութիւնն. Զայնիւ խորհրդական. սուրբ սուրբ. սուրբ. Տէր զօրութեանց.

## ՊԱՀՈՑ ՆՆՋԵՑԵԼՈՑ

Ամենայն յիշատակի հանգուցելոցս. ընկալ Հայր սուրբ մարդասէր ըզպատարագս. Եւ համարեալ ընդ հոգիս նոցա. 'ի թիւ սրբոց քոց յարքայութեանդ երկնից. Անուանեալ նոքա զի հաւատով մատուցուք ըզպատարագս. հանգստեսցի Աստուածութիւն. եւ հանգուսցէ զհոգիս նոցա.

## ՄԱՐՏԻՐՈՍԱՑ

Սըրբութիւն սըրբոց մեծ ես և ահաւոր. Եւ զինուորութիւնք Հրեշտակացն օրհնեն ընդ քեզ և ասեն. Փառք ի բարձունս Աստուծոյ. և յերկիր խաղաղութիւն.



## ՄԱՐԳԱՐԷԻՑ · ԱՌԱՔԵԼՈՑ ԵՒ ՀԱՅՐԱՊԵՏԱՑ

Ամենակալ ես Տէր զօրութեանց. որ թագաւորդ ես յաւիտենից. Որ նըստիս յերկնից ի յերկինս և լոյս ծագես յարարածս քո. Որ խոնարհութեամբ իջեր ի յերկիր. քեզ պատարագ մատուցանեմք. Եւ սուրբ զանունդ քո փառաւորեմք. Տէր որ պըսակիչդ ես քոց սըրբոց (այս անուն). Վասն զի սոքա են մեզ բարեխօս. Տէր ամենակալ ի քում յարքայութեանդ.

„ ած յերկնից երկիրս ընդ մեծ բեւեռս ։
„ Դ․ Եւ կենդանարար Եր-
„ րորդութեանն ․ զեր երգոց բերեա
„ ցն օրհնութիւնս մատ
„ ուցանեմք ։”

Եւ գան ի հարսանիսն ։

“ Ա․ Աստուած ՚ի Հարաւոյ եկեսցէ ․ և
„ սուրբն ՚ի Փառան լերանէ ։
„ Դ․ Ո ամենայն ըզկենցաղականս ՚ի բաց
„ դնելով ըզգործս ։”

Եւ գան յաստիճան խորանին ․ և Եպիսկոպոսն առաջնորդ խորհըր-դոյն առաջի հանդարտութեամբ ։

“ Ա․ Համբարձէք իշխանք զդրունս ձեր ՚ի
„ վեր ․ համբարձցին դրունք յաւիտենից ,
„ և մտցէ Թագաւոր փառաց ։”

Եւ պատարագօղն խնկարկէ և հարցանէ ։

“ Ք․ Ով է սա Թագաւոր փառաց ․ Տէր
„ հզօր զօրութեամբ իւրով ․ Տէր կարող ՚ի
„ պատերազմի ։
„ Դ․ Որպէս զի զԹագաւորն ամենե-
„ ցուն ընդունիցիմք ։
„ Ա․ Համբարձէք իշխանք զդրունս ձեր ՚ի
„ վեր ․ Համբարձցին դրունք յաւիտենից ․
„ և մտցէ Թագաւոր փառաց ։

” Ժ. Ո՞վ է սա Թագաւոր փառաց և Տէր
” զօրութեանց ։
” Դ. Նու ընդհրեշտակացն հանդիսապէս
” ընծայեալ բերեմք ըզկարգ ։
” Ս. Սա ինքն է Թագաւոր փառաց ։”

Եւ պատարագօղն երկրպագէ ահիւ և դողութեամբ՝ և առնու ՚ի ձեռաց սարկաւագին. և խաչակնքէ ՚ի վերայ ժողովրդեանն ասելով։

“ Ժ. Օրհնեալ եկեալ անուամբ Տեառն ։
” Դ. Ալէլուիա ։
” ։”

Ս. Եւ ևս խաղաղութեան զՏէր աղաչեսցուք ։

Դ. Տէր ողորմեա ։

Ս. Եւ ևս հաւատով և սրբութեամբ կացցուք յաղօթս առաջի սրբոյ սեղանոյս Աստուծոյ ահիւ ։ Մի խղճիւ և գայթակղութեամբ. մի նենգութեամբ խորամանկութեամբ. մի պատրանօք և խաբէութեամբ. Մի երկմտութեամբ և մի թերահաւատութեամբ. այլ ուղիղ վարուք. պարզ մտօք. միամիտ սրտիւ. կատարեալ հաւատով ։ Լցեալ սիրով լի և առաւելեալ ամենայն գործովք բարութեան ։ Կացցուք յաղօթս առաջի սրբոյ սեղանոյս Աստուծոյ,

և գտցո՛ւք զողորմութեա՛ն ը՛զշնորհս ։ Յաւուր յայտնութեա՛ն և ՚ի միւսանգա՛մ գալըստեան՝ Տեա՛ռըն մերոյ և փըրկչին ՅԻՍՈՒՍԻ՛ ՔՐԻՍՏՈՍԻ ․ կեցուսցէ՛ և ողորմեսցի՛ ։

դ․ Կեցո՛ Տէ՛ր և՛ ողո՛րմեա՛ ։

մ․ Օ՛րհնեա՛ Տէ՛ր ։

ք․ Շնորհօք և մարդասի՛ ։ Խաղաղու՛ ։

դ․ Եւ ը՛նդ հո՛գւոյդ քո՛ւմ ։

մ․ Աստուծո՛յ երկի՛րպագեսցո՛ւք ։

դ․ Ա՛ռաջի՛ քո՛յ Տէ՛ր ։

մ․ Ո՛ղջո՛յն տա՛ւք միմեա՛նց ՚ի՝ համբո՛յր սրբութեան ․ և որք ո՛չ էք կարօղք հաղորդիլ Աստուածայի՛ն խորհը՛րդոյս՝ առ դըրունս ելէ՛ք և ա՛ղօթեցէ՛ք ։

դ․․ ՔՐԻՍՏՈՍ ՚ի մէ՛ջ մե՛ր յայտնե՛ցա՛ւ ․ Ո՛ր Է՛ն Աստ՛ուած ա՛յս բա՛զմե՛ցա՛ւ ։ Խաղաղա՝գութեա՛ն ձա՛յն հընչե՛ցա՛ւ ․ ո՛ւրբ ո՛ղջո՛ւնի՛ հրամա՛ն տըւաւ ։ Եկեղեցիս մի անձն եղև ․ համբոյրըս յօդ լը՛րման տըւաւ ։ Թըշնամութիւնըն հեռացաւ ․ սէրըն ընդհանուրս սփռեցաւ ։ Արդ պաշտօնեայք բարձեալ ըզձայն ․ տո՛ւք զօրհնութիւն ՚ի մի բերան ։ Միասնական Աստուածութեանն ․ որում Սրովբէքն են սըրբաբա՛ն ։

Ապա և զայս ասեն ի հանդերձ փոխին :

Ս. Որք հաւատով կայք յանդիման. սուրբ սեղանոյս արքայական : Տեսէք բազմեալ զՔՐԻՍՏՈՍ արքայն. և շուրջ պատեալ զօրք վերնական :

Դ. Մեք համբառնամք զանձն ունելով. և պաղատիմք զայս ասելով : Ընդ մեղս մեր մի յիշեսցես. այլ գթութեամբ քո քաւեսցես : Ընդ հրեշտակացն օրհնեմք զքեզ. և ընդ սրբոց քոց Տէր փառք քեզ :

Ս. Ահիւ կացցուք. երկիւղիւ կացցուք. բարւոք կացցուք. և նայեսցուք ըզգուշութեամբ :

Դ. Առ քեզ Աստուած :

Ս. Պատարագ ՔՐԻՍՏՈՍ մատչի Գառն Աստուծոյ :

Դ. Ողորմութիւն և խաղաղութիւն և պատարագ օրհնութեան :

Ս. Օրհնեա Տէր :

Ք. Շնորհք՝ սէր՝ և Աստուածային սրբարար զօրութիւնն :

Դ. Եւ ընդ հոգւոյդ քում :

Ս. Ըզգրունս ․ ըզգրունս ․ ամենայն իմաստութեամբ եւ ըզգուշութեամբ ։ Ի վեր ընծայեցուցէք ըզմիտըս ձեր Աստուածային երկիւղիւ ։

Դ. Ունիմք առ քեզ Տէր ամենակալ ։

Ս. Եւ գոհացարուք ըզՏեառնէ բոլորով սրտիւ ։

Դ. Արժան եւ իրաւ ։

Ս. Օրհնեա Տէր ։

Ք. Եւ ընդ Սերովբէան եւ ընդ Քերովբէան ։

Իսկ ի հանդիսի առաւօտու՝ ոմանք ասեն Արժան եւ իրաւէն տօնին զայս ։

Ս. Եւ զստոյգ փրկութեան որ միշտ ընդ ամենայն տեղիս գոհութիւն մատուցանեմք քեզ ՔՐԻՍՏՈՍ ։ Որով եւ ըզհրաշալի զյարութիւնըդ քո գովեն զօրութիւնք ։ Սարսափին Սերովբէքն ․ դողան Քերովբէքն ․ եւ իշխանութիւնք վերին պետութեանցըն պարառեալ ձայնիւ եղանակեն եւ ասեն ։

Դ. Սուրբ ․ սուրբ ․ սուրբ ․ Տէր զօրութեանց ։ Լի են երկինք եւ եր

կիր փառօք քո․ օրհնութիւն ՚ի բարձունս․ օրհնեալ որ եկիր և գալոց ես անուամբ Տեառն․ Ովսաննա ՚ի բարձունս։

Ս․ Օրհնեա Տէր։

Ք․ Առէք կերէք այս է ՄԱՐՄԻՆ"։

Ժ․ Ամէն։

Ս․ Օրհնեա Տէր։

Ք․ Արբէք ՚ի սմանէ ամենեքեան այս է ԱՐԻՒՆ"։

Ժ․ Ամէն։ ՀԱՅՐ երկնաւոր․ որ զՈրդի քո ետուր ՚ի մահ․ վասն մեր պարտապան պարտեաց մերոց․ հեղմամբ արեան նորա․ աղաչեմք զքեզ ողորմեա քո բանաւոր հօտի։

Ս․ Օրհնեա Տէր։

Ք․ Եւ զքոյս ՚ի քոյոց՝ քեզ մատուցա"։

Ժ․ Յամենայնի օրհնեալ ես Տէր․ օրհնեմք զքեզ․ գովեմք զքեզ․ գոհանամք զքէն․ աղաչեմք զքեզ Տէր Աստուած մեր։

Ս․ Օրհնեա Տէր։

Ք․ Խաղաղութիւն ամենեցուն։

Դ. Եւ ընդ հոգւոյդ քում ։

Ս. Աստուծոյ երկիրպագեսցուք ։

Դ. Առաջի քոյ Տէր ։ Որդի Աս-
տուծոյ . որ պատարագեալ լինիս Հօր ի
հաշտութիւն հաց կենաց բաշխիս
ի մէջ հեղմամբ Արեան քո սրբով .
աղաչեմք ըզքեզ ողորմեա
արեամբ քով փրկեալ հօտիս ։

Ս. Օրհնեա Տէր ։

Ք. Որպէս զի եղիցի սա ամենեցուն մեզ
մերձեցելոցս . յան" ։

Դ. Ոգի Աստուծոյ . որ զփառաւորեալ
քո՝ զխորհուրդ . իջեալ ի յերկ
նից կատարես , ի ձեռս մեր . հեղմամբ Արեան սորա աղա-
չեմք ըզքեզ հանգո զհոգիս մեր նն-
ջեցելոց ։

Ս. Օրհնեա Տէր ։

Ք. Ընդ որս և մեզ այց արասցես բարե-
րար Աստուած աղաչեմք ։

Դ. Յիշեա Տէր և ողորմեա ։

Ք. Աստուածածնին սրբոյ կուսին Մարի-
ամու և" ։

Դ. Յիշեա Տէր և ողորմեա ։

Սարկաւագն յաջակողմն սեղանոյն կանգնեալ ասասցէ ։

Ս · Առաքելոց սրբոց · Մարգարէից · Վարդապետաց · Մարտիրոսաց · եւ ամենայն Հայրապետաց սրբոց · Առաքելագործ եպիսկոպոսաց · երիցանց · ուղղափառ սարկաւագաց · եւ ամենայն սրբոց ։ Եղիցի յիշատակ 'ի սուրբ պատարագս աղաչեմք ։

Դ · Յիշեա Տէր եւ ողորմեա ։

Յարութեան կիւրակէից զա՛յս ասա ։

Ս · Օրհնեալ գովեալ եւ փառաւորեալ, հրաշալի եւ Աստուածազարդ յարութեանն ՔՐԻՍՏՈՍԻ երկրպագանեմք ։

Դ · Փառք յարութեան քո Տէր ։

'Ի փոխն սրբոցն զա՛յս ասա ։

Ս · Սուրբ եւ Աստուածահաճոյ · Մարգարէին · Հայրապետին · Առաքելոյն · Մարտիրոսին · ( այս անուն · ) որոյ այսօր զյիշատակն կատարեմք ։ Եղիցի յիշատակ 'ի սուրբ պատարագս աղաչեմք ։

Դ · Յիշեա Տէր եւ ողորմեա ։

Ս · Առաջնորդացն մերոց եւ առաջին լուսաւորչացն սրբոց · Թադէոսի եւ Բարթուղիմէոսի առաքելոցն եւ Գրիգորի լու

սաւորչի՛ն ։ Արիստակիսի՛ն ․ Վրթանիսի՛ն ․ Յուսկա՛նէն ․ Գրիգորիսին ․ Ներսիսի՛ն ․ Սահակա՛յ ․ Դանիէլի ․ և Խադայ ․ Մեսրովպա՛յ Վարդապետին ․ և Գրիգորի Նարեկացւոյն ․ և Ներսիսի Կլայեցւոյն ․ Յովհաննու Որոտնեցւոյն ․ և Գրիգորի և Մովսէսի Տաթևացւոց ․ և սրբո՛ց Գրիգորիսեանց և Ներսիսեանց ․ Հովուաց և Հովուապետացն Հայաստանեա՛յց ։ Եղիցի յիշա՛տա՛կ ՚ի սո՛ւրբ պատարա՛գս՝ աղաչե՛մք ։

դ ․ Յիշեա՛ Տէ՛ր և ողո՛րմեա՛ ։

ս ․ Միանձնացելո՛ց սրբո՛ց ․ առաքինասէ՛ր և Աստուածուսոյց կրօնաւորա՛ցն ․ Պօ՛ղոսի ․ Անտօնի ․ Պօ՛ղայ ․ Մա՛կարայ ․ Ոնուփրիոսի ․ աբբայ Մարկոսի ․ Արսենի ․ Նեղոսի ․ Եփրեմի ․ Եւագրի ․ Պա՛խումայ ։ Յովհաննիսեա՛նց և Սիմէոնեա՛նց ․ սրբոց Ոսկեա՛նց և Սուքիասեանց ․ և ամենայն որբո՛ց ․ հա՛րց և ճգնաւորաց նոցին ը՛նդ տիեզե՛րս ։ Եղիցի յիշա՛տա՛կ ՚ի սո՛ւրբ պատարա՛գս՝ աղաչե՛մք ։

դ ․ Յիշեա՛ Տէ՛ր և ողո՛րմեա՛ ։

ս ․ Թագաւորա՛ց հաւատացելո՛ց սրբո՛ց ․ Տրդատա՛յ ․ Կոստանդիանոսի ․ Թէոդո

տայ ։ և Թէոդորիցն ․ և ամենայն սուրբ և բարեպաշտ Թագաւորաց և Աստուածասէր իշխանաց ։ Եղիցի յիշատակ 'ի սուրբ պատարագս՝ աղաչեմք ։

Դ ․ Յիշեա՛ Տէ՛ր և ո՛ղորմեա՛ ։

Ս ․ Ուղղափառ ամենայն հաւատացելոց ․ արանց և կանանց ․ ծերոց և տղայոց ․ և ամենայն չափու հասակի հաւատով և սրբութեամբ 'ի ՔՐԻՍՏՈՍ ննջեցելոցն ։ Եղիցի յիշատակ 'ի սուրբ պատարագս՝ աղաչեմք ։

Դ ․ Յիշեա՛ Տէ՛ր և ո՛ղորմեա՛ ։

Ս ․ Օրհնեա՛ Տէ՛ր ։

Վ ․ Եւս առաւել զերկրպագութեան ։

Ս ․ Գոհութիւն և փառաբանութիւն մատուցանեմք քեզ Տէր Աստուած մեր ․ փոխանակ սուրբ և անմահ պատարագիս որ 'ի վերայ սրբոյ սեղանոյս ․ զի սա մեզ 'ի սրբութիւն կենդանութեան պարգևեսցէ ։ Սովաւ շնորհեա՛ զսէր զհաստատութիւն և զըղձալի զխաղաղութիւն ամենայն աշխարհի ․ սրբոյ Եկեղեցւոյ և ամենայն ուղղափառ եպիսկոպոսաց ․ եպիսկոպոսութեան մերոյ և պատուական Հայրապետին ամենայն Հայոց տեառն

(այս անուն.) և մերոյ արհի եպիսկոպոսին և երջանիկ րաբունապետին տեառն (այս անուն.) և քահանայիս որ զպատարա՛գըս մատուցանէ՛։ Եւ վա՛սըն զօրութեանց և յաղթութեանց թագաւորաց Քրիստոնէից և իշխանա՛ցըն բարեպաշտի՛ց։ Աղաչեսցուք և խնդրեսցուք և վասըն հոգւո՛ցըն հանգուցելո՛ց։ Ե՛ւս առաւե՛լ վասըն հանգուցեալ րաբունապետացըն մերոց. և շինողացս սուրբ Եկեղեցւոյս. և որք ընդ հովանեաւ սորին են հանգուցեա՛լ։ Ազա՛տութիւն եղբա՛րց մերոց գերելոց և շնորհ առաջիկայ ժողովրդեա՛նս։ Հանգի՛ստ հաւատով և սրբութեամբ ՚ի ՔՐԻՍՏՈՍ կատարելո՛ցն։ Ե՛ղիցի յիշա՛տակ ՚ի սո՛ւրբ պատարա՛գս՝ աղաչե՛մք։

Դ. Ա՛ստ ա՛մենայնի՛. և յաղա՛գս ամենե՞ցո՛ւն։

Ս. Օրհնեա՜ Տէ՜ր։

Ք. Եւ եղիցի ողորմութիւն մեծին Աստուծոյ և Փրկչին մերոյ"։

Դ. Ե՛ւ ընդ հո՛գւո՛յդ քո՜՛ւմ։

Ե. Սարկաւագն փոխէ ՚ի Եհ.։

Ս. Եւ ևս խաղաղութեան. զՏէր աղաչեսցո՛ւք։

Դ. Տէ՛ր ողորմեա՛ ։

Ս. Ամենայն սրբովք զորս յիշատակեցաք․ և առաւելապէս․ զՏէր աղաչեսցո՛ւք ։

Դ. Տէ՛ր ողորմեա՛ ։

Ս. Վասն մատուցելոյ սուրբ և Աստուածային պատարագիս ՚ի վերայ սրբոյ սեղանոյս․ զՏէր աղաչեսցո՛ւք ։

Դ. Տէ՛ր ողորմեա՛ ։

Ս. Որպէս զի Տէր Աստուած մեր որ ընկալաւ զսա ՚ի սուրբ երկնային և յիմանալի իւր մատուցարանն․ զփոխանակն առաքեսցէ առ մեզ զշնորհս և զպարգևս Հոգւոյն սրբոյ․ զՏէ՛ր աղաչեսցո՛ւք ։

Դ. Տէ՛ր ողորմեա՛ ։

Ս. Ընկա՛լ կեցո՛ և ողորմեա՛․ և պահեա՛ զմեզ Տէր քոյին շնորհի՛ւդ ։

Դ. Կեցո՛ զմեզ Տէ՛ր քոյին շնորհիւդ ։

Ս. Զամենասրբուհի զԱստուածածինն զմիշտ կոյսն Մարիամ, հանդերձ ամենայն սրբովք յիշելով․ զՏէ՛ր աղաչեսցո՛ւք ։

Դ. Տէ՛ր ողորմեա՛ ։

Ս. Եւ ևս միաբան վասն ճշմարիտ և սուրբ հաւատոյս մերոյ․ զՏէ՛ր աղաչեսցո՛ւք ։

Դ. Տէ՛ր ողորմեա՛ ։

Ս. Զանձինս մեր և զմիմեանս. Տեառն Աստուծոյ ամենակալին յանձն արասցուք։

Դ. Քեզ Տեառնդ յանձն եղիցուք։

Ս. Ողորմեաց մեզ Տէր Աստուած մեր. ըստ մեծի ողորմութեան քում ասասցուք ամենեքեան միաբանութեամբ։

Դ. Տէր ողորմեա. Տէր ողորմեա. Տէր ողորմեա։

Ս. Օրհնեա Տէր։

Ք. Եւ տուր մեզ համարձակաձայն բար՛՛։

Դ. Հայր մեր որ յերկինս ես. սուրբ եղիցի անուն քո։ Եկեսցէ արքայութիւն քո. եղիցին կամք քո որպէս յերկինս և յերկրի։ Զհաց մեր հանապազորդ տուր մեզ այսօր։ Եւ թող մեզ զպարտիս մեր. որպէս և մեք թողումք մերոց պարտապանաց։ Եւ մի տանիր զմեզ 'ի փորձութիւն. այլ փրկեա 'ի չարէ։

Ս. Օրհնեա Տէր։

Ք. Զի քո է արքայու՛՛։ Խաղաղու՛՛։

Դ. Եւ ընդ հոգւոյդ քում։

Ս. Աստուծոյ երկրպագեսցուք։

Դ. Առաջի քո Տէր։

Քահանային խնկարկէ · և ամենայն ժողովրդեան խնկարկին ի վայր ։ Եւ Սարկաւագն ձայնէ ։

Մ. Օրհնեա Տէր ։

Ք. ՔՐԻՍՏՈՍԻ ՅԻՍՈՒՍԻ Տեառն մերոյ ։

Եւ Սարկաւագն ձայնէ բարձր ։

Մ. Պռօսխումէ ։

Ք. Ի սրբութիւն սրբոց ։

Դ. Միայն սուրբ · միայն Տէր · ՅԻՍՈՒՍ ՔՐԻՍՏՈՍ ի փառս Աստուծոյ Հօր ։ Ամէն ։

Մ. Օրհնեա Տէր ։

Ք. Օրհնեալ ՀԱՅՐ սուրբ Աստուած ճշմարիտ ։

Դ. Ամէն ։

Մ. Օրհնեա Տէր ։

Ք. Օրհնեալ ՈՐԴԻ սուրբ Աստուած ճշմարիտ ։

Դ. Ամէն ։

Մ. Օրհնեա Տէր ։

Ք. Օրհնեալ ՀՈԳԻ սուրբ Աստուած ճշմարիտ ։

Դ. Ամէն ։

Մ. Օրհնեա Տէր ։

Ք. Օրհնութիւն և փառք Հօր և Որ"։

Դ. Ամէն։ ՀԱՅՐ սուրբ. ՈՐԴԻ սուրբ. ՀՈԳԻ սուրբ։ Օրհնութիւն Հօր և ՈՐԴՒՈՅ և սուրբ ՀՈԳՒՈՅՆ. այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. Ամէն։

Ս. Օրհնեա Տէր։

Ք. Ի սուրբս ի սուրբս պատուական"։

Եւ խաչակնքէ քահանայն սկհովն ի վերայ ժողովրդեանն և դառնայ ի սուրբ սեղանն, և փակեն զվարագոյրն։ Եւ քարոզէ Սարկաւագն։

Ս. Սաղմոս ասացէ՛ք Տեառն Աստուծոյ մերոյ՝ դպիրք ձայնիւ քաղցրութեամբ զերգս հոգեւորս։ Զի սմա վայելեն սաղմոսք և օրհնութիւնք. ալէլուք և երգք հոգեւորք։ Պաշտօնեայք հանդերձ երգովք սաղմոս ասացէ՛ք. և զՏէր յերկինս օրհնեցէ՛ք։

Եւ Դպիրքն եղանակեն։

Դ. ՔՐԻՍՏՈՍ պատարագեալ բաշխի ի միջի մերում. Ալէլուիա։

ԶՄԱՐՄԻՆ իւր տայ մեզ կերակուր և սուրբ ԶԱՐԻՒՆՆ իւր ցօղէ ի մեզ. Ալէլուիա։

Մատիք առ Տէր և առէք զլոյս. Ալէլուիա։

Ճաշակեցէք և տեսէք զի քաղցր է Տէր. Ալէլուիա ։

Օրհնեցէք զՏէր յերկինս. Ալէլուիա ։

Օրհնեցէք զնա ի բարձունս. Ալէլուիա ։

Օրհնեցէք զնա ամենայն հրեշտակք նորա. Ալէլուիա ։

Օրհնեցէք զնա ամենայն զօրութիւնք նորա. Ալէլուիա ։

Եւ Դպիրքն երգեն զՑաղս խորհրդատետրս ըստ պատշաճի աւուրն ։

Եւ ապա քարոզէն զՀամբարձայն յեփս ։ Եւ Սարկաւագն քարոզէ Բարձր յոյժ ։

Ս. Երկիւղիւ և հաւատով յառաջ մատիք և սրբութեամբ հաղորդեցարուք ։

Եւ ժողովուրդքն եւ ասեն յոյժ ։

Դ. Աստուած մեր և Տէր մեր երեւեցաւ մեզ. օրհնեալ եկեալ անուամբ Տեառն ։

Պ. Կեցո Տէր զժողովուրդս քո. և օրհ" ։

Դարձեալ քարոզէն զՀամբարձայն ։ Եւ Դպիրքն երգեն ։

Դ. Լցաք ի բարութեանց քոց Տէր. ճաշակելով զՄԱՐՄԻՆ քո և զԱՐԻՒՆ. փառք ։ Ֆ ռք ի բարձունս կերակրողիդ ըզ ըզմեզ ։ Որ հանապազ կերակրես ըզմեզ, առաքեա ի մեզ ըզհոգեւոր

քո զօրհնութիւն . փառք ՚ի բարձունս կերակրողիդ ըզմեզ :

Եւ Մաղթանագն տարողէ :

Ե . Եւ ևս խաղաղութեան զՏէր աղաչեսցուք : Եւ ևս հաւատով ընկալեալք յԱստուածային . սուրբ երկնային անմահ անարատ և անապական խորհրդոյս . զՏեառնէ գոհացարուք :

Դ . Գոհանամք զքէն Տէր . որ կերակրեցեր զմեզ յանմահական սեղանոյ քոյ : Բաշխելով զՄԱՐՄԻՆԴ և զԱՐԻՒՆԴ ՚ի փրկութիւն աշխարհի . և կեանք անձանց մերոց :

Իսկ աստանօր Դպիրքն եղանակեն Տաղս խորհրդականս , մինչ քահանայն չափաւորեսցէ զկարգ աղօթիցն : Եւ յորժամ հաղորդին արժանաւորքն Դպիրքն երգեն զՏաղս զայս :

Մայր հաւատոյ սուրբ հարսնարան .
և առագաստ գերադրական .
դու փեսայիդ անմահական .
որ զարդարեաց զքեզ անկախճան :
Երկրորդ երկինք դու հրաշական .
փառաց ՚ի փառս բարձրական .
որ զմեզ ծնանիս լուսոյ նըման .
աւազանաւն որդեգրական :

Ա՛յն՝ ո՛ր օրհնեա՛լ է յա՛ւիտեա՛ն.
հայր և՛ հոգւո՛վըն միակա՛ն.
այժմ և յաւէ՛տ և յապագա՛յն.
և անըսպա՛ռ մի՛շտ յա՛ւիտեա՛ն։

Եւ ՚ի Վերջ Տաղին՝ ժողովեն զՎարդապետին յետս, և Սարկաւագն ասէ։

Ս. Օ՛րհնեա Տէ՛ր։

Ժ. Որ օրհնես զայնոսիկ որք օրհնեն՚։

Ք. Եղիցի անուն Տեառն օրհնեալ յայսմ հետէ մինչև յաւիտեան։ Երեքս կրկնէ՛։

Ժ. Կատարումն օրհնաց և մաղթա՛։

Ս. Ալէլուիա Օրթի։

Ժ. Խաղաղութիւն ամենեցուն։

Ս. Եւ ընդ հոգւոյդ քում։

Դ. Երկիւղածութեամբ լուարուք։

Ժ. Սրբոյ Աւետարանիս ՅԻՍՈՒՍԻ ՔՐԻՍՏՈՍԻ որ ըստ Յովհաննու։

Դ. Փառք քեզ Տէր Աստուած մեր։

Ս. Պռօսխումէ։

Դ. Ասէ Աստուած։

Ժ. ՚Ի Հօրէ լուսոյ։ ՚Ի սկզբանէ էր Բանըն՚։ Գլ. Ա. Հ, 1. Մ՚եր. Հ, 14։

չամ. Յետ յարութեան Տեառն մերոյ ՅԻՍՈՒՍԻ ՔՐԻՍՏՈՍԻ։ Եւ երբեմն ճաշեցին, ասէ ցՍիմոն Պետրոս՚։ Գլ. ԻԱ. Հ, 15. Մ՚եր.

Ս. Սուրբ Աւետարանաւս աղաչեա՚։

Գ. Պահպանեա՛ ըզծառայս քո ՔՐԻՍՏՈՍ Աստուած։

Դ. Օրհնեցից զՏէր յամենայն ժամ, յամենայն ժամ օրհնութիւն նորա ՚ի բերան իմ։

Ե. Օրհնեմք եղբարք ՚ի շնորհաց սուրբ Հոգւոյն. երթայք խաղաղութեամբ, եւ Տէր եղիցի ընդ ձեզ եւ ընդ ամենեսեանդ. Ամէն։

---

Եւ ՚ի բաշխելն զնշխարս առ ժողովրդեան՝ դպիրքն երգեն զՍաղմոսս զայս։

Ի Տէր պա՛րծեսցի՛ ա՛նձն ի՛մ. լուիցեն հեզք, եւ ուրախ եղի՜ցի՛ն։

Մե՛ծ արարէ՛ք զՏէր ընդ իս՛, եւ բարձր արասցո՛ւք զանո՛ւն նորա ՚ի միա՜սի՛ն։

Խնդրեցի՛ ՚ի Տեառնէ՛ եւ լուա՛ւ ինձ. յամենայն նեղութեանց իմոց փրկեա՜ց զի՛ս։

Մատի՛ջք առ Տէ՛ր՝ եւ առէ՛ք զլոյս, եւ երեսք ձեր մի՛ ամաչե՜սցե՛ն։

Ա՛յս աղքա՛տ կա՛րդաց առ Տէր, եւ Տէր լուաւ սմա. յամենայն նեղութեանց սորա՛ փրկեաց ը՜զսա՛։

Բանակե՛սցէ հրեշտակի՛ց Տեա՛ռն շուրջ են երկիւղածո՛վք իւրո՛վք. եւ պահեսցէ զնո՜սա՛։

Ճաշակեցէ՛ք եւ տեսէ՛ք, զի. քա՛ղցր է

Տէր . երանեալ է այր որ յուսայ 'ի նա՛ ։

Երկերո՛ւք 'ի Տեառնէ ամենայն սուրբք նորա . զի ոչինչ է պակասութի՛ւն երկիւղածաց նո՛րա ։

Մեծամե՛ծք աղքատացա՛ն և քաղցեան . բայց որք խնդրեն զՏէր , մի՛ պակասեսցին 'ի նոցանէ ամենայն բարո՛ւթի՛ւն ։

Եկա՛յք որդեա՛կք իմ լո՛ւարուք ինձ . և զերկիւղ Տեառն ուսուցի՛ց ձե՛զ ։

Ո՛վ է մա՛րդ՝ որ կամի՛ զկեանս , սիրէ՛ զաւուրս իւր տեսանել 'ի բարո՛ւթեա՛ն ։

Զգուշացո՛ զլեզո՛ւ քո 'ի չարութենէ՛ . և շրթունք քո մի՛ խօսեսցի զնենգո՛ւթի՛ւն ։

Խոտորեա՛ 'ի չարէ՛ և արա՛ զբարի . խնդրեա՛ զխաղաղութիւն , և երթ զհետ նո՛րա՛ ։

Ա՛չք Տեառն 'ի վերա՛յ արդարոց , և ականջք նորա՛ 'ի վերայ աղօթից նո՛ցա՛ ։

Երե՛սք Տեառն 'ի վերա՛յ չարագործաց , սատակել յերկրէ՛ զյիշատակս նո՛ցա՛ ։

Կարդացի՛ն արդա՛րքն առ Տէր , և Տէր լուաւ նոցա , յամենայն նեղութենէ նոցա փրկեաց զնո՛սա՛ ։

Մե՛րձ է Տէ՛ր առ այնոսիկ՝ որք մաշեալ

են սրտիւք . և զխոնարհս հոգւով կեցուցանէ :

Բազում նեղութիւնք են արդարոց . յամենայնէ փրկէ զնոսա Տէր . և պահէ զամենայն ոսկերս նոցա . և մի՛ 'ի նոցանէ մի՛ փշրեսցի :

Մահ մեղաւորին չար է . բայց որ ատեն զարդարն , զղջասցին :

Փրկէ Տէր զանձինս ծառայից իւրոց . մի՛ զղջասցին ամենեքեան՝ որք յուսացեալ են 'ի նա :

Փառք Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ , Այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից . Ամէն :



# ՑԱՆԿ

---

# ԽՐԱՏ
## ՏՕՄԱՐԱԿԱՆ ԵՒ ՄՇՏՆՋԵՆԱՒՈՐ
## ԱՂԻՒՍԱԿԱՑ

Կա՛լ զթուականն Հայոց յորում ամի և իցես, յառաջիկայ աղիւսակէ աստի՝ որ յերկուս երեսս թղթոյ եդեալ է. և գտեր ՚ի կարգի այնր թուականի զտարեգիրն նոյն տարւոյն. յորոյ կարգի եդեալ կայ գլխագրով միայն Եօթներեակն՝ Վերադիրն և Տանուտէրն։ Եւ աստի յառաջ գնացեալ յայն մշտնջենաւոր աղիւսակն՝ որ յերիս զոյգ երեսս թըղթոյ պարունակեալ է, գտցես անդ զնոյն տարեգիրն, որ ըստ կարգի այբուբենից եդեալ կայ գլխագրով. և ՚ի շարս նորին գըտցես յառաջին տուփն զօրն Յայտնութեան, յերկրորդումն՝ զմիջոց ուտիքն. և այսու կարգաւ յառաջ գնասցես մինչև ցօր բարենդանի Յայտնութեան։

Օրինակ իմն, Թուական առաջիկայ տարւոյս է (ռմղէ), և տարեգիրն. (ՆՑ), զոր գտցես յերկրորդում աղիւսակի անդ. և ՚ի նմին կարգի տուփն առ ձեռն պատրաստ գտանես զօրն Յայտնութեան՝ որ է (ուրբաթ), և զմիջոց ուտիքն՝ որ է (ժ) օր, և զառաջաւորաց բարեկենդանն որ է Յունվարի (ժե), և զայլն ամենայն ըստ վերոյգրեալ խրատու մինչև ցօր բարեկենդանի Յայտնութեան։

| ԱՄՔ ՏԵԱՌՆ ԵՒ ԹՈՒԱԿԱՆ ՀԱՅՈՑ | Գիր տարւոյ | Եբօնէրէաչ | Ս՝ Երադէր | ՏԱՆՈՒՏԷՐ |
|---|---|---|---|---|
| 1848 · ռմղէ | ՆՑ | դէ | ե | Կարիճ |
| 1849 · ռմղը | Խ | ղ | ժղ | Աղեղնաւոր |
| 1850 · ռմղթ | Ց | է | իէ | Այծեղջիւր |
| 1851 · ռյ | Ղ | ա | ը | Ջրհոս |
| 1852 · ռյա | ՃԹ | բկ | ժթ | Ձուկն |
| 1853 · ռյբ | Ս | դ | լ | Խոյ |
| 1854 · ռյգ | Ց | է | ժա | Ցուլ |
| 1855 · ռյդ | Ղ | ղ | իբ | Երկաւոր |
| 1856 · ռյե | ՔՉ | էա | դ | Խեցգետին |
| 1857 · ռյզ | Ձ | բ | ժդ | Առիւծ |
| 1858 · ռյէ | Բ | կ | իե | Կոյս |
| 1859 · ռյը | Ն | դ | զ | Կշիռ |
| 1860 · ռյթ | ԾԽ | էղ | ժէ | Կարիճ |
| 1861 · ռյժ | Ց | է | իը | Աղեղնաւոր |
| 1862 · ռյժա | Ղ | ա | թ | Այծեղջիւր |
| 1863 · ռյժբ | Ճ | բ | իա | Ջրհոս |
| 1864 · ռյժգ | ՎՍ | կդ | բ | Ձուկն |
| 1865 · ռյժդ | Ծ | է | ժդ | Խոյ |
| 1866 · ռյժե | Ղ | ղ | իդ | Ցուլ |
| 1867 · ռյժզ | Գ | է | ե | Երկաւոր |
| 1868 · ռյժէ | ԻՃ | աբ | ժզ | Խեցգետին |
| 1869 · ռյժը | Վ | կ | իէ | Առիւծ |
| 1870 · ռյժթ | Ն | դ | ը | Կոյս |
| 1871 · ռյի | Է | է | ժթ | Կշիռ |
| 1872 · ռյիա | ՃԳ | ղէ | լ | Կարիճ |
| 1873 · ռյիբ | Ջ | ա | ժա | Աղեղնաւոր |

| | | | | |
|---|---|---|---|---|
| 1874 • ռյիգ | Ժ | բ | իբ | Այծեղջիւր |
| 1875 • ռյիդ | Ղ | գ | գ | Ջրհոս |
| 1876 • ռյիե | ԿԾ | դե | ժդ | Ձուկ |
| 1877 • ռյիզ | Ջ | զ | իե | Խոյ |
| 1878 • ռյիէ | Զ | է | զ | Ցուլ |
| 1879 • ռյիը | Ի | ա | ժէ | Երկաւոր |
| 1880 • ռյիթ | ՏՎ | բգ | իը | Խեցգետին |
| 1881 • ռյլ | Ն | դ | թ | Առիւծ |
| 1882 • ռյլա | Է | ե | իա | Կոյս |
| 1883 • ռյլբ | Ձ | զ | բ | Կշիռ |
| 1884 • ռյլգ | ՃԴ | էա | ժգ | Կարիճ |
| 1885 • ռյլդ | Գ | բ | իդ | Աղեղնաւոր |
| 1886 • ռյլե | Ղ | գ | ե | Այծեղջիւր |
| 1887 • ռյլզ | Կ | դ | ժզ | Ջրհոս |
| 1888 • ռյլէ | ՓԻ | եզ | իէ | Ձուկ |
| 1889 • ռյլը | Ճ | է | ը | Խոյ |
| 1890 • ռյլթ | Ի | ա | ժթ | Ցուլ |
| 1891 • ռյխ | Տ | բ | լ | Երկաւոր |
| 1892 • ռյխա | ՀԿ | գդ | ժա | Խեցգետին |
| 1893 • ռյխբ | Է | ե | իբ | Առիւծ |
| 1894 • ռյխգ | Ձ | զ | գ | Կոյս |
| 1895 • ռյխդ | Լ | է | ժդ | Կշիռ |
| 1896 • ռյխե | ԴԳ | աբ | իե | Կարիճ |
| 1897 • ռյխզ | Ղ | զ | զ | Աղեղնաւոր |
| 1898 • ռյխէ | Կ | դ | ժէ | Այծեղջիւր |
| 1899 • ռյխը | Ռ | ե | իը | Ջրհոս |
| 1900 • ռյխթ | ՄՃ | զէ | ժթ | Ձուկ |
| 1901 • ռյծ | Ի | ա | իա | Խոյ |
| 1902 • ռյծա | Ո | բ | բ | Ցուլ |
| 1903 • ռյծբ | Հ | գ | ժգ | Երկաւոր |

| Գիր տարւոյ ։ | Օր Յայտնութեան ։ | Մինչև ուտիք , օր ։ | Առաջաւորաց Բարեկենդան ։ | Բուն Բարեկենդան ։ | ԶԱՏԻԿ ։ | Երևման խաչ | Համբարձումն ։ | Հոգեգալուստ ։ | Սուրբ Գրիգորի Բարեկենդան ։ | Վարդավառ ։ |
|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|
| | | | յնվր | փետ | մարտ | ապր | ապր | մայս | մայս | յնիս |
| Ա | գշբ | զ | ժա | ա | իբ | ժթ | լ | ժ | լա | իը |
| Բ | բշբ | է | ժբ | բ | իգ | ի | մա ա | ժա | յն ա | իթ |
| Գ | կիր | ը | ժգ | գ | իդ | իա | բ | ժբ | բ | լ |
| Դ | շբթ | թ | ժդ | դ | իե | իբ | գ | ժգ | գ | յլ ա |
| Ե | ուրբ | ժ | ժե | ե | իզ | իգ | դ | ժդ | դ | բ |
| Զ | եշբ | ժա | ժզ | զ | իէ | իդ | ե | ժե | ե | գ |
| Է | դշբ | ժբ | ժէ | է | իը | իե | զ | ժզ | զ | դ |
| Ը | գշբ | ժգ | ժը | ը | իթ | իզ | է | ժէ | է | ե |
| Թ | բշբ | ժդ | ժթ | թ | լ | իէ | ը | ժը | ը | զ |
| Ժ | կիր | ժե | ի | ժ | լա | իը | թ | ժթ | թ | է |
| Ի | շբթ | ժզ | իա | ժա | ապր ա | իթ | ժ | ի | ժ | ը |
| Լ | ուրբ | ժէ | իբ | ժբ | բ | լ | ժա | իա | ժա | թ |

| Գիր տառից. | Օր Յայտնութեան. | Միւս ամսոց օր. | Առաջաւորաց Բարեկենդանն. | Բուն Բարեկենդանն. | ԶԱՏԻԿ. | Երևման խաչ. | Համբարձումն. | Հոգեգալուստ. | Սուրբ Գրիգորի Բարեկենդանն. | Վարդավառ. |
|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|
| | | | յնվր | փետր | ապրլ | մայս | մայս | մայս | յնիս | յլիս |
| Խ | եշբ | ժը | իգ | ժգ | գ | ա | ժը | իը | ժը | ժ |
| Ծ | դշբ | ժթ | իգ | ժգ | գ | բ | ժգ | իգ | ժգ | ժա |
| Կ | գշբ | ի | իե | ժե | ե | գ | ժգ | իգ | ժգ | ժբ |
| Հ | բշբ | իա | իդ | ժդ | դ | գ | ժե | իե | ժե | ժգ |
| Ձ | կիր | իբ | իե | ժե | ե | ե | ժդ | իդ | ժդ | ժգ |
| Ղ | շբթ | իգ | իը | ժը | ը | դ | ժե | իե | ժե | ժե |
| Ճ | ուր | իդ | իթ | ժթ | թ | ե | ժը | իը | ժը | ժդ |
| Մ | եշբ | իե | լ | ի | ժ | ը | ժթ | իթ | ժթ | ժե |
| Յ | դշբ | իդ | լա | իա | ժա | թ | ի | լ | ի | ժը |
| Ն | գշբ | իե | փ ա | իը | ժը | ժ | իա | լա | իա. | ժթ |
| Շ | բշբ | իը | ը | իգ | ժգ | ժա | իը | յն ա | իը. | ի |
| Ո | կիր | իթ | գ | ժգ | ժգ | ժը | իգ | ը | իգ. | իա |

| Միջոց շաբաթուց պահոց ։ | Աստուածածին ։ | Միջոց շաբաթուց պահոց ։ | Սուրբ Խաչ ։ | Սուրբ Գէորգայ Բարեկենդան ։ | Միջոց ուտիք շաբաթու ։ | Գիւտ Խաչ ։ | Յիսնակաց Բարեկենդան ։ | Սուրբ Յակոբայ Բարեկենդան ։ | Միջոց ուտից, օր ։ | Օր Բարեկենդանին Յայտնութ"։ |
|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|
| | օգո | | սեպ | սեպ | | հոկ | նոյե | դեկ | | |
| ե | ժդ | դ | ժա | ժը | ը | իգ | ի | ժա | ժգ | եշբ |
| ե | ժե | դ | ժբ | ժթ | ը | իդ | իա | ժբ | ժբ | դշբ |
| ե | ժզ | դ | ժգ | ի | է | իե | ժե | զ | ժը | գշբ |
| ե | ժէ | դ | ժդ | իա | է | իզ | ժզ | է | ժէ | բշբ |
| ե | ժը | դ | ժե | իբ | է | իէ | ժէ | ը | ժզ | կիր |
| դ | ժբ | ե | ժզ | իգ | է | իը | ժը | թ | ժե | շբթ |
| դ | ժգ | ե | ժէ | իդ | է | իթ | ժթ | ժ | ժդ | ուր |
| դ | ժդ | դ | ժա | ժը | ը | իգ | ի | ժա | ժգ | եշբ |
| դ | ժե | դ | ժբ | ժթ | ը | իդ | իա | ժբ | ժբ | դշբ |
| դ | ժզ | դ | ժգ | ի | է | իե | ժե | զ | ժը | գշբ |
| դ | ժէ | դ | ժդ | իա | է | իզ | ժզ | է | ժէ | բշբ |
| դ | ժը | դ | ժե | իբ | է | իէ | ժէ | ը | ժզ | կիր |

| Մինչոյ շաբաթք պահօք ։ | Աստուածածին ։ | Մինչոյ շաբաթք պահօք ։ | Սուրբ խաչ ։ | Սուրբ Գէորգայ Բարեկենդան ։ | Մինչոյ ուտիք շաբաթք ։ | Գիւտ խաչ ։ | Յիսնակաց Բարեկենդան ։ | Սուրբ Յակոբայ Բարեկենդան ։ | Մինչոյ ուտիք, օր ։ | Օր Բարեկենդանի Յայտնութ"։ |
|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|
| | օգս. | | սեպ | սեպ | | հոկ | նոյե | դեկ | | |
| դ | ժբ | ե | ժզ | իգ | է | իը | ժը | թ | ժե | շբթ |
| դ | ժգ | ե | ժէ | իդ | է | իթ | ժթ | ժ | ժգ | ուր |
| դ | ժդ | դ | ժա | ժը | ը | իգ | ի | ժա | ժգ | եշբ |
| դ | ժե | դ | ժբ | ժթ | ը | իդ | իա | ժբ | ժբ | դշբ |
| դ | ժզ | դ | ժգ | ի | է | իե | ժե | զ | ժը | գշբ |
| դ | ժէ | դ | ժդ | իա | է | իզ | ժզ | է | ժէ | բշբ |
| դ | ժը | դ | ժե | իբ | է | իէ | ժէ | ը | ժզ | կիր |
| գ | ժբ | ե | ժզ | իգ | է | իը | ժը | թ | ժե | շբթ |
| գ | ժգ | ե | ժէ | իդ | է | իթ | ժթ | ժ | ժգ | ուր |
| գ | ժդ | դ | ժա | ժը | ը | իգ | ի | ժա | ժգ | եշբ |
| գ | ժե | դ | ժբ | ժթ | ը | իդ | իա | ժբ | ժբ | դշբ |

ԿԱՐԳ

# ՅԱՋՈՐԴՈՒԹԵԱՆ

## ՍՐԲԱԶԱՆ ԱՌԱՔԵԼՈՑՆ

# ԹԱԴԷՈՍԻ

ԵՒ

# ԲԱՐԹՈՂԻՄԷՈՍԻ

ՈՐՔ ԵՂԵՆ ՀՈՎԻՒՔ ՍՈՒՐԲ ԵԿԵՂԵՑԻՈՑ ՄԵՐՈՑ

ՄԻՆՉԵՒ

ՑՍՈՒՐԲՆ ԳՐԻԳՈՐ ԼՈՒՍԱՒՈՐԻՉ ՀԱՅԱՍՏԱՆԵԱՅՑ

ԱՇԽԱՐՀԻ

1 Տէր սուրբ ԹԱԴԷՈՍ առաքեալ։
2 Տէր սուրբ ԲԱՐԹՈՂԻՄԷՈՍ առաքեալ։
3 Սուրբ Յուդա Թադէոս։
4 Սուրբ Ադդէ եպիսկոպոս։
5 Սուրբ Եղիշէ։
6 Սուրբ Սամաթէոս։
7 Սուրբ Զաքարիա եպիսկոպոս։
8 Սուրբ Թէոփիլոս եպիսկոպոս։

# ԴԱՍԱԿԱՐԳՈՒԹԻՒՆՔ

ԵՒ

## ԱՆՑՔ ԺԱՄԱՆԱԿԱԳՐՈՒԹԵԱՆ

## ԿԱԹՈՂԻԿՈՍԱՑՆ ՀԱՅՈՑ



### ՍԿՍԵԱԼ ՅԱՌԱՋԻՆ ԿԱԹՈՂԻԿՈՍԷՆ ՀԱՅՈՑ 'Ի ՍՐԲՈՅՆ ԳՐԻԳՈՐԷ ԼՈՒՍԱՒՈՐՉԷՆ ՄԵՐՄԷ ՑԱՒՈՒՐՍ ՏԷՐ ՆԵՐՍԻՍԻ ՀԻՆԳԵՐՈՐԴԻ ԱՇՏԱՐԱԿՑՒՈՅ

Տէր սուրբ Գրիգոր Լուսաւորիչ Ա : Աթոռն կաթուղիկոսութեան դնի 'ի Վաղարշապատ արքայանիստ, ուր է ԷՋՄԻԱԾԻՆ յամի 302 : Ցաւուրս սորա, յամի 325 եղև սուրբ ժողովն Նիկիոյ . և 'ի հայս ժողովն Վաղարշապատու՝ Ա : Եւ գիւտ խաչափայտին ՔՐԻՍՏՈՍԻ 'ի Հեղինեայ թագուհւոյ յԵրուսաղէմ, յամի 327 : Եւ 'ի 24 ամի թագաւորութեան մեծին Կոստանդիանոսի, յամի 329 Կոստանդնուպօլիս շինի, յորում ժամանակի թագաւորէր 'ի հայս Տրդատ :

2 Տէր Արիստակէս Ա : Ցաւուրս սորա Արիոս հերետիկոսապետն սատանիկի :

3 Տէր Վրթանէս : Ցաւուրս սորա սուրբն Տրդատ վախճանի : Սուրբն Գրիգորիս Աղուանից կաթուղիկոս նահատակի : Եւ սուրբ խաչն երևի յԵրուսաղէմ ա- կիւրղիւ :

4 Տէր Յուսիկ : Ցաւուրս սորա մեծն Վրթանէս վախճանի :

5 Տէր Փառներսէհ յԱշտիշատայ՝ 'ի վանաց Գլակայ : Ցա-

ւուրս սորա Յուսիկ և Դանիէլ, և Սարգիս զօրավար Նահապետին.

6 Տէր Ներսէս Մեծ և Ա. Յաւուրս սորա, յամի 381 եղև սուրբ ժողովն Կոստանդնուպօլսոյ ընդդէմ Մակեդոնի. Եւ 'ի հայս ժողովն Աշտիշատու՝ Ա. և ժողովն Վաղարշապատու՝ Բ.

7 Տէր Շահակ 'ի Մանազկերտոյ.

8 Տէր Զաւէն.

9 Տէր Ասպուրակէս. Յաւուրս սորա աշխարհն Հայոց բաժանի 'ի Յունաց և 'ի Պարսից.

10 Տէր Սահակ Պարթև Ա. Յաւուրս սորա, յամի 398 սուրբն Յովհան Ոսկեբերան նստի պատրիարգ 'ի Կոստանդնուպօլիս. Եւ յամի 406 սուրբն Մեսրովպ գտանէ զգիրս Հայոց, լինի սկիզբն Թարգմանութեան, և Թարգմանի Աստուածաշունչ մատեանն 'ի Վաղարշապատ ընդ հովանեաւ Վռամշապհոյ Արշակունւոյ Հայոց Թագաւորի. Յայսմ ժամանակի, յամի 411 ըսկսանի Թագաւորութիւնն Սկիւթիոյ. Եւ յամի 414 Թագաւորութիւնն Սպանիացւոց. 419 Թագաւորութիւնն Ֆրանսայու. Եւ լինի ժողով յԵփեսոս ընդդէմ Նեստորի յամի 431. Եւ 'ի հայս կրկին ժողով 'ի Վաղարշապատ՝ Գ և Դ. և կրկին ժողով յԱշտիշատ՝ Բ և Գ.

11 Տէր Յովսէփ Ա. 'ի Հողոցիմ աւանէ. Յաւուրս սորա, յամի 448 Եւտիքէս հերետիկոս դատապարտի 'ի Փլաբիանոսէ. Եւ 'ի հայս կրկին ժողով Շահապիվանու՝ Ա և Բ. և ժողով Արտաշատու. և ժողով Դւնայ՝ Ա.

12 Տէր Մելիտէ 'ի Մանազկերտոյ. Յաւուրս սորա, Ղևոնդեանք նահատակին 'ի Յազկերտէ. Եւ աթոռն կաթուղիկոսութեան փոխի 'ի Դվին քաղաք յամի 452, յետ կալոյ յէջմիածին ամս 150.

13 Տէր Մովսէս Ա. 'ի Մանազկերտոյ. Յաւուրս սորա, Նախարարք Հայոց արձակեալ 'ի կապանաց դառնան յաշխարհէն Պարսից 'ի Հայաստան.

14 Տէր Գիւտ յԱրահեզայ 'ի Տայոց ։ Յաւուրս սորա , Դաւութ Անյաղթ և Մամբրէ և ընկերք նոցա ծաղկին ։

15 Տէր Քրիստափոր Ա. Արծրունի ։

16 Տէր Յովհան Ա. Մանդակունի ։ Յաւուրս սորա Վահան Մամիկոնեան նորոգէ զաշխարհն Հայոց ։

17 Տէր Բաբգէն յՈթմսոյ՝ որ 'ի Վանանդ ։ Յաւուրս սորա եղև ժողով Վաղարշապատու՝ Ե ։ Եւ գիւտ նշխարաց Գրիգորիսի Աղուանից կաթուղիկոսի ։

18 Տէր Սամուէլ յԱրծկէոյ ։ Յաւուրս սորա եղև սկիզբն տէրութեանն Հունաց ։

19 Տէր Մուշէ յԱղբերց աւանէ ։ Յաւուրս սորա թագաւորն Պարսից Կաւատ՝ առնու զքաղաքն Տիգրանակերտ 'ի ձեռաց Հայոց ։

20 Տէր Սահակ Բ. յՈւղկայ որ 'ի Հարք ։ Յաւուրս սորա Վահան Մամիկոնեան վախճանի ։

21 Տէր Քրիստափոր Բ. 'ի Տիրառիճ աւանէ Բագրեւանդայ ։

22 Տէր Ղեւոնդ յԵրասխայ ։ Յաւուրս սորա լինի սով սաստիկ յաշխարհին Հայոց ։

23 Տէր Ներսէս Բ. յԱշտարակաց 'ի Բագրեւանդայ ։ Յաւուրս սորա եղև ժողովն Դվնայ՝ Բ ։

24 Տէր Յովհաննէս Բ. 'ի Սիւնձեղնոյ Գաբեղեանց ։ Յաւուրս սորա , յայտնեցաւ դաստառակն ՔՐԻՍՏՈՍԻ ։

25 Տէր Մովսէս Բ. յԵղիվարդայ ։ Յաւուրս սորա նորոգեցաւ տումարն 'ի Հայս , որ և յամի Տեառն 552 սկսաւ թուականն Հայոց ։ Եղև ժողովն Դվնայ՝ Գ ։ Եւ Յուստինիանոս մեծ կայսրն Յունաց շինեաց զսուրբն Սոփիա 'ի Կոստանդնուպօլիս յամի 557 ։

26 Տէր Աբրահամ Ա. յԱղբաթանից ։ Յաւուրս սորա եղև ժողովն Դվնայ՝ Դ ։ Եւ դարձ Անգղիացւոց 'ի հաւատս ՔՐԻՍՏՈՍԻ յամի 597 ։

27 Տէր Յովհան Գ. 'ի Բագարանէ Բագրեւանդայ ։ Սա նըստաւ 'ի բաժնին Յունաց յաւուրս Աբրահամու կաթուղիկոսի ։ Յայսմ ժամանակի Պարսիկք առին զԵրուսաղէմ 'ի Յունաց յաւուրս Հերակլէ կայսեր ,

և գերեցին զսուրբ խաչն յամի 614 ։

28 Տէր Կոմիտաս յԱղցից յԱրագածոտն ։ Սա շինէ զվկայարանն սրբոյ Հռիփսիմեանց , և նորոգէ զէջմիածինն ։ Յաւուրս սորա Մժէժ հայ կարգի զօրավար 'ի Հերակլ կայսերէն Յունաց , և առնէ մեծամեծ քաջութիւնս 'ի Պարսիկս ։ Եւ սկսանի Թուականն հագարացւոց ․ յամի Տեառն 622 , յորում էր Թուականն Հայոց՝ ՀԱ ։

29 Տէր Քրիստափոր Գ ․ յԱպահունեաց ։

30 Տէր Եզր 'ի Փառաժնակերտէ ։ Սա շինէ զվկայարանն սրբոյ Գայիանեանց ։ Յաւուրս սորա եղև ժողովն Կարնոյ ։ Եւ դարձ սրբոյ խաչին յԵրուսաղէմ , և անտի 'ի Կոստանդնուպօլիս 'ի ժամանակս Հերակլի կայսեր Յունաց ։ Եւ յամի 637 հագարացիք առնուն զԵրուսաղէմ ։

31 Տէր Ներսէս Գ ․ շինող յԻշխանաց տանէ 'ի Տայոց ։ Յաւուրս սորա , յամի 653 յայտնեցաւ սուրբ խաչն Վարագայ ։ Եւ եղև կրկին ժողով 'ի Դվին՝ Ե և Զ ․ և ժողով ինչ 'ի Մանազկերտ 'ի աղանդաւորութեան Յովհաննու ։

32 Տէր Անաստաս յԱկոռւոյ ։ Յաւուրս սորա ծաղկեցաւ Անանիա Շիրակացի՝ համարող և աստեղաբաշխ ։

33 Տէր Իսրայէլ յՈթմսոյ 'ի Վանանդայ ։ Յաւուրս սորա , Մովսէս Սիւնեցի՝ երկրորդ քերթող ծաղկի ։ Եւ Մժէժ հայ նստի կայսր Յունաց 'ի Կոստանդնուպօլիս յամի Տեառն 667 ։

34 Տէր Սահակ Գ ․ յԱրքունաշինէ ։ Սա կալեալ տարաւ 'ի Դամասկոս առ ամիրապետն հագարացւոց ։

35 Տէր Եղիա յԱրճիշոյ ։ Յաւուրս սորա , Նախարարք հայոց այրին 'ի Նախիջևան քաղաքի 'ի հագարացւոց ․ Եւ ժողով յԱղուանս ։

36 Տէր Յովհան Գ ․ իմաստասէր Օձնեցի 'ի Տաշրաց ։ Յաւուրս սորա , յամի 722 հրէայ ոմն յԱսորիս՝ համբաւէ զանձնէ լինել Մեսիա ։ Եղև ժողովք Դվնայ՝ Է ․ և ժողով Դվնայ կամ Վաղարշապատու ընդդէմ Պօղի-

կեանց և Յուլիանէոսաց ։ Լևոն կայսր Յունաց զինէ ընդդէմ սրբոց պատկերաց ։

37 Տէր Դաւիթ Ա․ յԱրամոնից ։ Յաւուրս սորա, յամի 733 յարեան պատկերամարտք յաշխարհին Յունաց ։

38 Տէր Տրդատ Ա․ Օթմսոյ 'ի Վանանդայ ։ Յաւուրս սորա եղև սկիզբն տէրութեան Մաճառաց ըստ կուսակալութեան 'ի դիմաց կայսերն Յունաց ։ Եւ աթոռ ամիրապետին Հագարացւոց փոխի 'ի Դամասկոսէ 'ի Բաղդատ, զոր 'ի հիմանց նորոգէ Ճաֆար ամիրապետ ։

39 Տէր Տրդատ Բ․ 'ի Դասնաւորից ։ 'Ի վերջին աւուրս սորա եղև կարկուտ և մարախ և երաշտութիւն յաշխարհին հայոց ։

40 Տէր Սիոն 'ի Բաւոնից Արագածոտան ։ Յաւուրս սորա, եղև ժողովն Պարտաւայ ։

41 Տէր Եսայի յԵղիպատրուշ աւանէ ։ Յաւուրս սորա, Մուշեղ Մամիկոնեան հարկանէ զՊարսիկս ։ Եւ Աշոտ մսակեր առնէ բազում քաջութիւնս ։ Եւ Սաքսոնացիք դառնան 'ի հաւատս ՔՐԻՍՏՈՍԻ ։

42 Տէր Ստեփաննոս Ա․ 'ի Դւինայ ։ Յաւուրս սորա, Մարիամ Հայկազն պսակի ընդ կայսեր Յունաց ։

43 Տէր Յովաբ յՈստանէն Դւինայ ։

44 Տէր Սողոմոն 'ի Գառնոյ ։

45 Տէր Գէորգ Ա․ յԱրագածոտնէ ։

46 Տէր Յովսէփ Բ․ յԱրագածոտնէ ։ Յաւուրս սորա, յամի 803 հանգանակն հաւատոյ սկսաւ երգիլ յեկեղեցիս Լատինացւոց ։ Եւ Վարդան հայ ընտրի կայսր Յունաց, և հրաժարեալ կրօնաւորի ։

47 Տէր Դաւիթ Բ․ 'ի Մազազոյ ։ Յաւուրս սորա յամի 813 տօն վերափոխման հաստատի 'ի Լատինս ։ Եւ Արշաւիր հայ ընտրի կայսր Յունաց, և նուաճի 'ի Նիկեփորայ ։ Եւ ապա նստի կայսր Լևոն Արծրունի հայ ։

48 Տէր Յովհաննէս Ե․ յՈվայից ։ Սա հերքեաց զաղանդն Թոնդրակեցւոց, որ նորոգ սկսեալ էր ։ Յաւուրս սորա եղև ժողովն Երնջակու ։ Եւ դարձ Բուլղարաց 'ի հաւատս ՔՐԻՍՏՈՍԻ ։

49 Տէր Զաքարիա Ա. 'ի Ձագ աւանէ ։ Յաւուրս սորա եղև ժողովն Շիրակավանու ։ Եւ եկն ձիւն արիւնագոյն յաշխարհն Արևմտից ։ Եւ յամի 861 սկիզբն եղև տէրութեանն Ռուսաց ։ Եւ դարձ Շքլաւոնաց 'ի հաւատս ՔՐԻՍՏՈՍԻ ։

50 Տէր Գէորգ Բ. 'ի Գառնոյ ։ Յաւուրս սորա սկզբնաւորի Թագաւորութիւնն Բագրատունեաց 'ի մեծէն Աշոտոյ, որ յամի Տեառն 885, պսակեալ Թագիւ յամիրապետէն Հագարացւոց, և 'ի Վասիլ հայկազն Արշակունի կայսերէն Յունաց, որ Թագաւորեաց 'ի Կոստանդնուպօլիս յամի Տեառն 867 ։

51 Տէր Մաշտոց յԵղիվարդայ ։

52 Տէր Յովհաննէս Զ. պատմաբան՝ 'ի Դրասխանակերտէ ։ Յաւուրս սորա, նահատակի Սմբատ արքայ Հայոց և Թագաւորէ Աշոտ Երկաթ ։ Առնուն Հագարացիք զկաթուղիկոսարանն Դվնայ. և աթոռ կաթուղիկոսութեան փոխի 'ի Վասպուրական յամի Տեառն 924, յետ կալոյ 'ի Դվին քաղաք ամս 472 ։ Յայսմ ժամանակի նստէր կայսր Յունաց Լևոն իմաստասէր հայկազն 'ի Կոստանդնուպօլիս ։ Եւ ապա նստի Կոստանդին Պերփիւռուժէն հայկազն ։

53 Տէր Ստեփաննոս Բ ։

54 Տէր Թէոդորոս Ա ։ Յաւուրս սորա շինի վանքն Նարեկայ ։ Եւ յամի 930 Հերոյլգոս լինի առաջին Քրիստոնեայ Թագաւոր Տանիմառքայի ։ Յայսմ ժամանակի նստէր կայսր Յունաց 'ի Կոստանդնուպօլիս Ռոմանոս Հայ ։

55 Տէր Եղիշէ Ա ։ Յաւուրս սորա Անանիա Նարեկացի ծաղկի ։

56 Տէր Անանիա 'ի Մոկաց ։ Յաւուրս սորա փոխադրի դաստառակն ՔՐԻՍՏՈՍԻ յեդեսիոյ 'ի Կոստանդնուպօլիս ։ Ծնանի սուրբն Գրիգոր Նարեկացի ։ Եւ յամի 948 Ռուսք դառնան 'ի հաւատս ՔՐԻՍՏՈՍԻ ։

57 Տէր Վահան 'ի Բաղաց ։ Յաւուրս սորա Յովհաննէս Զմշկիկ հայ ազգաւ Թագաւորէ 'ի վերայ Յունաց 'ի

Կոստանդնուպօլիս յամի Տեառն 969 ։

58 Տէր Ստեփաննոս Գ. վանահայր Սեւանայ ։ Յաւուրս սորա լինի ժողովն Անւոյ՝ Ա ։

59 Տէր Խաչիկ Ա. Արշարունեաց եպիսկոպոս ։ Յաւուրս սորա, յամի 980 Սմբատ Թագաւոր շինէ զպարիսպ Անի քաղաքին ։ Եւ Սամուէլ հայ Դերջանեցի քաջ՝ Թագաւորէ 'ի վերայ Բուլղարաց ։ Եւ լինի ժողովն Անւոյ՝ Բ ։

60 Տէր Սարգիս Ա. վանահայր Սեւանայ ։ Յաւուրս սորա աթոռ կաթուղիկոսութեան հաստատի յԱնի քաղաք յամի Տեառն 993, յետ կալոյ 'ի Վասպուրական աշխարհ՝ այսինքն 'ի Ձորոյ վանք, և 'ի Վարագ, և յԱրգինա ամս 69 ։ Եւ ժողով հարքայ՝ Ա և Բ, ընդդէմ Թոնդրակեցւոց ։ Եւ յամի 996 Մաճառք դառնան 'ի հաւատս ՔՐԻՍՏՈՍԻ ։

61 Տէր Պետրոս Ա. Գետադարձ ։ Յաւուրս սորա, Գրիգոր Մագիստրոս ծաղկի ։ Եւ յամի 1022 Սենեքերիմ Թագաւոր Արծրունի Թողեալ զքաղաքն Վան՝ չուէ 'ի Սեբաստիա քաղաք ։ Եղև ժողովն Անւոյ Գ. և ժողով հարքայ՝ Գ ։

62 Տէր Խաչիկ Բ. քեռորդի Գետադարձին ։

63 Տէր Գրիգոր Բ. վկայասէր՝ որդի Գրիգորի Մագիստրոսի 'ի զարմէ Լուսաւորչին ։ Յաւուրս սորա, Գագիկ Թագաւոր տայ զԿարս քաղաք 'ի Յոյնս, և ինքն մեկնի 'ի Հայաստանէ ։ Եւ աթոռն կաթուղիկոսութեան փոխի յԱնւոյ 'ի Թաւբլուր՝ յամի 1063, յետ լինելոյ յԱնի ամս 71. և դնի 'ի Ծամնդաւ յամի 1066 ։ Ժողով Սեաւ լերին Ա ։ Եւ յամի 1079 բառնի Թագաւորութիւնն Բագրատունեաց մահուամբ Գագկայ վերջնոյ, և սկսանի տէրութիւն Ռուբինեանց ։ Սա ինքն երանելին Գրիգոր վկայասէր գնայ 'ի Կոստանդնուպօլիս առ կայսրն Յունաց Ալէքս Կոմնենոս վասն միաբանութեան, և ոչ յաջողի ։

64 Տէր Բարսեղ Ա. Անեցի ։ Յաւուրս սորա աթոռն կաթուղիկոսութեան դնի յԱնի ։ Եւ յամի 1089 լինի

սկիզբն տէրութեան Փորթուգեղեց ։ Սուրբն Ներսէս Շնորհալի ծնանի ։ Լատինացի խաչակիր զօրք առնուն զԵրուսաղէմ յամի 1099 . և կանգնալրէ Նոսա առաջին թագաւոր յԵրուսաղէմ ։

65 Տէր Գրիգոր Գ . կամ Գրիգորիս Պահլաւունի ։ Յաւուրս սորա, որ էր ամ Տեառն 1113, Դաւիթ Թոռնիկեան նստի առաջին կաթուղիկոս յԱղթամար ։ Լինի ժողով 'ի Սև լերին Բ . և աթոռ կաթուղիկոսութեան փոխադրի անդր յամի 1115, յետ լինելոյ 'ի Թաւբլուր և 'ի Ծամնդաւ և յԱնի ամս 49 ։ Եւ յամի 'ի 1125 'ի Ծովք գղեակ . և յետ կալոյ 'ի Սեաւլեռան և 'ի Ծովք գղեակ ամս 34, փոխի 'ի Հռոմկլայ յամի Տեառն 1147 ։ Սուրբն Ներսէս Շնորհալի, Սարգիս Շնորհալի, և Իգնատիոս վարդապետ ծաղկին . և սուրբն Ներսէս Լամբրոնացի ծնանի ։

66 Տէր Ներսէս Դ . Կլայեցի, որ և Շնորհալի ։ Գրէ Թուղթ առ Կիռ Մանուէլ Կոմնենոս կայսր Յունաց . և Նորա Շնորհալին՝ վասն միաբանութեան ։

67 Տէր Գրիգոր Դ . կամ Գրիգորիս տղայ կոչեցեալ ։ Սա զսուրբն Ներսէս Լամբրոնացի ձեռնադրէ եպիսկոպոս ։ Յաւուրս սորա եղև ժողովն Հռոմկլայու փոքր՝ և ժողովն Հռոմկլայու մեծ՝ վասն միաբանութեան ընդ Եկեղեցւոյն Յունաց ։ Եւ յամի 1187 սուլթան Սալահաթին առնու զԵրուսաղէմ 'ի ձեռաց Լատինացւոց ։

68 Տէր Գրիգոր Ե . Գահավէժ ։

69 Տէր Գրիգոր Զ . որ և Ապիրատ ։ Յաւուրս սորա, յամի 1197 եղև սկիզբն թագաւորութեան Ռուբինեանց՝ յԵրկրորդ Լևոնէ ։

70 Տէր Յովհաննէս Է . Մեծաբարոյ՝ 'ի Սսոյ ։ Յաւուրս սորա յամի 1202 Ճինկիզ խան տիրապետէ ։

71 Տէր Դաւիթ Գ . 'ի Կ.անաց Արքակաղնոյ ։ Յաւուրս սորա լինի ժողով Սսոյ Ա . և ժողով 'ի Լոռի . և ժողով Անւոյ Դ ։ Լատինացիք առին զԿոստանդնուպօլիս 'ի ձեռաց Յունաց . և Բալդուինոս Լատին թագաւորէ անդ յամի 1204 ։

72 Տէր Կոստանդին Ա. 'ի Բարձր բերդոյ։ Յաւուրս սորա մանկական մարդասպան ծաղկի։ Ժողով Սսոյ՝ Բ և Գ։ Յարձակին Թաթարք ընդ արեգելս։ Հեթում Թագաւոր գնայ առ Մանգոյ խան կայսր Թաթարաց։ Եւ յամի 1261 Յոյնք դարձեալ առին զԿոստանդնուպօլիս 'ի ձեռաց Լատինացւոց, և Միքայէլ Պալէոլոգ Թագաւորեաց 'ի Կոստանդնուպօլիս։

73 Տէր Յակոբ Ա. Կլայեցի՝ գիտնական։ Յաւուրս սորա Հեթում Թագաւոր լինի կրօնաւոր։

74 Տէր Կոստանդին Բ. Պրօնագործ, եպիսկոպոս Կեսարիոյ։

75 Տէր Ստեփաննոս Գ. 'ի Խախ աւանէ, յԵկեղեաց գաւառէ։ Յաւուրս սորա եղև ժողով Սսոյ՝ Դ։

76 Տէր Գրիգոր Է. Անաւարզեցի։ Յաւուրս սորա, Եգիպտացիք առին զՀռոմկլայ, և աթոռ կաթուղիկոսութեան փոխադրեցաւ 'ի Սիս յամի Տեառն 1294, յետ կալոյ 'ի Հռոմկլայ ամս 147։ Ժողով Սսոյ Ե։ Յայսմ ժամանակի, յամի Տեառն 1300 սկիզբն եղև Հզօր Թագաւորութեան Օսմանցւոց, և Թագաւորեաց 'ի Սեօյիւտճիւք, որ է մերձ Պրուսայու՝ Օսման Ա։ 'ի կայսերութեան Յունաց Անդրոնիկոսի Բ. և Միքայէլի Թ. և 'ի Թագաւորութեան Հայոց Հեթմոյ Բ. Եւ գիւտ բևեռացուցի, որ է Բուսոլայ։

77 Տէր Կոստանդին Բ. Կեսարացի վերստին։ Յաւուրս սորա լինի ժողով ինչ 'ի Սիս. և ժողովն Ադանայ։ Եւ յամի 1319 կործանումն Անի քաղաքին։

78 Տէր Կոստանդին Գ. 'ի Լամբրոնէ։

79 Տէր Յակոբ Բ. 'ի Սսոյ։ Յաւուրս սորա գտանի Վառօդն որ է Բարութ, 'ի Կողոնիա Բարթուղիմէայ Գերմանացւոյ՝ յամի Տեառն 1329։

80 Տէր Մխիթար 'ի Գռնեայ՝ որ յԵրնջակ։ Յաւուրս սորա եղև ժողով Սսոյ՝ Զ։

81 Տէր Յակոբ Բ. վերստին։

82 Տէր Մեսրովպ՝ առաջնորդ Վանից Թադէի յԱրտազ։ Յաւուրս սորա եղև ժողով Սսոյ՝ Է։

83 Տէր Կոստանդին Դ։

84 Տէր Պօղոս Ա։ Յաւուրս սորա, որ էր ամ Տեառն 1375, Լեւոն վերջին Թագաւոր յըմբռնի յեգիպտացւոց, և գնի 'ի բանտ. բառնի Թագաւորութիւնն Հայոց. և աւերի աշխարհն Կիլիկիոյ. յորում ժամանակի էր կայսր Յունաց Յովհաննէս Բալէոլոգ, և Թագաւոր Օսմանցւոց սուլթան Մուրատ Ա։

85 Տէր Թէոդորոս Բ։ Յաւուրս սորա, յամի 1383, Լեւոն Թագաւոր ազատի 'ի բանտէ, գնայ 'ի Հռոմ և 'ի Սպանիա, շրջի յԱնգղիա և 'ի Գաղղիա. և յամի 1393 մեռանի 'ի Փարէզ մայրաքաղաքի Գաղղիացւոց, ուր և կայ գերեզման նորա մինչև ցայսօր, և իսպառ բառնի Թագաւորութիւնն Հայոց։

86 Տէր Կարապետ Ա. Կեղեցի։

87 Տէր Դաւիթ Դ։

88 Տէր Կարապետ Բ։ Յաւուրս սորա մեռանի Մարիամ Թագուհին Հայոց։

89 Տէր Յակոբ Գ։

90 Տէր Գրիգոր Ը. Խանձողատ։

91 Տէր Պօղոս Բ. առաջնորդ Երուսաղէմի։

92 Տէր Կոստանդին Ե. 'ի Վահկայ ամրոցէ Կիլիկիոյ։

93 Տէր Յովսէփ Գ։

94 Տէր Գրիգոր Թ. Մուսաբէկեանց։ Յաւուրս սորա լինի ժողովն Էջմիածնի, և յամի 1441 փոխադրի աթոռ կաթուղիկոսութեան յԷջմիածին, յետ կալոյ 'ի Սիս ամս 147։

95 Տէր Կիրակոս Խորվիրապցի՝ Նստի առաջին կաթուղիկոս յԷջմիածին։

96 Տէր Գրիգոր Ժ. 'ի Մակուայ։ Յաւուրս սորա, յամի 1453 սուլթան Մէհեմէտ Թագաւոր Օսմանցւոց առնու զԿոստանդնուպօլիս, և բառնայ զկայսերութիւն Յունաց. որ սկսաւ 'ի շինութենէն Կոստանդնուպօլսի յամի 329 'ի մեծէն Կոստանդիանոսէ կայսերէն Հռովմայ, և տեւեաց ամս 1124 մինչև 'ի վերջին Կոստանդին Բալէոլոգ կայսր Յունաց։

97 Տէր Զաքարիա Բ։ Սա էր յառաջագոյն կաթուղիկոս Աղթամարայ, և նստաւ յէջմիածին։ Յաւուրս սորա, յամի 1461, 'ի 11 ամի թագաւորութեան Ֆաթիհ սուլդան Մէհմէտի, Յովակիմ եպիսկոպոս Պրուսայու նստաւ առաջին պատրիարք հայոց 'ի Կոստանդնուպօլիս։

98 Տէր Արիստակէս Բ. մականուանեալ Աթոռակալ։ Յաւուրս սորա աջ սուրբ Լուսաւորչին ածի յաղթամար։

99 Տէր Սարգիս Գ. Յաւուրս սորա աջ սուրբ Լուսաւորչին ածի յԱղթամարայ յէջմիածին։

100 Տէր Արիստակէս Գ. Յաւուրս սորա, յամի 1492 Քրիստափոր Կոլոմբոս Ճէնովացի մտանէ 'ի Նոր աշխարհն. և յամի 1497 Ամերիկոս Վեսպուկիոս Փլորենտացի յայտնէ զնա, յորոյ անուանէ կոչեցաւ աշխարհն. Ամերիգա. յորում ժամանակի թագաւորէր 'ի Կոստանդնուպօլիս սուլդան Պայազիտ Բ։

101 Տէր Թադէոս Ա։ Յաւուրս սորա շահ Իսմայէլ արքայ Պարսից նորոգէ զԱսպահան քաղաք։

102 Տէր Եղիշէ Բ։ Յաւուրս սորա, յամի 1503 եղև գիւտ փոքրիկ ժամացուցի, այսինքն զէմպերէկլի սահաթի, 'ի Պետրոսէ հելայ Գերմանացւոյ։

103 Տէր Զաքարիա Գ։ Յաւուրս սորա, յամի 1516 սուլդան Սէլիմ Ա. առնու զԵգիպտոս։ 'Ի սմին ժամանակի, յամի 1517 յարեաւ լուտեր Մարտինոս Սաքսոնիացի աղանդապետ, յորմէ Լուտերականք։

104 Տէր Սարգիս Գ։ Յաւուրս սորա, յամի 1521 սուլդան Սուլէյման Բ. էառ զԲէլգրադ։

105 Տէր Գրիգոր ԺԱ։ Յաւուրս սորա էր Կալվին Գաղղիացի աղանդապետ, յորմէ Կալվինեանք։

106 Տէր Ստեփաննոս Ե. 'ի Սալամաստայ։

107 Տէր Միքայէլ 'ի Սեբաստիոյ։ Յաւուրս սորա շահ Թահմազ արքայ Պարսից եած աւեր աշխարհին Հայոց։

108 Տէր Բարսեղ Բ։ Յաւուրս սորա, յամի 1567 եղև սկիզբն տպագրութեան հայերէն գրոց։

109 Տէր Գրիգոր ԺԲ։ Յաւուրս սորա, յամի 1571 Օսմանցիք

առին զԿիպրոս 'ի ձեռաց Վենետիկեցւոց , 'ի թագաւորութեան սուլդան Սէլիմի Բ ։

110 Տէր Յովհաննէս Ջ. յԱռնջոյ ։ Յաւուրս սորա , յամի 1574 Ուլաշ անկաւ ընդ տէրութեամբ Օսմանցւոց ։

111 Տէր Թադէոս Բ ։ Յաւուրս սորա շահ Թահմազ հեղձանի 'ի բաղանիս ։

112 Տէր Առաքել յԷջմիածնէ ։

113 Տէր Դաւիթ Ե. յԷջմիածնէ ։

114 Տէր Մելքիսեդեթ 'ի Գառնոյ ։ Սա յամի 1599 յեօթներորդ ամի կաթողիկոսութեան իւրոյ եկեալ նստի պատրիարգ 'ի Կոստանդնուպոլիս ։

115 Տէր Սրապիոն , որ և Գրիգոր՝ յՈւռհայոյ ։ Յաւուրս սորա , յամի 1605 շահ Աբաս գայ և վարէ զբնակիչս հայաստանեաց յաշխարհն Պարսից , և ածէ աւեր և ամայութիւն աշխարհին հայոց և Էջմիածնի ։

116 Տէր Սահակ Դ ։

117 Տէր Մովսէս Գ. Սիւնեցի՝ որ և Տաթեւացի ։ յամի 1629 նորոգէ զԷջմիածին ։

118 Տէր Փիլիպպոս յԵրկանէ փոքր Աղբակոյ ։ Սա կանգնէ բազում շինուածս յԷջմիածին , և Գրիգոր Պարոն Տէր՝ յԵրուսաղէմ ։

119 Տէր Յակոբ Դ. 'ի Նոր Ջուղայէ ։ Յաւուրս սորա , յամի 1664 Եղիազար Անթապցի ձեռնադրի առանձին կաթողիկոս , և գնէ զաթոռն յԵրուսաղէմ ։ Յակոբ կաթողիկոս գնայ 'ի Կոստանդնուպոլիս ։ Յայսմ ժամանակի յամի 1669 Սաբաթայ Ցեւի համբաւէ զանձնէ լինել մեսիա ։

120 Տէր Եղիազար Անթապցի ։ Սա յամի 1680 յետ վախճանի Յակոբ կաթողիկոսի , հաստատէ յաթոռ իւր յԵրուսաղէմ . և յամի 1682 գնայ և նստի յԷջմիածին ։ Յաւուրս սորա , յամի 1688 մեծն Պետրոս թագաւորէ 'ի վերայ Ռուսաց ։

121 Տէր Նահապետ յԵդեսիոյ ։ Յաւուրս սորա , յամի 1701 Փրիտերիկոս նստի առաջին թագաւոր Պրուսից ։

122 Տէր Աղեքսանդր Ա. 'ի Նոր Ջուղայէ ։

135 Տէր Դաւիթ Զ. 'ի Տփխիսոյ :
136 Տէր Դանիէլ 'ի Գալաթիոյ՝ պատրիարք Կոստանդնու-պօլսի :
137 Տէր Եփրեմ Երևանցի : Յաւուրս սորա, յամի 1820, եղև ժողով 'ի Կոստանդնուպօլիս 'ի մէջ լուսաւորչականս և պապադաւան Հայոց, առ 'ի բառնալոյ 'ի միջոյ զկնճիռն տարաձայնութեան և հաստատելոյ զյօդ սիրոյ և միաբանութեան : Յայսմ ժողովի եղեն բանք և խնդիրք 'ի վերայ դաւանութեան մասանց հաւատոյ և ծիսից : Եկին յայն ժողով և եօթն գիտնական վարդապետք Վիեննեակեցիք հանդերձ ժողովրդովք, և առաւել քան զամենայն երկուս քարոզեցին զուղղափառութիւն Եկեղեցւոյն Հայոց, և պատարագեցին ըստ ծիսի Հայաստանեայց սուրբ Եկեղեցւոյ : Բայց եղեն 'ի նոցանէ՝ որք անհամաձայն մնացին վասն չյիշելոյ 'ի ժամ պատարագին զփափն Հռովմայ : և ըստ սովորութեան լուսաւորչականս Հայոց Եկեղեցեաց զանուն կաթուղիկոսի սրբոյ Էջմիածնի միայն յիշելոյ աղագաւ՝ արկին 'ի մէջ ռամկաց զվէճս և զյոյժ խռովութեան փոխանակ սիրոյ և միաբանութեան : Հրամանաւ արքունի դրանն զութ և տասն անձինս 'ի նախապատիւ

ազգապետացն Հայոց յաքսորս եւսուն յղել՝ զերկուս արք եպիսկոպոսունս Աստուածատուր և Երեմիա անուն՝ արկին 'ի բանտ մահապարտաց, որ 'ի լեզու Տաճկաց կոչի Պօսթանճը պաշը Զնտանը, իբրև զչարագործս և զմեղապարտս: Եւ յաշխարհականաց անտի զհինգ անձինս չարաչար 'ի մահ մատնեցին: Մին 'ի սոցանէ էր Սախայեան Գրիգոր Աղայ՝ զոր գլխատեցին. առ դրան Քումգափու Աստուածածնի Պատրիարքական Եկեղեցւոյն Հայոց. և միւսն՝ Տէլլի Պաղտասար՝ զոր կախեցին 'ի Սամաթիա. իսկ երեքըն էին զուարթածաղիկ երիտասարդք, յորոց զմին՝ տասնիճանաւ սարկաւագ՝ կախեցին 'ի Պօլ Սօմա-Ճուլար դարմաք դադըն. իսկ Մնացեալ երկուքն փախըստեամբ փրկեցին զանձինս 'ի մահուանէ: Եւ այսպէս փոխանակ սիրոյ՝ դարձեալ արմատացաւ սաստիկ ատելութիւն. քահանայք՛ և ժողովուրդք՝ որք եկեալ էին յԵկեղեցին Հայոց՝ ցրուեցան և գնացին, և վերստին յարեցան 'ի պապադաւանս. բայց արիւն անմեղաց իբրև զԱբելին բողոքէ առ Աստուած մինչև ցյաւիտեան: Եւ յամի 1820 ապստամբեցան Յոյնք յՕսմանե-

եան տէրութենէ ; և՛ եղև ՚ի մէջ սոցա պատերազմ արիւնայեղց· և երկարա-մեւ ։ Օգնական եղեն Յունաց Անգղիա , Գաղղիա , Ռուսք և Հռովմ ևս ՚ի ձայն նոցա զազատութիւն ․ որոյ վասն և եղև սաստիկ պատերազմ ՚ի մէջ Ռուս-սաց և Տաճկաց ։ Յաւուրս այսոցիկ խռ-ովութեանց և պատերազմաց դիպանք իւրաքանչիւր դաշնակից տէրութեանց՝ որք էին ՚ի Կոստանդնուպօլիս՝ Հրաման-նաւ Սուլթանին և ըստ զօրութեան դա-շանց եղեն մեկնեցան անտի վաճառականք մնացուածոց իւրեանց հանդերձ նոքօք՝ որք էին ընդ հովանաւորութեամբ նոցին ։

138 Տէր Յովհաննէս Ը․ Կարբեցի ։ Յաւուրս սորա կայսրն Ռուսաց Նիքոլա Բաւլովիչ գնաց ՚ի սուրբ Էջմիա-ծին․ և եղև կայսերական կարգադրութիւն ՚ի վե-րայ վանորէից և կառավարութեան և ստացուածոց և ընտրութեան կաթուղիկոսաց ․ ․ ․ ։ և յամի 1834 ՔՐԻՍՏՈՍԱԶՕՐ և բարեհռչակ իշխանն հայոց Յարու-թիւն Պեզճեան մեռանի ․ և մեծահանդէս շքով թա-ղի յաթոռանիստ եկեղեցւոյն սուրբ Աստուածածնի՝ որ կառուցեալ և զարդարեալ է արդեամբք նորին՝ ՚ի Կոստանդնուպօլիս , ըստ արքունի հրամանին ։ և յամի 1838 սուլթան Մահմուտ Բ , մեռանի , և մեծ որդին սուլթան Աբտիւլ Մէճիթ ժառանգէ առանց իւիք խռովութեան ։

139 Տէր Ներսէս Ե․ յԱշտարակ գեղջէ յԱրարատեան գաւա-ռէ Արարատայ ։ Յաւուրս սորա , մինչ ցամ Տեառն 1848 , եղեն մեծամեծ և զարմանալի գիւտք յար-հեստս և ՚ի գիտութիւնս յեւրոպիա ․ այսինքն՝

գիւտ Հփհրական կամ ելեքտրական հեռագրութեան ( Electric Telegraph ) • գիւտ՝ ծծմբախառն բամբակի վառօդոյ ( Gun Cotton ) • գիւտ՝ կամ լաւ եւս ասել՝ արծարծումն Մեսմերականութեան կամ կենդանական մագնիսութիւն ( Mesmerism or Animal Magnetism ) • գիւտ՝ լուսածին ( Photogenic ) պատկերահանութեան • գիւտ՝ քննութեան կամ տեսութեան պատճառաց մրրկաց եւ փոթորկաց ( Theory of the Law of storms) • գիւտ՝ ծծմբային եթերի , (Chloroform ) որ առաւել զարմացոյց զմարդիկ քան զՄեսմերականութիւն • գիւտ՝ ելեքտրական թղթոյ կամ թղթեայ վառօդի , ( Electric Gun Paper ) որ առաւել զօրեղ եւ ուժեղ է քան զծծմբախառն վառօդ բամբակեայ ։ Եղեն մեծամեծ խռովութիւնք յեւրոպիա • Թագաւորութիւն Գաղղիոյ փոխեցաւ 'ի հասարակապետութիւն • Հետեւանք փոփոխութեանս եղեն աղետալի արիւնայեղց քաղաքական մարտք եւ կըռիւք ։ Աւստրիացիք հետեւեցան շաւղաց Գաղղիացւոց • եւ կայսր նոցա փոխեաւ Յինշդրուկ ։ 'Ի կողմանս Հնդկաստանի եղեւ սաստիկ պատերազմ ընդ Սիկաց 'ի Փանջապ , եւ Լահոռ անկաւ ընդ իշխանութեամբ Անգղիացւոց ։ Տէր ՄԱՏԹԷՈՍ արժանընտիր բարեկարգ Պատրիարք Կոստանդնուպօլսոյ արար զքաջում ազգային բարեկարգութիւնս ։ Յայսմ ամի Մէհմէտ շահ արքայ Պարսից մեռանի , եւ որդի նորա շահ Աբբաս Նասր յաթոռ թագաւորութեան առանց իրիք քաղաքական խռովութեան , պաշտպանութեամբ դեսպանաց երկուց հզօր տէրութեանց Ռուսաց եւ Անգղիացւոց ։

| ԵՋ. | ՏՈՂ. | ՎՐԻՊԱԿ. | ՈՒՂԻՂ. |
|---|---|---|---|
| 9. | 15. | սուրր | սուրբ |
| 16. | 12. | արարօղք | և արարօղք |
| 17. | 21. | սասատակեմ | սասատակեմ |
| 30. | 20. | յանմենայն | յամենայն |
| 68. | 18. | որդուցն | որդւոցն |
| 91. | 21. | մամնով | մարմնով |
| 92. | 20. | չեցելոց | ջեցելոց |
| 108. | 1. | Տէրամբ | Տերամբ |
| 113. | 11. | գթութամբ | գթութեամբ |
| 116. | 20. | օրհնութամբ | օրհնութեամբ |
| 117. | 5. | արդարութամբ | արդարութեամբ |
| 118. | 15. | զեւրինիս | զեւրինըս |
| 164. | 5. | միշտ | և միշտ |
| 172. | 8. | սրբութամբ | սրբութեամբ |
| 291. | 13. | խոնահեցուցանեմ | խոնարհեցուցանեմ |
| 303. | 23. | օհնութիւն | օրհնութիւն |
| 338. | 20. | յանցանց | յանցանաց |
| " . | " . | բարեբութեամբ | բարեբարութեամբ |
| 345. | 13. | պարգևմ | պարգևեմ |
| 369. | 17. | զուարթիւնք | զուարթունք |
| 376. | 8. | յարդէգրութիւն | յորդէգրութիւն |
| 379. | 15. | աշխարհս | զաշխարհս |
| 382. | 20. | ամենասուք | ամենասուրբ |
| 405. | 12. | վուրք | վուրդք |
| 417. | 8. | բութամբ | բութեամբ |
| 423. | 10. | ցծացեն | ցնծացեն |
| 441. | 8. | մերէ | մերմէ |
| 471. | 2. 3. | զաւակա-ջայ | զաւաջակայ |
| 515. | 10. | ըստ | ընդ |
| 519. | 13. | անիրաւու- | անիրաւուու- |
| " . | 19. | գատաստանց | գատաստանաց |
| 542. | 18. | Աղաչեցմուք | Աղաչեսցմուք |
| 550. | 2. | կարցուացես | կացուացես |
| " . | 4. | հադիսա | հանդիսա |

Հարկաւոր համարիմ յիշատակել աստանօր և զ՚չանի մի դա-
րահական վերադարձս ոտարդեալս յայս Գործ ՚ի յեան Միքայէլ
փա-իյց · որ եղէ ու յաղկոյն օրինակս , այլ յամանս փետանի ·
արդիւնք են մ · ն · և ձ · եղեալ » ։ Եւ իմ ո՛չ գիտելով դար-
ձանութիւն վերադարձոյն՝ ո՛չ կարացի ծանօթութիւն տալ զայն-
ցանէ՝ մի քոփ գրելէ յիշատակելով զայնմանն ։ Այլ այն վասն
ամանց ոխակալանաց փաստագրութեան՝ արդիւնք են ոխերմանց ոբերաց
Ա-էփարանաց յէջ 85 · 86 · 88 · ՚ի փեղի տներոյ Տէրն Մեր
ՅԻՍՈՒՍ ՔՐԻՍՏՈՍ ասէ , փեսանի Տեառն Մերոյ ՅԻՍՈՒՍԻ
ՔՐԻՍՏՈՍԻ · և յէջ 208 · Վասն Թաղման և Յարութեան Տեա-
ռըն Մերոյ ՅԻՍՈՒՍԻ ՔՐԻՍՏՈՍԻ , Գտանի Վասն Յարութեան
Տեառն Մերոյ ՅԻՍՈՒՍԻ ՔՐԻՍՏՈՍԻ ։ այնպէս և ՚ի յայնից
ծոծոխակլանաց ղանապանել (Գ2 · Գ4 ·) և կամ ՎԱՌՆ ՄԻԱԳ-
ԳՈՂՄ՝ այս վերադարձ դապահեցան յանծանօթ լինելոյ իմ այա-
ղխոեաց · ձանդի գոլով յաշխարհական կարգէ՝ ո՛չ կարացի
արուել ճշդիւ զայն ամենայն , զոր առնել կարէ ոք հոգևո-
րական ։

